տուցանէր. և յիշէր զնախնեացն զվաստակս, և զառն առն քաջութիւն պատմէր նոցա։

Իսկ այն որ և ոչ մի ինչ յայսցանէ ամենեւին ինչ ոչ յիշեաց. այլ իբրեւ զչարադեւ մի՝ ոչ եւս դադարէր յուզել և շարժել զբուք ձմերայնւոյ. որպէս և նմա-նեալ իսկ էր ծովածուփ ալէկոծ խռովութեան. և ոչ դուզնաքեայ վեր 'ի վերոյ, այլ անդստին յանդնդոց բարձրանալ փրփրել կուտակել՝ միշապաձայն որոտա-լով, գազանաբար գոչելով առ հասարակ դողացուցանէր զտիեզերական իշխանութիւնն, որպէս փլեալ տարա-ծանիցի համատարած ամենայն 'ի վերայ լերանց, խո-րոց, ձորոց, ապականեալ միանգամայն զլայնութիւն դաշտացն վայելչութեան։

Մռնչելով բարբառ արձակեալ և ասէ. Երդուեալ իցէ իմ յարեգակն 'ի մեծ աստուածն, որ ճառագայ-թիւքն իւրովք լուսաւորէ զամենայն տիեզերս, և ջեր-մութեամբն կենդանածնէ զամենայն գոյացեալսն. եթէ վաղիւ ընդ առաւօտն, ընդ երեւումն սքանչելւոյն, ընդ իս զիւրաքանչիւր ծունր նմա ոչ կրկնեսջիք՝ խոստովա-նելով զնա աստուած, ոչ ինչ թողացուցից ձեզ՝ զամե-նայն նեղութիւնս չարչարանաց 'ի վերայ ածելով, մին-չեւ ակամայ կատարեսջիք զկամս հրամանաց իմոց։

Իսկ հաւատացեալքն հաստատեալք 'ի Քրիստոս, ոչ 'ի սառնամանեաց ձմերանւոյն հովանայինն, և ոչ 'ի տապոյ խորշակին ջեռնուլն, և ոչ յահագին ձայնէն սարսէին, և ոչ 'ի սպառնալեաց տանջանացն զանգի-տէին. այլ 'ի վեր հայեցեալք՝ զզօրութիւնն Քրիստո-սի յօգնականութիւն եկեալ տեսանէին. և զուարթա-գին դիմօք և համեստ բանիւք յառաջ մատուցեալ՝ տայ-ին պատասխանի թագաւորին.

Խնդրեմք 'ի քէն, արքայ քաջ, ունկն դիր սակաւ բանից մերոց, և քաղցրութեամբ լուր զոր ասելոցս եմք։ Քանզի յիշեցուցանեմք քեզ զժամանակն Շապհոյ արքայ-ից արքայի, որ էր հայր հաւուն քո Յազկերտի. և ետ նմա Աստուած զերկիրն Հայոց 'ի ժառանգութիւն սորին օրինօք, որով և մեք իսկ վարիմք այժմ, և հարքն մեր և հաւքն հարցն մերոց կացին նմա 'ի ծառայութեան վաստակս. և սիրով կատարէին զամենայն հրամանս բա-նի նորա, և բազում անգամ 'ի նմանէ մեծապարգեւք

լինելին։ Եւ յայնց ժամանակաց մինչեւ 'ի քո Հայրենի աթոռդ՝ և մեք զնոյն ծառայութիւն ծառայեցաք. բայց թերեւս քեզ լաւագոյն քան զառաջնոցն։

Զայս ասելով ցուցանելին զքաջութիւն արութեանցն լաւագոյն քան զառաջնոցն ըստ զինուորութեան կարգի։ Իսկ զմտից և զսակից, և որ այլ եւս էին հարկք աշխարհին, բազմագոյն քան առ հարբն նորա երթայր յարքունիս, նա և 'ի սուրբ եկեղեցւոյն, որ էր ազատ 'ի Քրիստոս ըստ կարգի նախնեացն մերոց 'ի սկզբանէ, և դու ընդ հարկաւ եդիր. և մեք առ սէր քոյոյ տէրութեանդ ոչ ինչ ընդդիմացաք քեզ։ Արդ վասն էր յուզեալ իցէ ցասումնս այս 'ի վերայ մեր. ասա դու մեզ զպատճառս վնասուն. եթէ օրէնքն մեր պատճառք իցեն անվաստակ լինելոյ առաջի քոյ։

Իսկ չարադեւն լի ամենայն նենգութեամբ՝ զերեսս 'ի մի կոյս դարձուցեալ, և ասէ. Վնաս համարիմ ընդունել 'ի գանձ արքունի զհարկս աշխարհին ձերոյ, և անօգուտ զքաջութիւն արութեան ձերոյ. քանզի որդիտաբար մոլորեալ էք 'ի ճշմարիտ օրինացս մերոց, և զաստուածս անարգէք և զկրակ սպանանէք և զջուրս պղծէք, և զմեռեալս 'ի հող թաղելով զերկիր ապականէք, և քրտիկար չառնելով ոյժ տայք Հարամանոյ. և որ մեծ քան զամենայն, զի հանապազ 'ի կանայս ոչ մերձենայք. և մեծապէս լինի դիւաց խնդութիւն, չխրատելով ձեր և չպահելով զամենայն կարգս մոգաց։ Տեսանեմ զձեզ իբրեւ զխաշինս ցրուեալս և զվայրատեալս յանապատի. և յոյժ զեղջ է մտաց իմոց, թէ գուցէ աստուածքն բարկացեալ վասն ձեր՝ 'ի մէնջ վրէժ առնուցուն։ Այլ դուք եթէ կամիք կեալ և կեցուցանել զանձինս ձեր և մեծարանօք անդրէն յուղարկել, զոր ասացի՝ վաղւ վաղվաղակի կատարեցէք։

Յայնժամ երանելի նախարարքն առ հասարակ զձայնս իւրեանց բարձին և ասեն յանդիման ամենեցուն. Մի դու, արքայ, և մի զայդ այլ առ մեզ ասեր. քանզի ոչ է եկեղեցի շինուած մարդոյ, և ոչ տուրք արեգական, որպէս դուդ այլ ընդ այլոյ կարծես՝ թէ աստուած իցէ. ոչ միայն զի աստուած չէ, այլ և կենդանի չէ։ Այլ եկեղեցիք ոչ են պարգեւք թագաւորաց, և ոչ արուեստ ճարտարութեանց, և ոչ գիւտք իմաստնոց, և

Արդ եթէ զմահ չար աստուածն արար, զինչ գոյացութիւն երեւի մահու 'ի միջի. և ոչ ինչ: Բայց զբարի Աստուծոյ զարարածսն խանգարեաց: Եթէ այդ այդպէս է, նմա և բարի իսկ ասել ոչ մարթի, այլ կիսագործ ապականացու: Իսկ որոյ Աստուծոյ արարածքն ապականելիք են և եղծանելիք, նմա անեղծ Աստուած չմարթի ասել: Տիծն անդր թողէք զյիմարութեան զբարբանջմունսդ: Միոյ աշխարհի երկու դեհապետք ոչ լինին, և ոչ միոյ արարածոյ երկու աստուածք: Եթէ ժպրհեսցին և լինիցին երկու թագաւորք միոյ աշխարհի, աշխարհն եղծանի և թագաւորութիւնքն խանգարին:

Աշխարհս նիւթեղէն է, և նիւթքս որիշ որիշ են և ընդ միմեանց հակառակ. մի է արարիչ հակառակորդացս, որ ածէ զսոսա 'ի սիրելութիւն հաւանութեամբ. որպէս մաղեալ կակղէ զջերմութիւն հրոյն՝ օդոյս հաւանութեամբ, և զապառումն բրտութեան օդոյն՝ հրոյն եռանդմամբ, սոյնպէս և մանրամաղ փոշխացեալ հողս՝ ջրոյն խոնաւութեամբ զանգանի, իսկ զ՚ի վայր ծորելի բնութիւն ջրոյն սալայատակ տրամացեալ հողոյն կափմամբ:

Զի եթէ միաբանէին տարերքս, գուցէ ոք 'ի կարծմանց և Աստուած անապական զսոսա կարծէր. և թողեալ զարարիչն՝ արարածոյս զերկրպագութիւն մատուցանէր. վասն այնորիկ որ արար զսա, զգուշացաւ յառաջագոյն. զի հայեցեալ մարդիկ 'ի յանդիմանութիւն ապականացու տարերացս, անապական միայն զկառավար սորա իմասցին, զմի և ոչ զերկուս. զնոյն արարիչ չորեքկին նիւթոյս, յորմէ ամենայնքս ծննդագործին հրամանաւ արարողին իւրեանց: Եւ շրջագայութեամբք չորեք յեղանակք կատարեալք՝ գործեն զտարեւոր սպասաւորութիւնն. և չորեքեան հային կամաց ակնարկելոյ արարչին իւրեանց. և անզգայութեամբ լծեալ են 'ի գործ հարկաւորութեանն՝ չյափշտակելով զկարգ պատուոյն 'ի միմեանց:

Եւ ահա պարզաբար ասացեալ դիւրատար լուսաւորութիւն յականջս ամենեցուն: Զի այն որ հուրն է, գոյացութեամբ և զօրութեամբ խառնեալ է յերիսն եւս մասունս. իբրեւ գտանի ջերմութիւն յոլովագոյն 'ի քարինս և յերկաթս, և սակաւագոյն յօդ և 'ի ջուր, և

ինքն առանձին ուրեք ոչ երեւի ։ Իսկ ջրոյն բնութիւն գոյ առանձինն , գոյ և 'ի խառնուածս երիցն եւս մասանցն ․ յոլովագոյն 'ի հողաբոյսս և սակաւագոյն յօդ և 'ի հուր ։ Իսկ օդն թափանցանց է ընդ հուրն և ընդ ջուրն , և 'ի ձեռն ջրոյն ընդ կերակուրս աճեցականս ։

Արդ այսպէս խառնեալ են տարերքս այս , և գոյացեալ իբրեւ զմի մարմին , և ոչ կորուսեալ զիւրաքանչիւր բնութիւնս , և ոչ երբէք զկայան առեալ հակառակութեամբ , հայելով 'ի մի իշխանն միխառնն , որ զխառնուածս յարմարեալ կազմէ առ 'ի բնակութիւն կենդանեաց ամենեցուն , և տեւողութիւն յարակայութեան բոլոր աշխարհիս ։

Իսկ եթէ առ անբան աշխարհս այսպէս հոգ տանի Աստուած , որչափ եւս առաւել առ բանաւոր աշխարհս՝ մարդս ։ Զի որ և ձեր ոմն քաջ յիմաստնոցն ասաց , եթէ Միհրն աստուած մայրածին է 'ի մարդկանէ , և թագաւոր աստուածազաւակ է , և համհարզ քաջ եօթնեբորդաց աստուածոց ։ Արդ եթէ հաւատալ արժան է առասպելաբանութեանդ , զոր դուք և գործովք իսկ կատարեալ ցուցանէք 'ի դենիդ ձերում , մեք ոչ եւս առասպելացն հաւատամք ․ այլ աշակերտք եմք մեծին Մովսիսի մարգարէին , ընդ որում Աստուած խօսեցաւ 'ի մորենւոյն 'ի Սինէ , և դէմ յանդիման օրէնս գրեաց և ետ նմա ․ և ծանոյց զնիւթեղէն աշխարհն իբրեւ զարարածս , և զիւր աննիւթ էութիւնն՝ արարիչ նիւթոցս յոչընչէ ․ և զերկիրս երկրաւորօքս և զերկինս երկնաւորօք ծանոյց նմա , զի գործք ձեռաց նորա են ։ Բնակիչք երկնի՝ հրեշտակք , և բնակիչք երկրի՝ մարդիկ ․ բանաւոր՝ մարդ և հրեշտակ միայն , և Աստուած 'ի վեր քան զերկինս և զերկիր ։

Արդ ամենայն արարածք անբանութեամբ կատարեն զհրամանս պատուիրանի նորա , ոչ երբեք անցանեն ըստ եդեալ սահմանն իւրեանց ․ բայց մարդ և հրեշտակ ազատ թողեալ 'ի կամս անձին իւրոյ , քանզի մտաւորք են , եթէ կայցեն 'ի հրամանի նորա՝ անմահք են և որդիք Աստուծոյ ։ Զի բոլոր արարածս տուեալ է 'ի ծառայութիւն , զերկիրս մարդկան և զերկինս հրեշտակաց ․ ապա եթէ ստունգանիցեն և անցանիցեն ըստ հրամանաւ , զընդդէմն գործեսցեն Աստուծոյ , յիւրա-

քանչիւր պատուոյն զանարգանս ընկալցին. զի երեւեցի տէրութիւնն անբամբաս, և յանցաւորքն ամօթալից յանցանացն:

Իսկ եթէ դու 'ի տգիտութեան վրիպեալ ես, ես որ հաստատուն գիտեմ՝ ոչ կարեմ գալ զկնի քո մոլորութեանդ: Եթէ աշակերտիմ անուսումնութեանդ, երկոքեան յանդիւտ կորուստ մատնիմք, թերեւս ես չարագոյն քան զքեզ. քանզի վկայ ունիմ ինձ զմիքնասաց ձայնն Աստուծոյ. Ծառայ, ասէ, որ ոչ գիտէ զկամս տեառն իւրոյ, և արժանի գանի ինչ գործ գործէ, ըմպել ըմպէ գան, այլ սակաւագոյն. իսկ որ տեղեկագոյն է կամաց թագաւորին, և յանցանէ ինչ առաջի նորա, առանց բարեխօսի բազմապատիկ տանջի:

Արդ աղաչեմ զքեզ և զամենեսեան՝ որ ընդ քոյով իշխանութեամբ են, մի դու ընդ իս բազմապատիկ տանջիր, և ոչ ես ընդ քեզ սակաւագոյն. այլ ես և դու և ամենայն բազմութիւնդ հանդերձ արի թագաւորաւդ այնպէս աշակերտեսցուք աստուածային գրոց, զի 'ի տանջանացն ապրեսցուք, և զդժոխս արհամարհեսցուք, և յանշէջ հրոյն զերծանիցիմք, և զարքայութիւնն ժառանգիցեմք, և անցաւոր կենօք զանանց մեծութիւնն անվախճան ունիցիմք: Բայց յորմէ դուդ զարհուրեալ ես՝ դիւրահաւան լեր, և փաղփաղուկի աշակերտիս ճշմարտութեանն:

Ամն 'ի հրեշտակաց յանմահից գնդէն ստամբակեալ և 'ի բաց գնաց յերկնից. 'ի մեր աշխարհս եկեալ՝ պատիր բանիւք և սուտ խոստմամբ զանլինելի յոյսն առաջի դնէր, իբրեւ տղայ մանկան, անփորձ և անկիրթ նորաթեք մարդոյն, 'ի վեր հայեցուցանելով զմիտս նորա ուտելով 'ի պտղոյ ծառոյն, յոր հուպն չհրամայեաց երթալ, զի լիցի աստուած: Իսկ նորա մոռացեալ զպատուիրանն Աստուծոյ, խաբեցաւ զկնի մոլար խաբէութեանն. կորոյս զոր ունէր զփառս անմահութեանն, և չեհաս երազայոյս կարծեացն: Վասն որոյ և մերժեալ 'ի կենաց տեղւոյն, ընկեցաւ յապականելի աշխարհս՝ յորում և դուքս էք բնակեալ այժմ, և ցնորեալ մոլորիք զկնի նորին խրատու. ոչ եւս ուտելով 'ի պատուիրեալ ծառոյն, այլ զարարածս աստուած անելով, և անխօս տարերցս երկիր պագանելով, և անօ-

բովայն դիւաց կերակուր մատուցանելով, և յարարչէն բոլորեցունց 'ի բաց լինելով։

Ոչ յագի չար խրատուն, այլ կամի՝ զի քան զինքն չարագոյնս արասցէ։ Քանզի դեւքն ոչ եթէ բռնաբար զոք վարեն 'ի կորուստ, այլ զմեղսն քաղցրացուցանեն 'ի կամս մարդոյն, և ողոքանօք որսան զանուսմունս 'ի խաբէութիւն, որպէս բազում մարդիկ զընկերս իւրեանց 'ի գողութիւն և յաւազակութիւն. իբր ոչ եթէ բռնի ինչ վարելով, այլ պատիր խաբէութեամբ տան գործել բազում չարիս, զոմանս 'ի կախարդութիւն և զոմանս 'ի պոռնկութիւն և զոմանս յանթիւ 'ի բազում յայլ իրս աղտեղութեան։ Եւ արդար դատաւորօք վրէժ առնուն մահու չափ. իբր ոչ եթէ բարի աստուծոյ դատաւորք իցեն բարեգործ, և չարին՝ չարագործ. զի բազում անգամ է՝ զի 'ի բարի մարդկանէ չարք լինին, և յետոյ 'ի չարագունից անտի կատարելագոյն բարիք։

Եւ դատաւորք սոյգ, որք դատին զչարագործս, ոչ եթէ չարք անուանին և չարչարիչք, այլ յոյժ բարիք և բարեգործք. և բնութիւն մի է, և ոչ երկու. իսկ 'ի միոջէ անտի գործք երկուութեան երեւին. ոմանց սատակիչք, և ոմանց պարգեւատուք։ Եւ եթէ առ մարդիկ այս պաշտի 'ի ձեռն թագաւորական վճռակին խրատու խնամ տանել իւրում իշխանութեանն, որչափ եւս առաւել Աստուծոյ բոլոր աշխարհս, որ ընդ ամենեցուն կեանս կամի, և ոչ ընդ մահ։ Իսկ ուր բազմացաւ յանցաւորութիւն, տանջեաց զամենեսեան մահուամբ. իսկ ուր եղեւ ունկնդրութիւն հնազանդութեան, շնորհեաց պարգեւս անմահութեան։

Այն է ճշմարիտ Աստուած՝ բոլորեցունց մեր արարիչ, զոր դու աներեսանակ արձակ բերանով՝ անահ աներկիւղ համարձակ հայհոյես. թողեալ զՅիսուս Քրիստոս զփրկական անունն, փանդուրակայ որդի անուանես, և մարդ մոլորեցուցիչ կարծես. և զերկնաւոր փրկութիւնն աղաւաղես և անարգես 'ի կորուստ անձին և բոլոր աշխարհիս։ Ո՜ որ տալոց և հատուցանելոց ես զանանցական վրէժ տանջանացն յանշէջ հուրն սպառնացեալ գեհենին, հանդերձ ամենայն գործակցօք քոյովք, առաջնովք, միջնովք և վերջնովք։ Այլ մեք այսպէս գիտեմք զԱստուած, և 'ի սոյն հաւատամք յաներկեայս։

Եւ որ արար զաշխարհս, նոյն եկն եւ ծնաւ 'ի սուրբ կուսէն Մարիամայ, յառաջագոյն նկատելով մարգարէիցն, առանց իրիք պատճառանաց մարմնաւոր կարգի։ Որպէս յոչընչէ արար զայս մեծամարմին աշխարհս, սոյնպէս առանց իրիք մարմնական միջնորդի առ զմարմինն յանփորձ կուսէն ճշմարտիւ, եւ ոչ առստուերագիր երեւմամբ։ Եւ որ Աստուած ճշմարտիւ, եւ եղեւ մարդ ճշմարտիւ. ոչ 'ի լինելն մարդ՝ կորոյս զաստուածութիւնն, եւ ոչ 'ի կալ մնալ Աստուած՝ աղաւաղեաց զմարդկութիւնն. այլ նոյն եւ մի։ Այլ քանզի ոչ կարէաք տեսանել զանտեսանելին եւ մերձենալ յանմերձենալին, եկն եմուտ ընդ մերով մարդկութեամբս, զի եւ մեք մտցուք ընդ նորա աստուածութեամբն։ Ոչ անարգանս ինչ համարեցաւ զզգենուլ զիւր ստեղծուած մարմինս, այլ մեծարեաց իբրեւ աստուածաստեղծ զիւր գործ։ Ոչ առ սակաւ սակաւ շնորհեաց ինչ սմա զանմահութեան պատիւն, իբրեւ զանմարմին հրեշտակաց, այլ միանգամայն զբոլոր բնութիւնն մարմնով շնչով եւ հոգւով զգեցաւ, եւ միաբանեաց ընդ աստուածութեանն. միութիւն, եւ ոչ երկուութիւն. եւ այսուհետեւ մի գիտեմք զաստուածութիւնն, որ յառաջ էր քան զաշխարհս, նոյն եւ այսօր։

Նոյն Յիսուս Քրիստոս՝ որ յիւր մարմինն փրկեաց զբոլոր աշխարհս, սա եկն կամաւ 'ի մահ. եւ որպէս ինքն աստուածութիւնն գիտէ, թանձրացաւ յանարատ կուսէն, եւ ծնաւ եւ պատեցաւ 'ի խանձարուրս եւ եդաւ 'ի մսուր, եւ շարժեաց ած զմոգսն յարեւելից յերկրպագութիւն. սնաւ իբրեւ զտղայ կաթամբ, աճեաց եւ մեծացաւ ամս երեսուն, մկրտեցաւ 'ի Յովհաննէ 'ի յամօրդւոյն 'ի Յորդանան գետ։ Արար նշանս մեծամեծս եւ արուեստս 'ի մէջ Հրէից, մատնեցաւ 'ի քահանայից, դատապարտեցաւ 'ի Պիղատոսէ պոնդացւոյ։ Խաչեցաւ, մեռաւ, թաղեցաւ, յարեաւ յաւուր երրորդի, երեւեցաւ երկոտասան աշակերտացն եւ այլոց բազմաց աւելի քան զհինգ հարիւրոցն։ Եւ շրջելով ընդ նոսա զաւուրս քառասուն՝ վերացաւ յերկինս 'ի լեռնէն ձիթենեաց յանդիման իւրոց աշակերտացն, ել եւ նստաւ 'ի հայրենի աթոռն։ Խոստացաւ երկրորդ անգամ գալ ահաւոր զօրութեամբ յարուցանել զմեռեալս, նորոգել զբո-

լոր աշխարհս, առնել դատաստան արդար 'ի մէջ ար֊դարոց և մեղաւորաց, տալ պարգևս արժանաւորաց, և հատուցանել պատիժս չարագործաց՝ որ այսմ ամենայ֊նի բարերարութեանց ոչ հաւատան:

Յայսմ հաւատոյ զմեզ ոչ ոք կարէ խախտել, ոչ հրեշտակք և ոչ մարդիկ, ոչ սուր, ոչ հուր, ոչ ջուր, ոչ ամենայն զինչ և են դառն հարուածք: Ամենայն ինչք և ստացուածք մեր 'ի ձեռս քո, և մարմինք մեր առաջի քո կան, ըստ կամաց քոց արա զինչ և կամիս: Եթէ սովին հաւատովք թողուս, ոչ յերկրի այլ տէր փոխանակեմք ընդ քեզ, և ոչ յերկինս այլ Աստուած փոխանակեմք ընդ Յիսուսի Քրիստոսի, որ չիք այլ Աստուած բայց 'ի նմանէ: Ապա եթէ յետ այսր մե֊ծի վկայութեան այլ ինչ հարցանես, աւասիկ կամք, զբոլոր մարմին տուեալ 'ի ձեռս քո՝ վաղվաղակի արա զինչ և կամիս: Ի քէն տանջանք, և 'ի մէնջ յանձ֊նառութիւնք. սուր քո, և պարանոցք մեր: Չեմք ինչ լաւ մեք քան զառաջինսն, որ յայսր վկայութեան վե֊րայ եդին զինչս և զստացուածս և զմարմինս իւրեանց:

Զի եթէ անմահք իսկ էաք, և մարթ էր մեզ մե֊ռանել վասն սիրոյն Քրիստոսի, արժան էր. քանզի և նա անմահ էր, և այնչափ սիրեաց զմեզ, մինչև մահ 'ի յանձն էառ, զի և մեք նորա մահուամբն յաւիտենա֊կան մահուանէն ապրեսցուք: Եւ եթէ նա յիւր յանմա֊հութիւնն ոչ խնայեաց, մեք զի կամօք եղաք մահկա֊նացուք, կամօք մեռցուք վասն սիրոյ նորա, զի կամօք յանձն առցէ զմեզ յիւր յանմահութիւնն. մեռցուք իբրև զմահկանացուս, զի ընկալցի զմեր մահն իբրև զանմահից:

Այլ դու յայսր ամենայնի այլ զմեզ մի հարցաներ. զի ոչ եթէ ընդ մարդոյ է ուխտ հաւատոյ մերոյ, եթէ պատրեսցիմք իբրև զտղայս. այլ անլուծութեամբ ընդ Աստուծոյ, որում չիք հնար քակտել և 'ի բաց ելանել, ոչ այժմ և ոչ յապա և ոչ յաւիտեանս և ոչ յաւի֊տենից յաւիտեանս:

**Ի սմին մեծի հաւանութեան ամենայն բազմութիւնն միաբանեաց 'ի մեծամեծաց մինչ ցփոքունս. անսուտ երդմամբ եդին վկայութիւն՝ կենօք և մահու 'ի նմին կալ հաստատուն:**

Այլ իբրեւ եհաս Նամակն յարքունիս, և ընթերցան 'ի մեծի խոնաստանի յանդիման ամենայն բազմութեան կարաւանին, բազումք այնոքիկ էին՝ որ իբրեւ լսէին՝ գովէին զպատասխանիսն: Թէպէտ և երկնչէին յահէ տէրութեանն, սակայն 'ի ծածուկ առ միմեանս զնոյն վկայութիւնս գովութեանց տային. առաւել քան ընդ ճարտարաբանութիւնն, ընդ համարձակութիւն աներկիւղութեանն զարմանային: Այլ բազումք ահաբեկեալք սկսան զրահել ընդդապէս. և զնոյն շշնջիւն լսէին յամենայն շրթանց:

Իսկ չարասէր մոգպետն համդերձ մեծ հազարապետաւն շնչեաց չարախօսութիւն, և բորբոքեաց զթագաւորն իբրեւ զհուր անշիջանելի: Այլ սկսաւ կրճտել զատամունսն իբրեւ զօրհասական վիրաւոր. և յայտ յանդիման ձայնարկեաց առ մեծ հրապարակին և ասէ. Գիտեմ ես զչարութիւն բազմութեան մարդկանս, որ թեբահաւատեն 'ի մերոց օրինացս, և զկնի կախարդութեան մոլորեալ են անդարձութեամբ: Այլ իմ եղեալ է 'ի մտի, թէ ոչ ումեք թողացուցից 'ի մեծամեծ հարուածոցն, մինչեւ ակամայ 'ի բաց կայցեն յայնպիսի վրիպական օրինաց. եթէ ոք կարի 'ի մերձաւորաց իցէ, զնոյն անցս և ընդ նոսա անցուցից:

Յայնժամ ծերն դառնացեալ բանս 'ի ներքս ընկէց, և ասէ ցթագաւորն. Ու ի՞նչ է քոյ այդ մեծ տրտմութիւնդ. զի եթէ կայսր չելանէ ըստ քո հրաման, և Հոնք կան քեզ 'ի ծառայութեան, ո՞ր մարդ է յերկրի՝ եթէ կարող է ընդդէմ դառնալ քում հրամանիդ: Տիրաբար հրաման տուր 'ի ներքս, և ամենայն որ զինչ և ասես՝ վաղվաղակի կատարի:

Այլ անդէն թագաւորն 'ի ներքս կոչեալ զդպրապետն, հրամայէր գրել հրովարտակ. և ոչ եւս ըստ սովորութեանն, այլ բանս զայրագինս իբր առ ատելիս և անպիտանս, չյիշելով ամենեւին զմեծամեծ վաստակս տէրասէր մարդկանն. այլ միայն կոչել հրաման տուեալ յականէ յանուանէ զարս՝ զոր ինքն ճանաչէր. որոց անուանքն են այս. 'ի տոհմէն Սիւնեաց Վասակ անուն, 'ի տոհմէն արծրունեաց Ներշապուհ անուն, 'ի տոհմէն ռշտունեաց Արտակ անուն, 'ի տոհմէն խորխոռունեաց Գադիշոյ անուն, 'ի տոհմէն մամիկոնենից Վարդան ա-

նուն, 'ի տոհմէն Մոկաց Արտակ անուն, 'ի տոհմէն ապահունեաց Մանէճ անուն, 'ի տոհմէն ամատունեաց Վահան անուն, 'ի տոհմէն վահեւունեաց Գիւտ անուն, 'ի տոհմէն անձեւացւոց Շմաւոն անուն։ Զայս նախարարքս յականէ յանուանէ կոչեցին 'ի դուռն արքունի. և կէսքն առ նմա իսկ էին 'ի կարաւանին, և այլքն 'ի կողմանց հիւսիսոյ 'ի Հոնաց պահակին. Թողեալ էր զոմանս 'ի նախարարացն անդէն յաշխարհին Հայոց։

Արդ թէպէտ և ոչ համագունդ 'ի միոջ վայրի դիպեցան ամենեքեան, սակայն յառաջագոյն գիտացեալ զխորհուրդսն չարաբարոյ բռնաւորին, և զհեռաւորսն եւս իբրեւ զմերձաւորսն 'ի միոջ վայրի առ միմեանս համարէին։ Այլ 'ի ձեռն Յովսեփու եպիսկոպոսի նոքին ուխտիւ հաստատեալ՝ խաղացին գնացին յիւրաքանչիւր տեղեաց 'ի դուռն արքունի։ Այլ յոյժ փութային վասն եղբարց և որդւոց և սիրելի դայեկասնունդ բնակացն, որ չարաչար կային 'ի մեծի նեղութեանն։ Վասն որոյ և նոքա զանձինս 'ի մահ մատնեցին, ոչ ինչ զանգիտելով իբրեւ զանարի վատասիրտս, այլ յոյժ քաջութեամբ պնդէին զանձինս, զի թերեւս կարասցեն փրկել զնոսա 'ի մեծամեծ հարուածոցն։

Այլ իբրեւ հասին 'ի դուռն արքունի, և 'ի մեծի շաբաթու զատկին յանդիման լինէին մեծի թագաւորին։ Բայց թէպէտ և տեսանէին զեղբարս իւրեանց 'ի մեծամեծ վիշտս տառապանաց, որ վասն անուանն Քրիստոսի ճգնեալք էին պնդապէս, ոչ ինչ տրտում և տըխուր զերեսս ցուցանէին հրապարակին։ Այլ որչափ նոքա զուարթագին երեւէին ամենեցուն, առաւել զարմանային չարասէրքն։

Այլ զի օրէնք էին յառաջ ժամանակաւ, յորժամ 'ի Հայոց այրուձի 'ի դուռն երթայր 'ի ձեռն պատուաւորի զօրագլխի ուրուք, այր ընդ յառաջ յղէր, և հարցանէր զողջոյն և զխաղաղութիւն Հայոց աշխարհին. և երկիցս և երիցս անգամ զնոյն առնէր, և զհանդէս գնդին ինքնին տեսանէր։ Այլ յառաջ քան 'ի գործ պատերազմին հասանել, զգալն իսկ առ նա՝ մեծ շնորհակալութիւն համարէր. և առաջի աթոռակցացն իւրոց և ամենայն մեծամեծացն՝ ամենեցուն գովութիւն մա-

տուցանէր. և յիշէր զնախնեացն զվաստակս, և զառն առն քաջութիւն պատմէր նոցա։

Իսկ այն օր և ոչ մի ինչ յայսցանէ ամենեւին ինչ ոչ յիշեաց. այլ իբրեւ զչարադեւ մի՝ ոչ եւս դադարէր յուզել և շարժել զբուք ձմերայնւոյ. որպէս և նմանեալ իսկ էր ծովածուփ ալէկոծ խառվութեան. և ոչ դուզնաքեայ վեր 'ի վերոյ, այլ անդատին յանդնդոց բարձրանալ փրփրել կուտակել՝ վիշապաձայն որոտալով, գազանաբար գոչելով առ հասարակ դողացուցանէր զտիեզերական իշխանութիւնն, որպէս փլեալ տարածանիցի համատարած ամենայն 'ի վերայ լերանց, խորոց, ձորոց, ապականեալ միանգամայն զլայնութիւն դաշտացն վայելչութեան։

Մռնչելով բարբառ արձակեալ և ասէ. Լռուեալ իցէ իմ յարեգակն 'ի մեծ աստուածն, որ ճառագայթիւքն իւրովք լուսաւորէ զամենայն տիեզերս, և ջերմութեամբքն կենդանածնէ զամենայն գոյացեալսն. եթէ վաղիւ ընդ առաւօտն, ընդ երեւումն սքանչելւոյն, ընդ իս զիւրաքանչիւր ծունր նմա ոչ կրկնեսջիք՝ խոստովանելով զնա աստուած, ոչ ինչ թողացուցից ձեզ՝ զամենայն նեղութիւնս չարչարանաց 'ի վերայ ածելով, մինչեւ ակամայ կատարեսջիք զկամս հրամանաց իմոց։

Իսկ հաւատացեալքն հաստատեալք 'ի Քրիստոս, ոչ 'ի սառնամանեաց ձմերանւոյն հողմնայինն, և ոչ 'ի տապոյ խորշակին ջեռնուին, և ոչ յահագին ձայնէն սարսէին, և ոչ 'ի սպառնալեաց տանջանացն զանգիտէին. այլ 'ի վեր հայեցեալք՝ զզօրութիւնն Քրիստոսի յօգնականութիւն եկեալ տեսանէին. և զուարթագին դիմօք և համեստ բանիւք յառաջ մատուցեալ՝ տային պատասխանի թագաւորին.

Խնդրեմք 'ի քէն, արքայ քաջ, ունկն դիր սակաւ բանից մերոց, և քաղցրութեամբ լուր զոր ասելոցս եմք։ Բանզի յիշեցուցանեմք քեզ զժամանակն Շապհոյ արքայից արքայի, որ էր հայր հաւուն քո Յազկերտի. և ետ նմա Աստուած զերկիրն Հայոց 'ի ժառանգութիւն սովին օրինօք, որով և մեք իսկ վարիմք այժմ, և հարքն մեր և հաւքն հարցն մերոց կացին նմա 'ի ծառայութեան վաստակս. և սիրով կատարէին զամենայն հրամանս բանի նորա, և բազում անգամ 'ի նմանէ մեծապարգեւք

լինէին ։ Այլ յայնց ժամանակաց մինչեւ 'ի քո հայրենի աթոռդ՝ եւ մեք զնոյն ծառայութիւն ծառայեցաք. բայց թերեւս քեզ լաւագոյն քան զառաջնոցն ։

Ոչ այս ասելով ցուցանէին զքաջութիւն արութեանցըն լաւագոյն քան զառաջնոյն ըստ զինուորութեան կարգի ։ Այլ զմաքսից եւ զսակից, եւ որ այլ եւս էին հարկք աշխարհին, բազմագոյն քան առ հարքն նորա երթայր յարքունիս, նա եւ 'ի սուրբ եկեղեցւոյն, որ էր ազատ 'ի Քրիստոս ըստ կարգի նախնեացն մերոց 'ի սկզբանէ, եւ դու ընդ հարկաւ եդիր. եւ մեք առ սէր քոյոյ տէրութեանդ ոչ ինչ ընդդիմացաք քեզ ։ Արդ վասն էր յուզեալ իցէ ցասումնս այս 'ի վերայ մեր. ասա դու մեզ զպատճառս վնասուն. եթէ օրէ՞նքն մեր պատճառք իցեն անվաստակ լինելոյ առաջի քո ։

Այլ չարաչեան լի ամենայն նենգութեամբ՝ զերեսս 'ի մի կողմ դարձուցեալ, եւ ասէ. Սնաս համարիմ ընդունել 'ի գանձ արքունի զհարկս աշխարհին ձերոյ, եւ անօգուտ զքաջութիւն արութեան ձերոյ. քանզի տըգիտաբար մոլորեալ էք 'ի ճշմարիտ օրինացս մերոց, եւ զաստուածս անարգէք եւ զկրակ սպանանէք եւ զջուրս պղծէք, եւ զմեռեալս 'ի հող թաղելով զերկիր ապականէք, եւ քրտիկար չառնելով ոյժ տայք Հարամանոյ. եւ որ մեծ քան զամենայն, զի հանապազ 'ի կանայս ոչ մերձենայք. եւ մեծապէս լինի դիւաց խնդութիւն, չխրատելով ձեր եւ չպահելով զամենայն կարգս մոգաց ։ Տեսանեմ զձեզ իբրեւ զխաշինս ցրուեալս եւ զվայրատեալս յանապատի. եւ յոյժ զեղջ է մտաց իմոց, թէ զուցէ աստուածքն բարկացեալ վասն ձեր՝ 'ի մէնջ վրէժ առնուցուն ։ Այլ դուք եթէ կամիք կեալ եւ կեցուցանել զանձինս ձեր եւ մեծարանօք անդրէն յուղարկիլ, զոր ասացի՝ վաղիւ վաղվաղակի կատարեցէք ։

Յայնժամ երանելի նախարարքն առ հասարակ ըզձայնս իւրեանց բարձին եւ ասեն յանդիման ամենեցուն. Ո՛վ դու, արքայ, եւ մի՛ զայդ այլ առ մեզ ասեր. քանզի ոչ է եկեղեցի շինուած մարդոյ, եւ ոչ տուրք արեգական, որպէս դուդ այլ ընդ այլոյ կարծես՝ թէ աստուած իցէ. ոչ միայն զի աստուած չէ, այլ եւ կենդանի չէ ։ Այլ եկեղեցիք ոչ են պարգեւք թագաւորաց, եւ ոչ արուեստ ճարտարութեանց, եւ ոչ գիւտք իմաստնոց, եւ

ոչ աւար քաջութեան զինուորաց, և ոչ պատիր խաբէութիւնք դիւաց. նա և բնաւ իսկ ամենեւին զինչ և ասասցես յերկրաւորացն, կամ 'ի վեհից կամ 'ի վատթարաց, բնաւ ուրեք եկեղեցի 'ի նոցանէ ոչ գտցի։ Այլ շնորհք են մեծին Աստուծոյ, ոչ միում ումեք 'ի մարդկանէ տուեալ, այլ ամենայն բանաւոր ազգաց, որք վիճակեալք են 'ի բնակութիւն 'ի ներքոյ արեգական։ Հիմունք նորա եդեալ են 'ի վերայ հաստատուն վիմի. ոչ ներքինք շարժել կարեն, և ոչ վերինք դղրդուեցուցանել։ Այլ զոր երկինք և երկիր ոչ դողացուցանէ, մի՞ ոք 'ի մարդկանէ խոստացի յաղթել նմա։ Հապա, որով օրինակաւ զինչ կամիս առնել՝ կատարեա. պատրաստ եմք ամենեքեան առ ամենայն մեքենայս հարուածոցն տանջանաց՝ զոր սպառնացար, ոչ միայն 'ի չարչարել, այլ և 'ի մեռանել։ Այլ եթէ դարձեալ եւս զնոյն բանս հարցանես, 'ի միջէ միջէ լուիցես առաւել քան զդոյն պատասխանի։

Յայնժամ դառնացեալ քան զլեղի Թագաւորն, փրլուզանէր անդէն 'ի փորին զծով կամսուոր մաղձոյն իւրոյ. և ընդ քիթսն և ընդ բերանն առ հասարակ գոլոշի ջերմախառն ելանէր, իբրեւ 'ի սաստիկ հնոցէ ծուխ թանձրացեալ։ Այլ առ չհանդարտել սրտին իւրոյ՝ կոտորէր զզօրութիւն մարմնոյն, և ծակոտէր զբազմամթեր աման խորհրդոցն. ցրուէր և վատնէր զամենայն խորհումն նենգութեան։ Այլ զոր ոչ երբեք կամէր իւրոց սիրելեացն յայտնել, ակամայ առաջի ծառայիցն Քրիստոսի մերկանայր և դնէր զամենայն կարգաւ։

Երեքկնէր և չորեքկնէր զանսուտ երդումն յարեգակն, և ասէր այսպէս. Ոչ կարէք աւերել զանխաբ ամուրս իմ. և ոչ որում ցանկացեալդ էք՝ վաղվաղակի տամ գտանել ձեզ. այլ զամենեսեան զձեզ և որ 'ի գնդիս են՝ չարաչար կապանօք 'ի Սակաստան տամ անցուցանել ընդ անձանապարհ տեղիս, որ և բազումք 'ի ձէնջ 'ի խորշակէ յերթալն սատակիցին, և մնացեալքն անկցին 'ի բերդս ամուրս և 'ի բանդս անելս։ Այլ 'ի ձեր աշխարհն առաքեցից զօրս անթիւս հանդերձ փղօք, և զկին և զորդիս 'ի Խուժաստան տամ խաղացուցանել. և զեկեղեցիս՝ և զոր անուանէքն վկայարանս՝ քակեցից, քանդեցից և յապականութիւն դարձուցից. և եթէ ոք

ընդդէմ դարձեալ գտցի, կռիւան եղեալ գազանաց՝ անողորմ մեռանիցի ։ Այլ զամենայն ասացեալս արարից և կատարեցից առ մնացորդս աշխարհին ։

Այլ վաղվաղակի հրամայէր զպատուական նախարարսն հանել մեծաւ անարգանօք յերեսաց իւրոց. և զգուշութեամբ հրաման տուեալ դահճապետին՝ առանց կապանաց յիւրաքանչիւր վանս պահել, և ինքն զառածեալ անդրէն դառնայր անմխիթար տրտմութեամբ զօթեւանըս ագանէր ։ Իսկ հաւատացեալքն ճշմարտութեամբ 'ի Քրիստոս՝ ոչ ինչ երկմտութեամբ թերահաւատէին յառաջին խրատուէն 'ի սուրբ վարդապետացն իւրեանց. այլ տակաւին խնդրէին հնարս իրացն, թէ որպէս զանձինս և զփրկելիս հանցեն 'ի մեծ նեղութենէն ։ Այլ բազում անգամ ջանալով, և մեծամեծացն՝ որ օգնականք էին նոցա 'ի դրանն արքունի՝ խոստմունս մեծամեծս առաջի դնէին նոցա առ 'ի յոյս կարասւոյ, և ոչ սակաւ գանձս առ ժամայն ծախէին նոցա ։

Այլ իբրեւ յամենայն կողմանց եկն փակեցաւ անել արգելման նոցա, յայնժամ զխորհուրդն Աբրահամու 'ի մէջ առեալ՝ աղաղակէին և ասէին 'ի սիրտս իւրեանց. Ամենեցուն մեր նուիրեալ և եդեալ զեղբարս և զորդիս և զամենայն սիրելիս ընդ կապանօք իբրեւ զՍահակ 'ի վերայ սուրբ սեղանոյն, ընկալ Տէր զկամաւոր պատարագս մեր, և մի տար զեկեղեցի քո յայլս կատականաց անօրէն իշխանիս այսորիկ ։

Մի ոմն 'ի ներքին խորհրդակցացն արքայի 'ի ծածուկ ունէր զանքակ սէրն 'ի Քրիստոս, քանզի մկըրտեալ իսկ էր յաւազանն կենդանի. և մեծապէս հոգ տանէր հնարից կենաց վշտացելոցն ։ Այլ իբրեւ ստուգեաց ճշգրտիւ, եթէ զոր բազում սպառնացաւ թագաւորն՝ զամենայն չարիսն կամի անցուցանել ընդ աշխարհն Հայոց, թէպէտ և ոչ ամենեցուն՝ այլ սակաւուց 'ի նոցանէ ուսոյց զխրատ հնարից. զի առ անգամ մի 'ի նեղութենէ անտի զանձինս ապրեցուսցեն ։

Այլ մինչ դեռ գունդ կազմէին, որ զնոսա չկօթակ արասցեն յանդարձ օտարութիւն, որպէս զբազում նախարարսն 'ի Վրաց աշխարհէն արարին, 'ի նմին ժամանակի գուժկան հասանէր 'ի կողմանցն Քուշանաց, եթէ գունդ հատաւ 'ի թշնամեացն, որ եկին աւերեցին

զգաւառս քաղուած արքունի ։ Եւ այս լինէր մեծ օգնականութիւն նոցա յերկնից ։ Եւ անօրէնն ձեպեալ տագնապէր զայրուձին յառաջ արձակել, և ինքն փութով ստէպ զհետ երթայր․ և 'ի խոր խոցեալ զխորհուրդսն՝ ցրուէր զառաջին հաստատուն երդումն ։

Իսկ երկիւղածացն Տեառն զայս տեսեալ, մեծաւ յուսով աղօթելով ասէին միաբան․ Դու Տէր ամենայնի, որ գիտես զծածկեալս սրտից մարդկան, և յայտնի են առաջի քո ամենայն աներևոյթք խորհրդոց, և ոչ ինչ խնդրես վկայութիւն յերևելեաց, որպէս զի և զանգործս մեր տեսին աչք քո․ արդ առաջի քո հեղումք զխնդրուածս մեր ։ Ընկալ, Տէր, զծածկութիւն աղօթից մերոց, և կատարեա զմեզ 'ի հաճոյս պատուիրանաց քոց․ զի ամաչեսցէ չարն, որ խրոխտացեալ մարտնչի ընդ մեզ իշխանութեամբ անօրինին ։ Շարժեա, Տէր, զկամակոր խորհուրդսն նենգաւորին, և խափանեսցես զկամս ամբարշտութեան նորա, և դարձո զմեզ խաղաղութեամբ խորհրդոցն անդրէն 'ի սուրբ եկեղեցին․ զի մի յանկարծակի յափշտակեալ աւերեսցի չարաչար 'ի թշնամեաց ։

Եւ անձամբք իւրեանց զայս ուխտ եդեալ անքակութեամբ ընդ Աստուծոյ, զի հաստատուն կայցեն ըստ առաջին խորհրդոցն, պատգամ 'ի ներքս յղէին զնոյն խրատտուն իւրեանց, իբր թէ կատարեսցին կամք անօրէնութեան նորա ։

Զայն իբրև լուաւ թագաւորն, յոյժ ցնծացեալ բերկրեցաւ, կարծեցեալ զդիւն հասանել նմա յօգնականութիւն, շրջեալ և աւերեալ զհաստատուն խորհուրդս ծառայիցն Աստուծոյ, և ահա մատուցանէին երկրպագութիւն արեգական, պատուեալ զնա զօհիւք և ամենայն օրինօք մոգութեանն ։ Եւ զայն ոչ կարաց իմանալ ցնորեալն, եթէ անստուեր լոյսն արեգականն արդարութեան, սպառէր և մաշէր զխաւարային խորհուրդս նորա, և եղծեալ ապականէին զամենայն խեղաթիւր կամս նորա ։ Եւ կուրացեալ 'ի ճշմարիտ յայտնութենէն՝ ոչ ինչ իմացաւ զպատրանս խաբէութեանն, որով վրիպեացն ։ Ձեղջր արկանէր առաջի նոցա զպարգևս երկրաւորս, և մերստին ամենեցուն զպատիւս և զգահս նորոգէր, յառաջ մատուցանելով և երևելի

առնելով ընդ ամենայն տիեզերական իշխանութիւնն ։ Այլ անբաւ առատութեամբ ազատակս և աւանս միում միում նոցա յարքունուստ շնորհէր, սիրելիս և բարեկամս կարգայր զնոսա. և առ հպարտ յանդգնութեան մնացն կամակորութեան՝ կարծէր եթէ փոխանակեսցի ճշմարտութիւնն ընդ ստութեանն ։

Այլ զայս արարեալ, բազում այրուձի գումարէր ընդ նոսա, և 'ի մոգացն ոչ սակաւս, աւելի քան զերօթն հարիւր վարդապետս յղէր ընդ նոսա, և զմեծ ամն իշխան մոգպետ կացուցանէր 'ի վերայ նոցա ։ Խոստանահէր և աղաչէր պատուիրելով, թէ մինչ ես 'ի պատերազմէս դարձեալ գայցեմ խաղաղութեամբ, ձեր արարեալ և կատարեալ իցէ զամենայն ըստ կամաց իմոց ։ Այլ այսպէս շքով և պատուով առաջնորդէր նոցա զերկարութիւն ճանապարհին մինչև յերկիրն Հայոց ։ Այլ ինքն աւետիս ինքնակալս առաքէր յատրուշանս բազումս, գրէր և ցուցանէր մոգաց և մոգպետաց և ամենայն մեծամեծաց կողմանց կողմանց աշխարհաց, որպէս զիւրն օգնականութեամբ զզարծ քաջութեան իմոյ յառաջ մատուցեալ ։

Իսկ խահերականքն այնուհետև յարուցեալ յիւրաքանչիւր խաւարային զարանաց՝ իղձք լինէին վաղվաղակի զհրամանն կատարել. ձայն արարեալ յաշխարհս հեռաւորս՝ միանգամայն խաղալ գնալ յերկիրն արեմտից ։ Այլ մինչ չև հասեալ էին յերկիրն Հայոց, փայտ ընկենուին և վիճակս արկանէին, թէ որ լեզու որում գաւառ հասցէ յաշակերտութիւն ։ Ոչ ի առ հասարակ հրաման առեալ էր յարքունուստ, որպէս աշխարհին Հայոց՝ նոյնպէս և Վրաց և Աղուանից և Լփնաց, Ճղբնեաց և Կորդուաց և Ծոդէից և Դասանի, և որ այլ ևս աւրէք ուրեք 'ի ծածուկ յիշխանութեանն Պարսից ունէին զքրիստոնէութիւն ։ Այլ յանգգայ յարձակմամբ յաւարի առնուլ փութային զգանձս սուրբ եկեղեցեացն. և իբրև զգեւս այնուհետև միմեանց պատահէին ։ Այլ լինէր գունդ զօրաց բազմաց, և չարաչերն սատանայ իբրև զօրավար 'ի մէջ նոցա երևէր, և անդադար յորդորելով զամենեսեան ձեպեալ փութացուցանէր ։ Ապա եղեալ զժամանակն՝ զամիսն վեցերորդ, տագնապէին և ստիպէին արքունի հրամանաւ ։

Մինչեւ 'ի նաւասարդէ նաւասարդ, ասէ, յամենայն տեղիս՝ ուր իցեն ընդ իշխանութեամբ Թագաւորին մեծի, բարձցին կարգ եկեղեցւոյ, փակեսցին և կնքեսցին դրունք սուրբ տաճարացն, գրով համարով առցին նուիրեալ սպասքն յարքունիս, լռեսցեն ձայնք սաղմոսացն և դադարեսցեն ընթերցուածք անսուտ մարգարէիցն։ Քահանայք մի իշխեսցեն 'ի տունս իւրեանց ուսուցանել զժողովուրդս, և հաւատացեալքն 'ի Քրիստոս արք և կանայք՝ որ բնակեալ են յիւրաքանչիւր մենանոցս, փոխեսցեն զհանդերձս իւրեանց ըստ աշխարհական կարգաց։

Դարձեալ և կանայք նախարարացն կալցին զուսումն վարդապետութեան մոգացն։ Ուստերք և դստերք ազատաց և շինականաց կրթեսցին 'ի հրապարակս նոցուն մոգաց։ Կարճեսցին և արգելցին օրէնք սուրբ ամուսնութեան, զոր ունէին 'ի նախնեաց ըստ կարգի քրիստոնէութեանն. այլ փոխանակ ընդ կնոջ միոյ՝ բազում կանայս արասցեն, զի աճեցեալ բազմասցին ազգք Հայոց։ Դստերք հարանց լինիցին, և քորք՝ եղբարց. մարք մի ելցեն յորդւոց, այլ և թոռունք ելցեն յանկողինս հաւուց։

Պատրուճակք մի մեռցին անյաղ, եթէ յօղեաց իցէ և եթէ յայծեաց և եթէ յարջառոց և եթէ 'ի հաւուց և եթէ 'ի խոզաց։ Հայսք առանց փանդամի մի զանգցին, ծիւղք և քակորք 'ի կրակ մի եկեսցեն, ձեռք առանց գոմիզոյ մի լուասցին. շնջրիք և աղուեսք և նապաստակք մի մեռցին։ Օձք և մողէզք, գորտք և մրջմունք, և որ այլ եւս խառնափնդոր բազմաճճիք են, մի կայցեն. այլ վաղ թուով համարով 'ի մէջ բերցեն ըստ արքունի չափոյն։ Եւ որ այլ եւս ինչ սպասք իցեն, կամ զոհից կամ ստանդից, ըստ տօնական կարգին՝ տարեւոր թուականին, և ըստ կապճաթիւ մոխրաչափ կարգին։

Զայս ամենայն որ ասացաք, առ ժամանակ մի մինչեւ 'ի գլուխ տարւոյ կատարեսցեն ամենեքեան. և զայլն ամենայն առ յապա պատրաստեսցեն։

Իսկ զայս ամենայն հրաման պատուիրանաց առեալ մոգաց և մոգպետաց, զտիւ և զգիշեր փութային հասանել յաշխարհն Հայոց. և առ յոյժ խնդութեանն ոչ երբէք յագէին երկայնութեամբ ճանապարհին։

# ԵՐՐՈՐԴ ՑԵՂԱՆԱԿ

## ՎԱՍՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ՈՒԽՏԻՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ*

Թէպէտ և ոչ իցեմք բաւական ասել զամենայն չարիսն, որ անցք անցին անդէն 'ի կարաւանին ընդ գունդն Հայոց, սակայն և ոչ լռել կամիմք ծածկելով զվիշտս նեղութեանն. այլ ասասցուք փոքր 'ի շատէ, զի ձայնակիցք լիցուք այնոցիկ, որք դառնապէս զմեզ ողբային. զի և դու իբրև լուիցես, ոչ սակաւ արտասուս հեղուցուս 'ի վերայ ազգին թշուառութեան:

Զի ա՛հա անդէն 'ի մեծ քանակին Պարսից՝ յազգաց ազգաց, որք են հաւատացեալ 'ի սուրբ աւետարանն Քրիստոսի, իբրև տեսին զչար յանձնառութիւնն Հայոց, յոյժ հարան 'ի միտս իւրեանց, և կործանեցան անկան 'ի վերայ դիմաց իւրեանց: Բազումք 'ի նոցանէ թաղծեալք 'ի սուգ ծանրութեան, հարեալ յոգիս և դառնացեալ յարտասուս, եկին և յանդիմանեցին զնախարարեանն, և յոյժ դարովեցին զուխտ քահանայութեանն: Զզուէին զամենեսեան և ասէին. Զի՞ առնիցէք զսուրբ կտակարանսդ, և կամ յո՞ տանիցէք զսպաս տէրունեան սեղանոյն. մոռանայցէ՞ք արդեօք զհոգևոր օրհնութիւնսդ, և կամ լռեա՞լ դադարիցէք 'ի մարգարէական ձայնիցդ: Կափուցէք զաչս յընթերցուածոց, և խցէք զականջս 'ի լսելոյ. միթէ զմտացդ անմոռացութիւն ո՞չ յիշիցէք. զի՞նչ առնիցէք զպատուիրեալսն 'ի Տեառնէ. Որ ուրասցի զիս առաջի մարդկան, յուրաստ եղէց և ես առաջի Հօր իմոյ, որ յերկինս է, և հրեշտակաց սրբոց:

Վարդապետք էիք առաքելական քարոզութեանցն, արդ աշակերտք լինիցիք մոլար խաբէութեանն: Ուսուցիչք էիք ճշմարտութեանն, արդ ուսուցանէք զպատիր խաբէութիւն մոգաց: Քարոզք էիք արարչական զօ-

րութեանցն, արդ զտարերս աստուածս խոստովանիք։ Յանդիմանիչք էիք ստութեան, արդ և քան զսուտն ստագոյնք լինիցիք։ Ի հուր և 'ի հողի էիք մկրտեալք, արդ 'ի մոխիր և յաճիւն թաթաւիցիք. կենդանի մարմնով և անմահ արեամբ էիք սնեալ, արդ 'ի ձենձեր զոհից և 'ի շարաւս աղտեղիս մրձոտիցիք։ Տաճար էիք Հոգւոյն սրբոյ, արդ զոհարան դիւաց լինիցիք. քրիստոսազգեացք էիք 'ի մանկութենէ, արդ մերկացեալք 'ի փառացն դիւաբար արեգական կաքաւիցէք. ժառանգ էիք արքայութեանն, արդ անձամբ զանձինս արկէք 'ի ժառանգ գեհենին։ Այդա է սպառնացեալ հուրն անշէջ, ընդէր դուք ընդ նոսա այրեցեալ տոչորեցայք. նոցա պարարի որդն անմահ, իսկ արդ դուք պարարիցէք զմարմինս ձեր նմա 'ի կերակուր. խաւարն արտաքին նոցա թանձրացեալ պահի, դուք լուսազգեստք ընդէր յուզարկեցայք ընդ նոսա 'ի նոյն խաւար։ Աղքա 'ի վաղընջուց հետէ էին իսկ կուրացեալք, դուք զկնի կուրացն կուրացարուք. նոցա էր փորեալ զխորխորատն, դուք ընդէր լցէք յառաջագոյն։ Ե՞րբ ուսանիցիք զբազմաթիւ անուանս աստուածոցն նոցա, այն՝ որ չիք ուրեք 'ի միջի և ոչ մի։ Թեթեւացեալք 'ի ծանր բեռանց՝ անձին անձամբ առէք զբեռն ծանրութեան. ազատեալք 'ի մանկութենէ՝ չարաչար մտէք յանազատելի ծառայութիւնն։

Եթէ գիտէիք և երեւէր ձեզ յայտնի, սուգ առին երկինք 'ի վերայ ձեր, և թաղծեցաւ երկիրս 'ի ներքոյ ոտից ձերոց։ Հրեշտակք 'ի վերուստ են ձեզ բարկացեալք, և 'ի յերկրէս մարտիրոսքն են ձեզ ցասուցեալք։ Ողորմիմ ողորմիմ սիրելեաց ձերոց, և բազում անգամ ողորմիմ անձանց ձերոց։ Ո՜ի թէ մարդոյ փրկեալ էր զձեզ 'ի ծառայութենէ, և դուք անձամբ զանձինս այլում 'ի ծառայութիւն արկանէիք, 'ի մեծ բարկութիւն բրդէիք զառաջին տէրն ձեր։ Իսկ արդ զինչ առնիցէք զաստուածասաստ հրամանն. Այս եմ Աստուած, և չիք այլ ոք բայց յինէն, և ոչ զկնի իմ այլ ոք լիցի Աստուած. Աստուած նախանձոտ եմ ես, հատուցանեմ զմեղս հարց յորդիս, մինչեւ յեօթն դար։ Իսկ եթէ որդիքն արդարք վասն հարցն մեղաց ընդունին զպատուհասն, յորժամ ինքեանք որդիքն իսկ մեղիցեն,

ոչ ահա միանգամայն զանձանց և զհարցն տայցեն 'ի միասին ։

Դուք էիք մեր ամուր պարիսպ ապաստանի. յորժամ աստի վտանգ հասանէր, առ ձեզ յանդորր ելանէաք. արդ մեծ ամուրդ այդ հիմն 'ի վեր տապալեցաւ ։ Դուք էիք մեր պարծանս առ Թշնամիսն ճշմարտութեան, արդ դուք էք մեր նախատինք առ նոյն Թշնամիս ։ Այժմ վասն ձերոյ ճշմարիտ հաւատոցն և 'ի մեզ փոքր 'ի շատէ խնայէին. և արդ 'ի պատճառս ձեր և զմեզ անողորմ դատին ։ Ոչ միայն զանձանց դատաստան տալոց էք առաջի ահեղ ատենին Աստուծոյ, այլ և բազմաց ամենեցուն՝ որ 'ի ձեր պատճառս և զնոսա եւս չարչարեսցեն ։

Զայս և առաւել քան զայն խօսեցան ընդ մեծամեծս աւագանւոյն, և յաւելին ցաւս 'ի վերայ ցաւոց ։ Յայտնել և ցուցանել նոցա զխորհուրդն ոչ կամէին, լռել և չառնել պատասխանի անհնար էր. հեղձամղձուկ եղեալ մեծապէս յարտասուս հարկանէին ։ Ընդ նմին դառնացեալ լսողք և տեսողք յանմխիթար սուգ լինէին ամենեքեան ։

Յայնմ ժամանակի քահանայքն՝ որ էին անդէն 'ի զօրուն, առ չժուժալ սրտիցն բարկութեան քակեալ որոշեցան 'ի նախարարացն և յամենայն բազմութենէն. և զմի ոմն դեսպան ձիով առաքեցին փութապէս յաշխարհն Հայոց ։ Որոյ 'ի բերան առեալ և զօձիս պատառեալ, հասեալ 'ի ժողովս եպիսկոպոսացն, մեծապէս յարտասուս հարեալ, կայր և պատմէր զամենայն անցս չարչարանացն. այլ ոչ յայտնէր նոցա զծածկութիւն խորհրդոյն ։

Յայնմ ժամանակի սփռեցան եպիսկոպոսքն յիւրաքանչիւր իշխանութիւնս, և առաքեցին զքորեպիսկոպոսս 'ի գեօղս և յագարակս և 'ի բազում ամուրս լեռնայինս գաւառացն ։ Դրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց և կանանց, շինականաց և ազատաց, զքահանայից և զմենակեցաց. խրատ եդին, պնդեցին և արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի ։

Իսկ յառաջին բան խորհրդին այս հաստատեցաւ. Ձեռն եղբօր հարազատի 'ի մերձաւոր իւր լիցի՝ որ անցեալ իցէ ըստ ուխտ պատուիրանին Աստուծոյ. և մի

խնայեսցէ Հայր յորդի, և մի՛ ակն առնուցու որդի Հօր պատուոյն։ Այլ կռուեսցի ընդ առն ամուսնոյ, և ծառայ դարձցի ընդդէմ տեառն իւրոյ։ Օրէնք աստուածային կացցեն թագաւոր ՚ի վերայ ամենայնի, և ՚ի նմին օրինաց ընկալցին յանցաւորք զպատիժս դատապարտութեան։

Եւ իբրեւ այս այսպէս հաստատեցաւ կազմեցաւ, երեւեցան ամենեքեան զինեալք և սաղաւարտեալք, սուր ընդ մէջ և վահան ՚ի ձեռին՝ ոչ միայն արանց քաջաց, այլ և կանանց առնականաց։

Իսկ գունդն Հայոց ամենայն օգնականօքն հանդերձ և մոգացն բազմութեամբ յամսեանն չորրորդի եկին հասին յաշխարհն Հայոց, ՚ի գիւղաքաղաք մի մեծ՝ որում անուն էր Անգղ։ Բանակեցան, բոլորեցան, զետեղեցան, և յամենայն կողմանց անդր ժողովեցան, և էին անթիւ բազմութիւն։

Եւ եղեւ յետ աւուրց քսան և հնգից, մոգպետն ինքնին մոգօքն հանդերձ հասանէր մեծաւ զօրութեամբ՝ քակել զդրունս եկեղեցւոյն յաւուր միաշաբաթուն. զփորձ առնուլ կամէր զառաջարկութեան գործոյն։ Իսկ սուրբն Ղեւոնդ երէց միաբանութեամբ առաջին խորհրդակցօքն և բազում ուխտիւ ՚ի տեղւոջ անդ պատրաստական դիպեցաւ, ոչ ետ թոյլ։ Թէպէտ և ոչ էր տեղեկագոյն մոգացն ամենեցուն նախարարացն, և ոչ զօրութեան ուժոյ մոգպետին, ոչ ինչ եկաց մնաց ամենայն եպիսկոպոսացն, և ոչ առ սակաւ մի համբեր անօրէն իշխանին թողացուցանել. այլ բազում ամբոխ աղաղակի զօրացն և մոգացն հասուցանէր։ Քանզի վիրգս ՚ի ձեռն առեալ՝ զկառափունս մոգացն և մոգպետին ջարդեցին. փախստական յիւրաքանչիւր վանս արկանէին, և ինքեանք զպաշտօնն բարձրացուցեալ յեկեղեցւոջն՝ զտէրունական կանոնն կատարէին, մինչեւ ՚ի նոյն միաշաբաթին անդադար լինելով։

Եւ յետ այս տագնապի խռովութեանն՝ յամենայն կողմանց յաշխարհէն Հայոց բազմութիւն արանց և կանանց ՚ի տեղին հասանէին։ Եւ անդ էր տեսանել զմեծ աղէտ տարակուսին. ոմանք զգերարտօսրն իբր յաղբերականց հոսէին յաչաց իւրեանց. այլքն բարձրաձիչ աղաղակաւ՝ իբր այն թէ զերկինս դողացուցա-

նէին. իսկ կէսքն խիզախելով և 'ի զէնս ընթանալով՝ զմահ քան զկեանս ընտրէին: Իսկ ոմանք 'ի սուրբ ուխտէ եկեղեցւոյն՝ զաւետարանն 'ի ձեռն առեալ, աղօթիւք առ Աստուած կարդային. և այլք ըղձանային ըզպատառումն երկրին, զի անձանց լիցի գերեզման: Եւ այսպէս շտապ տագնապի 'ի վերայ մոգպետին հասուցանէին: Բազում անգամ աղաչէր զօգնականն իւր, զի 'ի մահուանէ կարասցէ զնա ապրեցուցանել, և ողջանգամ անդէն յարքունիս հասուցանել:

Այլ վասն գործոյն յոր եկեալն էր՝ ստիպէր զնոսա և ասէր. Թող գրեմ և ցուցանեմ մեծ թագաւորին, զի 'ի բաց թողացուցանէ զայսպիսի իրաց առաջարկութիւն. զի եթէ ինքեանք աստուածքն եկեսցեն յօգնութիւն, չէ հնար օրինացս մոգութեան 'ի Հայս առնուլ զհաստատութիւն, որպէս զփորձ առի միաբանութեան ուխտին եկեղեցւոյ: Զի թէ էին զօրք աշխարհիս մոգք, ոչ ինչ խնայէին սոքա 'ի նոսա սատակմամբ՝ ոչ միայն զարտաքինսն, այլ և յեղբարս և յորդիս և յամենայն մերձաւորս իւրեանց, նա և ոչ յանձինս իւրեանց: Մարդք, որ ոչ 'ի կապանաց զանգիտեն, և ոչ 'ի տանջանաց երկնչին, և ոչ 'ի ստացուածոց պատկառին, և որ յետին չարն է քան զամենայն չարիս, մահ քան զկեանս ընտրեն, ո՞վ է որ կարէ նոցա դիմակաց լինել:

Լուեալ իսկ իմ էր 'ի նախնեաց մերոց, եթէ յաւուրս Շապհոյ արքայից արքայի, իբրեւ սկսաւ ուսումնս այս աճել և բազմանալ և լնուլ զամենայն երկիրն Պարսից, և եւս անդր յարեւելս հասանել, իսկ որ վարդապետքն էին օրինացն մերոց՝ յորդորեցին զթագաւորն, զի մի՛ բնաւ ամենեւին բարձցին օրէնք մոգութեան յաշխարհէն, ետ հրաման սաստիկ, զի լուեալ դադարեսցէ քրիստոնէութիւնն: Եւ որչափ նա կամեցաւ արգելուլ, եւս քան զեւս աճեցին և բազմացան, և հասին մինչեւ յաշխարհն Քուշանաց, և անտի 'ի հարաւակողմն՝ մինչեւ 'ի Հնդիկս տարածեցաւ:

Եւ այնպէս աներկիւղ և համարձակք էին յաշխարհին Պարսից, մինչեւ յամենայն քաղաքս աշխարհին եկեղեցի շինեցին, որ զանցուցանէր պայծառութեամբ զթագաւորաբնակ արքունեօքն: Շինէին և վկայարանս

իմն անուանեալս, և զնոյն զարդ եկեղեցեաց զարդարէին, և յամենայն տեղիս՝ յապատս և յանապատս միայնանոցս շինէին։ Այլ իբրեւ ոչ ինչ երեւէր յայտնի օգնութիւն ուստեք, աճելով աճէին և բազմանալով բազմանային, և մարմնաւոր մեծութեամբք մեծանային։ Զպատճառս հարստութեան մեք ինչ ոչ գիտէաք. բայց այսչափ ինչ ճշմարտիւ իմանայաք, զի տիեզերք ամենայն զկնի ուսմանց նոցա գնային։

Թէպէտ էարկ 'ի նոսա Թագաւորն զձեռն իւր խըստութեամբ, և զբազումս կալաւ և չարչարեաց 'ի նոցանէ, և զեւս բազումս մահուամբ սատակեաց, դառնացաւ և ձանձրացաւ յանձն իւր, և զնոսա ոչ կարաց նըւաղեցուցանել 'ի բազմութենէն։ Դարձեալ Թէպէտ փակեաց և կնքեաց զդրունս եկեղեցեացն ընդ ամենայն աշխարհն Պարսից, նոքա զամենայն տուն եկեղեցի արարին. և յամենայն տեղւոջ զիւրեանց օրէնսն կատարէին։ Այլ զանձինս իւրաքանչիւր վկայարանս համարէին, և լաւագոյն զշինուածս մարդկեղէնս քան զհոգեղէնս հաշուէին։ Սուրբ սպանողացն բթեցան, և նոցա պարանոցքն ոչ ձանձրացան. աւարառուք ստացուածոց նոցա աշխատեցան, և աւարն որ քան զօր աճեցեալ բազմացաւ։ Սրտմտեալ էր Թագաւորն, և յոյժ դառնացեալ դահիճք բարկութեանն. իսկ նոքա արթունք և զուարթունք, և խնդալից ընդունէին զամենայն հարուածս տանջանացն, և սիրով տանէին զամենայն յափըշտակութիւն ընչից իւրեանց։

Իբրեւ ետես Թագաւորն եթէ զուր տուեալ դիմեցին 'ի մահ իբրեւ խաշինք սուրբք յաղն երկնաւոր, արգել և կարճեաց 'ի նոցանէ զհարուածս տանջանացն. և հրաման ետ մոգաց և մոգպետացն, զի մի ամենեւին ոք խռուեսցէ զնոսա, այլ հաստատեալ կացցեն աներկիւղութեամբ յիւրաքանչիւր ուսմունս, մոգն և զանդիկն և Հրեայն և քրիստոնեայն, և որ այլ բազում կեշտք են 'ի կողմանս կողմանս աշխարհին Պարսից։ Այլ ապա առ երկիրն զխաղաղութիւն հաստատութեամբ, և լըւեալ դադարեցին ամենայն խռովութիւնք յուզմանց։ Քանզի ընդ մերոյ աշխարհին շարժմանն՝ և արեւմուտք եւս մեծապէս շարժեցան, և ամենայն տաճկաստան ընդ նոսին խռովեցան։

Զայն ահա 'ի լսելդ գիտեմք. բայց այս որ ես յինձէն աչօք տեսի, թուի ինձ՝ թէ մեծագոյն եւս լինի քան զառաջինն։ Արդ դու որ մարզպանդ ես աշխարհիս, պարտ է քեզ հոգ յանձին ունել, գրել և ցուցանել յարքունիս զմիաբանութիւն բռնութեանս, որպէս աներկիւղութեամբ առ ոչինչ համարեցան զհրամանս արքունի։ Եթէ չէր մեր աճապարեալ և 'ի փախուստ դարձեալ, միում 'ի մէնջ ոչ տային ապրել։ Եւ եթէ անզէն մարդիկ այդպէս բռնացան, եթէ յանկարծ զինուորս եւս ընդ ինքեանս միաբանեցուցանեն, ո՞ կարիցէ կալ առաջի դոցա յանդուգն յարձակմանդ։

Նա ահա անտեղեակ էի անքակ ուխտի եկեղեցւոյդ 'ի միմեանց. զի այլ է՝ զոր լսէ մարդ, և այլ է՝ զոր տեսանէ հաստատուն իւրովք աչօք։ Դու որ 'ի մանկութենէ յայդմ օրէնս սնեալ էիր, և ճշմարտեալ գիտէիր զպնդութիւնդ մարդկանդ, եթէ առանց բազում արեան հեղլոյ դոքա մեզ ոչ տան ձեռն արկանել յեկեղեցիսդ, ընդէ՞ր ոչ զայդ ամենայն հաւաստեաւ յանդիման չասացեր ցթագաւորն։ Քանզի ամենայն նախարարացն աւագ դու էիր, և զբոլոր աշխարհս քեզ յանձն արարեալ էր մարզպանութեամբ. ընդէ՞ր ոչ մեծապէս հոգ տարար յանձն քո։ Զի յայլ ժամս իմաստուն էիր, և ես գիտէի. զայս՝ գործ իմաստութեան ոչ գործեցեր։ Ապա թէ ոչ, յայտ է եթէ դու 'ի նոցա բանի ես, և քոյով խորհրդով անցուցին զայս անցս ընդ իս և ընդ զօրս։

Արդ եթէ այդ այդպէս է, և քեզ կամք չէ ունել զմոգութիւն, մի՛ ինչ պատկառեր դու երկիւղիւ յարքայէ. ես գրեմ և ցուցանեմ 'ի դուռն մովպետան մովպետի և դերանդարձապետի և մեծ հազարապետին, զի ածցեն զարքայ 'ի հաւանութիւն, որպէս զի 'ի բաց թողացուսցէ ըստ առաջին հրամանին, և 'ի կամս մարդկան ապստամբ արասցեն, զի առ սակաւ սակաւ ընդելցին ընդ օրէնս մոգութեանս. զի որք կալցին՝ սիրով երեւեսցին կատարեալ զհրամանս արքունի։ Քանզի մարզ է աշխարհս, դուցէ յորժամ վնաս ինչ առնիցեն, և ինքեանք ցրուեալ վատնեսցին յօտարութիւն. իսկ յորժամ աշխարհս թափուր լինիցի 'ի մարդկանէս, յայնժամ և քեզ գլխովին մեծապէս վնաս հասանէ յարքունուստ։

Նա պատասխանի մարզպանն մոգպետին, և ասէ. Ո՛չ միայն բանք խրատուդ՝ զոր ասացեր, ճշմարիտ են. բայց զառաջինն զոր չիմացաք՝ տեսեր, և մեծապէս զղջացաք այժմ։ Բայց դու արդ զոր ասեմս արա, և բարիոք թուեսցի քեզ. սակաւիկ մի երկայնամիտ լեր և զխորհուրդս քո արգել 'ի բազմաց, բայց արանց՝ որոց ես ասեմ, նոցա յայտնեա. մինչեւ ես ինձ ոյժ ժողովեցից զօր 'ի թիկունս ածելոյ, և զուխտ եկեղեցւոյդ թերեւս կարացից երկփեղկել։ Եւ եթէ զայդ այդպէս արարից, գիտեմ ապա թէ և զհրամանն արքունի կարող եմ կատարել։

Եւ անդէն հրոս հանեալ 'ի Սիւնեաց աշխարհէն, զիւր գունդն ստուարացոյց 'ի թիկունս օգնականութեան մոգաց և մոգպետին։ Եւ ապա սկսաւ ասել. Ոգէ դու անգամ մի հրովարտակ 'ի դուռն տուր վասն այրուձիոյն՝ որ յՈզնանան է տասն հազար, զի 'ի ձմերոց 'ի Հայս եկեսցեն. և յորժամ զնոսա 'ի ձեռին ունիցիմք, չիք ոք որ եղծանել կարէ զհրաման արքունի։

Պատասխանի ետ մոգպետն և ասէ ցմարզպանն. Ոյդ խորհուրդ դարձեալ իմոց բանիցս ընդդէմ է. քանզի մեք յորժամ բռնութեամբ կռուեսցուք ընդ աշխարհիս, աշխարհս 'ի բաց քանդի, և մեք 'ի պատուհասէ չապրիմք. անձանց մնաս, և արքունի մեծապէս զեան։

Եւ ոչ ինչ կամեցաւ ամենեւին ունկն դնել նմա մարզպանն, զի սրտի մտօք կալեալ էր զպարսկական օրէնսն։ Սկսաւ այնուհետեւ պատրել զոմանս կարասւով և զոմանս ողոքական բանիւք. զռամիկն ամենայն՝ ահեղ բանիւք սպառնացեալ սրտաթափ առնէր։ Համապազորդ առատացոյց զռոճիկսն տաճարին, և յերկարէր զնուագսըն ուրախութեան, մաշելով զերկայնութիւն գիշերացն յերգս արբեցութեան և 'ի կաքաւս լկտութեան. քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական և զերգս հեթանոսականս. մեծապէս գոհութիւն մատուցանէր օրինաց թագաւորին։ Ներեալ էր և յարքունուստ բազմութիւն կարասւոյ, և միում միում կաշառ գաղտ խոթէր 'ի պատճառս պարգեւի և պատուոյ. և բազում նենգութեամբ զանմեղ մարդիկ հրապուրէր և յինքն արկանէր։

Իսկ զայս ամենայն իբրեւ տեսին սուրբ եպիսկոպո-

սունքն, եւս քաջ դրդեալ յորդորեցան 'ի նոյն միաբանութիւն. և հնարագէտ իմաստութեամբ ընդ երկուս բաժանեցին զբանակն։ Մանաւանդ իբրեւ հաստատեալ գիտացին 'ի միտս իւրեանց, եթէ անօրէն իշխանն Միհնեաց զօրհասական վէրսն 'ի յոգիսն ընկալեալ էր, խորշեցան մերժեցան և 'ի բաց փախեան 'ի նմանէ։

Խորհուրդ արարեալ 'ի գիշերի միում ամենայն ուխտին բազմութեամբ, կոչեցին և զսպարապետն զօրաց 'ի խորհուրդն. հարցին և քննեցին և 'ի վերայ հասին մըտացն անշարժութեան, որոյ ոչ սակաւ մի թերացեալ էր 'ի սրբոյն Քրիստոսի։ Նա միաբան աղօթս արարեալ 'ի վերայ նորա, վերստին ընկալան զնա յառաքինութիւն։ Նա նովաւ որսացեալ զբազումս 'ի նոյն միաբանութիւն, որք ոչ էին քակեալ յառաջին միաբանութենէն, եկին և ժողովեցան գունդ զօրաց բազմաց։ Նա եւս առաւել հեռագոյն զատան 'ի մոգուցն և 'ի մոգպետէն և յանօրինէն Վասակայ։

Իսկ նա այնչափ յիմարեցոյց և ափշեցոյց զմիտս մոգպետին, մինչեւ չետ նմա իմանալ զելս իրացն։ Սկսաւ բաշխել մոգս 'ի տունս նախարարացն և մեծամեծ առձիկս կարգել, զոհել պատրուճակս, և բռնաբար կընքաւոր մարդկանն տալ ուտել միս յաղածոյ, և երկիր պագանել արեգական։ Իբրեւ սկսաւ բազմանալ ընդ ամենայն աշխարհն այնպիսի պղծագործ խառնակութիւն, յանդգնեցան և եւս կանայք փշտիպանացն յաւուր կիրակէի անցուցանել զճրագունս եկեղեցւոյն և պատառել զհանդերձս հաւատաւոր կանանցն։

Զայս գուժկան աղմկի իբրեւ տեսին միաբան սուրբ եպիսկոպոսունքն, զաւետարանն 'ի ձեռն առեալ հասին և անկան առանց հարցանելոյ 'ի վանս սպարապետին, ուր ժողովեալ էին զօրքն Հայոց։ Համբարձին զձայնս իւրեանց և ասեն. Աղաչեմք զձեզ զամենեսեան սուրբ աւետարանաւս, եթէ ձերով խորհրդիւ գործէ զայն անօրէնութեան չարիս մարզպանն և մոգպետն, նախ զմեր պարանոցս հատէք, և ապա յեկեղեցին ձեռնարկեցէք. ապա թէ առանց ձեր կամաց նոքա զայն չարն գործեն, այսօր խնդրեսցի վրէժ այդ 'ի նոցանէ։

Իսկ որք էին 'ի ներքս 'ի վանս սպարապետին՝ յոտն կացին, միաբան համբարձին զձայնս իւրեանց առ Աս-

տուած և ասէն. Դու, Տէր, սրտագէտ ամենեցուն, ոչ ինչ պիտի քեզ վկայութիւն 'ի մարդկանէ. եթէ խոտորեալ իցեմք 'ի քէն սրտի մտօք, զայն դու ինքնին քաջ գիտես, այսօր իսկ դատեա զմեզ ըստ մեղաց մերոց։ Ապա եթէ հաստատուն կամք յուխտի սուրբ աւետարանիս, դու, Տէր, լեր մեր օգնական այսօր, և տուր զթշնամիսն ճշմարտութեան 'ի ձեռս մեր, զի արասցուք ընդ նոսա ըստ կամաց մերոց։

Զայս իբրև ասացին, ամենեքեան զգլուխ զգետնի հարկանէին. և ողջունեցան յաւետարանէն և յեպիսկոպոսացն։ Իսկ մի ոմն 'ի նախարարացն որ անդր դիպեցաւ, էր 'ի նոցա խորհրդի, և ոչ միաբանեաց ընդ նոսա 'ի մեծ վկայութիւնն. և անդէն առ ժամայն 'ի նոցունց 'ի տեղւոջն քարկոծեցաւ, և ահ մեծ անկաւ 'ի վերայ ամենեցունց։

Յայնժամ ամենեքեան 'ի նախանձ քաջութեան բորբոքեցան, մինչև ամենայն տեսողացն երիկամունքն դողային, որք առ ոչինչ համարեցան զպարգևս արքունի, և առ ոտն հարին զհրամանս ահագինս։ Ընթացան վաղվաղակի 'ի զէնս իւրեանց, վառեցան կազմեցան ըզգիշերին ամենայն, և ընդ ծագել արեգականն զգունդն յերիս մասունս բաժանեալ 'ի բանակն արկանէին։ Գունդն առաջին յարևելից կուսէ, և գունդն երկրորդ յարևմտից կողմանէ, և գունդն երրորդ 'ի հիւսիսոյ կողմանէ, շուրջանակի 'ի մէջ առեալ փակեցին զբազմութիւն բանակին. և զբազումս կոտորեցին, և զևս բազմագոյնս կապեցին զերևելի մարդիկ, և արկին 'ի բերդս ամուրս ընդ իւրեանց իշխանութեամբ։ Այլ զառ և զապուռ զաւար բանակին 'ի մի վայր ժողովեալ պահէին իբր հրամանաւ արքունի։

Իսկ զմարզպանն ձերբակալ արարեալ, և միաբանէր ընդ նոսա երդմամբ՝ հաստատուն կալ յուխտին, զղջանայր զառաջին քակումն 'ի նոցանէ։ Ընկանէր ապաշխարութեամբ յոտս սուրբ եպիսկոպոսացն, և աղաչէր խաղաղատելով՝ զի մի մերժեալ ընկեսցի առ 'ի նոցանէ։ Արկնէր և երեքկնէր զանսուտ երդումն առաջի բազմութեանն 'ի սուրբ աւետարանն, դնէր և կնքէր զերդումն և կապէր զաւետարանէն. և աղաչէր՝ զի յԱստուծոյ յայտնեսցի վրէժխնդրութիւնն, և մի նոքա մարդ-

կարգը սատակեցեն զնա ։ Իսկ նոքա Թէպէտ և հաստատեալ գիտէին զնենգաւոր կեղծաւորութիւնն նորա, և Թէ խաբէութեամբ դառնայ անդրէն 'ի հին մոլորութիւնն, ոչ ինչ փոյթ առնէին ձեռն արկանել 'ի նա վասն առաջին յանցանացն, այլ սուրբ աւետարանին Թողին 'ի դատապարտութիւն ։

Իսկ որք եկեալ էին յաւարի առնուլ զսուրբ գանձս եկեղեցւոյն, ակամայ եդին զանձինս և զաւար իւրեանց առաջի սուրբ եպիսկոպոսացն և ամենայն զօրացն. և երծեալ ապականեցաւ հրամանն Թագաւորին ։ Եւ յաջողեալք զօրութեամբն Քրիստոսի՝ աղաղակէին և առէին գոհանալով արք և կանայք և ամենայն ռամիկ բազմութիւնն. Պատրաստ եմք 'ի հալածել և 'ի մեռանել և յամենայն նեղութիւնս և 'ի չարչարանս վասն սուրբ եկեղեցեաց, զոր աւանդեցին հարքն մեր առաջինք՝ զօրութեամբ զպատուեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով վերստին ծնաք 'ի մի յոյս հաւատոցն մկրտութեամբ 'ի Քրիստոս Յիսուս. ըստ նմին նմանութեան կամիմք չարչարանօք և արեամբ նորոգել զանձինս ։ Քանզի հայր մեր՝ զսուրբ աւետարանն գիտեմք, և մայր՝ զառաքելական եկեղեցի կաթողիկէ. մի որ չար անջրպետ 'ի մէջ անկեալ՝ զմեզ քակեսցէ 'ի սմանէ ։

Ոչ երեւէր այնուհետեւ առաւել տէր քան զծառայ, և ոչ ազատ փափկացեալ քան զգեղջուկ վշտացեալ. և ոչ որ քան զոք նուազեալ 'ի յարութենէ ։ Մի սիրտ յօժարութեան ամենեցուն արանց և կանանց, ծերոց և տղայոց և ամենայն միաբանելոց 'ի Քրիստոս ։ Քանզի առ հասարակ զմի զխնդրութիւն զխնդրեցան, և զմի ազան զրահս հաւատոց պատուիրանին Քրիստոսի, և միով գօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք և կանայք ։

Ընկեցեալ կայր այնուհետեւ ոսկի, և ոչ որ առնոյր իւր առանձինն արծաթ. և արհամարհեալ առանց ագահութեան, անարգեալ պատուական հանդերձք առ 'ի զարդս մեծարանաց ։ Նա՝ իւրաքանչիւր ստացուածք ոչ ինչ հանճարէին յաչս իւրեանց ստացողին. տեսանէին զանձինս իւրեանց իբրեւ զմեռեալ դիակունս, և զիւրաքանչիւր գերեզմանս ինքեանք փորէին. և կեանք

իւրեանց 'ի մահ համարեալ էին, և մահք իւրեանց անշուշտ կեանք։

Բայց այս բարբառ ստէպ ստէպ ընթանայր. Քաջութեամբ միայն մեռցուք, զանուն և զոգիս եւեթ ժառանգեսցուք. զի կենդանի իցէ 'ի մեզ Քրիստոս, որում դիւրին է միւսանգամ նորոգել զմեզ 'ի հողոյ և զամենայն զյառաջագոյն զննջեցեալսն, և հատուցանել իւրաքանչիւր ըստ գործս իւրեանց։

Զայս և առաւել քան զսոյնս խօսելով, և մխիթարելով զանձինս և զմիմեանս, դարձեալ միւսանգամ զինուորքն պատրաստեցին զգէնս իւրեանց, և աղօթականքն անդադար լինէին յաղօթս իւրեանց, և պահողքն ձգնէին 'ի պահս իւրեանց։ Ձայնք պաշտօնէիցն 'ի տուէ և 'ի գիշերի անհատ էին 'ի սուրբ սաղմոսն. ընթերցուածք աստուածային կտակարանացն ոչ երբեք առնուին դադարումն յամենայն ժամ, նոյնպէս և մեկնիչքն 'ի մխիթարութիւն երկնաւոր վարդապետութեանն։

Յայնմ ժամանակի դարձեալ յարձակեցան 'ի վերայ բերդիցն և աւանաց, զոր ունէին պարսիկքն 'ի տեղիս տեղիս, յամրոցս աշխարհին. տապալէին քանդէին զբնակութիւնս նոցա։ Առաջին զմեծն Արտաշատ հանդերձ աւանօք իւրովք. և առնուին զամենայն ամուրսն՝ զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս, և զաւանս իւրեանց. զԵրկայնորդսն և զԱրհնին, և զաւանս իւրեանց. զԲարձրաբուղն, զՍորանիստն, զՕձախանիստըն, զանկասկածելի Ողականն, և ընդ նոսա և զաւանս իւրեանց. զԱրփանեալն, զՍանն աւան, ընդ նմին և զաւանսն իւր. զԳռեալն և զԿապոյտն, զՍրոտն և ըզՍասակաշատն։

Զամենեսին զայս իւրաքանչիւր գեղիւք և ագարակօք, զօրօք և զօրագլխօք 'ի նմին ամի առեալ տապալեցին, և 'ի գերութիւն վարեցին զարս և զկանայս ընչիւք և ստացուածովք, հանդերձ պատուական գանձիւք և նոցին սպասուք։ Տապալէին քանդէին զշինուածս նոցա, և այրէին կիզուին զտունս պաշտօնարկի և պաշտաման կրակի։ Սրբէին զպղծութիւն կռապաշտութեանցն, և առնուին զկահ և զկազմածս արուշանացն, բերէին և դնէին 'ի սուրբ եկեղեցւոջն. և 'ի

Ապէ ցնոսա դահճապետն. Ես յառաջագոյն իսկ ասացի, եթէ կարի ստամբակ ոմն ես դու. ահա յայտ եղեւ աւադիկ, եթէ յամենայն վնաս նոցա խառն էք դուք: Աբրահամ ասէ. Յո՞ր վնաս: Դահճապետն ասէ. Առաջին 'ի մահ մոգուցն, ապա և յայլսն ամենայն: Աբրահամ ասէ. Այդ ոչ միայն 'ի մէնջ է, այլ ըստ կարգի և ձերոց օրինացդ. Թագաւորք ձեզ տան հրաման, և դուք 'ի ձեռն ձերոց սպասաւորացդ գործէք:

Դահճապետն ասէ. Ի Միհր աստուած երդուեալ իմ, խստագոյն եւս խօսիս քան զվարդապետսն քո. յայտ է եթէ վնասակարագոյնք եւս էք դուք: Արդ ոչ է հնար ձեզ ապրել 'ի մահուանէ, բայց եթէ երկիր պագանիցէք արեգական, և կատարիցէք զկամս օրինաց մերոց:

Խորէն ասէ. Յայժմ իբրեւ զմարդ չարախօսէիր, և արդ իբրեւ զշուն անպիտան ընդ վայր հաջես: Եթէ գոյր արեգական ականջք, դու տայիր նմա թշնամանս դնել. արդ նա բնութեամբ անզգայ է, և դու չարութեամբ անզգայագոյն քան զնա: Յիմ տեսեր զմեզ պակասագոյն քան զհարսն մեր. մի՛ բանիւք զփորձ առնուլ կամիս զմեր, այլ հանդէս արա քում չարութեանդ և մերում բարութեանս, և ամաչեցեալ գտանի հայրն քո սատանայ, ոչ միայն 'ի մէնջ՝ որ կատարելագոյնքս եմք, այլ և որ կարի փոքրիկն թուի քեզ, նա դիցէ վէրս սաստիկս յոգիս և մարմինս քո:

Զայս իբրեւ լուաւ դահճապետն, սրտմտեալ բարկացաւ 'ի վերայ նոցա: Եւ ետ քարշել չարագոյն քան զառաջինսն. և այնչափ սաստիկ քարշեցին, մինչեւ բազմաց կարծիք եղեն՝ թէ մեռան: Իսկ իբրեւ ժամք երեք 'ի վերայ անցին, դարձեալ խօսել սկսան երկոքեանն և ասեն. Փոքր համարիմք զանարգանս զայս և առ ոչինչ զցաւս մարմնոյս առ մեծ սէրն Աստուծոյ, որով կատարեցան հարքն մեր հոգեւորք: Հա՛պա, մի՛ դլար և մի՛ դադարեր, այլ զոր ինչ առ նոսայն արարեր, զնոյն և առ մեզ կատարեա: Եթէ չարագոյն թուին քեզ գործք նոցա, կրկին և զմերս համարեսջիր. զի նոքա բանիւք հրամայէին, և մեք գործովք զարդիւնսն կատարէաք:

Յայնժամ եւս առաւել զայրագնեցաւ 'ի վերայ նոցա, և հրամայեաց զմահու գան հարկանել: Եւ առ մի

մի 'ի նոցանէ փոխեցաւ վէց վէց այր 'ի դահճացն։ Եւ մինչ դեռ կիտամեռք յերկիր անկեալ դնէին, հրամայեաց զերկոցունց ականջսն մօտ կտրել։ Եւ այնպէս բրեցին, որպէս թէ չիցէ լեալ 'ի տեղւոջն։

Զարթեան որպէս 'ի քնոյ 'ի սաստիկ հարուածոցն, սկսան աղաչելով պաղատանս մատուցանել, և ասեն. Աղաչեմք զքեզ, քաջ զինուոր Թագաւորին, կամ կատարեա զմեզ իբրեւ զհարսն մեր մահուամբ, և կամ արա զպատուհաս ըստ օրինակի վերջնոյս։ Զի ահա լսելիք մեր առողջացան զանախտաւորութիւն երկնաւոր, իսկ հոտոտելիքս դեռ ևս աստէն 'ի տեղւոջ կան յանցս չարչարանաց. մի կիսապարգեւ առներ զմեզ յերկնից բարութենէն։ Արբեցեր զմարմինս մեր քարշելով և զլսելիս մեր կտրելով, սրբեա և զռնգունս մեր հատանելով. քանզի որչափ տգեղս առնես զմեզ երկրաւորաւս, գեղեցկագոյնս առնես զմեզ երկնաւորաւն։

Ընդ պատասխանի հեգութեամբ դահճապետն և ասէ. Եթէ և այլ յամեմ ես առ ձեզ մօտ կալով, կարծեմ՝ եթէ և աշակերտէք զիս 'ի ձեր յամառութիւնդ։ Զի ահա արդ և զխորհուրդս արքունի 'ի վեր հանեմ ձեզ։ Յայդ վայր եղեւ հրաման պատուհասից ձերոյ, և 'ի վերայ դորին պատուհասի՝ երթալ ձեզ յասորեստան, և լինել ձեզ միակ յարքունիս. զի որ ընդ ձեզ հայեսցի, մի 'ի դմին յամառութեան պնդեսցի ընդդէմ հրամանաց Թագաւորին։

Ասեն ցնա երանելիքն. Դու զմեր երկիրս կիտագործ թողեր, մեք յարքունի երկիրն կէս մարմնովք մերովք ոչ վաստակեմք։ Իբրեւ զայս լուաւ դահճապետն, աղաչեաց զզինուորսն՝ որ տանէին զնոսա, և ասէ. Միայն աստի դուք առէք գնացէք, և հասեալ յասորեստան՝ ուր կամ իւրեանց է և շրջեսցին։

Այս են Հայոց խոստովանողք, որ զխեղութիւնն և զչարչարանսն խնդութեամբ ընկալան յանձինս իւրեանց։ Եւ վասն զի վրիպեցին 'ի սուրբ մահուանէն, սգով և տրտմութեամբ երթային զերկայնութիւն ճանապարհին։ Ել ծանր թուէին նոցա կապանքն ոտիցն և ձեռացն, իբրեւ զայն՝ թէ ընդէր ոչ եղաք արժանի հաւասարել ընդ քաջ նահատակսն։

Եւ իբրեւ տարան հասուցին զնոսա յերկիրն բաբի-

ղացուց, 'ի գաւառ մի զոր Շահուղն անուանեն, թէպէտ և էին յարքունի պատուհասին, սակայն և յայտ և գաղտ մեծապէս ընկալեալ եղեն 'ի բնակչաց աշխարհին։ Սակայն երանելիքն և յայնմ յոյժ տրտմագին էին, իբր այն՝ եթէ սակաւ վաստակեցաք և մեծապէս հանգչիմք. և հանապազ 'ի նմին զղջման կային։

Եւ անդէն թեւակոխէին տեսանել զսուրբ կապանսն նախարարացն, և լինել սպասաւոր մարմնաւոր պիտոյից նոցա։ Իմացուցին զայս մեծամեծաց աշխարհին, որք էին 'ի նմին սուրբ ուխտի քրիստոնէութեանն։ Եւ հաւանեալ ամենեցուն մեծամեծաց և փոքունց՝ ազդ առնել ամենայն երկրին, զի հաճոյ թուեսցի ամենեցուն՝ 'ի ձեռն մարմնաւոր պիտոյիցն կցորդ լինել սուրբ կապելոցն 'ի հեռաւոր օտարութեանն։

Եւ այսպէս ամ յամէ ժողովէին ըստ իւրաքանչիւր կարի մարդկանն, ոմն սակաւ և ոմն շատ, որ զինչ և 'ի ձեռս պատրաստութիւն լինէր, եթէ դրամոց և եթէ դահեկանաց, ժողովէին կազմէին տային յերանելիսն՝ տանել նոցա։ Եւ այսպէս յարբանեկութեան կային, մինչեւ տասն ամ լցաւ սպասաւորութեանն։

Եւ վասն զի յոյժ խստագոյնս պահէին 'ի ջերմոջ աշխարհին, և անդադար էին 'ի ճանապարհորդութեանն ընդ նոյն Շահուղ, ընդ Սեշոփն և ընդ Դաշկար և ընդ ամենայն աստրեստան և խուժաստան, սաստիկ տապով հարեալ 'ի խորշակէ մեռանէր սուրբն Խորէն, և աւանդեալ լինէր 'ի բնակչաց աշխարհին ընդ սուրբ վըկայսն։

Իսկ երանելին Աբրահամ կայր 'ի նմին առաքինութեան անդադար. և զամենայն տուրս հաւատացելոցն շրջէր ժողովէր և տանէր 'ի մեծ հեռաստանն, և ինքն մատակարարէր ըստ իւրաքանչիւր կարօտութեան։ Եւ այնպէս յերկարեցաւ մինչեւ յերկոտասաներորդ ամ պատժաւորացն, մինչեւ աղաչել զնա միաբան ամենեցուն, զի հաւանեսցի երթալ յաշխարհն Հայոց. զի ընդ մտանել նորա առ նոսա, 'ի նմա տեսցեն և զքաջ նահատակսն՝ որք կատարեցան սրով, 'ի նմա տեսցեն և զսուրբ կապանս չարչարանացն։

Եւ յորժամ մարտիրոսք և խոստովանողք և կապեալք նովաւ տեսանէին, նովաւ օրհնէի աշխարհն ամե-

նայն, նովաւ օրհնեն և տղայք նոցա յաճումն, նովաւ զգաստանան երիտասարդք նոցա 'ի սրբութիւն, նովաւ համեստանան ծերք նոցա յիմաստութիւն: Նովաւ ուսանին իշխանք նոցա զմարդասիրութիւն, նովաւ անկանի գութ յԱստուծոյ 'ի սիրտս թագաւորին՝ շինել և խաղաղութիւն առնել բոլոր աշխարհին: Նովաւ եկեղեցիքն պարծին իբրեւ քաջ և կատարեալ զինուորաւ, նովաւ վկայարանքն զարդարին, նովաւ և վկայքն ցնծացեալ բերկրին: Նովաւ և դաշտն Աւարայրի պայծառացեալ ծաղկալից լինի, ոչ յանձրեւաբեր ամպոց, այլ 'ի սուրբ և յարիւնաբուխ վկայից ցանեալ և ցրուեալք սպիտակութիւնք սուրբ ոսկերացն: Յորժամ կոխեսցեն ամենավաստակ ոտք խոստովանողին զլայնատարած տեղիս պատերազմին, յորժամ կենդանի մարտիրոս ընդ նա շրջեսցի, կենդանի առ կենդանիս երթեալ՝ ամենայն աշխարհին կրկին լինի կենդանութիւնն:

Գիտեմք, ասեն, յորժամ տեսցեն զսա ամենայն միայնակեացք աշխարհին Հայոց, սովաւ յիշեսցեն ըզհոգեւոր գունդս պատերազմողացն, որ փոխանակ մեր, ասեն, ետուն զանձինս 'ի մահ, և հեղին զարիւնս իրեանց 'ի հաշտութիւն պատարագ Աստուծոյ: Սովաւ յիշեն սուրբ քահանայքն, որք խողխողեցան յօտարութեանս և ցածուցին զսրտմտութիւն բարկութեան թագաւորին: Սովաւ թերեւս զի և զմեր կապանս յիշեսցեն, և աղօթս առնելով խնդրեսցեն յԱստուծոյ, զի գերեդարձ լիցի մեզ անդրէն 'ի հայրենի երկիրն մեր: Քանզի յոյժ անձկացեալ եմք՝ ոչ միայն ըստ մարմնոյ կարօտութեան, այլ առաւել տեսանել զսուրբ եկեղեցիսն մեր և զսրբասէր պաշտօնեայսն մեր, զոր 'ի նմա կարգեալ հաստատեցաք: Իսկ եթէ միւսովս յաջողեսցէ մեզ Աստուած երթալ և լնուլ զկարօտութիւն մնացելոցն, գիտեմք զի և մեզ բանայ Աստուած զդուռն ողորմութեան իւրոյ՝ ընդ նոյն ճանապարհ երթալ, ընդ որ ոտք սրբոյս կարապետեն:

Զայս խորհուրդ խորհելով աստուածաշնորհ նախարարացն, մեծաւ թախանձանօք ածէին զխոստովանողն 'ի հաւանութիւն: Իսկ վասն զի ոչ էր սովորութիւն երբեք բարւոյն ընդդէմ դառնալ, ըստ առաջին սովորութեան և յայսմ վայրի փութացաւ վաղվաղակի կա-

տարեալ զհրամանն զմիաբան հաւանեցելոցն յաստուածային առաքինութիւնն։ Այն եմուտ յաշխարհն Հայոց։ Փութացան և ելին ընդ առաջ նորա վաղվաղակի արք և կանայք, մեծամեծք և փոքունք, և ամենայն բազմութիւն ազատաց և շինականաց։ Ընկանէին առաջի, փարէին զոտիւք և զձեռօք սրբոյն, և ասէին. Օրհնեալ Տէր Աստուած 'ի բարձունս, որ առաքեաց մեզ հրեշտակ յերկնից՝ բերել մեզ աւետիս յարութեան, զի լինիցիմք ժառանգք արքայութեան։ Օի ահա 'ի քեզ կերպարանեալ տեսանեմք զամենեսեան զհրաժարեալսն յուսով յարութեամբ, և զկապեալսն ակնկալութեամբ արձակելով։ Ի քեզ տեսանեմք և զաշխարհին շինութիւն խաղաղութեան. քեւ եկեղեցիքն մեր ցնծացեալ բերկրին, և քեւ սուրբ վկայքն մեր անդադար լիցին մեզ 'ի բարեխօսութիւն առ Աստուած։ Օրհնեա զմեզ, սուրբ հայր մեր. դու ես բերան հանգուցելոցն, խօսեաց ընդ մեզ յայտնի օրհնութեամբ, զի յոգիս մեր լուիցուք 'ի ծածուկ զօրհնութիւնս սրբոցն։ Հորդեցեր ճանապարհ այնոցիկ՝ որ անձկացեալ էին գալ յերկիր իւրեանց, խնդրեա յԱստուծոյ՝ զի ստէպ եկեսցեն զհետ սուրբ կարապետիդ։ Եւ որպէս հորդեցեր զարգելեալ ճանապարհ երկրի, բաց և յերկինս ըզդուռն աղօթից մերոց. զի և մեր մեղաւորաց մնացեն պաղատանք առաջի Աստուծոյ 'ի բարեխօսութիւն նոցին կապելոց. և մինչ դեռ եմք յեղանելի մարմինս, որպէս տեսաք զքո զերանելի սրբութիւնդ, տեսցուք և զփրկելի անձկալիսն մեր, որ 'ի բազում ժամանակաց հարեալ և պաշարեալ եմք յոգիս և մարմինս մեր։ Արդ հաւատամք յանսուտ յոյսն, զի որպէս լցեալ կատարեցաւ 'ի քեզ տեսիլս 'ի սուրբ սէր քո, այսպէս և ընդ մօտոյ ունիմք տեսանել զճշմարիտ վկայսն Քրիստոսի, որ հանապազ խանդակաթ եմք 'ի տեսիլս երկնաւոր գեղոյ նոցա։

Բայց երանելի խոստովանողն, թէպէտ և այսպէս սիրով ընկալեալ եղեւ յամենայն աշխարհէն, ոչ ինչ կամեցաւ ամենեւին մերձենալ առ ոք ըստ մարմնոյ կարօտութեան. այլ ընտրեաց իւր տեղի մի զատ յամենայն բազմամբոխ ժողովրդոց, և առաքինի եղբարբք երիւք կատարեաց զկեանս իւր մեծաւ ճգնութեամբ։

Զ՚որ եթէ կամիցի ոք ՚ի կարգ արկանել, դժուարաւ կարասցէ ասել զվարս առաքինութեան նորա: Զի եթէ զտքնութիւնն ասիցես, իբրեւ զկանթեղ անշէջ կայր զամենայն գիշերս. եւ եթէ զսակաւապիտութիւն կերակրոցն, համարեաց՝ եթէ զանկերակուր հրեշտակացն բերէր զնմանութիւն: Եթէ զհեզութիւն ցածութեանն կամիցիս ասել, ոչ զոք ՚ի կենդանեաց կարիցես գտանել նման նմա. եւ եթէ զանընչասիրութիւնն կամիցիս ասել, դարձեալ զոր օրինակ չպատրի մեռեալ ՚ի կարասի, զնոյն օրինակ ճշմարտութեամբ եւ առ երանելին իմասջիր:

Անյագական ձայնիւ հանապազորդեալ էր ՚ի պաշտաման, եւ անհատ աղօթիւք միշտ ընդ Աստուծոյ ՚ի բարձունս խօսէր: Աղ եղեւ նա անհամելոց, եւ խթան ընդդաստուցիչ ամենայն հեղգացելոց: Պարտեցաւ նովաւ ապահովութիւն, եւ կարի յոյժ ամաչեաց նովաւ շուայտութիւն որկորամոլութեան: Առողջութիւն եղեւ նա աշխարհիս Հայոց, եւ բազում վիրաւորք ՚ի ծածուկ նովաւ գտին զառողջութիւն: Եղեւ նա վարդապետ կատարեալ վարդապետաց իւրոց, եւ սուրբ հայր խրատտու հարանց իւրոց: Ի լուր համբաւոյ նորա իմաստնացան տգէտք, եւ ՚ի տեսիլ մերձաւորութեան նորա զգաստացան լկտիք: Բնակեալ էր ըստ մարմնոյ ՚ի նեղ խցկանն, եւ ահ սրբութեան նորա անկեալ էր զհեռաւորօք եւ զմերձաւորօք: Զարհուրեցան դեւք եւ փախեան ՚ի նմանէ, իջին հրեշտակք եւ բանակեալ էին զնովաւ:

Յոյնք երանի ետուն վասն նորա աշխարհիս Հայոց, եւ բազում բարբարոսք փութացան տեսանել զնա մարմնով: Սիրելի եղեւ նա սիրելեացն Աստուծոյ, եւ զբազումս ՚ի թշնամեաց ճշմարտութեանն ած ՚ի հաւանութիւն սուրբ սիրոյ: Սկիզբն արար առաքինութեան անդրստին ՚ի տղայ տիոց իւրոց, եւ նովին առաքինութեամբ կատարեցաւ ՚ի վախճան կենաց իւրոց: Որպէս ոչ խառնեցաւ ՚ի կարգս սուրբ ամուսնութեան աշխարհիս, այսպէս չեմուտ ընդ մարմնաւոր պիտոյիւք ամենայն ապականացու իրաց աշխարհիս: Իսկ եթէ պարտ է պարզաբար ասել, որպէս փոխանակեաց զպէտս մարմնոյ ընդ պիտանացու հոգեւոր իրաց, այսպէս փոխադրեալ եղեւ յերկրէ ՚ի յերկինս:

## ԱՆՈՒԱՆՔ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ, ՈՐՔ ԿԱՄՕՔ ՅՕԺԱՐՈՒԹԵԱՄԲ ՎԱՍՆ ՍԻՐՈՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՏՈՒՆ ԶԱՆՁԻՆՍ Ի ԿԱՊԱՆՍ ԱՐՔՈՒՆԻ

Յազգէն Սիւնեաց երկու եղբարք Բաբգէն և Բակուր, յազգէն արծրունեաց Ներշապուհ և Շաւասպ և Շնգին և Մեհրուժան և Պարգեւ և Տաճատ, յազգէն մամիկոնէից Համազասպեան և Համազասպ և Արտաւազդ և Մուշեղ, յազգէն կամսարականաց Արշաւիր և Թաթուլ, Վարձ, Ներսեհ և Աշոտ, յազգէն ամատունեաց Վահան և Առանձար և Առնակ, յազգէն գնունեաց Ատոմ, յազգէն դիմաքսենից Թաթուլ և Սատոյ, երկու եւս այլովք ընկերօք. յազգէն անձաւացեաց Շմաւոն և Զուարէն և Առաւան, յազգէն առաւեղենից Փապակ և Մարազդէն և Գաղ. յարծրունեաց տոհմէն Ակրսամ, 'ի տոհմէն մանդակունեաց Սահակ և Փարսման, յազգէն տաշրացեաց Վրէն, յռափսոնեան տանէն Բաբիկ և Յուսիկան:

Այս երեսուն և հինգ արք, են որ յաւագ նախարարացն, և են որ 'ի կրսերագունիցն, սակայն ամենեքեան ըստ մարմնոյ են նախարարազունք, իսկ ըստ հոգեւոր առաքինութեանն ամենեքեան երկնային քաղաքացիք: Նաեւ բազում եւս այլ ազատ մարդիկ, են որ յարքունի տանէ, և են որ 'ի տանէ նախարարացն իսկ նոցուն, նիզակակիցք և մարտակիցք քաջ նահատակացն: Նա ամենքին սոքա կամօք մատնեցան 'ի սուրբ կապանս չարչարանացն:

Այլ մեք առ այժմ ոչ ընդ այս եմք զարմացեալ միայն, զի կամօք չոգան մտին 'ի փորձութիւնն, այլ առաւել ընդ այն եմք սքանչացեալ, զի մարդիկ փափուկ իբրեւ զնոսա՝ ընդարձակաստուն բնակիչք ձիւնեղէն լերանց՝ եղեն բնակիչք խորշակաբեր դաշտաց: Որ զօրէն ազատ երէոյ շրջէին 'ի մէջ ծաղկաբեր լերանց, ընկեցան 'ի բոցակէզ աշխարհն արեւելից կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք: Հաց նեղութեան և ջուր կարօտանաց, խաւարարգել 'ի տուէ և անլոյս 'ի գիշերի, անվերարկուք և անանկողինք, գազանաբար գետնախշտիք լինէին զինն ամ և զվեց ամիս: Նա այնպէս մեծաւ խնդ-

դութեամբ տանէին զնեղութիւնն, զի ամենեւին ոչ ոք տրտունջ հայհոյութեան 'ի բերանոյ նոցա լուաւ, այլ յորդառատ գոհացողութիւն ըստ նմանութեան բարեկեցիկ մարդկան, որ են յաստուածպաշտութեան:

Եւ մինչ դեռ էին յայնպիսի նեղութեան, կարծիք եղեն 'ի միտս Թագաւորին՝ թէ առ յոյժ վշտին ձանձրացեալ են դառնութեան կենօքն իւրեանց: Յղեաց առ նոսա զմեծ հազարապետն եւ ասէ. Գոնեայ յայսմ հետէ զզաստացայք յանձինս ձեր, եւ մի կայք 'ի նոյն յամառութեան. պագէք երկիր արեգական, եւ արձակիք 'ի չարաչար կապանացդ, եւ ունիք անդրէն զիւրաքանչիւր հայրենի կեանս ձեր:

Ետուն պատասխանի երանելիքն եւ ասեն. Առ փո՞րձ ինչ եկեալ հարցանես ցմեզ, եթէ արդարեւ թագաւորն իսկ յղեաց զքեզ: Երդուաւ հազարապետն եւ ասէ. Չիք այդր բան աւելի կամ պակաս՝ որ ոչ 'ի բերանոյ նորա ելեալ է: Ասեն ցնա անդրէն. Որք միանգամ աշակերտեալ են ճշմարտութեանն, ոչ երբեք փոխին 'ի նմանէ. այլ որ ենն՝ նոյն կան: Մինչ յայնժամ առ չիմանալ ինչ պնդեցաք, եւ այսօր նեղութիւնս իմաստնացոյց ինչ զմեզ. այլ ոչ այնպէս: Այլ զզջումն մտաց մերոց այս է, եթէ ընդէր ընդ առաջինսն չկատարեցաք զկեանս մեր: Բայց արդ աղաչեմք զքեզ եւ քեւ զթագաւորն ձեր, մի այլ վասն այդպիսի իրաց հարցանէք ցմեզ. այլ զինչ եդեալ է 'ի մտի ձերում վասն մեր կատարեցէք:

Իբրեւ լուաւ զայս մեծ հազարապետն, յոյժ զովեաց 'ի միտս իւր զպնդութիւն հաստատութեան նոցա. եւ յայնմ հետէ սկսաւ արկանել սէր ընդ նոսա՝ իբրեւ ընդ սիրելիս Աստուծոյ: Եւ բազում բանիւք ողոքանօք ածէր զթագաւորն 'ի հաւանութիւն, զի թողութիւն արասցէ նոցա 'ի կապանացն իւրեանց: Որ թէպէտ եւ փոխեցաւ նա 'ի գործոյ հազարապետութեանն արքունի, եւ 'ի բազում իրս գտաւ վնասակար, ինքն իսկ յանձն իւր կրթէր զաւեր աշխարհին Հայոց, վասն որոյ եւ մեծաւ անարգանօք յուղարկեցաւ 'ի տուն իւր, սակայն զկապելոցն ոչ երբեք չարախօս կամէր լինել մինչեւ ցօր վախճանի կենաց իւրոց:

Իսկ յերանելեացն բազումք, 'ի նոցանէ՝ որ մանկա-

գոյնքն էին, ուսան զդպրութիւն հայրենի աշխարհին իւրեանց, և եղեւ նոցա այն կերակուր հոգեւոր, որով զանձինս քաջալերէին և զընկերսն մխիթարէին։ Եւ այնպէս զմայլեցան 'ի միտս և յոգիս իւրեանց, զի և որ ծերագոյնքն էին 'ի նոցանէ, փափկացան մատաղացան մանկացան։ Զի թէպէտ և դպրութեան ժամանակքն անցեալ էին, սակայն բազում սաղմոս 'ի բերան առեալ՝ հոգեւոր երգակից լինէին մատաղերամ բազմութեան մանկտւոյն։

Եւ այնպէս բարձրացուցանէին զպաշտօնն սրբութեան, մինչեւ ոմանք 'ի դառն դահճացն, մեծապէս քաղցրութիւն անկանէր ընդ լսելիս նոցա, և որչափ 'ի ձեռս իւրեանց էր՝ արտաքոյ արքունի հրամանին դիւրութիւն առնէին նոցա, և սէր խնամոյ ունէին առ ամենեսեան, և բազում անգամ զմարմնաւոր պէտս նոցա լնուին նոքա։ Մանաւանդ զի նշանք եւս բժշկութեան յԱստուծոյ յաջողեալ լինէր 'ի ձեռս նոցա. որպէս զի բազումք 'ի դիւահարաց սրբեցան 'ի նմին քաղաքի առ կապեալքն կային։ Իբրեւ ոչ ոք գոյր առ նոսա քահանայ, դիմէին առ նոսա հիւանդք և ախտաժետք քաղաքին, և ընդունէին 'ի նոցանէ զիւրաքանչիւր ցաւոց զառողջութիւն։

Նա և որ մեծ իշխանն էր աշխարհին, զոր և Հարեւշղոմ Շապուհ անուանէին, և նմա իսկ յանձն էին ամենայն պատժաւորքն, մեծապէս գութ սիրոյ էարկ առ ամենեսեան։ Զծերս 'ի նոցանէ առ հարս ունէր, և զմանկագոյնս 'ի նոցանէ իբրեւ զսիրելի որդիս գգուէր։ Բազում անգամ գրեաց և եցոյց յարքունիս զվշտանեղութեան կապելոյն, և զառն առն իւրաքանչիւր ըզբարս ազնուականութեանն ցուցանէր նոցա. առաջի մեծամեծացն տառապէր, ջանայր ազգի ազգի հնարիւք, մինչեւ բազում բարեխօսիւք ածին 'ի հաւան զԹագաւորն։ Հրամայեաց լուծանել զկապանս նոցա. և բառնալ 'ի նոցանէ զսուգ պատուհասին, և ազատել նոցա հանդերձ՝ զօրէն նախարարութեանն. կարգեաց նոցա ռոճիկ, և զպատրաստութիւն սպառազինութեանն հրամայեաց յարքունուստ։ Գրեաց և յանձն արար մեծ սպարապետին, զի ընդ զօրս արքունի երթիցեն 'ի գործ պատերազմի։

Եւ իբրեւ այս այսպէս կարգեցաւ, և կազմեցաւ նոր հրաման Թագաւորին, 'ի բազում տեղիս՝ ուր և հասին՝ առաւելեալ գտան 'ի գործ արութեան, մինչեւ գովութեան հրովարտակ վասն նոցա 'ի դուռն տային: Որպէս զի քաղցրացաւ իսկ միտս Թագաւորին, հրամայեաց զամենեսեան ածել զառաջեաւ: Եկին և յանդիման եղեն Յազկերտի արքայից արքային: Ետես զնոսա զուարթութեամբ, խօսեցաւ ընդ նոսա բանիւք խաղաղութեամբ, և խոստացաւ տալ նոցա զիւրաքանչիւր իշխանութիւն ըստ կարգի հայրենի պատուոյն, և արձակել զնոսա յաշխարհն օրինօք քրիստոնէութեանն, յորոյ վերայ և մեծապէս էին չարչարեալ:

Եւ մինչ դեռ անդէն մեծաւ խնդութեամբ շրջէին 'ի կարաւանին առաջի Թագաւորին, 'ի նմին ժամանակի հասանէր վախճան կենաց Թագաւորին՝ յինն և 'ի տասներորդ ամի Թագաւորութեանն իւրոյ: Եւ ընդ հակառակս ելեալ երկու որդիք նորա՝ 'ի վերայ տէրութեանն կռուէին. սաստկանայր գործ դառնութեան պատերազմին զերկուս ամս:

Եւ մինչ դեռ նոքա յայնմ խռովութեան էին, ապստամբեաց և Աղուանից արքայն. վասն զի քեռորդի էր նոցա, և ըստ կարգի հայրենի հաւատոյն՝ քրիստոնեայ էր յառաջ, և Յազկերտ արքայից արքայ բռնի մոգ արար: Եւ նորա գտեալ ժամանակ անձինն պարապոյ, հարկեցաւ զանձն 'ի մահ դնել. լաւ համարեցաւ մեռանել 'ի պատերազմի, քան ուրացութեամբ ունել զԹագաւորութիւնն: Վասն այսր ամենայնի յապաղումն եղեւ չարձակելոյն նոցա յաշխարհն:

Իսկ կրտսեր որդւոյն Յազկերտի դայեակն, Ոսհամ անուն 'ի Մեհրան տոհմէն, Թէպէտ և ետես զգունդն Արեաց ընդ երկուս բաժանեալ, սակայն կիսովն գազանաբար յարձակեցաւ 'ի վերայ երէց որդւոյ Թագաւորին. հար, սատակեաց զգունդն, և ձերբակալ արարեալ զորդի Թագաւորին, անդէն 'ի տեղւոջն հրամայէր սպանանել: Եւ զմնացեալ զօրսն ածէր հաւանեցուցանէր, և առնէր միաբանութիւն ամենայն Արեաց գնդին. և Թագաւորեցուցանէր զիւր սանն, որում անուն էր Պերոզ:

Զի Թէպէտ և Արեաց աշխարհին առնէր մեծա-

պէս խաղաղութիւն, սակայն Աղուանից արքայն ոչ կամէր հնազանդել(?) անդրէն 'ի ծառայութիւն. այլ խրամատեաց զպահակն Ճորայ, և անցոյց յայս կոյս զզօրսն Մազքթաց. միաբանեաց զմետասան թագաւորս ըղլեառնորդեայսն, և ընդդէմ եկաց պատերազմաւ Արեաց գնդին, և բազում վնասս արար զօրացն արքունի: Թէպէտ և երկիցս և երիցս ետուն հրովարտակս աղաչանաց, ոչ ինչ կարացին ածել զայրն 'ի հաւանութիւն. այլ գրով և պատգամաւ յանդիմանէր զնոսա, վասն զուր աւերածի աշխարհին Հայոց: Յիշեցուցանէր նոցա զմահ նախարարացն և զչարչարանս կապելոցն: Ի վերայ անչափ սիրոյ և վաստակոց, փոխանակ կեանս առնելոյ՝ զարեւ հատէք, ասէր: Լաւ լիցի ինձ, ասէ, զնոցա չարչարանսն յանձն իմ առնուլ, քան թողուլ զքրիստոնէութիւնն:

Եւ իբրեւ տեսին, թէ ոչ բռնութեամբ և ոչ սիրով կարացաք ածել 'ի հաւանութիւն, գանձս սաստիկս ետուն տանել յաշխարհն Խայլանդրաց, բացին զդրունս Ալանաց և հանին զունդ բազում 'ի Հոնաց, և կռուեցան տարի մի ընդ Աղուանից արքայի: Թէպէտ և թօթափեցան և ցրուեցան զօրքն իւր 'ի նմանէ, սակայն զնա ոչ կարացին հնազանդել. այլ և հարուածք եւս մեծամեծք հասին 'ի վերայ նոցա, էր որ կռուով և էր որ ախտիւ չարչարանօք: Եւ յանչափ ժամանակաց ընդերկարել պաշարմանն, մեծ կէս աշխարհին աւերեցաւ, այլ ոչ ոք 'ի նմանէ երկմտեալ բաժանեցաւ:

Յղեաց առ նա դարձեալ թագաւորն Պարսից. Եղբայրդ իմ, ասէ, և զքեռորդիդ 'ի բաց տուր ածել, զի 'ի բնէ մոգք էին և դու քրիստոնեայ արարեր, և աշխարհդ քեզ լիցի: Իսկ սքանչելի այրն ոչ 'ի տէրութեանն վերայ կռուէր, այլ յաստուածպաշտութեանն: Զմայրն և զկինն ետ տանել, և զաշխարհն բովանդակ 'ի բաց եթող. և ինքն զաւետարանն առ և յաշխարհէն 'ի բաց կամէր գնալ:

Զայս իբրեւ լուաւ թագաւորն, կարի զեղջ և ապաշաւ անկանէր 'ի միտս նորա, և զամենայն վնասս իրացն զհարբն իւրով արկանէր: Անդուստ երդումն կնքէր և տայր տանել առ նա, եթէ յաշխարհէդ միայն մի՛ գնար, և զինչ ասես՝ առնեմ: Խնդրեաց զմանկութեան

սեպհականն, զոր հօր իւրոյ շնորհեալ էր նմա 'ի տըրղայութեանն՝ հազար երդ. առ զայն 'ի Թագաւորէն, և նստաւ 'ի նմա միայնակեցօք հանդերձ։ Նոյն այնպէս հանապազորդեաց զինքն յաստուածային պաշտամանն, զի և չյիշէր ամենեւին՝ թէ և թագաւոր լեալ իցէ յառաջ։

Նոյն այս ամենայն յերկար խռովութիւնք, որ եղեն մինչեւ 'ի հինգերորդ ամն Պերոզի արքայից արքայի, պատճառք եղեն չարձակելոյ նախարարացն Հայոց. այլ ռոճկաւ և 'ի տաճար մտանել յարքունիս մեծապէս առատացոյց քան զամաց սովորութիւնն։ Նոյն 'ի նմին հինգերորդ ամին զբազմաց նոցա անդրէն զկեանսն շնորհեաց. և այլոցն առ յոյսն խոստացաւ՝ յամն վեցերորդ միանգամայն արձակել զամենեսեան կենօք և պատուով։

Բայց 'ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի։

Իսկ կանայք երանելի առաքինեացն, և կապելոցն և անկելոցն 'ի պատերազմին, ընդ ամենայն աշխարհն Հայոց համօրէն համարել ես ոչ կարեմ. զի բազում այն են՝ զոր ոչ գիտեմ, քան թէ գիտիցեմ։ Զի հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչեմ. ոչ որ միայն աւագազգիքն էին, այլ զբազումս 'ի կրսերագունաց անտի։

Ամենեքեան միահամուռ զերկնաւոր նախանձ բերելով, ոչ ինչ ընդհատ երեւեցան յայնցանէ՝ որ ոչ ճաշակեցին զաշխարհ։ Վասնզի եթէ աւագազգիք էին, և եթէ մանկազգիք, զմի առաքինութիւն հաւասար զգեցան։ Ոչ ինչ յիշեցին ամենեւին զանուն փափկութեան մայրենի ազատութեանն, այլ իբրեւ մարդք՝ որ վշտամիտք լեալ իցեն անդստին 'ի շինական սովորութեանցն տանջելով վարեալ զկեանս աշխարհիս, անդրագոյնք եւս քան զնոսա յանձն առին զհամբերութիւն վշտաց։

Ոչ միայն յոգիսն մխիթարեալ կացին առ աներեւոյթ զօրութիւնն յուսոյն յաւիտենից, այլ և մարմնոյ նեղութեամբք տանել եւս բարձին զբեռն ծանրութեանն։ Զի թէպէտ և ունէին զիւրաքանչիւր ձեռնասուն սպասաւորս, ոչ ոք երեւէր 'ի նոցանէ՝ թէ որ տիկինն իցէ և կամ որ նաժիշտն. մի համդերձ էր հասարակաց, և

միապէս գետնախշտիք երկոքեան։ Ոչ ոք ումեք անկող-նարկ լինէր. քանզի և չճանաչէին իսկ զխոտեղէնան ընտրել 'ի միմեանց. մի գոյն թխութեան փորայիցն, և մի գոյն սևութեան սնարից բարձիցն։

Ոչ գոյր նոցա համեմ խահամոքք անուշարար առան-ձինն, և ոչ հացարարք որոշեալ 'ի պէտս տպասու ըստ ազատաց կարգի, այլ հասարակաց էր։ Շաբաթա-մուտն ըստ կարգի միայնակեցաց, որ յանապատս բնա-կեալ են։ Ոչ ոք ումեք ջուր 'ի ձեռս արկանէր, և ոչ կրտսերք աւագաց դաստառակս մատուցանէին. չանկաւ օշնան 'ի ձեռս փափկասուն կանանց, և ոչ մատուցաւ իւղ 'ի զուարթութիւն խրախութեան։ Չեղան առա-ջի սուրբ սկտեղք, և ոչ անկան բաժակակալք յուրա-խութիւն. չեկաց ուրուք նոցա նուիրակ առ դուրս, և ոչ կոչեցան պատուականք յարանց 'ի տաճարս նոցա. չյիշեցան նոցա՝ թէ գուցէ ոք ամենեւին 'ի բնակա-նուտ դայեկաց և կամ բնաւ 'ի սիրելի հարազատաց։

Փոշոտեցան և ծխոտեցան սրահակք և սրսկապանք նորեկ հարսանց, և սարդի ոստայնք ձգեցան 'ի սենեակս առագաստաց նոցա. կործանեցան բարձրագահք տաճա-րաց նոցա, և խանգարեցան սպասք երախանաց նոցա. անկան կործանեցան ապարանք նոցա, և տապալեալ ա-ւերեցան ամուրք ապաստանի նոցա։ Չորացան ազազե-ցան բուրաստանք ծաղկոցաց նոցա, և տաշտախիլ եղեն որթք գինեբեր այգեաց նոցա։ Աչօք իւրեանց տեսին զյափշտակութիւն արարոց իւրեանց, և ականջօք իւ-րեանց լուան զվիշտս չարչարանաց սիրելեաց իւրեանց. առան զանձք իւրեանց յարքունիս, և ոչ մնացին ամե-նեւին զարդք երեսաց իւրեանց։

Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ դըր-գեալք և գգուեալք էին յիւրաքանչիւր պաստեռունս և 'ի գահաւորակս, հանապազ բոկ և հետի երթային 'ի տունս աղօթից, անձանձրոյթ խնդրեալ ուխտիւք՝ զի համբերել կարասցեն մեծի նեղութեանն։ Որ 'ի ման-կութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց և ամճովք երէոց, խոտաբուտ կենօք իբրեւ զվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ, և ոչ յիշէին ամենեւին զսովորական փափկութիւնն։ Սեւա-ցեալ ներկան մորթք մարմնոց նոցա. վասն զի ցերեկ

արեւակէզք էին և զամենայն գիշերսն գետնաբեկք ։ Սաղմոսք էին մշտնջենաւորք՝ մրմունջք 'ի բերանս նոցա, և մխիթարութիւնք կատարեալք՝ ընթերցուածք մարգարէիցն ։ Միաբանեցին երկու երկու՝ իբրեւ ամոլք հաւանք և հաւասարք՝ ուղիղ տանելով զակօսն արքայութեանն, զի առանց վրիպելոյ հասցեն 'ի նաւահանգիստն խաղաղութեան ։

Մոռացան զկանացի տկարութիւն, և եղեն արուք առաքինիք 'ի հոգեւոր պատերազմի ․ մարտ եդեալ կռուեցան ընդ մեղսն կարեւորս, հատին կոտրեցին և ընկեցին զմահաբեր արմատս նոցա ։ Միամտութեամբ յաղթեցին խորամանկութեանն, և սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն ․ հատին զարմատս ագահութեան, և չորացան մահաբեր պտուղք ոստոց նոցա ։ Խոնարհութեամբ կոփեցին զամբարտաւանութիւն, և նովին խոնարհութեամբ հասին երկնաւոր բարձրութեանն ։ Աղօթիւք բացին զփակեալ դրունս երկնից, և սուրբ խնդրուածովք իջուցին զհրեշտակս 'ի փրկութիւն ․ լուան աւետիս 'ի հեռաստանէ, և փառաւորեցին զԱստուած 'ի բարձունս ։

Այրիք որ 'ի նոսա էին՝ եղեն վերստին հարսունք առաքինութեան, և բարձին յանձանց զնախատինս այրութեանն ։ Իսկ կանայք կապելոցն կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս, և եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն ․ 'ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն մահուամբ, և 'ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանդարգելեացն ։ Մատամբք իւրեանց վաստակեցին և կերակրեցան, և զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ՝ ամ յամէ թոշակ առնէին և տային տանել նոցա 'ի մխիթարութիւն ։ Անարիւն ձիպռանց նմանեցին, որ երգոյն քաղցրութեամբ առանց կերակրանաց կեան, և կենդանի են միայն զօդն ծծելով, զանմարմնոցն բերեն զնմանութիւն ։

Բազում ձմերաց հալեցան սառնամանիք, եհաս գարուն և եկին նորեկ ծիծեռունք, տեսին և խնդացին կենցաղասէր մարդիկ, և նոքա ոչ երբեք կարացին տեսանել զանձկալին իւրեանց ։ Ծաղիկք գարնանայինք յիշատակեցին զպսակասէր ամուսինս նոցա, և աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի գեղ երեսաց

նոցա։ Սպառեցան բարակք որսականք, և խցեալ կուրացան արշաւանք որսորդաց։ Անագրօք յիշատակեցան նոքա, և ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա 'ի հեռաստանէ. 'ի Ճաշատեղս նոցա հայեցան և արտասուեցին, և յամենայն յատեանս յիշեցին զանուանս նոցա։ Բազում արձանք կանգնեալ էին յանուն նոցա, և անուանք իւրաքանչիւր նշանակեալ 'ի նոսա։

Եւ իբրեւ այնպէս յամենայն կողմանց ալէկոծ լինէին միտք նոցա, ոչ ինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէն։ Արտաքնոյն երեւէին իբրեւ այրիք սգաւորք և չարչարեալք, և յոգիս իւրեանց զարդարեալք և մխիթարեալք երկնաւոր սիրովն։ Ոչ եւս ավօրեցին հարցանել զեկեալ ոք 'ի հեռաստանէ, եթէ Ե՛րբ լինիցի մեզ տեսանել զսիրելիսն մեր. այլ այն էին խղճք աղօթից նոցա առ Աստուած, եթէ որպէս սկսանն՝ քաջութեամբ 'ի նմին կատարեսցեն լի երկնաւոր սիրովն։

Եւ մեք և նոքա հասարակ ժառանգեսցուք զքաղաքամայրն բարեաց, և հասցուք խոստացելոց սիրելեացն Աստուծոյ 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր։

## ՎԵՐՋ

# ԲԱՆ ԽՐԱՏՈՒ

## ՑԱՂԱԳՍ ՄԻԱՆՁԱՆՑ

Մարդիկ, որ են 'ի մարմնի և կամօք եռուն զանձինս իւրեանց յաստուածպաշտութիւն, անդստին 'ի տղայութենէ խոկամ՝ կրթին 'ի վշտամբերութիւն. հեռանան 'ի հայրենի բնակութենէն, և վարին յանապատ յանշէն երկիր. ոչ իբրեւ չարակնելով նախանձոտք փախուցեալք 'ի բազմամարդոյ աղքատաց, այլ զի տեսանեն զաշխարհս լի ամենայն չարեօք, խոյս տան 'ի խորշս և 'ի սորոտս անապատ վայրաց:

Զոր տեսանեմք իսկ յաճախ 'ի կողմանս Հարաւոյ բազմութիւն արանց՝ առանց կանանց միաբանութեան, յազգաց և 'ի լեզուաց զանազան վայրօք հասեալք, ժողովեալք իբրեւ 'ի հայրենի գաւառս՝ առնեն զբնակութիւնս երկու ընդ երկուս, և կամ երեք ընդ երիս, և կամ եւս բազում քան զայս: Այլ չինեն իւրաքանչիւր խցկունս զատուցեալս 'ի միմեանց. որմք դուզնաքեայ առ ցրտոյն պահպանութիւն, և զոյգ նմին ձեղուն՝ առ արեգական պահպանիլ. յատակք անպաճոյճք՝ շատացեալք խոտեղէն անկողնօք: Այլ քանզի բնութիւնս մեր ողողակ է՝ սիրէ ծածկել զմերկութիւն, առնեն և նոքա համդերձս անպաճոյճս և յոյժ գձուձս, կտորս ամարանի և թեզանաւորս ձմերանի, արկանեն և աղաբողոնս մեկնաւորս:

Մանաւանդ 'ի պարս շրջագայ անդադար պաշտամամբն՝ երգս հոգեւորս հօրն բոլորեցուն մատուցանեն զուարթ հոգւով: Կան ընդդէմ միմեանց զաչս 'ի վայր արկեալ՝ զծայրս ոտից մատանցն նկատելով, իբր թէ մի կէտ տեսակի ամենեքեան հայեցին. զաջ ձեռն 'ի վերայ ծնօտին եդեալ և զահեակն 'ի վերայ կրծիցն, որպէս կարծեմ ուսեալ 'ի բնական հարցն: Երկու են պատուականագոյնք 'ի մարմնի, կենդանական և խոհա֊

կան, երկոքումբք երկոցունց սպասաւորեալ. կենդանականին՝ սրտմտականն է հակառակ, իսկ խոհականին՝ արտաքերական բանս: Արդ ձախուն զերասանակ 'ի ձեռն առեալ՝ զսրտմտականն սանձակոծիցէ, և զաջ ձեռն 'ի վերայ աջոյ ծնօտին եդեալ՝ խոհականին սպաս ունի առ ղրան բերման բանին, զի մի այլակութիւն յուղիղ փառատրութիւնն խառնեսցի: Եւ ընդ այսու երկու մասամբքս նահանջին ամենայն զգայութիւնքս. աչք յուղիղ տեսութիւն և ականջք 'ի զգաստ լսողութիւն, միտք 'ի սուրբ իմաստութիւն, և այլն ըստ իւրաքանչիւր մասին:

Եւ իբրեւ այսպէս կարգեալք և յօրինեալք, ամենեքեան 'ի նմանութիւն վեցթեւեան սերովբէից շուրջ պարփակեալք, ձայնս անհատս 'ի վեր հնչեցուցանեն, և օրհնութիւն եռաչափս 'ի խորհուրդ միաբանութեան արարչին իւրեանց բոլորեն: Օտիւն ամենայն պարապեն երգոցն քաղցրութեան, յագեալք և զմայլեալք 'ի կերակուրսն երկնայինս՝ առլցեալք հասանեն 'ի ժամ երեկոյին: Եւ քանզի մարմին ունին ըստ բնութեանս մերում զգայութեանս, ուտեն՝ զի մի քաղցիցեն, և ըմպեն՝ զի մի ծարաւեսցին:

Արդ դու իբրեւ լուիցես զուտելն, մի առ մերս ընթանայցես. զի հաց է նոցա անպաճոյճ և բանջար վայրենի՝ զոր համով աղին համեմեն, և ջուր յստակ՝ զոր յամպոց բերմանէ 'ի գուբս ժողովեն: Սակայն և զայս ոչ երբեք 'ի տուընջեան մատուցանեն 'ի դարմանս պիտոյից մարմնոց. այլ միաբան պահելով զերկայնութիւն աւուրն, տեղի տան արեգական մտանելոյ. ձգեն երկայնեն զերեկունն, մինչեւ աստեղք յիւրաքանչիւր կայանս պայծառանան. գոհանան իբրեւ ընդ մի բերան ասելով. Ի խաւարային ժամու զխաւարային կերակուրս խաւարային մարմնոյս տացուք:

Եւ զայս ասելով, 'ի ձայն բարձր փառատրեն զսուրբ Երրորդութիւնն, խնդալից ուրախութեամբ ակըմբելն յիւրաքանչիւր տեղիս: Եւ որպէս ասացաքն՝ ուտեն հաց և զօպա, և ըմպեն ջուր ցուրտ: Քանզի գոն 'ի նոսա ծերք փափկամարք, մատուցանեն ջուր ջերմ, զոր և բարեխառն անուանեն. այլ գինի և կամ այլ ինչ զանազանեալ, և գտանի ոչ 'ի սուրբ միայնանոցս նոցա:

Իսկ յարուցեալ յանպաճոյճ ընթրեացն, միաբանութեամբ ասէին. Փառք քեզ Տէր, փառք քեզ թագաւոր մեր, զի ետուր մեզ կերակուր ուրախութեան. լցո զմեզ Հոգւով սրբով, զի գտցուք առաջի քո հաճոյք, և մի ամաչեսցուք. զի դու հատուցանես իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց: Իսկ այսպէս տեառնագրելով զինքեանս՝ տան զանձինս սակաւ մի անօսր քնոյ. զի մի տհալ կերակրովք գեղեցիկ շինուած մարմնոյն շփոթեալ խանգարեսցի: Նա և եթէ յամեն եւս 'ի քունն, երազ հոգեկան տեսանեն, և անդէն զանուրջսն մեկնեն իբր զբանս սուրբ մարգարէից:

Իսկ զարթուցեալք առ հասարակ անդէն 'ի շրջանս պարուց բոլորին. ոչ հակառակք և ոչ ընդդիմացեալք, քաղցր հաւանութեամբ և հեզ հանդարտութեամբ: Առաջնորդք դասուցն հնչումն ձայնի արձակեն, երգս հոգեւորականս քաղցրանուագս փոփոխելով. իսկ այլ կրսերագոյնքն ձայնիցն միտ դնելով, խառնեն զիւրաքանչիւր բարբառսն յարմարելով և կազմելով զմիաբանութիւն հնչմանն, զի իբրեւ 'ի միջէ բերանոյ ամենայն բազմութիւն ձայնիցն հնչիցէ: Իսկ այսպէս յերկարելով զձայնաւոր պաշտօնն, ծունր դնեն ամենեքեան, յաղօթս կան լռութեամբ. և 'ի ձեռն առաջնորդի աղօթիցն կանգնեալք ամենեքեան զփառաւորութիւնն կատարեն:

Իսկ կատարեալ զտուընջեան պաշտօնն, լաւ համարեցան զգիշերսն վաղայարոյց լինելով մինչեւ յառաւօտ աղօթիցն պարապեալք, և ընթեռնուն զգիրս սուրբս. իսկ որք ունին շնորհս վարդապետութեան, ասեն մեկնութիւնս 'ի մխիթարութիւն լսողացն: Պատմեն վասն լինելութեան աշխարհի յոչընչէ եղեալ, և կարգեալ մի ըստ միոջէ զխորատս բարեաց կարգէն 'ի լսելիս ժողովրդոցն վկայութեամբ սուրբ գրոց: Իսկ այսպէս ուսուցանելով մինչեւ մոռանալ լսողացն զամենայն իրս աշխարհականս, և չյիշել ամենեւին զհարկաւոր կերակուր և ըմպելիս:

Իսկ այնպէս ուրախացեալք 'ի սէրն Աստուծոյ, մինչեւ չհամարեալ զինքեանս 'ի մարմնի, այլ յերկինս. և հեշտութեամբ անցուցանեն զերկայնութիւն գիշերոյն մինչեւ յառաւօտ: Քանզի սոսկացեալք են յերկրէս

և զգեցեալք զերկինս ։ Մինչ մահ առ դրունս նոցա , և դառնացան դժոխք յիջանել նոցա ։ Անդամութիւն նոցա դրունք են աղօթից աշխարհի , և ոսկերք նոցա գանձ են ամենայն ապաւինելոց ։ Լուր նոցա յորդորիչ է ամենայն հեղգացելոց , և գործք նոցա վարդապետութիւն ամենայն կամեցողաց . դաստակիցք են հրեշտակաց , և օթևանք սուրբ Երրորդութեանն ։

Արդ զայս ամենայն գիտելով, եղբարք, պարտիմք թեւակոխել . և զնոյն նախանձ սրբութեան յանձինս բերելով, նմանողք լիցուք այնպիսւոյ բազմանգունդ միայնացելոց յաշխարհէ և դիմելոց 'ի քաղաքամայրն վերին, որ ազատ է յախտից երկրաւորաց . քանզի ընկերակիցք են մերոյ բնութեանս , որ զօրացուցանէ զտկարութիւնս ։ Միայն կամեաց , բաւան հար հաւատովք , յուսա , սիրեա , և կարես տեսանել զայնպիսի նահատակութիւն ։ Զի ոչ ինչ համեմատ են չարչարանք ժամանակեանս առ կեանսն՝ որ պատրաստեալ է այնպիսի ճգնողաց ։

Քանզի յոյժ իսկ երկուցեալ եմ ես ընդ հեղգութիւնս մեր . գրեթէ զամենեսեան տեսանեմ թաւալեալ յերկրաւոր ստացուածս ։ Իսկ արդ բնութիւնս իմ ոչ կշտամբեալ յանդիմանէ զիս , եթէ ստեղծայ մերկ , և եթէ եդայ 'ի դրախտին մերկ , և եթէ ելի անտի մերկ , և եթէ ծնայ մերկ , և եթէ անդրէն յերկիր մերկանդամ երթամ ։ Արդ եթէ տանել աստի ոչ կարեմք , զի՞ եւս աստէն 'ի սմին թարթափիմք յաշխարհիս ։ Մերկացիր սոսկացիր , ով միայնակեացդ , մի թաւամուր ընդունակ լինիր նենգաւոր թշնամւոյն . գուցէ 'ի դարան մտեալ մծուղեալ՝ զքեզ անգէն 'ի քեզ արշաւեսցէ կողոպտել , զերծանել 'ի քէն զգանձսն երկնաւորս ։ Բաւական համարեաց քեզ զտերունեան կանոն , ոչ ոք յերկրաւորացս կարէ երկուց տերանց ծառայել . որ յայտնագոյն իսկ ցուցանէ առանց միջնորդի և մեկնութեան . Ոչ կարէք դուք , ասէ , Աստուծոյ հաճոյ լինել և Մամոնայի ։

Այլ արդ ես տեսանեմ 'ի մերում աշխարհիս և ոչ զոք ազատեալ յայսպիսի աղետից ։ Յետոյ ընդդէմ ընթերցաք զգեղեցիկ գրեալսն . 'ի պատճառս ուխտաւորութեան հեռացաք 'ի սուրբ ծնողացն , և օտարաք բա-

զում հարս օտարոտիս․ զորս պատուելոյ արժանի էր՝ անարգեցաք, և յորս ոչն ունէաք իշխանութիւն գնել մեծարանս՝ զախտ ագետից մերոց յոյժ ծախեցաք։ Ազատացաք 'ի հարկաց արքունի՝ զորս առանց մեղաց էք հարկիլն, և մտաք ընդ հարկաւ ստացուածոց, որ լի են անառակ ագահութեամբ։ Ելաք յանկողինս սուրբ հարսանեաց, և արարաք մեզ բարձրագահոյս առաւել քան զաշխարհի։ Փափկանամք յանկողինս յարմարեալս, և յածեալ կոծին միտք մեր 'ի խորհուրդս աղտեղիս զգիշերն ամենայն։

Կօշիկք ոտից մերոց յանդիմանեն զմեզ, եթէ ոչ են սուրբ ճանապարհք մեր։ Հանդերձք մեր աղաղակեն զգործոց մերոց, եթէ մերկ եմք յերկնաւոր զգեստուցն։ Արիւարք մեր ցուցանեն զմեզ, եթէ ոչ եմք յափշտակելոց ընդ առաջ Տեառն 'ի վերայ օդոց։ Շինուածք ապարանից մերոց յայտ առնեն, եթէ ոչ ունիմք մեք տաճար առանց ձեռագործի յերկինս, յոր մտանելոց են ամենայն դասք սոսկացելոցն յերկրաւոր ախտից։ Կալուածք անդաստանաց մերոց կշտամբեն զմեզ, եթէ չիք մեր բաժին 'ի վիճակսն երկնաւորս։

Մրգուզք անյագք եղաք 'ի կերակուրս, և առանց չափոյ արբաք գինի պղտորիչ խորհրդոց և մտաց։ Իսկ 'ի քուն ննջեմք ամենեքեան, և երազ թուի մեզ ճշմարտութիւնն։ Կափուցեալ են աչք մտաց մերոց 'ի տեսականն խորհրդոց, և անյագ պակշոտեալ հայել 'ի կեանս աշխարհիս։ Արգելեալք զլսելիս 'ի սուրբ ընթերցուածոց, և ունկնդիր եմք բառաչման խաչանց մերոց։ Ոչ եկն մեզ հոտ անոյշ 'ի Հոգւոյն սրբոյ, վասն զի սիրեցաք մեք զլիւղ ախտալից աշխարհիս։ Ոչ ճաշակեցին քիմք ոգւոց մերոց զկերակուր երկնային, վասն զի պարարեցաք զանձինս մեր 'ի զանազան խորտիկս։ Մութ է գոյն դիմաց մերոց, վասն զի ոչ զուարթացան երեսք մեր 'ի խորհուրդս սրբութեան։ Ցաւալից են անդամք մարմնոց մերոց, վասն զի յառաջ քան զմարմինս՝ զոգիս ախտացուցաք։ Գերեզմանաց բաւելոց նմանեցաք յանձինս մեր, վասն զի ունայն եմք 'ի շնորհաց սուրբ Հոգւոյն։

Վասն այսորիկ և ամենայն չարիք եկին հասին յաւուրս մեր․ կենդանեաւ մերով տեսաք զդիակունս ան-

ձանց մերոց ։ Աւաղ նահատակք մեր անկան ՚ի պատերազմի, և սուրբ քահանայք մեր խողխողեցան ՚ի ձեռաց անօրինաց. գեղեցիկ երիտասարդքն զենան ՚ի սպանումն, և բազում կուսանք վարեցան ՚ի գերութիւն. գիրգ կանայք անկան ՚ի տառապանս այրութեան, և բազում որբք կականէին դառնապէս ։ Ազատ եկեղեցի անկաւ ՚ի ծառայութիւն հեթանոսաց, և սուրբ քահանայք նորա կափէին չարչարին յանօրէն հարկահանաց ։ Բարձեալ է ողորմութիւն յաշխարհէ, և հեռացեալ է գութ յիւրաքանչիւր մտաց ։ Երկինք ՚ի վերուստ բարկացեալ են, և երկիր ՚ի ներքուստ կայ յերերս տատանման ։

Շինուածք մեր եղեն գերեզմանք դիականց մերոց, և վաստակք ձեռաց մերոց տապալեցան ՚ի վերայ մեր ։ Պայթեաց և պատառեցաւ թանձրութիւն երկրիս, և բազում մարդիկ ՚ի վայր հոսեցին ։ Ոչ սպասեաց որդի հօր, և ոչ քոյր զաշս եղբօր կալաւ, և ոչ եւ ձայն լալոյ կանանց ՚ի վերայ ծննդոց իւրեանց, վասն զի լքոյց սով զգերանս նոցա ։ Զօրք խորտակեցան յանկարծակի իբրեւ զմայրս բարձունս Լիբանանու. Հնձանք եղեն բարկութեան, և ճմլեցան ամենեքեան իբրեւ զողկոյզս ընդ ոտամբ, փոխանակ գինւոյ՝ արիւն անմեղաց ցայտեցաւ ՚ի հանդերձս մեր ։ Դառնացաւ քան զլեղի կերակուր ՚ի քիմս մեր, և ՚ի քացախ դարձաւ սուրբ ըմպելիք մեր ։ Ընդ հարեալսն հարաք ամենեքեան յոգի և ՚ի մարմինս մեր, և ընդ մեռեալսն զմահ ճաշակեցաք ։ Արդ ո՞չ ապաքէն վասն մերոյ հեղգութեան անցին այս անցք չարչարանաց ընդ աշխարհ ։

Ո՛ն անդր ՚ի բաց կաց յաշխարհէ, որ վաղդ ելեր մեկնեցար յաղետից սորա. Թօթափեալ ընկեա ՚ի բաց զկեղեւանս ախտալից աշխարհիս ։ Մերկեաց իբր զըմբշամարտիկ, օծ իւղովն Քրիստոսի, զի մի կռուեսցին ՚ի քեզ ձեռք ախոյանին ։ Իսկ արդ եթէ հեթանոսք, որ ըմբռնեցան ՚ի տեսական իմաստութիւն, ոչ միայն ՚ի ստացուածոց ՚ի բաց կացին, այլ և յօրինաւոր կերակրոց հրաժարեցին, համառօտ և անպաճոյճ ըմպելեօք շատացան յանձինս իւրեանց, և առաքինի մահուամբ վախճանեցան ՚ի կատարած կենաց իւրեանց, որչափ եւս առաւել մեք պարտիմք նմանողք լինել սիրելեացն Քրիս-

տոսի, որք հրեշտակակրօնք զանձինս կարգեցին, խառնելով զինքեանս 'ի գունդս վերնոյն ։

Եկայք և մեք, ով միայնացեալք, զօրէն Թշնամեացն մնցուք 'ի մերն ստացուած իբր յօտար երկիր, արմատախիլ զծառատունկս Թշնամւոյն կոտորեսցուք. իբրեւ զգերի առեալ ծախիցեմք 'ի նեղեալս զինչս մեր, ոչ զի ատիցեմք զազգականս, այլ զի սիրիցեմք զաղքատսն, որ են զօրականք Քրիստոսի և ճշմարիտ բարեխօսք ։ Ապա թէ աստէն կապիս ընչիւք, և քեզէն վարես զքեզ յանդարձ գերութիւն, ուր չիք անդ գինք փրկանաց ։ Փութա փութա ճեպեա, եղբայր, ապրիլ յայնպիսի անողորմ գեհենէ. զի կարիցես հասանել յամուր քաղաքն, ուր ոչ գոյ քեզ կասկած կամ երկիւղ խախտիլ և վարիլ 'ի գերութիւն ։

Եւ եթէ եկեսցես զհետ գեղեցիկ վարդապետութեան հարցն, զորս վերագոյնն գծագրեցի քեզ զվարս սուրբ միայնակեցացն, յայնժամ կարասցես համբառնալ զաչս մտացդ առանց ախտից չարչարանաց, հայել և տեսանել զքեզ գեր 'ի վերոյ քան զամենայն երկիրս ։ Երանի տայցես անձինդ քաջապէս ճողոպրեալ 'ի վշտալից կենաց աշխարհիս, և խառնեցիս յերամ միայնակեցացն, 'ի գունդս սրբոց արդարոցն, 'ի վիճակ առաքելոցն, 'ի գումարս մարգարէիցն, 'ի կաճառս մարտիրոսացն, 'ի բանակս հրեշտակացն և 'ի ժողովս անդրանկացն, 'ի մեծ քաղաքն երկնից, 'ի բազմականսն աբրահամեան, և 'ի կերակուրս երկնայինս և յըմպելիս անկարօտս ։ Դու ես այնուհետեւ մարգարէն, որ ոչ պատուեցար 'ի մարմնական աշխարհիս. այլ թեւածեալ թռուցար յանմարմին աշխարհի, և հանգուցեալ դադարեցեր յանապական ուրախութիւնս ։ Յորս լիցի և մեզ՝ վերջին գրչութեամբ աշխատողացս՝ միաբանութեամբ սուրբ ուխտիւս վայելել, շնորհօքն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն ։



# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ՅԵՍՈՒԱՅ

ԵՒ

# ԴԱՏԱՒՈՐԱՑ

---

## Ա

Կոչեցաւ Յեսու Նաւեանց 'ի Տեառնէ առաջնորդ Իսրայէլի. ընտրեաց երկու յերիտասարդացն Իսրայէլի, և առաքեաց առ 'ի լրտեսել զերկիրն և զԵրիքով: Թէպէտ և առաւելաւ մեծացաւ քան զՄովսէս, ոչ եղանէր ըստ կարգ վարդապետին իւրոյ: Մովսէս երկոտասան առաքէր լրտեսս. սակայն երկու ընտրեցան յառաքինութիւնն. Թիւ երկոտասանից խարխարեցաւ, զօրութիւն երկուցն կալաւ զտեղին, մինչեւ ամենայն ապստամբութիւնն նուաղեցաւ: Եթող Յեսու զերկոտասանսն 'ի բաց, և զերկուսն բաւական համարեցաւ առ 'ի ճշմարտութիւնն: Մովսէս զերկոտասան ազգն միաբանեաց 'ի մասն լրտեսութեանն, զի այր զիւրաքանչիւր զտոհմն յորդորեսցէ քաջալերել. եթող յետոյ զբազումն, և յԱստուած միայն ապաւինեցաւ, քանզի և ինքն անցեալ էր ընդ հանդէս առաքինութեանն:

### Բ. Վասն անցանելոյ Յեսուայ ընդ Յորդանան:

Անդ 'ի սինէական լերինն զժողովուրդն չարար արժանի 'ի վեր 'ի լեառն ելանելոյ, բայց միայն զՄովսէս. և յայտ արար զանմատոյցն պատիւ աստուածութեան

իւրոյ։ Այլ աստ առ ափն Յորդանանու զնոյն պատիւ մեծարանաց տապանակին ցուցանէ, բացագոյն երթեալ ժողովրդեան 'ի նմանէ իբրեւ երկու հազար կանգուն. անդ մատամբն Աստուծոյ փորագրեալ էր զգիր տախտակացն. աստ և անուն Յեսուսի գրով հաստատեալ կայր. "Մարգարէ ձեզ յարուսցէ, ասէ Մովսէս, յեղբարց ձերոց իբրեւ զիս, նմա լուիջիք"։ Մեծ ոմն 'ի հեբրայեցւոցն եկեալ պատմեաց մեզ. Ժողովուրդն, ասէ, յամպն և 'ի ծովն և 'ի Մովսէս մկրտեցան. և Աստուած անուն լսէր 'ի տեղւոջն։ Նովին բարբառով և ես երկրորդեմ։ Ոտք քահանայից 'ի ջուրն Յորդանան մկրտեցան; իսկ այլ մարմինն ցամաք մնաց, վասն զի երկաթոյ ծնունդք էին և ոչ ջրոյ։ Տապանակն զանձն իւր ոչ մկրտէ, վասն զի անուն մարդոյ առանց մարմնոյ և հոգւոյ ոչ մկրտի. սոյնպէս և անուն Աստուծոյ անուամբ տապանակին նշանակէր։ Պահի անունն 'ի ցամաքի առանց մկրտութեանն, մինչեւ զգեցցի նոյն անուն մարմին և ոգի, և նովին մարմնով և ոգւով մկրտեսցի 'ի նոյն 'ի Յորդանան գետ։

Գ. Յաղագս կրկնակի վիմացն։

Երկոտասան վէմքն որ ելին 'ի գետոյ անտի, նման էր թիւն երկոտասան Առաքելոցն. և երկոտասան քարինքն որ իջին անդրէն 'ի գետն, երկոտասան ազգատոհմացն, որ ոչ կարացին ելանել 'ի ծովէ մեղաց։ Անդ անցանել ժողովրդեանն ընդ Յորդանան գետ՝ հատաւ սպառեցաւ ցամաքեցաւ ջուր գետոյն. է որ 'ի վեր դարձաւ, և է որ 'ի վայր հոսեցաւ։ Այլ զայդ քարինսդ զոր հանաք 'ի միջոյ գետոյդ, և եդաք 'ի տեղւոջ՝ որ անուանի Գաղգաղ։ Պարտ է զբանս իմանալ. Ջուրքն՝ որ ոչ ըստ բնութեան 'ի վեր կոյս դարձան, հեթանոսաց 'ի վեր յերկինս ելանելն է. և ջուրքն որ 'ի մեռեալ ծովն Սոդոմայ հոսեցան, ժողովրդեանն անդրէն 'ի մեղս դառնալն է։

*Դ. Վասն Թլփատութեան՝ որ 'ի բլուրն է, և ոչ 'ի սրտի:*

Թլփատութեանն Մովսէս ոչ էր օրէնսդիր, վասն այնորիկ և ոչ խափանել կարէր. և զոր խափանելն ոչ կարէր, և ոչ մեծարել կամէր: Վասն այնր որ յառաջն տեսանէր, լռեալ դադարեաց ամն քառասուն և երկու յանապատի անդ. զի ետես զտկարութիւն նշանին: Ճանաչումն եւեթ էր՝ յայլոց ազգացն որոշելով, այլ ոչ լրումն աստուածային կամացն արդարութեան: Թոյլ ետ նմա անցանել ընդ Յորդանան գետ. 'ի մէջ բազմամարդի աշխարհին՝ ուր պիտոյ էր նշան դրոշմին այնորիկ, պահելով և զատուցանելով զանձինս իւրեանց 'ի բազում ազգացն: Յեսու որդի Նաւեայ առ երկու ինչ պիտանացու փութայր թլփատել զորդիսն Իսրայէլի, զատուցանելով յազգացն և անքակ միաբանելով 'ի ճգունս պատերազմացն: Բայց խնդիր առաջի կայ սակաւքանիւք ասել վասն նորին թլփատութեանն, եթէ ընդէ՞ր քարամբք թլփատէր և ոչ երկաթով. քանզի ասէ գիր՝ եթէ "Արար Յեսու դանակս գայլախազեայ, և այնու թլփատեաց զորդիսն Իսրայէլի": Ի մարտս պատրաստէր զնոսա. և ամենայն զէնք պատերազմողացն յերկաթոյ կազմին, որք թանալոց էին յարիւնս բազում հինգ ազգացն զաւակին Քամայ. տէգք և նիզակատէգք, սուսերք և սլաքք նետից, և ամենայն սպառազինութիւնք վառելոցն, թէպէտ և որիշ որիշ էին տեսանելով ըստ իւրաքանչիւր զինուց, սակայն նիւթքն ամենայն երկաթ էր: Սուրբ պահեաց զնոսա յարենէ թլփատութեանն. զի թէպէտ և ժամանակեան էր նշանն, սակայն աստուածային էր: Ոչ մարթէր գործին, որ կենաց պատճառն էր, առժամայն շրջել և լինել նոցա մահու պատճառ: Սակայն երկրագործ մարդկան երկաթն է կենաց պատճառ, որ զերկիր գործեն. և վասն ագահութեան իւրեանց զմիմեանս զրկեն և զլանան, և անցանեն ըստ եղեալ սահմանս հարցն իւրեանց: Կայ եւս և այլ տեսակ՝ որ վատթարագոյն է քան զերկուս ասացեալսն: Բազմաց յանուն աստուածոցն կուռս երկաթիս գործեն, տէգս և նիզակատէգս նուիրէին այնմիկ,

որպէս եղեւ. գարշելի էր տեսողացն ներգործողաց, զորս Յեսու ոչ արժանի համարեցաւ մատուցանել 'ի նիւթ թլփատութեանն. այլ և այնչափ մեծարեաց զդանակսն գայլախազեայ, մինչեւ ընդ իւր աւանդեաց 'ի Թամնասաքարի:

Ե. Վասն սպարապետին երկնաւորի և վասն Յեսուայ որդւոյ Նաւեայ:

Սպարապետ եմ, ասէ, զօրաց մեծաց Տեառն: Յայտ արար և եցոյց՝ զի երկոտասան բիւր հրեշտակաց եկեալ հասեալ էր յօգնականութիւն երկոտասան ազգին, և նա վերագոյն քան զբազմութիւն գնդին զանձն ցուցանէր: Իսկ այլ եւս խոնարհագոյն մատամբ աղերսէր Աստուածն Իսրայէլի և ասէ. Ժողովուրդ իմ զի արարի քեզ և կամ զինչ մեղայ քեզ. ո՞չ վասն քո յայտնեցի դիւթին Բաղաամու. Բաղակ առաքեաց կոչեաց զնա 'ի Միջագետաց անիծանել նզովել զքեզ, և զիս նմա յայտնեցի՝ դիւթին և յանցաւորին, զի դու մի յանցանիցես. և եւս անարգագոյն իշոյն, զի դու իմաստնացեալ զգաստասցիս: Իսկ եթէ առ անարգսն այնպիսի յայտնի Աստուած վասն մարդկան սիրոյ, զինչ ինչ ասիցէ ոք վասն հրեշտակի՝ որ երեւեցաւ Յեսուայ, եթէ ոչ ինքն Աստուած էր՝ և երեւէր իբրեւ զհրեշտակ:

Զ. Վասն ձայնական կործանման Երիքովի:

Երիքով, որպէս ասէ գիրն, ամրացեալ փակեալ կայր ամփոփեալ. ամենեւին ոչ ոք ելանէր 'ի նմանէ, և ոչ ոք մտանէր 'ի նա: Տիպք օրինակի էր նա բազմադիմի մեղաց առաջին մարդկային բնութեան: Երիքով եօթնեկին պարսպօք ամրացեալ փակեալ կայր. ոչ յԱստուած ապաւինեալ, այլ յորմոցն լայնութիւնն և 'ի բարձրութիւնն. և մարդոյս բնութիւնն եօթն մասամբք պարսպեալ էր զարտաքին և զներքին շինուածս նորա. երկու աչօք և երկու ականջօք և երկու ռնգացն առուօք, և բերան նորա եօթն մեծամուր խորհրդոց: Այս

եօթնեկին պարապք տապատամբեալ մարդիկ՝ ոչ հնազանդեցան Նաբուծոյ, ցարդարութիւն փակեալք 'ի փակելումն, ամրացեալք էին և կաշկանդեալք 'ի կապեալսն տապաստան էին. ամենայն թշնամիք իւրեանց ընդ նոսա բնակեալ էին, անձամբ զանձինս իւրեանց սպանեալ էին. կենդանուոյն դիակունք մեռեալ 'ի գերեզմանի բնակեալ էին, և 'ի քաղաքի համարէին գերեզմանք նոցա՝ որ 'ի վախճանի ձայնիւ աւերելոց էին։

Եկն եմուտ Յեսու որդի Նաւեայ առ քահանայսն և ասէ ցնոսա. Հրաման պատուիրանի տուք ամենայն մարտիդ, պատերազմող ամենայն մարդկանդ յառնել պատել շուրջանակի զքաղաքն. և տապանակն կտակարանաց երթիցէ զհետ նոցա, և եօթն քահանայքն եօթն փող 'ի ձեռն առեալ զաէրունին՝ հարկանելով զհետ տապանակին երթիցեն։ Վեց օր՝ մի մի նուագ հարկանիցէք. և յաւուրն եօթներորդին եօթն անգամ եկեսջիք առաջին օրինակօքն. և յեօթներորդ աւուրն յեօթն նուագին՝ ուժգնագոյն քան զայլ աւուրցն հարկանիջիք զփողսն. և 'ի գոչիւն բարբառոյ զօրացդ ամենեցուն՝ արձակեսջիք 'ի վերայ քաղաքիդ, և առ հասարակ պարիսպքն անկեալ կործանեսցին առաջի ձեր։

Բայց ես սակաւ մի ըստ երրեակ մասանցն շարժեցից զմիտս իմ՝ որոշելով զվեցան 'ի նոցանէն, և յեօթներորդումն առնուլ զնշանակ յաղթութեանն։ Օ վեց օրն մի մի նուագ. երկու երկուորեակ թուով են արարածքս՝ և ապականացուք. առաջինն կոչի մանաւոր՝ լոյսն արեգական. երկրորդն՝ ներքին երկինս, որ վերին ջրոցն է հաստատութիւն. երրորդն՝ երեւումն ցամաքի և բոյսք աճեցեալք. չորրորդն՝ գունդք լուսաւորացդ. հինգերորդն՝ ծնունդք ջրոց և բղխումն ցամաքի. վեցերորդն՝ որ գազանք և մարդիկ արարան։ Վեցեքինքս, որպէս յառաջ ասացաք, յառաջախաղաց և կայանաւորք են. չարասէր թշնամին մեր 'ի սկզբանէ արկ ընդ ապականութեամբ զվեց մասունս աշխարհիս, իբրեւ որմարգել արար զմեզ և բանդիւք տանջեաց։ Եւ զանապական եօթներեակն կամեցաւ ընդդէմ մեզ կապել, յԱդամայ մինչեւ ցՄովսէս այսպէս. իսկ առ Մովսէսիւ լուծաւ իշխանութիւն նորա։ Եւ եթէ Մովսէս զթագաւորութիւն նորա մահուն աւերեաց, զոր ապա յետոյ 'ի

ծանօթումն եկեալ մեծի մարգարէին Դաւթայ՝ ասէր «Թշնամւոյն պակասեաց զէն մինչեւ 'ի սպառ. զքաղաքս նոցա աւերեցեր»: Եւ եթէ ընդ մարդկան միայն տայր Յեսու պատերազմ, այլ 'ի խորհուրդս ծածկեալս՝ ընդ սատանայ և ընդ դեւս կռուէր: Ի ձայն փողոյն մեծի սասանկաձայն լալիք անպատուած մարդկանն լինէր. 'ի ձայն փողոյ կոծոյ՝ շուրջ գային քահանայքն զքաղաքաւն: Զվեց աւուրսն լացին զվեցօրեայ արարածն, որ յառաջագոյն մեռեալ էին 'ի մեղս իւրեանց. յաւուրն եօթներորդի՝ որ նա ինքն է անմեղ և անապական, յայնմ աւուր սպանին զմահ և կործանեցին զքաղաքս նորա:

Ապա թէ ասիցէ ոք. թէ մարդ և անասուն քաղաքին սատակեցան 'ի սուր սուսերի զօրականին, նիւթք պղնձոյն և երկաթ առ ինչ սրբեցան և նուիրեցան 'ի գանձս տան տեառն: Մեծագոյն ասացի, դժոխոցն նմանութիւն ասաց զԵրիքով. և Յեսու զդժոխս աւերեաց, և զմահ սպան 'ի միջոյ նորա և մարդկան. մարդոյ պատուհաս էած 'ի վերայ, և անասուն զի արիւնակից մարդկան է՝ չարաչար արժանի պարտեցուցանել զնոսա: Իսկ կռանակուռ նիւթք կահին օտար էր 'ի բնութենէս մերմէ, ոչ ինչ մարմնաւոր պատուհասին. ոչ ինչ յանձանց ագահութիւն հրամայեաց բառնալ, այլ յամենասուրբ գանձն աստուածային նուիրացն:

Դարձեալ գոյ և այլ բարբառնութիւն 'ի տեղւոջս: Որպէս պղինձն հանդերձ ամենայն նիւթակցովքն իւրովք անզգայ և անմասնոյց է 'ի պղծութիւն, եթէ կամեցեալ էր մարդկանն կամաւոր սրբութեամբ, անպիղծս կարէին ունել զինքեանս:

Է. Վասն Ռեքեբայ երիքովացւոյ, որ հաւատով ապրեցաւ 'ի սրոյն Յեսուայ:

Յանդգնագոյն ասացից վասն աղի արձանին: Յամենայն դարս եկեղեցի մաքսէ 'ի հեթանոսաց. 'ի սկզբանն 'ի մահաբեր ծառոյն զծառն կենաց՝ որ կայ պահի մեզ 'ի վախճանի. յեղբայրասպանէն Կայենէ զԱբէլ՝ որ գովութեամբ քարոզ կամաւոր յեկեղեցւոջ. 'ի շրայ-

լեալ զօրուն՝ զՆոյ արդար ընտանեօքն համդերձ. յանիծեալ սահմանացն Քամայ՝ զՄելքիսեդեկ. 'ի մադիանացւոցն՝ զԹամար, 'ի մովաբացւոցն՝ զՀռութ, 'ի Սոդոմայ՝ զկինն անանուն: Ոչ, ասեն. 'ի պատուհասի եղեւ: Վկայեմ և ես, և յելս իրացն հայեաց. 'ի շանթահէգ հրոյն ապրեցաւ ընդ խառնավար դստերսն Ղովտայ, ոչ վարեցաւ 'ի պատուհասի չարեացն, նշան գեղեցիկ կանգնեցաւ առ երիս ինչս պիտանացու: Դուք էք, ասէ, աղ երկրի. 'ի ձեզ աղի ամենայն անհամութիւն աշխարհիս: Աման է աղ հողոյ, միանգամայն և ջուր մածեալ. ուր ջուր է, անդ և օդ խառնի. ունի աղն բնութեամբ և զհրոյ ջերմութիւն. և չորեքեան նիւթք աշխարհիս 'ի յանցանացն Ադամայ անկաւ ընդ ապականութեամբ և դարձաւ 'ի հողոյ բնութիւն: Իսկ առ կնոջն Ղովտայ չորեքեան նիւթք ձուլին և առնուն աղի բնութիւն. ամենեքեան նոքա կենդանի են յեկեղեցւոջ: Լուար զանուն եկեղեցւոյն, ուսիր և զաւանդ զթարգմանութիւն անուանդ. և եթէ դու տեղեկագոյն իցես, այլոց փութասջիր ուսուցանել: Եկեղեցի ասի՝ կոչումն անուանի, որպէս 'ի չգոյութենէն է 'ի գոյութիւն. վերստին նիւթ գործի աշխարհս, 'ի մահուանէ 'ի կեանս, 'ի ցրմանէ 'ի ժողովումն: Քոյր էր կնոջն Ղովտայ Թախաք՝ և զաւակ 'ի Քամայ յազգէն. հաւատաց յԱստուած և եղեւ դուստր Աբրահամու, ոչ ասի զաւակ Քանանու: Այն է պատուհասի նշանակ, և անանցութեանն իմացմունք, և յարութեան բնութիւն: Այն արձան՝ թէպէտ և նշանակէ յաղթող եկեղեցեաց, զհարուածս հինգ քաղաքացն քարոզեսցէ. իսկ հաւատք կնոջն առաքինւոյ՝ նշանակ է եկեղեցւոյ, և ճշմարտութեան և փրկութեան, և յոյս դարձի հեթանոսաց, և դուռն բացեալ մեղաւորաց. միանգամայն քարոզէ զգալուստ որդւոյն Աստուծոյ:

Ը. Վասն անշինութեան Երիքովի, և քարկոծելոյն Աքարայ:

Ապա եթէ ոք ժպրհեսցի անցանել ընդ նորովս ընդ այս, մի օր զհիմն արկանիցէ, զանդրանիկ որդին թաղիցէ. և մի օր կատարեսցէ, զկրսերն. բոլոր միջոց շի-

նուածոյն ընդ անիծիւք մնաց։ Իսկ Յեսու որդի Նաւեայ գործիական ձայնիւ աւերէ զԵրիքով, և բնական նզովիւք անիծանէ զշինելիս նորա, զայս դժոխս զոր գերեզման հաստատեցին մարդիկ։ Ի գալուստ որդւոյն Աստուծոյ 'ի ձայն փողոյ աւերելոյ՝ և ոչ մնայ անդր ոսկր վախճանելոցն և ոչ մի որպէս զԵրիքով, ամենեւին ոչ մնաց շունչ կենդանի. և ոչ փորին այլ գերեզմանք մարդկան յերկրի, որպէս և վեց քաղաքն այլ ոչ շինին մինչեւ յաւիտեանս ժամանակաց. վասն այնորիկ և Յեսու անջինջ անէծս կուէր 'ի վերայ տեղւոյն այնորիկ անշինութեանն։ Իսկ Թագաւորն անօրէն Աքաաբ անգանէր զանիծիւք մարգարէին. Թէպէտ և զտեղին փոխանակեաց, զանունն չեբարձ 'ի քաղաքէն. եթող զհինն Երիքով, և խոնարհագոյն մերձ 'ի կողմանս Սոդոմայ շինեաց, և անուանեաց նոր Երիքով։ Նա բան նզովիցն կատարեցաւ 'ի վերայ նորա և որդւոց նորա. ետ հատոյց զամենայն տոկոսիս անձամբ և կնաւն և եօթանասուն և երկու որդւովքն զորս կոտորեաց Յէու։ Նա ջնջեցաւ յիշատակ նորա յազգահամարէ արդար Թագաւորացն։ ԶԹէ ոչ օրհնութիւնքն Եղիսէի մարգարէի հասեալ էին 'ի վերայ նորա, վաղագոյն քանդեալ լինէին քան զառաջինն Երիքով։

Թ. Ընդէր վիճակաւ և ոչ մարգարէութեամբ ցուցաւ Աքար յանցաւորն Աստուծոյ։

Ոչ ի վիճակն զմարգարէի գործ գործէ, որպէս 'ի ծովուն, նոյնպէս և 'ի ցամաքի։ Պարծեալ մարդկան խնդիր ետ առնել յանցաւորին, զի մարդն 'ի մարդկանէ յանդիմանեսցի։ Պողոնքն այս է՝ որպէս ցուցանի. ամղան մի նկարագեղ. և թաժակ մի կրկին յերկերիւր սատերէն, և լեզու մի ոսկի։ Թաժակն արժէր ութ հարիւր դրամ, իսկ լեզուն ոսկի՝ կշիռք են իբրեւ զլտերան. Թողին զլտերն անուն, և զձեւոյն անուն կարդացին լեզու։ Արծաթն և ոսկին 'ի նուիրացն Աստուծոյ գողացաւ. իսկ զցեցակեր աւրեղէն հանդերձն՝ 'ի նզովելոյն զքաղաքն և զինչս նորա։ Ամենայնին գող Աքար է։

Ժ. Յաղագս գաբաւոնացւոցն խաբելոյն զՅեսու, և ապրելոյ 'ի սրոյ նորա:

Իսկ քանանացիքն անիծեալք, և յիրաւի անիծեալք, ոչ ունէին զերկիւղն 'ի լարաբաժին ժառանգութեան, այլ 'ի խաբէութեանց և 'ի պատահմանց. քանզի մամն Սեմայ ցեղին հասեալ էր: Դատաւոր արդար անիրաւ դատաստան ոչ առնէ. "Անիծեալ, ասէ, որ փոխեսցէ զսահմանս հարց իւրոց": Զայս սահմանափոխութիւնս նախ քանանացիքն անցին զանիծիւքն. իսկ Աստուած՝ խրատարար ամենեցուն, անդրէն դարձուցանէ: Նաև Յեսու որդի Նաւեայ ոչ 'ի քաջութենէ նոցա զարհուրեցաւ, և ոչ 'ի պատրաստութենէ նոցա սոսկացաւ. առեալ զքաջութիւն զօրաց իւրոց՝ 'ի Գաղգաղայ 'ի Գարիզին լեառն հասանէր: ԶԳարիզին եկեղեցացոյց, և զԳեբաղ սարկաւագանոց շինեաց. զոր և անէծս կարդաց 'ի Գեբաղ, և զօրհնութիւնս 'ի Գարիզին:

Եւ զինչ իցեն այս երկու լերինքս հուպ յիրեարս և բաժանեալ 'ի միմեանց: Նմանութիւն երկդիմի բնութեանս մերում. զանէծս 'ի գործս աղտեղի բնութեանս մարմնականս, և զօրհնութիւնս յոգիս և 'ի մարմինս 'ի գործս արդարութեան: Նման զի ձոր բաժանէ զԳեբաղ և զԳարիզին, և 'ի միջոցին շինեալ քաղաքն Սամրին: Եւ այս ոչ է օտար 'ի մեր բնութենէս. 'ի միջի ասեմք զերտին բնութիւն, և զնոյն խաչհրդարան հոգւոյ և մարմնոյ: Եղիցի աջակողմն մեր Գարիզին, և ձախակողմն մեր Գեբաղ: Հարկ է ընդ երկու ցնցուղս ականջաց 'ի ներքս մտանել, և ընդ ձայնական հնչումն 'ի սիրտն աղդեալ. զօրհնութիւնն 'ի ներքս առցուք, և և զանէծսն արտաքս հալածեսցուք. ապա երկոքին կողմանքս մեր Գարիզին եղեն և ոչ Գեբաղ:

Բայց այժմ խնդիր է վասն երկձղի փայտիցն՝ զորմէ թագաւորքն քանանացւոց կախեցան: "Դիք, ասէ, զոտս ձեր 'ի վերայ արանց թագաւորացդ": Յայտնի՝ քաջ զօրականքն զմարդիկ կոխէին, իսկ 'ի ծածուկ՝ ըզսատանայ և զամենայն չարութիւն նորա: Այսպէս զնա Յեսու որդի Նաւեայ գործակցօքն իւրովք հանդերձ,

և դնէ ընդ ոտիւք երկրաւոր սպառազինաց իւրոց։ Ինքն ոչ կոխէ, զի Յեսուդ անուն հրամայել գիտէ զդատողական խրատն, 'ի ձեռն նոցա կարգէ յուղղութիւն։

Հինգ թագաւորքն զորս կոխեն և կախեն զփայտից, կայ 'ի տեղւոջն ընդդիմանութիւն և տեսական տարացոյց։ Հինգ թագաւորքն մարդադեմք էին կերպարանօքն, և օձաձեւք էին, հին վիշապին բնակութիւնք. իսկ տեսակք, գործք, տարացոյց, ձեւ՝ բնաւոր օձին։ Ըստ հինգ թագաւորացն հինգ ոտք են օձին, 'ի սողելն իւրում հինգ պատ առնու կրկնելովն։ Կոչեաց զեբրայեցին Եգիպտոսէ առնուլ զվրէժ անիծիցն յառաջնոյն օձէն և 'ի վարդապետէ նորա։ Կապէ զնոսա Յեսու զհնգեսեան զօձաձեւսն, և տայ կոխել այնմ զաւակին՝ յորում կայծակն կենաց ծածկեալ պահէր։ Մարդկային ոտքն կոխէին, և աստուածային հուրն այրէր զմեղսն։ Զփայտն ոչ հրամայէ կոխել, զի չէր օձաձեւ. թիւ թագաւորացն օձաձեւ էր, զձեւն կոխեաց։

Եթէ 'ի բնութիւն մարդոյս եկեսցես և իմաստուն մտօք քննեսցես, գտցես նման նորա ազատութիւնն. եթէ կամի՝ օձաձեւ լինի, և եթէ կամի՝ աստուածաձեւ։ Առաքինութիւն մարդոյն՝ է աստուածային կերպարանք. զոր Աստուած բնութեամբ ունի, մարդ ստանալով կարէ ստանալ։ Ապա եթէ ընդ երկիր պնուցու, և զգործովք սորա շաղեալ պատի, ինքն զինքն օձաձեւ արար, որպէս աչօք, ընչօք, ականջօք, բերանով, և հինգերորդ ներքին համօքն։ Միաբան շաղեալք պատին սոքա հնգեքեան, մանաւանդ զի իգական մասամբք, կանացի ձայնիւք մեղկին լսելիքն մարդոյն. մեղկեալն հանեալն անկանի անքակութեամբ ընդ զուգակցին, աչք ընդ աչս կքի, և հոտ ընդ հոտ հոծի, բերան համբուրէ, և համք ընդ համս խառնին, զոր խոկումն անուանեցան։ Այս չարք՝ միաբանութիւն առ ծառոյն յայտնեցան։ Յղացաւ օձն զկերպարանս աներեւոյթ չարութեանն և եղեւ արու բնութիւն միջնորդութեամբ պտղոյ ծառոյն. պատրեաց և մեղկեցոյց զհինգ զգայութիւնս իգական մասինն. յապուշ կրթեաց զմիտք կնոջն, և մոռացումն արար զպատուիրանն Աստուծոյ. մինչ չեւ մտեալ 'ի պատերազմն՝ պարտեցաւ 'ի հայելոյն. յորմէ դու պարտիս զգուշանալ։

### ԺԱ. Վասն արեգական և լուսնի, որք լուան Յեսուայ և եղեն զօրավիգն նմա 'ի գործ պատերազմի:

Ոչ հինգ թագաւորքն միայն էին անդ, այլ որպէս ոմանք յարտաքնոցն ասեն, թէպէտ և առասպելական բանք իցեն, երեք բիւր դեւք, ասեն, որ անկան յերկնից, հանեին զմարդն 'ի դրախտէն, և զբոլոր աշխարհս ընկեցին ընդ մեղօք և ընդ մահուամբ: Իսկ այն օր 'ի Գաբաւոն երեսուն հազարն այն եկեալ էին 'ի թիկունս օգնականութեան հինգ թագաւորացն, թերեւս կարասցեն տապալել զորդիսն եբրայեցւոց, յորում Ճրագն աղօտ՝ երեւէր անշիջանելի. և խաւարասէր զօրք չարին բազմանային, իբրեւ զթանձրութիւն մարախոյ զերկինս ծածկէին: Գոչեաց Յեսու որդի Նաւեայ իբրեւ զառիւծ. ներքուստ 'ի վեր դողացոյց, փախոյց և ցրուեաց զնոսա իբրեւ զվատ երամս աղուեսուց: Սուր 'ի վերայ եդեալ կոտորէր զնոսա մինչեւ 'ի կողմանս Ազեկայ և Մակեդեկայ: Իսկ նոքա մինչ դեռ փախստեայ երթային յերեսաց որդւոցն Իսրայէլի զառ 'ի թափօքն Սորոնիմ, որոտաց Տէր յերկնից, և սկսաւ արկանել 'ի վերայ նոցա վէմս կարկտախառն. յորոց սատակեցան քանանացիքն առաւել քան 'ի սրոյ որդւոցն Իսրայէլի:

Իսկ եթէ Յեսու բաւական էր առնուլ զվրէժ բարկութեան 'ի նոցանէ, վէմք կարկտին զինչ պիտոյ էին նմա յօգնականութիւն. վերագոյն ասացի՝ թէ իմացար: Սողուն է սատանայ, ոչ 'ի վերայ հողոյ, այլ 'ի վերայ օդոյ, որ իբրեւ զամպ եկն եկաց 'ի վերայ քանանացւոցն ամենայն բազմագունդ դիւօքն իւրովք: Յեսուայ նիզակն անդ չկարէր հասանել, վերին օգնականի պէտք էին. զէն առ զէն և ձայն առ ձայն մարդկաձայն բարբառոյն. ձայն որոտմանն երկնաւոր սրոյն՝ հրածին կարկտան՝ զվերին դիւացն զգունդսն տանջեցին: Նաեւ Յեսու զԱստուած վերագոյն քան զարեգակն և զլուսին, որ և հասեալ կայր նոցա յօգնականութիւն: Բանիւ զանուանս լուսաւորացն հրամանաւ 'ի մէջ բերէր Յեսու. այլ միոյ՝ Տեառն լուսաւորացն հրաման տայր, զի կացուսցէ. որպէս և գրեալ է. "Արեգակնդ 'ի վերայ Գաբ-

բաւոնի կացցէ, և լուսինն 'ի վերայ ձորոյն Այլոնայ „: Աւեթեւագոյն թեւս ունի արեգակն քան զլուսինն. իսկ Յեսու որդի Նաւեայ թեւաւորին և անթեւին հաւասարակ տանէր զհրամանս պատասխանւոյն. վասն զի զկառավարն ամենեցուն մօտակայ տեսանէր:

Դուռն են լսելիք մտաց. արեգակն և լուսին դրունս ոչ ունին լսելեաց, ընդ որ անկաւ հնչումն ձայնին 'ի ներքս: Յորժամ ականջօքդ «պատգամէ» զհրամանն հըզօրագոյն, ինքեանք քեզ առանց ականջաց «կող» լսել նմա: Ոչ հրաձգութիւնս յերկինս խնդրէր, այլ զարեւապաշտոն յանդիմանէր: Ո՛չ շտաշարժ ասեմք զարեգակն, որպէս զօդոյ բնութիւն: Դիւրին է կենդանւոյ կեալ 'ի միում տեղւոջ. իսկ յարաշարժ շնչոյ նորա անհնարին է: Յեսու այնպէս սաստեաց լուսաւորացն, իբրեւ զանշունչ քարինս ընդարմացոյց՝ միով առ երկուս կշռելով:

ԺԲ. Առ ինչ անուանեցաւ Մասեփաա լալետղ:

Ապա եկն եհաս հրեշտակն Տեառն 'ի Գաղգաղա 'ի լալետղ անդր, որ յետոյ Մասեփաա անուանեցաւ. և Դաւիթ մարգարէ կարդաց նմա հովիտս արտասուութեան: Այն հրեշտակն որ 'ի Գաղգաղա Յեսուայ յայտնեցաւ, նոյն երեւեցաւ 'ի Մասեփաա. և 'ի Բեթէլ խօսեցաւ, և յանդիմանեաց զնոսա: Համբարձին իսրայէլացիքն զձայնս իւրեանց և լացին դառնապէս առ հասարակ. վասն այսորիկ անուանեցաւ անուն տեղւոյն այնորիկ Լալետղ և Հովիտ արտասուութեան: Եւ մատուցին անդ պատարագս Տեառն Աստուծոյ Իսրայէլի:

ԺԳ. Վասն գեղմանն Գեդէոնի, որ կրկին ունէր զապացոյցն:

Ասէ Աստուած ցԳեդէոն. Կարի բազում են զօրքդ, որ ընդ քեզ են. ոչ տամ ես զՄադիամ 'ի ձեռս քո նոքօք. զուցէ պարծեսցին որդիքն Իսրայէլի 'ի վերայ իմ և ասասցեն՝ թէ ձեռն իմ հզօր փրկեաց զիս և ոչ տէր Աստուած: Աղորոզ կարդասցես զօրացդ և ասաս-

ցես. այսպէս ասէ տէր Աստուած Իսրայէլի. եթէ իցէ ոք 'ի ձէնջ վատասիրտ զահի հարեալ՝ դարձցի: Եւ դարձան 'ի ժողովրդենէ անտի քսան և երկու հազարք: Դարձեալ խօսել սկսաւ Տէր ընդ Գեդէոնի և ասէ. Տակաւին բազում են զօրքդ. տա՛ր զնոսա 'ի ջուր անդր, և անդ զփորձ ցուցից դոցա քեզ. և եղիցի՝ զոր ասացից թէ ընդ քեզ երթիցեն, և զոր ասացից թէ ոչ երթիցեն՝ նոքա դարձցին: Ապա խօսել սկսաւ Տէր ընդ Գեդէոնի և ասէ. Ամենայն այր 'ի զօրականացդ՝ որ միանգամ լափելով լափեսցէ լեզուաւ իւրով 'ի ջրոյ անտի իբրեւ զշուն, 'ի մի կողմ որոշեսջիր զնոսա. և ամենայն որ 'ի ծունկս հարեալ՝ ծունկ հարկանիցէ, զայն ուրոյն կացուսջիր: Եւ գտան շնաբարքն լակելով արք իբրեւ երեք հարիւր. և այլքն ամենայն 'ի ծունկս հարեալ ցուակաթեալ ըմպէին: Կարի բազում են զօրքդ, ասէ Աստուած ցԳեդէոն. յորժամ պատերազմին յաղթես, մոռանաս զիմ բարերարութիւնս, որպէս սովոր են առաջին հարքն ձեր:

Երկու իմացական տեսակ յայտնեցան 'ի տեղւոջ անդ: Զահի հարեալ վատասիրտքն, քանզի մարմնասէրք են՝ ընդ երկիր միայն պշուցեալ՝ զերկինս ոչ կարեն տեսանել, յաւիտենական կեանքն ծածկեալ է 'ի նոցանէ: Իսկ ինն հազար եօթն հարիւր արքն 'ի ջուրմն քննութեան փորձեցան. և նոքա յոլովագոյն երկրաթաւալք են, և զեխ կենաց աշխարհիս ցանկացեալք. թողեալ զկանգնորդ կեանսն՝ 'ի պորտ և յորովայն ստղեալ կան: Թէպէտ և ոչ վատասիրտք անուանեցան, և ոչ 'ի քաջացն կողմանէ արժան էր զնոսա ասել: Նոցա 'ի ծունկս հարեալ, 'ի վերայ կրծիցն անկեալ՝ արջաւաբար ըմպէին ջուր. զանասնական բարսն յայտ արարեալ, որոց երկիրս միայն է բաժին: Ո՛ր ճանապարհ է երկոցունց յիւրաքանչիւր տունս դառնալոյ. "Տունք նոցա, ասէ, գերեզմանք նոցա եղիցին": Վասն զի 'ի հողս իւրեանց կարդացին զանուանս իւրեանց, նոյնք եղիցին բնակութիւնք նոցա յաւիտեան. չիմացեալք ըզմարդկային պատիւն, հաւասարեցան անասնոց և նմանեցին նոցա: Այս նախատինք 'ի մարգարէէն մարդկան ասացան: Իսկ երեք հարիւրքն սակաւիկ մի զգլուխն խոնարհեցուցեալ 'ի ցանկալի վտակս ջրոյն՝ անուշու-

թեպէտ ծայրիւք մատանց ձեռինն, 'ի ներքոյ 'ի վեր ընդ-դէմ երեսացն շթքելով, լեզուօք իբրեւ զշունս լակեն-ոչ զանուանդակ ծարաւն արբուցեալ, այլ փոքր 'ի շատէ զերաշտութիւն կոկորդացն զովացուցանել: Լեզուօքն զջուրսն լակելն, մտօքն ցանկացեալ փութացեալ զա-րիւն թշնամեացն յերկիր թողուլ: Նշանակ է սով մարդոց սակաւապէտ ստացուածոց. թողեալ զհիւթա-նիւթ մամոնային, ընդ գունդս դիւացն տան պատե-րազմ. զխայթոց մեղացն փշրեն: Սոցա երկիրն եհաս 'ի վիճակ ժառանգութեան քաջացն, նոքա ոչ միայն Մադիանացւոցն յաղթեն, այլ և անուանեալ աստուա-ծոցն յաղթեն:

Յառաջ քան զընտրութիւն զօրացն՝ նշան 'ի Տեառ-նէ խնդրեաց Գեդէոն. նա զմի մեկնակ խնդրեաց, Աս-տուած երիս տեսակօք խորհուրդս յայտնեաց նմա. զգզաթուն և զերեք հարիւր արանցն, և զսափորացն՝ հանդերձ ճրագօքն լուցելովք և ձայնական փողովքն: Ո՛հ բարկանար, Տէր, ասէ. եթէ ընդ իս իցես ճշմար-տութեամբ, գալարեցից եդից զգզաթս 'ի մէջ կալոյն. և իջցէ անձրեւ 'ի վերայ գեղմանն միայն, և շուրջ զնո-վաւ երկիրն ցամաք մնասցէ: Եւ եղեւ այնպէս. քամեաց զջուրն 'ի գզաթէ անտի, և ելից զկուրն: Եւ 'ի վաղիւ-անդ ոչ նոյնպէս. երկիրն թացաւ, և գզաթն ցամաք մնաց: Յօղն մի էր, և գզաթն նոյն էր. բայց տեսիլ նշանին յերկուս բաժանեցաւ: Շուրջ զգզաթուն լիճք ջուրցն՝ արիւն Մադիանացւոցն էր. իսկ ցամաք մնալ գզաթուն՝ արանցն էր ողջանդամ ապրել 'ի պատե-րազմէն: Բայց իջանել անձրեւուն 'ի վերայ գեղմանն, Հոգին սուրբ Աստուծոյ, որ խօսեցաւ 'ի մարգարէսն, և նովօք զամենայն երկիրս ոռոգեաց: Եւ զի խորհուրդ էր տեսական՝ առժամայն և առ 'ի յապա պահուն, ոչ 'ի բաց հեղու զջուրն, այլ 'ի կուր մի արկանէ և պահէ:

Դաւիթ թագաւոր նոցա և մարգարէ՝ յետ բազում ամաց եկեալ, Հոգւովն սրբով ասէր. "Իջցէ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղման„: Եւ եթէ զինչ է տէրու-թիւն նորա՝ յայտ առնէ. "Առաջի նորա նախ հնդիկք անկցին„: Խանձողն զերծեալ յերկնային հրեղէն թը-նութենէն անկաւ յերկիր, և եղեւ հնդկացոյն: Բայց որդիք ժողովրդեանն՝ որ փարիսեցիք անուանեցան, 'ի

Սողոմոնի վերայ առնուն զբոլոր բանս սաղմոսին ։ Զի֊մաստութիւն նորա անձրեւ ասացին, և զքառասնամեայ զխաղաղութիւնն զի՞նչ արասցեն արդեօք ․ զի ոչ կարասցէ հասանել 'ի կատարումն լուսնի ։ Որոց առաջի հնդիկն անկաւ, 'ի նա կատարի բոլոր սաղմոսն ։ Իսկ փոխանակ գզալթուն՝ ապաքէն զսուրբ կուսին բնութիւնն ասացաք ․ և փոխանակ ցօղոյն երկնից՝ զբանական աւետիս հրեշտակին ․ ապա և փոխանակ կրին՝ ըզ֊մեծ գետն Յորդանանու իմացիր, յոր և գառն Աս֊տուծոյ մկրտեցաւ ։

ԺԴ․ Վասն սափորոցն և նոցա կահիցն ։

Արի ․ ասէ Աստուած ցԳեդէոն ․ առ զպատանեակս զՓառայ, և էջ 'ի բանակն Մադիամու գիշերի, և լուիցես անդ բանս յօգնականութիւն անձին քո ։ Մօտ անդր մերձեցեալ Գեդէոնի պատանեկաւն հանդերձ 'ի թիւ մի յիսներորդացն դասուց՝ պահանորդ պահանորդի մի զգիշերային տեսիլն պատմէր ։ Երազ տեսանէի, ասէ ․ նկանակ մի գարեղէն հոլովլ գայր հասանէր, ասէ, հարկանէր զխորանն Մադիամու, և անդէն կործանէր ։ Եւ որ լուաւն՝ վաղվաղակի զմեկնութիւն երազոյն տեսաց ․ Ոչ է այն այլ, ասէ, բայց սուրն Գեդէոնի որդւոյ Յովասու ․ 'ի ձեռն նորա մատնեաց ուրեմն Աստուած զՄադիանացիսն ։ Եւ էր 'ի գարեղէն նկանակ առակեցան նոքա ։ Գարի անասնոց կերակուր է ․ գոյ և 'ի մեզ անասուն մասն ․ բոլոր հողեղէն բնութիւն մարմնոյս անասնական մասունք են ․ վասն զի 'ի միջէ հողոյ ստեղծեալ եմք մեք և անասունքն, և եկամուտ անմահութեամբն առաւելեալ եմք քան զնոսա ։

Հրաման ետ Գեդէոն և ասէ ․ Հապա, ժիր կացէք, զի յայսմ գիշերի մատնեաց Աստուած զՄադիամ 'ի ձեռս մեր ։ Զայս ասէր, և առ իւրաքանչիւր սափորն որ 'ի ձեռին ունէր՝ և 'ի նմին ջրագ մի անշիջանելի կառուցանէր, որպէս զսափորն 'ի ձախումն և յաջումն ըզփողն ։ Եւ որով զինու զնոսայն վառեաց, նովին և ինքն կազմեցաւ ․ բայց յառաջ խաղաց ինքն քան զնոսա, վասն զի գեր 'ի վերոյ է երրեակ թուոյն ։ Ընդ իս հայ֊

եղջիք, ասէ. յինէն օրինակ առջիք: Զայս ասէր, և 'ի նմին 'ի բանակ թշնամեացն իջանէր, ուժով մեծաւ փող հարկանէր 'ի ձայն եղջեւր փողոյն: Սոյնպէս և երեք հարիւրքն յերից կողմանց զբոլոր բանակն 'ի մէջ առեալ պատեցին. զսափորսն խորտակեցին, և զճրագունսն յաջ ձեռն առեալ՝ ձախուքն զփողսն հարկանէին. այր յիւրաքանչիւր տեղւոջ անցեալ կայր իբրեւ զբոց բորբոքեալ. անդադար փող հարկանելով՝ զամենայն բանակն 'ի դղրդումն կացուցանէին: Նոցա ոտից ուրուք հասանելոյ և ձեռին մերձենալոյ՝ ամենայն վրանք և խորանք յերկիր կործանեցան. այր զսուր 'ի վերայ ընկերի իւրոյ իջուցանէր. սկիզբն արարեալ 'ի միջում պահու մինչեւ ցառաւօտն զմեծ մասն բազմութեան բանակին անձամբ զանձինս իւրեանց կոտորէին: Իսկ Գեդէոն և երեք հարիւրքն ընդ տեղիս կալով՝ ըզփողսն հարկանէին, գոչէին խիզախէին և ասէին. Հապա, սուր յաղթութեան Տեառն Աստուծոյ և Գեդէոնի:

Արարուած խեցեղէն սափորոյն 'ի հողոյ է, և վառումն անշէջ ճրագացն 'ի հրոյ և 'ի պատրուգէ, և ձայն եղջեւր փողոյն՝ օդով և կենդանական շնչով մարդոյն, և երեքեան սոքա 'ի մերում բնութեանս բաղկացեալ գոյանան: Արդ այն որ ապականեցաւ 'ի մեղաց՝ 'ի մարմնոյս գոյացութիւն հողեղէն մասն, իբրեւ զանթուրծ ամանն անպիտան եղեալ խորտակեցաւ: Որպէս ճրագն 'ի սափորին՝ և սա ընդ ապականացու մարմնովս անյայտ եղեւ: Սոյնպէս և բանական հնչումն ոչ տայր ձայն յերկինս յերկրէ. վասն զի 'ի մեղաց անտի ապականեալ խանգարեցաւ մարմնաւոր գործին. իբրեւ զհող անքան և անմռունչ անկեալ դնէր 'ի մարդոյս բնութիւն ընդ ոտիւք մահու. ոչ յանդորրութեան գոհանալ մարթէին զԱստուծոյ, և ոչ 'ի նեղութեան պաղատել առ նա: Իսկ մերոյ բնութեանս ճշմարտութեամբ առ 'ի մկրտութիւն մերոյս տեառնի: Անթուրծ սափոր 'ի ջրոյ թրջի. իսկ մեր անթրծութիւնս առ թրծի, և թանձրութիւնս անօսրանայ հաստութեամբ, և ճրագն որ 'ի սմա՝ լուցեալ բորբոքի: Եթէ միայն 'ի տեղւոջն հաստատեալ կայցեմք՝ լուցեալ անշիջանելի իմացական ճրագաւն, ինքն անձամբ զանձն հարկանէ թշնամին մեր, և խափանեալ լինին պատերազմունք նորա 'ի մէնջ: Ար-

պէս և ինքնասաց ձայն Աստուծոյ յայտ առնէ 'ի սուրբ յիշատակարանին. «Եթէ սատանայ զսատանայ մերժէ, յանձն իւր բաժանեցաւ, անցեալ ուրեմն է տէրութիւն նորա»: Եւ ճշմարիտ առակօք յայտ առնէ. տուն և թագաւորութիւն որ յանձն իւր բաժանի, ոչ կարէ կալ հաստատուն:

Ապա խօսել սկսաւ Գեդէոն և ասէ. Խնդրեցից և ես 'ի ձէնջ խնդրուած մի, եթէ տայցէք ինձ. այր իւրաքանչիւր 'ի զօրականիդ եկեսցէ առ իս, բերցէ գինդ մի ոսկի: Ասեն ամենեքեան. Հաւասիկ տամք: Տարածեցին բաճկոն մի մեծ, և բերին այր իւրաքանչիւր գինդ մի և ընկենուին 'ի շեղջակոյտ անդր. և եղեւ շեղջակոյտ գնդացն՝ ոսկւոյ լտերս իբրեւ հազար և եօթն հարիւր: Եւ առ ինչ արդեօք զգինդսն մեծարգոյ համարեցաւ քան զամենայն: Յայտնի է և ոչ կարեմք թագուցանել. յորժամ գինդք ձօնեալք զականջաց կախիցեն կամ զարանց կամ զկանանց, լսելիք մարդոյն պղծելով պղծեցան 'ի շարժել գնդացն. զոր Տէր գնդացն յիշէ, որում ձօնեցանն: Յորժամ դուռն լսելեացն խարխարեցաւ, բոլոր բնութիւն մարմնոյն աւերեցաւ, ընդ նմին և հոգիքն խարխարեցան: Մի լսելիք են բարւոյ և չարի. դատաւոր ընտրող միտքն լինին և վարդապետ 'ի ներքս անդր: Կողոպտեաց եհան զգինդս նոցա, ընդ նմին և սրբեաց զայլանդակ լսելիս նոցա:

Սուր եկի արկանել յերկիր. ոչ կոտորել ասաց Տէրն, այլ քակել զայր 'ի հօրէ և զդուստր 'ի մօրէ. և եղիցի տանուտեառն թշնամիք՝ ընտանիք իւր: Աստուածային սուրն զմեղացն կապանս կտրեաց, և քակեաց զմեզ 'ի նոցանէ: Հայր և մայր կարդայաք քարի և փայտի, այլ և պաշտեցաք եւս. այսուհետեւ ոչ նոյնպէս անուանեմք, այլ 'ի պէտս հրոյ և շինուածոյ մեզ ծախեմք: Եւ այսպէս փոխանակ պատուոյ թշնամանեմք և անարգեմք զնոսա:

որպէս եղեւ. պարշելի էր տեսողացն ներգործողաց, զորս Յեսու ոչ արժանի համարեցաւ մատուցանել 'ի նիւթ թլփատութեանն. այլ և այնչափ մեծարեաց զդանակսն գայլախազեայ, մինչեւ ընդ իւր աւանդեաց 'ի Թամնասաքարի :

Ե. Վասն սպարապետին երկնաւորի և վասն Ցեսուայ որդւոյ Նաւեայ :

Սպարապետ եմ, ասէ, զօրաց մեծաց Տեառն : Յայտ արար և եցոյց՝ զի երկոտասան բիւր հրեշտակաց եկեալ հասեալ էր յօգնականութիւն երկոտասան ազգին, և նա վերագոյն քան զբազմութիւն գնդին զանձն ցուցանէր : Եւ այլ եւս խոնարհագոյն մատամբ աղերսէր Աստուածն Իսրայէլի և ասէ. Ժողովուրդ իմ զի՞ արարի քեզ և կամ զի՞նչ մեղայ քեզ. ո՞չ վասն քո յայտնեցի զիւթին Բաղաամու. Բաղակ առաքեաց կոչեաց զնա 'ի Միջագետաց անիծանել նզովել զքեզ, և զիս նմա յայտնեցի՝ զիւթին և յանցաւորին, զի դու մի՛ յանցանիցես. և եւս անարգագոյն իշոյն, զի դու իմաստնացեալ զգաստասցիս : Եւ եթէ առ անարգսն այնպիսի յայտնի Աստուած վասն մարդկան սիրոյ, զի՞նչ ինչ ասիցէ ոք վասն հրեշտակին՝ որ երեւեցաւ Յեսուայ, եթէ ոչ ինքն Աստուած էր՝ և երեւէր իբրեւ զհրեշտակ :

Զ. Վասն ձայնական կործանման Երիքովի :

Երիքով, որպէս ասէ գիրն, ամրացեալ փակեալ կայր ամփոփեալ. ամենեւին ոչ ոք ելանէր 'ի նմանէ, և ոչ ոք մտանէր 'ի նա : Տիպ օրինակի էր նա բազմադիմի մեղաց առաջին մարդկային բնութեան : Երիքով եօթնեկին պարսպօք ամրացեալ փակեալ կայր. ոչ յԱստուած ապաւինեալ, այլ յորմոցն լայնութիւնն և 'ի բարձրութիւնն. և մարդոյս բնութիւնն եօթն մասամբք պարսպեալ էր զարտաքին և զներքին շինուածս նորա. երկու աչօք և երկու ականջօք և երկու ռնգացն առուօք, և բերան նորա եօթն մեծամեծ խորհրդոց : Այս

եօթնեկին պարապօք ապստամբեալ մարդիկ՝ ոչ հնազանդեցան Աստուծոյ, ցարդարութիւն փակեալք 'ի փակելումն, ամրացեալք էին և կաշկանդեալք 'ի կապեալսն ապաստան էին. ամենայն թշնամիք իւրեանց ընդ նոսա բնակեալ էին, անձամբ զանձինս իւրեանց սպանեալ էին. կենդանւոյն դիակունք մեռեալ'ի գերեզմանի բնակեալ էին, և 'ի քաղաքի համարէին գերեզմանք նոցա՝ որ 'ի վախճանի ձայնիւ աւերելոյ էին:

Այն եմուտ Յեսու որդի Նաւեայ առ քահանայսն և ասէ ցնոսա. Հրաման պատուիրանի տուք ամենայն մարտիկ, պատերազմող ամենայն մարդկանդ յառնել պատել շուրջանակի զքաղաքն. և տապանակն կտակարանաց երթիցէ զհետ նոցա, և եօթն քահանայքն եօթն փող 'ի ձեռն առեալ զտէրունին՝ հարկանելով զհետ տապանակին երթիցեն: Վեց օր՝ մի մի նուագ հարկանիցէք. և յաւուրն եօթներորդին եօթն անգամ եկեսջիք զառաջին օրինակօքն. և յեօթներորդ աւուրն յեօթն նուագին՝ ուժգնագոյն քան զայլ աւուրցն հարկանիջիք զփողսն. և 'ի գոչիւն բարբառոյ զօրացդ ամենեցուն՝ արձակեսջիք 'ի վերայ քաղաքիդ, և առ հասարակ պարիսպքն անկեալ կործանեսցին առաջի ձեր:

Բայց ես սակաւ մի ըստ երրեակ մասանցն շարժեցից զմիտս իմ՝ որոշելով զվեցան 'ի նոցանէն, և յեօթներորդումն առնուլ զնշանակ յաղթութեանն: Զվեց օրն մի մի նուագ. երկու երկուորեակ թուով են արարածքս և ապականացուք. առաջինն կոչի մանաւոր՝ լոյսն արեգականս. երկրորդն՝ ներքին երկինս, որ վերին ջրոցն է հաստատութիւն. երրորդն՝ երեւումն ցամաքի և բոյսք աճեցեալք. չորրորդն՝ գունդք լուսաւորացդ. հինգերորդն՝ ծնունդք ջրոց և բղխումն ցամաքի. վեցերորդն՝ որ գազանք և մարդիկ արարան: Վեցեքինքս, որպէս յառաջ ասացաք, յառաջախաղաց և կայանաւորք են. չարասէր թշնամին մեր 'ի սկզբանէ արկ ընդ ապականութեամբ զվեց մասունս աշխարհիս, իբրեւ որմարգել արար զմեզ և բանդիւք տանջեաց: Այլ զանապական եօթներեակն կամեցաւ ընդդէմ մեզ կապել, յԱդամայ մինչեւ ցՄովսէս այսպէս. իսկ առ Մովսէսիւ լուծաւ իշխանութիւն նորա: Այլ եթէ Մովսէս զթագաւորութիւն նորա մահուն աւերեաց, զոր ապա յետոյ 'ի

ծանօթութիւն եկեալ մեծի մարգարէին Դաւթայ՝ ասէր "Մշտնջենաւորին պակասեաց զէն մինչեւ 'ի սպառ. զքաղաքս նոցա աւերեցեր": Ոչ եթէ ընդ մարդկան միայն տայր Յեսու պատերազմ, այլ 'ի խորհուրդս ծածկեալս՝ ընդ սատանայ և ընդ դեւս կռուէր: Ի ձայն փողոյն մեծի սաստկաձայն լալիք անապատուած մարդկանն լինէր. 'ի ձայն փողոյ կոծոյ՝ շուրջ գային քահանայքն զքաղաքաւն: Զվեց աւուրսն լացին զվեցօրեայ արարածսն, որ յառաջագոյն մեռեալ էին 'ի մեղս իւրեանց. յաւուրն եօթներորդի՝ որ նա ինքն է անմեղ և անապական, յայնմ աւուր սպանին զմահ և կործանեցին զքաղաքս նորա:

Արդ թէ ասիցէ ոք. թէ մարդ և անասուն քաղաքին սատակեցան 'ի սուր սուսերի զօրականին, նիւթք պղնձոյն և երկաթ առ ինչ սրբեցան և նուիրեցան 'ի գանձս տան տեառն: Վերագոյն ասացի, դժոխոյն նմանութիւն ասաց զԵրիքով. և Յեսու զդժոխս աւերեաց, և զմահ սպան 'ի միջոյ նորա և մարդկան. մարդոյ պատուհաս էած 'ի վերայ, և անասուն զի արինակից մարդկան է՝ չարար արժանի ապրեցուցանել զնոսա: Իսկ կանակուռ նիւթք կահին օտար էր 'ի բնութենէս մերմէ, ոչ ինչ մարմնաւոր պատուհասին. ոչ ինչ յանձանց ագահութիւն հրամայեաց բառնալ, այլ յամենասուրբ գանձն աստուածային նուիրացն:

Դարձեալ գոյ և այլ բարառնութիւն 'ի տեղւոջս: Որպէս պղինձն հանդերձ ամենայն նիւթակցովքն իւրովք անզգայ և անմատոյց է 'ի պղծութիւն, եթէ կամեցեալ էր մարդկանն կամաւոր սրբութեամբ, անպիղծս կարէին ունել զինքեանս:

Է. Վասն Ռաքաբայ երիքովացւոյ, որ հաւատով ապրեցաւ 'ի սրոյն Յեսուայ:

Յանդգնագոյն ասացից վասն աղի արժանին: Յամենայն դարս եկեղեցի մաքսէ 'ի հեթանոսաց. 'ի սկզբանն 'ի մահաբեր ծառոյն զծառն կենաց՝ որ կայ պահի մեզ 'ի վախճանի. յեղբայրասպանէն Կայենէ զԱբէլ՝ որ գովութեամբ քարոզ կամաւոր յեկեղեցւոջ. 'ի շրայ-

լեալ դաշտն՝ զԱյս արդար ընտանեօքն հանդերձ. յա-նիծեալ սահմանացն Քամայ՝ զՄելքիսեդեկ. 'ի մա-դիանացւոցն՝ զԹամար, 'ի մովաբացւոցն՝ զՀռութ, 'ի Սոդոմայ՝ զկինն անանուն։ Ոչ, ասեն. 'ի պատուհա-նի եղեւ։ Ա կայեմ և ես, և յելս իրացն հայեաց. 'ի շանթակէզ հրոյն ապրեցաւ ընդ խառնափար դստերսն 'Ղովտայ, ոչ վարեցաւ 'ի պատուհասի չարեացն, նշան զեղեցիկ կանգնեցաւ առ երիս ինչս պիտանացու։ Դուք էք, ասէ, աղ երկրի. 'ի ձեզ աղի ամենայն անհամու-թիւն աշխարհիս։ Աման է աղ հողոյ, միանգամայն և ջուր ծնեալ. ուր ջուր է, անդ և օդ խառնի. ունի աղն բնութեամբ և զհրոյ ջերմութիւն. և չորեքեան նիւթք աշխարհիս 'ի յանցանացն Ադամայ անկաւ ընդ ապակա-նութեամբ և դարձաւ 'ի հողոյ բնութիւն։ Իսկ առ կնոջն 'Ղովտայ չորեքեան նիւթք ձուլին և առնուին աղի բնութիւն. ամենեքեան նոքա կենդանի են յեկեղե-ցւոջ։ Դուար զանուն եկեղեցւոյն, ուստի և զաւանդ զթարգմանութիւն անուանդ. և եթէ դու տեղեկագոյն իցես, այլոց փութասջիր ուսուցանել։ Եկեղեցի ասա՝ կոչումն անուանի, որպէս 'ի չգոյութենէն է 'ի գոյու-թիւն. վերստին նիւթ գործի աշխարհս, 'ի մահուանէ 'ի կեանս, 'ի ցրմանէ 'ի ժողովումն։ Քոյր էր կնոջն 'Ղովտայ Սախաք՝ և զաւակ 'ի Քամայ յազգէն. հա-ւատաց յԱստուած և եղեւ դուստր Աբրահամու, ոչ ասի զաւակ Քանանու։ Այն է պատուհասի նշանակ, և անանցութեանն իմացմունք, և յարութեան բնու-թիւն։ Այն արձան՝ թէպէտ և նշանակէ յաղթող ե-կեղեցեաց, զհարուածս հինգ քաղաքացն քարոզեսցէ. իսկ հաւատք կնոջն առաքինւոյ՝ նշանակ է եկեղեցւոյ, և ճշմարտութեան և փրկութեան, և յոյս դարձի հե-թանոսաց, և դուռն բացեալ մեղաւորաց. միանգամայն քարոզէ զգալուստ որդւոյն Աստուծոյ։

Ը. Վասն անշինութեան Երիքովի, և քարկոծելոյն Աքարայ։

Ապա եթէ ոք ժպրհեսցի անցանել ընդ նզովս ընդ այս, որ օր զհիմն արկանիցէ, զանդրանիկ որդին թա-ղիցէ. և որ օր կատարեսցէ, զկրսերն. բոլոր միջոց չի-

նուածոյն ընդ անիծիւք մնաց։ Իսկ Յեսու որդի Նաւեայ գործիական ձայնիւ աւերէ զԵրիքով, և բնական նզովիւք անիծանէ զշինելիս նորա, զայս դժոխս զոր դերեզման հաստատեցին մարդիկ։ Ի գալուստ որդւոյն Աստուծոյ 'ի ձայն փողոյ աւերելոյ՝ և ոչ միայն անդր ոսկր վախճանելոցն և ոչ մի որպէս զԵրիքով, ամենեւին ոչ մնաց շունչ կենդանի. և ոչ փորին այլ գերեզմանք մարդկան յերկրի, որպէս և վեց քաղաքն այլ ոչ շինին մինչեւ յաւիտեանս ժամանակաց. վասն այնորիկ և Յեսու անջինջ անէծս կնքէր 'ի վերայ տեղւոյն այնորիկ անշինութեանն։ Իսկ Թագաւորն անօրէն Աքաաբ անցանէր զանիծիւք մարգարէին. Թէպէտ և զտեղին փոխանակեաց, զանունն չեբարձ 'ի քաղաքէն. եթող զհինն Երիքով, և խոնարհագոյն մերձ 'ի կողմանս Սոդոմայ շինեաց, և անուանեաց նոր Երիքով։ Այլ բան նզովիցն կատարեցաւ 'ի վերայ նորա և որդւոց նորա. ետ հատոյց զամենայն տոկոսիս անձամբ և կնաւն և եօթանասուն և երկու որդւովքն զորս կոտորեաց Յէու։ Այլ ջնջեցաւ յիշատակ նորա յազգահամարէ արդար թագաւորացն։ Այլ ոչ օրհնութիւնքն Եղիսէի մարգարէի հասեալ էին 'ի վերայ նորա, վաղագոյն քանդեալ լինէին քան զառաջինն Երիքով։

Թ. Ընդէր վիճակաւ և ոչ մարգարէութեամբ ցուցաւ Աքար յանցաւորն Աստուծոյ։

Ոչ ի վիճակն զմարգարէի գործ գործէ, որպէս 'ի ծովուն, նոյնպէս և 'ի ցամաքի։ Դարձեալ մարդկան խնդիր ետ առնել յանցաւորին, զի մարդն 'ի մարդկանէ յանդիմանեսցի։ Դողօնքն այս է՝ որպէս ցուցանի. ամղան մի նկարազեղ. և բաժակ մի կրկին յերկերիւր սատերէն, և լեզու մի ոսկի։ Բաժակն արժէր ութ հարիւր դրամ, իսկ լեզուն ոսկի՝ կշիռք են իբրեւ զլտերան. Թողին զլտերն անուն, և զձեւոյն անուն կարդացին լեզու։ Արծաթն և ոսկին 'ի նուիրացն Աստուծոյ գողացաւ. իսկ զցեցակեր ասրեղէն հանդերձն՝ 'ի նզովելոյն զքաղաքն և զինչս նորա։ Ամենայնիւ գող Աքար է։

Ժ. Յաղագս գաբաւոնացւոցն խաբէլոյն զՅեսու, և ապրելոյ 'ի սրոյ նորա:

Իսկ քանանացիքն անիծեալք, և յիրաւի անիծեալք, ոչ ունէին զերկիրն 'ի լարաբաժին ժառանգութեան, այլ 'ի խաբէութեանց և 'ի պատահմանց. քանզի ժամն Սեմայ ցեղին հասեալ էր: Դատաւոր արդար անիրաւ դատաստան ոչ առնէ. "Անիծեալ, ասէ, որ փոխեսցէ զսահմանս հարց իւրոց": Զայս սահմանափոխութիւնս նախ քանանացիքն անցին զանիծիւքն. իսկ Աստուած իրաւարար ամենեցուն, անդրէն դարձուցանէ: Այլ Յեսու որդի Նաւեայ ոչ 'ի բազմութենէ նոցա զարհուրեցաւ, և ոչ 'ի պատրաստութենէ նոցա սոսկացաւ. առեալ զբազմութիւն զօրաց իւրոց' 'ի Գաղգաղայ 'ի Գարիզին լեառն հասանէր: Զգարիզին եկեղեցացոյց, և զԳեբաղ սարկաւագանոց շինեաց. զոր և անէծս կարդաց 'ի Գեբաղ, և զօրհնութիւնս 'ի Գարիզին:

Եւ զի՞նչ իցեն այս երկու լերինքս հուպ յիրեարս և բաժանեալ 'ի միմեանց: Նմանութիւն երկդիմի բնութեանս մերում. զանէծս 'ի գործս աղտեղի բնութեանս մարմնականս, և զօրհնութիւնս յոգիս և 'ի մարմինս 'ի գործս արդարութեան: Նաև զի ձոր բաժանէ զԳեբաղ և զԳարիզին, և 'ի միջոցին շինեալ քաղաք Սամրին: Եւ այս ոչ է օտար 'ի մեր բնութենէս. 'ի միջի ասեմք զորտին բնութիւն, և զնոյն խորհրդարան հոգւոյ և մարմնոյ: Եղիցի աջակողմն մեր Գարիզին, և ձախակողմն մեր Գեբաղ: Հարկ է ընդ երկու ցնցուղս ականջաց 'ի ներքս մտանել, և ընդ ձայնական հնչումն 'ի սիրտն աղդեալ. զօրհնութիւնն 'ի ներքս առցուք, և և զանէծսն արտաքս հալածեսցուք. ապա երկոքին կողմանքս մեր Գարիզին եղեն և ոչ Գեբաղ:

Բայց այժմ խնդիր է վասն երկձղի փայտիցն' զորմէ թագաւորքն քանանացւոց կախեցան: "Դիք, ասէ, զոտս ձեր 'ի վերայ արանց թագաւորացդ": Յայտնի' քաջ զօրականքն զմարդիկ կոխէին, իսկ 'ի ծածուկ' ըզսատանայ և զամենայն չարութիւն նորա: Կապէ զնա Յեսու որդի Նաւեայ գործակցօքն իւրովք հանդերձ,

և դնէ ընդ ոտիւք երկրաւոր սպառազինաց իւրոց։ Ինքն ոչ կոխէ, զի Յեսուդ անուն հրամայել գիտէ զդատողական իրաւն, 'ի ձեռն նորա կարգէ յուղղութիւն։

Հինգ թագաւորքն զորս կոխեն և կախեն զփայտից, կայ 'ի տեղւոջն ընդդիմառնութիւն և տեսական տարացոյց։ Հինգ թագաւորքն մարդադէմք էին կերպարանօքն, և օձաձեւք էին, հին վիշապին բնակութիւնք. իսկ տեսակք, գործք, տարացոյց, ձեւ՝ բնաւոր օձին։ Ըստ հինգ թագաւորացն հինգ ոտք են օձին, 'ի սողելն իւրում հինգ պատ առնու կրկնելովն։ Կոչեաց զեբրայեցին յԵգիպտոսէ առնուլ զվրէժ անխծիցն յառաջնոյն օձէն և 'ի վարդապետէ նորա։ Կապէ զնոսա Յեսու զհնգեսեան զօձաձեւսն, և տայ կոխել այնմ զաւակին՝ յորում կայծակն կենաց ծածկեալ պահէր։ Մարդկային ոտքն կոխէին, և աստուածային հուրն այրէր զմեղսն։ Զփայտն ոչ հրամայէ կոխել, զի չէր օձաձեւ. թիւ թագաւորացն օձաձեւ էր, զձեւն կոխեաց։

Եթէ 'ի բնութիւն մարդոյս եկեսցես և իմաստուն մտօք քննեսցես, գտցես նման նորա ազատութիւնն. եթէ կամի՝ օձաձեւ լինի, և եթէ կամի՝ աստուածաձեւ։ Առաքինութիւն մարդոյն՝ է աստուածային կերպարանք. զոր Աստուած բնութեամբ ունի, մարդ ստանալով կարէ ստանալ։ Ապա եթէ ընդ երկիր պշնուցու, և զգործովք սորա շաղեալ պատի, ինքն զինքն օձաձեւ արար, որպէս աչօք, ընչօք, ականջօք, բերանով, և հինգերորդ ներքին համօքն։ Միաբան շաղեալք պատին սոքա հնգեքեան, մանաւանդ զի իգական մասամբք, կանացի ձայնիւք մեղկին լսելքն մարդոյն. մեղկեալն հանեալն անկանի անքակութեամբ ընդ զուգակցին, աչք ընդ աչս կքի, և հոտ ընդ հոտ հոծի, բերան համբուրէ, և համք ընդ համս խառնին, զոր խոկումն անուանեցան։ Այս չարք՝ միաբանութիւն առ ծառոյն յայտնեցան։ Յղացաւ օձն զկերպարանս աներեւոյթ չարութեանն և եղեւ արու բնութիւն միջնորդութեամբ պտղոյ ծառոյն. պատրեաց և մեղկեցոյց զհինգ զգայութիւնս իգական մասինն. յապուշ կրթեաց զմիտք կնոջն, և մոռացումն արար զպատուիրանն Աստուծոյ. մինչ չեւ մտեալ 'ի պատերազմն՝ պարտեցաւ 'ի հայելոյն. յորմէ դու պարտիս զգուշանալ։

ԺԱ. Վասն արեգական և լուսնի, որք լուան Յեսուայ և եղեն զօրավիգն նմա 'ի գործ պատերազմի։

Ոչ հինգ թագաւորքն միայն էին անդ, այլ որպէս ամենք յարտաքնոցն ասեն, թէպէտ և առասպելական բանք իցեն, երեք բիւր դեւք, ասեն, որ անկան յերկնից, հանեին զմարդն 'ի դրախտէն, և զբոլոր աշխարհս ընկեցին ընդ մեղօք և ընդ մահուամբ։ Եւ այն օր 'ի Գաբաւոն երեւումն հազարն այն եկեալ էին 'ի թիկունս օգնականութեան հինգ թագաւորացն, թերեւս կարասցեն սատակել զորդիսն եբրայեցւոց, յորում ձրագն ազօտ՝ երեւէր անշիջանելի. և խաւարասէր զօրք չարին բազմանայքին, իբրեւ զթանձրութիւն մարախոյ զերկինս ծածկէին։ Գոչեաց Յեսու որդի Նաւեայ իբրեւ զառիւծ. ներքուստ 'ի վեր դողացոյց, փախոյց և ցրուեաց զնոսա իբրեւ զվատ երամս աղաւնեաց։ Սուր 'ի վերայ եդեալ կոտորէր զնոսա մինչեւ 'ի կողմանս Եզեկայ և Մակեդեայ։ Իսկ նոքա մինչ դեռ փախստեայ երթային յերեսաց որդւոցն Իսրայէլի զառ 'ի թափոջն Սորոնիմ, որոտաց Տէր յերկնից, և սկսաւ արկանել 'ի վերայ նոցա վէմս կարկտախառն. յորոց սատակեցան քանանացիքն առաւել քան 'ի սրոյ որդւոցն Իսրայէլի։

Իսկ եթէ Յեսու բաւական էր առնուլ զվրէժ բարկութեան 'ի նոցանէ, վէմք կարկտին զինչ պիտոյ էին նմա յօգնականութիւն. վերագոյն ասացի՝ թէ իմացար։ Սողուն է սատանայ, ոչ 'ի վերայ հողոյ, այլ 'ի վերայ օդոյ, որ իբրեւ զամպ եկն եկաց 'ի վերայ քանանացւոցն ամենայն բազմագունդ դիւօքն իւրովք։ Յեսուայ նիզակն անդ չկարէր հասանել, վերին օգնականի պէտք էին. զէն առ զէն և ձայն առ ձայն մարդկաձայն բարբառոյն. ձայն որոտմանն երկնաւոր սրոյն՝ հրածին կարկուտն՝ զվերին դիւացն զգունդսն տանջեցին։ Նաեւ Յեսու զԱստուած վերագոյն քան զարեգակն և զլուսին, որ և հասեալ կայր նոցա յօգնականութիւն։ Բանիւ զանուանս լուսաւորացն հրամանաւ 'ի մէջ բերէր Յեսու. այլ մտօք՝ Տեառն լուսաւորացն հրաման տայր, զի կացուսցէ. որպէս և գրեալ է. “Արեգակնդ 'ի վերայ Գա-

բաւոնի կայցէ, և լուսինն 'ի վերայ ձորոյն Այլոնայ »։ Թեթեւագոյն թեւս ունի արեգակն քան զլուսինն. իսկ Յեսու որդի Նաւեայ թեւաւորին և անթեւին հասարակ առնէր զհրամանս պատասխանւոյն. վասն զի զկառավարն ամենեցուն մօտակաց տեսանէր։

Դուռն են լսելիք մտաց. արեգակն և լուսին դրունս ոչ ունին լսելեաց, ընդ որ անկա հնչումն ձայնին 'ի ներքս։ Յորժամ ականջօքդ «պատգամս» զհրամանն հըզօրագոյն, ինքեանք քեզ առանց ականջաց « կող » լսել նմա։ Ոչ հրաձգութիւնս յերկինս խնդրէր, այլ զարեւապաշտոն յանդիմանէր։ Մշտաշարժ ասեմք զարեգակն, որպէս զօդոյ բնութիւն։ Դիւրին է կենդանւոյ կեալ 'ի միում տեղւոջ. իսկ յարաշարժ շնչոյ նորա անհնարին է։ Յեսու այնպէս սաստեաց լուսաւորացն, իբրեւ զանշունչ քարինս ընդարմացոյց՝ միով առ երկուս կշռելով։

ԺԲ. Առ ինչ անուանեցաւ Մասեփատ լալեառ։

Այս եկն եհաս հրեշտակն Տեառն 'ի Գաղգաղա 'ի լալեառ անդր, որ յետոյ Մասեփատ անուանեցաւ. և Դաւիթ մարգարէ կարդաց նմա հովիտս տրտմութեան։ Այն հրեշտակն որ 'ի Գաղգաղա Յեսուայ յայտնեցաւ, նոյն երեւեցաւ 'ի Մասեփատ. և 'ի Բեթէլ խօսեցաւ, և յանդիմանեաց զնոսա։ Համբարձին իսրայէլացիքն զձայնս իւրեանց և լացին դառնապէս առ հասարակ. վասն այնորիկ անուանեցաւ անուն տեղւոյն այնորիկ Լալեառ և Հովիտ տրտմութեան։ Եւ մատուցին անդ պատարագս Տեառն Աստուծոյ Իսրայէլի։

ԺԳ. Վասն գեղմանն Գեդէոնի, որ կրկին ունէր զապացոյցն։

Ասէ Աստուած ցԳեդէոն. Աւարի բաժանումն են զօրքդ, որ ընդ քեզ են. ոչ տամ ես զՄադիամ 'ի ձեռս քո նոքօք. գուցէ պարծեսցին որդիքն Իսրայէլի 'ի վերայ իմ և ասասցեն՝ թէ ձեռն իմ հզօր փրկեաց զիս և ոչ տէր Աստուած։ Քարոզ կարդասցես զօրացդ և ասաս-

ցես. այսպէս ասէ տէր Աստուած Իսրայէլի. եթէ լիցի ոք 'ի ձէնջ վաստակիցս զահի հարեալ՝ դարձցի: Այլ դարձան 'ի ժողովրդենէ անտի քսան և երկու հազարք: Դարձեալ խօսել սկսաւ Տէր ընդ Գեդէոնի և ասէ. Տակաւին բազում են զօրքդ. առ տար զնոսա 'ի ջուր անդր, և անդ զփորձ յուցից դոցա քեզ. և եղիցի՝ զոր ասացից թէ ընդ քեզ երթիցեն, և զոր ասացից թէ ոչ երթիցեն՝ նոքա դարձցին: Այս խօսել սկսաւ Տէր ընդ Գեդէոնի և ասէ. Ամենայն այր 'ի զօրականացդ՝ որ միանգամ լակելով լակեսցէ լեզուաւ իւրով 'ի ջրոյ անտի իբրեւ շուն, 'ի մի կողմ որոշեսջիր զնոսա. և ամենայն որ 'ի ծունկս հարեալ՝ ցուցկ հարկանիցէ, զայն ուրոյն կացուսջիր: Այլ զատան շնաբարոյքն լակելով արք իբրեւ երեք հարիւր. և այլքն ամենայն 'ի ծունկս հարեալ ցուակաթեալ ըմպէին: Կարի բազում են զօրքդ, ասէ Աստուած ցԳեդէոն. յորժամ պատերազմին յաղթես, մոռանաս զիմ բարերարութիւնս, որպէս սովոր են առաջին հարքն ձեր:

Երկու իմացական տեսակ յայտնեցան 'ի տեղւոջ անդ: Զահի հարեալ վաստակաւորքն, քանզի մարմնաւորք են՝ ընդ երկիր միայն աչուցեալ՝ զերկինս ոչ կարեն տեսանել, յաւիտենական կեանքն ծածկեալ է 'ի նոցանէ: Իսկ ինն հազար եօթն հարիւր արքն 'ի ջուրն քննութեան փորձեցան. և նոքա յոլովագոյն երկրաթաւալք են, և զերս կենաց աշխարհիս ցանկացեալք. թաղեալ զկանոնաւոր կեանսն՝ 'ի պորտ և յորովայն աղեալ կան: Թէպէտ և ոչ վաստակաւորք անուանեցան, և ոչ 'ի քաջաց կողմանէ արժան էր զնոսա ասել: Այսպա 'ի ծունկս հարեալ, 'ի վերայ կոծոցն անկեալ՝ արջաբար ըմպէին ջուր. զանասնական բարոյն յայտ արարեալ, որոց երկիրս միայն է բաժին: Ո՞ր 'ի ճանապարհ է երկրագունդ յիւրաքանչիւր տունս դառնալոյ. «Տունք նոցա, ասէ, գերեզմանք նոցա եղիցին»: Վասն զի 'ի հողս իւրեանց կարդացին զանուանս իւրեանց, նոյնք եղիցին ընտանութիւնք նոցա յաւիտեան. չիմացեալք ըզմարդկային պատիւն, հաւասարեցան անասնոց և նմանեցին նոցա: Այս նախատինք 'ի մարգարէէն մարդկան ասացան: Իսկ երեք հարիւրքն սակաւիկ մի զգլուխն խոնարհեցուցեալ 'ի ցանկալի վտակս ջուրցն՝ անուշու-

թեպամբ ծայրիւք մատանց ձեռինն, 'ի ներքս 'ի վեր ընդդէմ երեսացն շթքելով, լեզուօք իբրեւ զշունս լակէինոչ զլաւանդակ ծարաւն արբուցեալ, այլ փոքր 'ի շատէ զերաշտութիւն կոկորդացն զովացուցանել: Եւ լեզուօքն զջուրսն լակէին, մտօքն ցանկացեալ փութացեալ զաւրին թշնամեացն յերկիր թողուլ: Նշանակ է սակ մարդոց սակաւապէտ ստացուածոց. թողեալ զհեշտութիւն մամոնային, ընդ գունդս դիւացն տան պատերազմ. զխայթոց մեղացն փշրեն: Որոց երկիրն եհաս 'ի վիճակ ժառանգութեան քաջացն, նոքա ոչ միայն մադիանացւոցն յաղթեն, այլ եւ անուանեալ աստուածոցն յաղթեն:

Յառաջ քան զընտրութիւն զօրացն՝ նշան 'ի Տեառնէ խնդրեաց Գեդէոն. նա զմի մեկնակ խնդրեաց, Աստուած երիս տեսակօք խորհուրդս յայտնեաց նմա. զգզաթուն եւ զերեք հարիւր արանցն, եւ զսափորոցն՝ հանդերձ ջրագօքն լուցելովք եւ ձայնական փողովքն: Մի՛ բարկանար, Տէր, ասէ. եթէ ընդ իս իցես ճշմարտութեամբ, գալարեցից եդից զգզաթս 'ի մէջ կալոյն. եւ իջցէ անձրեւ 'ի վերայ գեղմանն միայն, եւ շուրջ զնովաւ երկիրն ցամաք մնասցէ: Եւ եղեւ այնպէս. քամեաց զջուրն 'ի գզաթէ անտի, եւ ելից զկուրն: Եւ 'ի վաղիւ անդ ոչ նոյնպէս. երկիրն թացաւ, եւ գզաթն ցամաք մնաց: Ցօղն մի էր, եւ գզաթն նոյն էր. բայց տեսիլ նշանին յերկուս բաժանեցաւ: Շուրջ զգզաթուն լիճք ջուրցն՝ արիւն մադիանացւոցն էր. իսկ ցամաք մնալ գզաթուն՝ արանցն էր ողջանդամ ապրել 'ի պատերազմէն: Բայց իջանել անձրեւուն 'ի վերայ գեղմանն, Հոգին սուրբ Աստուծոյ, որ խօսեցաւ 'ի մարգարէսն, եւ նոքօք զամենայն երկիրս ոռոգեաց: Եւ զի խորհուրդ էր տեսական՝ առժամայն եւ առ 'ի յապա պահուն, ոչ 'ի բաց հեղու զջուրն, այլ 'ի կուր մի արկանէ եւ պահէ:

Դաւիթ թագաւոր նոցա եւ մարգարէ՝ յետ բազում ամաց եկեալ, Հոգւովն սրբով ասէր. “Իջցէ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղման„: Եւ եթէ զինչ է տէրութիւն նորա՝ յայտ առնէ. “Առաջի նորա նախ հնդիկք անկցին„: Սանձողն զերծեալ յերկնային հրեղէն բնութենէն անկաւ յերկիր, եւ եղեւ հնդկագոյն: Բայց որդիք ժողովրդեանն՝ որ փարիսեցիք անուանեցան, 'ի

Սողոմոնի վերայ առնուն զբոլոր բանս սաղմոսին ։ Զիմաստութիւն նորա անձրեւ ասացին, և զքառասնամեայ զխաղաղութիւնն զինչ արասցեն արդեօք. զի ոչ կարասցէ հասանել 'ի կատարումն լուսնի ։ Որոց առաջի հնդիկն անկաւ, 'ի նա կատարի բոլոր սաղմոսն ։ Իսկ փոխանակ գզաթուն՝ ապաքէն զսուրբ կուսին բնութիւնն ասացաք. և փոխանակ ցօղոյն երկնից՝ զբանական աւետիս հրեշտակին. ապա և փոխանակ կրին՝ ըզմեծ գետն Յորդանանու իմացիր, յոր և զառն Աստուծոյ մկրտեցաւ ։

ԺԴ. Վասն սափորոցն և նոցա կահիցն ։

Արի, ասէ Աստուած ցԳեդէոն. առ զպատանեակն զՓառայ, և էջ 'ի բանակն Մադիամու գիշերի, և լուիցես անդ բանս յօգնականութիւն անձին քո ։ Մօտ անգր մերձեցեալ Գեդէոնի պատանեկաւն հանդերձ 'ի թիւ մի յիսներորդացն դասուց՝ պահանորդ պահանորդի մի զգիշերային տեսիլն պատմէր ։ Երազ տեսանէի, ասէ. նկանակ մի գարեղէն հոլովեալ գայր հասանէր, ասէ, հարկանէր զխորանն Մադիամու, և անդէն կործանէր ։ Եւ որ լուաւն՝ վաղվաղակի զմեկնութիւն երազոյն տասաց. Ոչ է այն այլ, ասէ, բայց սուրն Գեդէոնի որդւոյ Յովասու. 'ի ձեռն նորա մատնեաց ուրեմն Աստուած զմադիանացիսն ։ Եւ էր 'ի գարեղէն նկանակ առակեցան նոքա ։ Գարի անասնոց կերակուր է. զոյ և 'ի մեզ անասուն մասն. բոլոր հողեղէն բնութիւն մարմնոյս անասնական մասունք են. վասն զի 'ի միջէ հողոյ ստեղծեալ եմք մեք և անասունքն, և եկամուտ անմահութեամբն առաւելեալ եմք քան զնոսա ։

Հրաման ետ Գեդէոն և ասէ. Հապա, ժիր կացէք, զի յայսմ գիշերի մատնեաց Աստուած զՄադիամ 'ի ձեռս մեր ։ Զայս ասէր, և առ հուրաքանչիւր սափորն որ 'ի ձեռին ունէր՝ և 'ի նմին ջրագ մի անշիջանելի կառուցանէր, որպէս զսափորն 'ի ձախումն և յաջումն ըզփողն ։ Եւ որով զինու զնոսայն վարեաց, նովին և ինքն կազմեցաւ. բայց յառաջ խաղաց ինքն քան զնոսա, վասն զի գեր 'ի վերոյ է երրեակ թուոյն ։ Ընդ իս հայ-

եսջիք , ասէ . յինէն օրինակ առջիք : Այս ասէր , և 'ի նմին 'ի բանակ թշնամեացն իջանէր , ուժով մեծաւ փող հարկանէր 'ի ձայն եղջեւր փողոյն : Սոյնպէս և Երեք հարիւրքն յերից կողմանց զբոլոր բանակն 'ի մէջ առեալ պատեցին . զսափորսն խորտակեցին , և զճրագունսն յաջ ձեռն առեալ՝ ձախովն զփողսն հարկանէին . այր յիւրաքանչիւր տեղւոջ անցեալ կայր հերեւ զբոց բորբոքեալ . անդադար փող հարկանելով՝ զամենայն բանակն 'ի դղրդումն կացուցանէին : Առանց ոտից ուրուք հասանելոյ և ձեռին մերձենալոյ՝ ամենայն վրանք և խորանք յերկիր կործանեցան . այր զսուր 'ի վերայ ընկերի իւրոյ իջուցանէր . սկիզբն արարեալ 'ի միջումն պահու մինչեւ ցառաւօտն զմեծ մասն բազմութեան բանակին անձամբ զանձինս իւրեանց կոտորէին : Իսկ Գեդէոն և երեք հարիւրքն ընդ տեղիս կալով՝ ըզփողսն հարկանէին , գոչէին խիզախէին և ասէին . Հապա , սուր յաղթութեան Տեառն Աստուծոյ և Գեդէոնի :

Արարուած խեցեղէն սափորոյն 'ի հողոյ է , և վառումն անշէջ ճրագացն 'ի հրոյ և 'ի պատրուգէ , և ձայն եղջեւր փողոյն՝ օդով և կենդանական շնչով մարդոյն , և երեքեան սոքա 'ի մերում բնութեանս բաղկացեալ գոյանան : Արդ այն որ ապականեցաւ 'ի մեղաց՝ 'ի մարմնոյս գոյացութիւն հողեղէն մասն , իբրեւ զանթուրծ սափոր անպիտան եղեալ խորտակեցաւ : Որպէս ճրագն 'ի սափորին՝ և սա ընդ ապականացու մարմնովս անյայտ եղեւ : Սոյնպէս և բանական հնչումն ոչ տայր ձայն յերկինս յերկրէ . վասն զի 'ի մեղաց անտի ապականեալ խանգարեցաւ մարմնաւոր գործին . իբրեւ զհող անբան և անմռունչ անկեալ դնէր 'ի մարդոյս բնութիւն ընդ ոտիւք մահու . ոչ յանդորրութեան գոհանալ մարթէին զԱստուծոյ , և ոչ 'ի նեղութեան պաղատել առ նա : Իսկ մերոյ բնութեանս ճշմարտութեամբ առ 'ի մկրտութիւն մերոյ տեառնի : Անթուրծ սափոր 'ի ջրոյ թըջի . իսկ մեր անթրծութիւնս ընդ թրծի , և թանձրութիւնս անօրանաց հարստութեամբ , և ճրագն որ 'ի ամս՝ լուցեալ բորբոքի : Եթէ միայն 'ի տեղւոջն հաստատեալ կայցեմք՝ լուցեալ անշիջանելի իմացական ճրագաւն , նոքին անձամբ զանձն հարկանէ թշնամին մեր , և խափանեալ լինին պատրաստութիւնք նորա 'ի մէնջ : Որ-

պէս և ինքնասաց ձայն Աստուծոյ յայտ առնէ 'ի սուրբ յիշատակարանին. “ Եթէ սատանայ զսատանայ մերժէ, յանձն իւր բաժանեցաւ, անցեալ ուրեմն է տէրութիւն նորա „: Եւ ճշմարիտ առակօք յայտ առնէ. տուն և թագաւորութիւն որ յանձն իւր բաժանի, ոչ կարէ կալ հաստատուն:

Ապա խօսել սկսաւ Գեդէոն և ասէ. Խնդրեցից և ես 'ի ձէնջ խնդրուած մի, եթէ տայցէք ինձ. այր իւրաքանչիւր 'ի զօրականաց եկեսցէ առ իս, բերցէ գինդ մի ոսկի: Ասեն ամենեքեան. Հաւասիկ տամք: Տարածեցին բաճկոն մի մեծ, և բերին այր իւրաքանչիւր գինդ մի և ընկենուին 'ի շեղջակոյտ անդր. և եղեւ շեղջակոյտ գնդացն՝ ոսկւոյ լտերս իբրեւ հազար և եօթն հարիւր: Եւ առ ինչ արդեօք զգինդսն մեծարգոյ համարեցաւ քան զամենայն: Յայտնի է և ոչ կարեմք թաքուցանել. յորժամ գինդք ձօնեալք զականջաց կախիցեն կամ զարանց կամ զկանաց, լսելիք մարդոյն պղծելով պղծեցան 'ի շարժել գնդացն. զոր Տէր գնդացն յիշէ, որում ձօնեցանն: Յորժամ դուռն լսելեացն խարխարեցաւ, բոլոր բնութիւն մարմնոյն աւերեցաւ, ընդ նմին և հոգիքն խարխարեցան: Մի լսելիք են բարւոյ և չարի. դատաւոր ընտրող միտքն լինին և վարդապետ 'ի ներքս անդր: Կողոպտեաց եհան զգինդս նոցա, ընդ նըմին և սրբեաց զայլանդակ լսելիս նոցա:

Սուր եկի արկանել յերկիր. ոչ կոտորել ասաց Տէրն, այլ քակել զայր 'ի հօրէ և զդուստր 'ի մօրէ. և եղիցի տանուտեառն թշնամիք՝ ընտանիք իւր: Աստուածային սուրն զմեղացն կապանս կտրեաց, և քակեաց զմեզ 'ի նոցանէ: Հայր և մայր կարդացաք քարի և փայտի, այլ և պաշտեցաք եւս. այսուհետեւ ոչ նոյնպէս անուանեմք, այլ 'ի պէտս հրոյ և շինուածոյ մեզ ծախեմք: Եւ այսպէս փոխանակ պատուոյ թշնամանեմք և անարգեմք զնոսա:

ԺԵ. Վասն դստերն Յեփթայեայ և պատարագել 'ի հօրէն:

Աստուած որ զմիս զուարակաց ոչ ուտէ և զարիւն նոխազաց ոչ ըմպէ, զիա՞րդ արիւն մարդոյ քաղցրանայցէ նմա. զոր և մարդոյս բնութիւնն ոչ առնու յանձն առանց գրոյն հրամանի, և 'ի միտս անգամ ուրեք մի՛ անկցի այսպիսի խորհուրդ:

Ահա, ասեն, զԻսահակ խնդրեաց յԱբրահամէ: Ձառնու քեզ յանձն ընթերցուածն զայդ. ոչ ասէ խնդրեալ, այլ փորձեալ զգեղեցիկ կամս նորա՝ յայտնի եցոյց ամենայն մարդոյ, այլ ոչ եթէ զմարդ 'ի պատարագ ընկալաւ: Իսկ ընդէ՞ր, ասեն, պատարագեցաւ դուստրն Յեփթայեայ. ոչ ընդ վայր խոստեցին հեթանոսք զպոռնկորդին չմատուցանել 'ի քրմութիւն, վասն զի չէ անապական ծնունդ առ 'ի հօրէ. որպէս բազում խառնուածս ունի մարմնով, բազում ունի և զայլընդակութիւն բարուց: Յեփթայի պոռնկորդի էր, տարագիր հալածական 'ի հարազատ եղբարցն առ 'ի հօրէ. և ամենայն Իսրայէլ վասնեալ զկնի դիցն օտարաց. և որդիքն Ամոնայ անտերունչ գտեալ զաշխարհն՝ հէն բաղայս 'ի վերայ դնէին. Յեղանեսն ձեր յաշխարհէն եգիպտացւոց՝ զաշխարհն մեր հարէք պատերազմաւ և կալարուք. արդ զայն վրէժ եկեալ խնդրեմք: Արդ յայնժամ վտանգի երթեալ ծերակոյտն Իսրայէլի ուխտիւ ածին զՅեփթայի, կացուցին իշխան 'ի վերայ իւրեանց: Իսկ նա տեսեալ զբազմութիւն զօրացն Ամոնայ՝ զարհուրեցաւ 'ի միտս իւր և ասէ. Տէր Աստուած Իսրայէլի, եթէ մատնեսցես զնոսա 'ի ձեռս իմ, և դարձայց ողջանդամ 'ի մեծ պատերազմէն յաղթող, ով և ելցէ 'ի տանէ իմմէ ընդ առաջ իմ, քեզ պատարագ մատուցից: Եւ գործն զբանիցն աջողեցաւ: Ուսի ինձ թէ պատարագն ընդունելի չէ. ահա, ասեն, թէ զիա՞րդ ետ յաղթութիւն նմա Աստուած, և ապրեցաւ Իսրայէլ 'ի հարուածոցն 'ի ձեռացն Ամոնայ:

Մի՛ր զարմանար ընդ Աստուծոյ առ այդ սքանչելագործութիւն: Իշոյն ծնօտիւն կոտորեաց Սամփսոն հազար այր. միթէ ծնօտին տամք զյաղթութիւնն. և կամ որ մաճին փայտիւ զեօթն հարիւրսն սատակեաց: Եւ այն

ծնօտին, և ոչ այն փայտին: Եւ որպէս երկոքեանն, նոյնպէս և դստերն Յեփթայեայ:

Դարձեալ և 'ի պատմութեանն այլ ընդ այլոյ կայ: Որ և եկեալ, ասէ, 'ի դստերաց նորա: Եւ զկնի այնր ասէ, թէ այն միամօր էր նորա: Թուի ինձ՝ թէ և պատմութիւնն ոչ ունի զկարգն հաստատուն: Եւ որ եկեալ 'ի դստերաց իմոց ընդ առաջ իմ, այլ զինչ և եկեալ 'ի տանէ իմմէ: Ի տան մեծի և փոքու գոն անասունք սուրբք և անսուրբք. և եթէ ուղտք և էշք, կամ բնաւ շուն պատահէր ընդ առաջ, միթէ պատարագելիք էին: Եւ նոքա և ոչ ոտ. այլ վրիպական բանք ելին 'ի տագնապ ժամանակին: Համարեաց թէ զդուստրն ուխտեաց. յորժամ ել նա ընդ առաջ՝ ընդէ՞ր վայեաց, ընդէ՞ր պատառեաց զպատմուճանն, ընդէ՞ր ասաց՝ խոչ ընդ ոտն և խոչ ընդ ակն: Եթէ ուխտիւն եղեւ յաղթութիւնն, գոհանալ պարտ էր և ոչ զղջանալ: Ողբօ 'ի վերայ առ և ասէ. Վայ ինձ, դուստր իմ, ընկճելով ընկճեցեր զիս. և ես զբերան իմ բացի վասն քո յուխտ պատարագաց, և արդ ոչ կարեմ դարձուցանել: Աբրահամ զայս ոչ ասաց, որպէս երեւի մեզ: Եբաց զբերան իւր աղջիկն և ասէ. Զիս դարձ, հայր իմ. եթէ խնեւ ես Աստուած զյաղթութիւն Իսրայէլի և ապրեցոյց 'ի ձեռաց ամմոնացւոցն, որպէս և ելին բանքն 'ի բերանոյ քոյ. սրա համարձակ:

Բայց զայն արժան է մեզ գիտել, զինչ է զոր ասաց աղջիկն. Խնդրուած մի խնդրեմ 'ի քէն, հայր իմ, մի արգելուր յինէն. թող երթայց ամիսս երկուս լացից զկուսութիւնն իմ, ոչ 'ի գիւղս և ոչ 'ի քաղաքս, այլ 'ի լերինս: Եւ հայրն վաղվաղակի յանձն առնու և ասէ, երթ դուստր իմ: Մի դատարկաբանութիւն թուիցի ինչ քեզ այսպիսի խնդրուածս աղջկանն. լաւագոյն է քան զյանձնառութիւն պատարագելոյն: Ի լերինս խընդրեցին զկուսն և ոչ 'ի քաղաքս, զի մի յափշտակեալ գտցի աղջիկն յանօրէն մարդոց, և 'ի քաջութիւն առաքինութեանն վստահութիւն խառնեսցի: Իսկ յերկարումն երկուց ամսոցն՝ և այն նշանակ մեծի իմաստութեանն նորա: Հիւանդ որ յերկար ախտանայ, ուծացեալ լինի գութք հարազատաց նորա. փութան տապնալին զելս վշտացելոյն յաշխարհէս:

Այն եհաս ժամանակ պատարագելոյ նորա ։ Ընդ ժողովեցաւ ամենայն Իսրայէլ 'ի Դանայ մինչեւ ցԲերսաբեէ՝ մարդախողխող տեսանելով զհայր առ որդւով ։ Երկու ամիսս լացին 'ի լերին, հնչեաց բարբառ գուժի նորա ընդ ամենայն երկիր, ժողովեաց և ած զբազմութիւնն մարդկան. քանզի կարծեցին ամենեքեան՝ թէ նոր օրէնք դնին, ոչ 'ի մարդկանէ, այլ յԱստուծոյ ։ Սաստկացան վերջին լալիւնքն քան զառաջին երկուց ամսոցն. 'ի միտս իւրեանց այսր և անդր կոծեալ լինէին, յիշելով զԱբրահամ և զժամանակ փորձութեան նորա ։ Ամենայն բազմութիւնն արանց և կանանց զայս խորհուրդ 'ի մտի եդեալ՝ կարծէին զԱստուած այցելութիւն եկեալ հասանել նոցա ։

Եւ ընդդէմ պատարագին իբրեւ կարծիք մնաց նեղեալ տագնապէին, և յայտնութիւն ձայնի ոչ եղեւ վերուստ 'ի վայր, փութացաւ Յեփթայի և եհան զսուրն վաղվաղակի. կափոյց զաչս մտացն յանտեսութիւնն, մինչեւ աղիքն գալարէին 'ի գութ խանդաղատանաց. թէպէտ սիրտն 'ի բերանն էր, հարաւ սուրն 'ի փողս դստերն և կտրեաց ։ Առ 'ի գոչիւն հեղման արեանն, և 'ի հառաչիւն կոկորդին, և 'ի շարժումն բոլոր մարմնոյն՝ առ հասարակ ամենայն բազմութիւնն բոլոր մարդկանն միաձայն միաբարբառ ճչեցին. իբր թէ երկինք և երկիր լացին զմահ միամօրին, զանտանելին յողջակէզ յանհրաման սեղանոյ անտի ։

Մի՛ ոք ամենեւին յանուսումնութենէ զայս պատարագ Աստուծոյ կարծիցէ հրամայեալ ։ Ապա թէ 'ի Պաւղոսի թղթոյ անտի յանդիմանեսցես զիս վասն Յեփթայեայ յիշելոյն, յայսմ վայրի ոչ ելանէր ըստ կարգն մարգարէութիւնն Մովսէսի. որպէս նա զաշխարհս յԱստուծոյ սկիզբն առնէ լինելոյ, և սա զհաւատս ։ Ըստ նմին օրինակի և Ղուկաս աւետարանագիրն վասն մարդանալոյն Տեառն սկիզբն արարեալ 'ի Յովսեփայ՝ երթայ ելանէ յԱդամ և յԱստուած, զչարս և զբարիս 'ի ներքս փակելով կարգաւ առէ զանուանս նահապետացն. զի զաստուածածանօթութիւնն գիտասցես, այլ ոչ եթէ զընտրութիւն մարդկանն ։ Նովին մտօք և Պաւղոս վարի. սկիզբն առնէ վերուստ 'ի վայր յԱստուծոյ արարածոց. յԱբելէ անցանէ գայ առ Ենովք, առ Նոյ և

առ Աբրահամ, առ Իսահակ, առ Յակոբ և յամենայն կարգս ծննդոց նորա : Ի նմին կարգի յիշէ և զԳեդէոն, և զԵփթայէ և զՍամփսոն, զայցելութիւնն Աստուծոյ յայտ առնելով 'ի վերայ նոցա, ոչ 'ի լաւութիւն մարդկան հայեցեալ Պաւղոսի, այլ 'ի մարդասիրութիւնն Աստուծոյ, զոր 'ի չարութենէ 'ի բարութիւնն ընտրեաց. զԵփթայէ յաւազակութենէ, զՍամփսոն յանզաւակունեաց : Այլ քանզի Աստուծով էր յաղթութիւնն պատերազմաց նոցա, բաւական համարեցաւ Պաւղոս արկանել զնոսա 'ի կարգ հաւատացելոցն. միանգամայն և յորդորումն հեթանոսաց բազմութեանն, որպէս և առ նոսա, յԱստուած :

ՃՁ. Առ Սամփսոն :

Գործք հաստատեցան նա բարկութեան 'ի վերայ այլազգեացն. նախ կամէր առնել Աստուած զվրէժ որդւոցն Իսրայէլի. Իսկ անդ էր չնաշէս մի յառիւծուց. գոչեաց և յարձակեցաւ 'ի վերայ նորա : Առիւծ առիւծոյ պատահեցաւ. միոյն հինաւուրց լի չարութեամբ, և միւսն այն նոր կորիւն առիւծու մատաղ յաւուրց, և լի երկնաւոր զօրութեամբն. հին առիւծն գոչէր մեծաձայն ահ արկանելով մատաղ կորեանն. իսկ նա զօրութեամբ մինչէ՝ քամահելով զանոյժ բանս, և փափուկ մարմնոյն հեղձուցանէր : Արդ ուրեմն չարասէր թշնամին մարդկան՝ մինչ դեռ հրեշտակն Աստուծոյ զաւետիս չքնաղ մանկանն հօր և մօրն աւետարանէր, լուաւ զամենայն բան կարգի զոր ասաց նոցա հրեշտակն. դէտ ակն ունէր նմա թէ ո՞ւր կորուսցէ զնա 'ի դեղս : Այլ յորովայնէ 'ի մանկութեանն ոչ կարաց վնասել նմա. եկն եմուտ 'ի չար փափաքանն մոլեգնեալ, կատաղեցոյց և յարոյց 'ի վերայ նորա. թերևս կարասցէ զաստուածատուր շնորհն խափանել, զցանկալի ծաղիկն խամրացուցանել, զարծարծեալ լոյսն Իսրայէլի շիջուցանել : Բազում գունդք դիւացն ընդ նմա եկեալ յօգնականութիւն եկին մտին յառիւծն զազանացեալ. մռնչեաց ընդդէմ եօթնագիսակ մանկանն : Իսկ նա իբրեւ զուխտաւոր քահանայ՝ զաջ ձեռն դնէր 'ի վերայ գլխոյն և զահեակն

արկանէր զներքին կղակաւն. 'ի գիրկս իւր առեալ հեղձուցանէր զերեւակի սրտմտութիւնն, և թմբրեցուցեալ զանմահ չարութիւնն՝ ընդ նմին և զշունչ գազանին քաղեալ հանէր: Բազուկ առ բազուկ կարկառէր, և ձայն առ ձայն բարբառէր, զբազում գունդս դիւացն 'ի բաց հալածէր. ոչ բրաւ ջախջախեալ և սրով հատեալ՝ զգեղեցիկ բնութիւն առիւծոյն ոչ ապականէր, որ էր խորհուրդ բոլոր աշխարհիս:

Եւ յետ բազում աւուրց անցանելոյ 'ի վերայ դիւական առիւծուն, սրբեցաւ նա 'ի նեխ գիջութենէն, թափուր և ունայն մնաց որովայն նորա. թափուր և ունայն կացին երկինք և երկիր, վասն զի ոչ շողացին 'ի սմա հրեշտակք երկնաւորք: Դեւք ձրձիռք մուտ և ել առնէին 'ի փոր նորա, բերէին զեկամուտ դառնութիւնն, և հանէին զբնական քաղցրութիւնն. որպէս և 'ի միջոյ աշխարհիս և 'ի մարդոյ յիւրաքանչիւր՝ քաղէին հանէին 'ի մտաց նորա զքաղցրութիւն բանիցն Աստուծոյ: Մարդիկ կենդանի մեռեալ դիականց նմանէին, հոտ մահու հարկանէր ամենեցունց. կենացն հոտով օծաւ խնկեցաւ մանուկն Սամփսոն, անոյշ հոտովն զառիւծն մեռեալ իւղեաց խնկեաց: Յայն հոտ կենաց դիմեաց եկն պարս մի մեղուաց, եկն և հաճեցաւ ընդ պատրաստեալ ամանն, զտեղի առեալ զետեղեցաւ 'ի մէջ նորա. այնչափ ցանկալի և բաղձալի, մինչեւ ուխտաւոր մանուկն ճաշակեաց և հաճոյ թուեցաւ նմա:

Ընդէն Սամփսոն յաղթեաց և սպան զառիւծն գազան: Օ էն 'ի ջուրց զգեցաւ երկրորդ Ադամ, կապեաց ընկեաց յանապատին զայն առիւծն՝ որ 'ի սկզբանէ սատակեաց զազգս մարդկան: Սամփսոն զմահ առիւծուն ոչ յայտնեաց ծնողաց իւրոց. Տէր մեր յայտ յանդիման քարոզեաց զբեկումն անմահ առիւծուն, և մեզ տուաւ իշխանութիւն տկար մարմնով կոխել զգաժանութիւն նորա: Տէր մեր իբրեւ Աստուած և որդի Աստուծոյ սպան զչար գազանն, հալածեաց զգունդս դիւացն 'ի բնակութենէ իւրեանց, սրբեաց և մաքրեաց զչարահոտութիւնն նորա՝ որ 'ի բոլոր աշխարհիս, իւղեաց և խնկեաց զամենայն նեխութիւնս նորա. և ահա փոխանակ գնդակի մեղուացն՝ հրեշտակք երկնաւորք ել և էջս առնէին 'ի սմա:

Տես զերկոտասան Առաքեալսն և զարմացիր ։ Մե-
ղուք արագաթեւք զգաւառին վայրօք եւեթ կարեն շըր-
ջել, զաւուրեայ փոքր ծաղկանցն՝ ի նիւթ մեղուագործու-
թեանն փութան մատուցանել ։ Առաքեալքն անթեւք
և թեւաւորք՝ զհեռաստանն իբրեւ մօտաւորս մեղրա-
գործեցին ։ Զի՞նչ ծաղիկք պատուականք իցեն, զոր
ոչ Առաքեալսն տեսանիցեն. զհօրն աշխարհս նորոգե-
ցին, որպէս մեղուքն զմեռեալ առիւծն նոր ծաղկօք նո-
րոգեցին ։

Գնաց չոքաւ, ասէ, Սամփսոն, կալաւ երեք հարիւր
աղուես և կապեաց ձետ ընդ ձետ երկուս երկուս, և
մէն մի ջահ լուցեալ եդ 'ի մէջ ձետոց նոցա, և արձա-
կեաց զնոսա ընդ անդաստանս այլազգեացն ։ Սատն ս-
րոյ այլաբանութիւն ունի բանս. ուստի զծածուկ զխա-
բիս ոգւոց որ կայ 'ի նմա՝ տեսանեմք ։ Ակներեցի հեթա-
նոսաց որ յԱռաքելոց անտի հիմնարկեցաւ, անդաստան
ամենայնից բոլոր աշխարհս այս երկնացաւ. վասն զի
Տէրն երկնի և երկրի անքակ միաբանութիւն գործեաց
ամենեցուն ։ Մինչ դեռ յայսպիսի հրաշակերտ վայել-
չութիւն ծով և ցամաք առ հասարակ ցնծացեալ բերկ-
րէին, գունդք դիւացն առ հասարակ քայքայեալ ցրուե-
ցան յատարութիւն. քանզի թիւնք հին վիշապին ան-
համեցան. մարդիկ առողջ մարմնով և սուրբ հոգւով
հրեշտակային կեանս կէին յեկեղեցւոջ. յեղակարծումն
ժամու ամպ ագահութեան խստացաւ, առագաստեալ
կալաւ զաչս առատ մատակարարացն, և արգել 'ի նոցա-
նէ զլոյսն իմանալի, որ առ սակաւ սակաւ տարածեցաւ
կալաւ զբոլոր աշխարհս ։ Իսկ զկնի ամենայն չարեաց՝
սատանին 'ի սոցանէ իսկ բորբոքեցաւ հուր անշիջանե-
լի՝ ուսումն այլանդակաց, որ վատթարագոյն են 'ի տե-
սանել քան զերամակս ձրձիտ աղուեսուց. հարիւր կեր-
պարանօք բերեն զճշմարտութիւն վարդապետացն, և
սիրտք իւրեանց հեռացեալ են 'ի ճշմարիտն Աստուծոյ ։

Բայց թերեւս ասիցէ ոք. զի՞նչ եւս պիտոյ էր հրո-
կային՝ ծնօտի իշոյն կարօտանալ ։ Քաջ միտ դիր կար-
գաքանութեան գրոցն և անտի ուսանիս ։ Սուրբ ուխ-
տաւոր մանուկն՝ զինչ պիղծ մերձենայր 'ի ձեռս նորա,
որբեալ լինէր. որպէս պիղծ առիւծն և 'ի պղծագործ
մեղուէն, նոյնպէս և ծնօտ իշոյն առժամայն զէն օգնա-

կանութեան 'ի ձեռին նորա, իսկ առ 'ի յապա մաքրութիւն հեթանոսաց. զոր և Տէրն արարածոց սրբեաց: Սամփսոն զյայտնի պատերազմն ոսկերբ վճարեաց. ոսկերբ մարտիրոսացն զյայտնի և զծածուկ մեղս 'ի մարդկանէ 'ի բաց սրբեցին: Իսկ ջուրն, ասէն, 'ի ծնօտէ իշոյն առ ինչ հոսեցաւ: Որ զյաղթութիւն ետ նմա 'ի ձեռն ծնօտին, անտի և զծարաւն յափոյց. որ զէն փրկութեան եղև, նոյն և պատճառ կենաց նորա. էարբ զջուրն 'ի ծնօտէ իշոյն, ընդ նմին էարբ զխնամատութիւնն Աստուծոյ: Անձին իւրում կարծէր Սամփսոն զյաղթութիւնն մեծ պատերազմին. ծնօտին ոչ տայր զյաղթութիւնն: Այն ծարաւ կռուել ընդ նմա. զոր ոչ ծանեաւ 'ի յաղթութեան իւրում, ծանեաւ զնա 'ի սաստիկ ցամաքմանն իւրում: Այլ սակաւիկ մի ակնարկեցից և արդ 'ի ժամանակիս յայս: Ոսկրն ցամաքեալ անասնոյն՝ անյուսալի էր թէ ջուր ելցէ 'ի նմանէն. աշխարհս ցամաքեալ յարդարութենէ՝ յանյուսալի էր թէ առաջին յանցանքն ձրի թողցին:

Ընդ նա, ասէ, 'ի Գազա և եմուտ առ կին մի պոռնիկ: Յուզեցան արք քաղաքին և զգիշերն ամենայն պահեցին զնա պահապանօքն: Բայց քանզի շնորհքն Աստուծոյ առ նմա էր, առաւել քան զչափն գործեաց նոր սքանչելիս. զդրունս քաղաքին սեամբքն հանդերձ և դռնափակօքն թափեաց և եբարձ՝ գնաց 'ի լեառն մի բարձր, և կանգնեաց 'ի լերինն Քեբրոնի: Որոյ տեսեալ է զքաղաքն և զդրունս քաղաքին, նա զարմանայ առաւել քան զյոյժ: Այս է այս օրինակ իջանելոյն Տեառն մերոյ 'ի դժոխս և աւերելոյ զքաղաքս մահու և այլ ոչ յիշելոյ 'ի վախճան ժամանակս: Ապա եթէ ինչ վասն կնոջն պոռնկի սոսկասցին միտք քո, զմտաւ ածջիր դու զբոլոր աշխարհիս զպոռնկութիւնն և զարմացիր յոյժ, զի ոչ խորշեցաւ և ոչ գարշեցաւ:

Բայց խնդիր առաջի կայ, թէ զինչ իցէ յեօթն մասունս բաժանումն գիսակաց նորա. որում և հրեշտակն պատուիրեաց զգուշութեամբ՝ չելանել երբէք երկաթոյ 'ի գլուխ նորա: Եւ եօթնեկին՝ որպէս ասացեալ է մեր յայլում վայրի, վասն զի մի է զօրութիւնն աստուածային գրոց, վեց 'ի նոցանէ զվեցօրեայ արարածքս նշանակէ՝ որ 'ի սկզբանէ. իսկ եօթներորդն՝ սուրբ փա-

փոխ նուիրեալ Աստուծոյ օր, որ և անաշխատելի զօրութեան հանգիստ անուանեցաւ ։ Այս արիւն աշխարհս և աշխարհաւորն յուխտաւոր մանկանն սպաւորեալ կերպարանեցաւ ։

Եւ այս շնորհք տեսանելին 'ի Սամփսոն ըստ եօթներեակ գիսակաց նորա թուոյ, յօրինակ գեղեցիկ շառաւեղին՝ որ բուսանելոց էր յարմատոյն Յեսսեայ, յիշելով զբանն Եսայեայ մարգարէի, զեօթն մասունս Հոգւոյն որոց ասացեալ 'ի վերայ նորա ըստ նորին թուականին ձեւոյ. և Պաւղոս առաքեալ ասէ 'ի կորնթացւոց թղթին, "Եդ Աստուած յեկեղեցւոջ առաքեալս, մարգարէս, հովիւս և վարդապետս, զօրութիւնս, բժշկութիւնս, ազգս լեզուաց, թարգմանութիւնս լեզուաց"։ Այս շնորհք եօթնեկի առ իւրաքանչիւր անձին տեսանի. և եթէ մի յայսցանէ պակաս իցէ յումեքէ, խեղ ասեն նման և ոչ ողջանդամ. ապա թէ եօթնեքեան կորիցեն, մեռեալ է և ոչ կենդանի ։

Այլ զինութիւն հերացն պատմութք ասել՝ թէ զիարդ 'ի նոսա զօրութիւնն Հոգւոյն բնակեալ էր, և ոչ 'ի սիրտս և ոչ 'ի միտս և ոչ յայլ մասունս արդարութեան ։ Զի ահաւանիկ առ պիղծ կանայս մտանէր նա, և Հոգին Աստուծոյ ոչ թողոյր զնա 'ի ձեռաց. և 'ի կտրել հերաց նորա՝ եթող զնա շնորհքն Աստուծոյ, տկարացաւ և եղեւ իբրեւ զմի յանուժ մարդկանէ ։ Հոգի օծութեան ունէր Սաւուղ թագաւորն. նոյն Հոգին զօրացոյց զնա 'ի պատերազմին ամմոնացւոց. այլ յանցանելն իւրում զպատուիրանաւն Աստուծոյ՝ իսկոյն յընքենէ ընչեաց զօծութիւնն Հոգւոյն սրբոյ. եթող զնա Տէր, և սկսաւ չարչարել զնա այսն պիղծ ։ Արդ ոչ օծութեան Հոգի ունէր Սամփսոն, այլ զօրութեան. և զօրութիւնն դեռ 'ի նմա էր, ոչ կարէին պիղծ կանայքն խափանել զզօրութիւն նորա. բայց յորժամ հատան գէսք նորա, ընդ նմին հատանի և 'ի մեծ զօրութենէ ։ Եւ էր նշանակ բազմութիւն մազոյն օրհնութեան Աստուծոյ, որ առ Աբրահամու. "Եղիցի զաւակ քո իբրեւ զաստեղս երկնից և իբրեւ զաւազ առ ափն ծովու"։ Զի բազմութիւն աստեղաց և զաւազ ոչ ոք կարէ թուել, բայց միայն որ արարն զնոսա. նոյնպէս և զհերացն բազմութիւնն ոչ ոք գիտէ ։ Առաւել քան

զայս խմաջիր զբազմութիւն զօրութեանն Աստուծոյ որ 'ի Սամփսոն ։

Արդ էր ըստ խմաստութեան Հոգւոյն հոգի ունաղայն . այլ որպէս այլաբանեն նովաւ զօրացեալք , Սամփսոն օրինակ աբրահամեան տոհմին ազգի ժողովրդեան իւրեանց , յորս գոյր զօրութիւն օրհնութեան Աստուծոյ , այս ինքն յեօթնեկի գիսակսն՝ որով պսակեալ էր գլուխն Սամփսոնի դատողին Իսրայէլի , որ ցուցանէր զզօրութիւն օրհնութեան Աստուծոյ 'ի նախնին իւրեանց յԱբրահամ , որպէս 'ի նախնին մեր յԱդամ՝ թէ "Աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր ,, . նոյնպէս և առ Աբրահամ որդին Ադամայ՝ թէ "Բազմացուցից զաւակ քո իբրեւ զաստեղս երկնից և որպէս զաւազ ,, ։ Իսկ գլխաւորեալ անձեցաւ և աւարտեցաւ առ երկոցունց օրհնութիւնն Աստուծոյ , որպէս աւետիք բարեացն Աստուծոյ վասն ուխտաւոր մանկանն , այս ինքն առ ծնօղսն Սամփսոնի ։ Իսկ մինչ դեռ կայր նա յուխտի նորա , զհազարսն հալածէր և զբիւրսն շարժէր . և յորժամ բացամերժեաց զանձն իւր յուխտէն Աստուծոյ , յայնժամ 'ի ձեռն պոռնկին մատնիչ գտաւ սուրբ խորհրդոցն Աստուծոյ . զի պարապնդեցաւ կարանօք եօթնագիսակ վարս գլխոյ նորա , նշանակ և ենթակայ եօթնարփի շնորհացն Աստուծոյ . 'ի պոռնկէն յապաւեալ լինէր . կորեցաւ զօրութիւնն . նախ թմբրեցուցեալ զնա անապակաւ , և անդէն 'ի մէջ ծնգաց իւրոց գամեալ զնա՝ լքմամբ զքաջ և զարի հսկայն . մոլեկան ախտիւն իբրեւ պարանաւ պարաւանդեալ զնա հոգւով՝ նախ կուրացոյց զնա մտօք , և յետ այնորիկ մարմնով 'ի ձեռս այլազգեացն ։

Եօթնեկի յանցանօքն շիջոյց յինքեան զեօթնարփի շնորհս Հոգւոյն եօթնագիսեան հերացն հատմամբ . ծաղր և այպն եղեալ առ հասարակ եօթն ազգացն քանանացւոց ։ Ո՜ որ այսպէս լքեալ և աղքատացեալ գօլով կացուցին զնա յաղօրիս , զայն՝ որ կոտորէր և մանրէր և առ աթուր հարկանէր զայլազգիսն յօրինակ ազգի ժողովրդեանն իւրոյ . որ նոյնպէս եօթնեկի յանցանօքն իւրեանց առ որթուն , և որպէս պղծեցանն 'ի Բեեղբեգովր՝ զեօթնաջահեան աշտանակն լուսոյ ազատութեան իւրեանց նուաղեցուցին յանձինս իւրեանց , և

որպէս պատուհասեցան 'ի գործս իւրեանց, և պատժեցան 'ի գնացս իւրեանց: "Ահա երդուայ 'ի բարկութեան իմում, թէ մտցեն 'ի հանգիստ,,. և ոչ մտին, այլ անկան տարապարտ յանապատին: Յեգիպտոս եկին մարք եւ ելեալքն յԵգիպտոսէ. իսկ բուսեալքն 'ի նոցանէ՝ յորս գոյր կայծակն օրհնութեան, զօրացեալ նովաւ ժառանգեցին զերկիրն աւետեաց: Այնպէս վաղվաղեցին սոքա որպէս և հարքն իւրեանց, և մոռացան զգործս Աստուծոյ. խառնակեցան ընդ հեթանոսս, հաւատարիմ ծառայեցին կռոց նոցա որպէս ըզնոսա. և ոչ անսացին նմա, այլ արտաքոյ Աստուծոյ խորհրդոցն կացուցին զանձինս իւրեանց. վասն այնորիկ տիրեցին նոցա ատելիք իւրեանց, և խոնարհ եղեն 'ի ներքոյ ձեռին եօթն ազգին քանանացւոց: Այլ թէպէտ և բազում անգամ փրկեաց զնոսա, այլ նոքա առաւել քան զհարս իւրեանց դառնացուցին զնա 'ի խորհուրդս իւրեանց: Այլ ահա յապաւեալ և հատեալ նուաղեցան քան զամենայն ազգս, թէպէտ և արմատն ոչ հատաւ և ճիռ ողկուզին ոչ ապականեցաւ, զի օրհնութիւն Տեառն գոյր 'ի նմա, որպէս ասէ բան մարգարէին. "Եթէ ոչ Տէրն զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ, իբրև զՍոդոմ լինէաք և Գոմորայ նմանէաք,,. և դարձեալ. "Ոչ ապականեսցէ իշխան Յուդայ, և մի պետ յերանաց նորա,,, որ էր յարմատոյն Յեսսեայ: Որ թէպէտ և ելեալքն յԵգիպտոսէ հարքն և ծնունդք նոցա խոտորեալք գտան և թիւրեալք, և բազում եղեն քան զհեր գլխոյ անօրէնութիւնք նոցա, զի ոչ կացին յուխտի նորա, համբարձ զձեռն իւր 'ի վերայ նոցա սատակել յանապատին, և 'ի Քանան մատնել այլազգեաց հեթանոսաց:

Այլ գլուխ ամենայն չարեաց նոցա՝ որ յետ ծառայից նորա, որ կոտորեցին, և զսեղանս նորա կործանեցին, որպէս ամբաստան լինի Եղիա զԻսրայելէ, և 'ի Տէրն մեղան, զժառանգութիւնն յափշտակել կամելով զժառանգն սպանին. և այնու հետև կոտորեցան և սպառեցան միակքն անիրաւութեան, որպէս զխաւակքն այնոքիկ յապաւեալ և հատեալ՝ որ էր 'ի գլուխ ուխտաւորին Սամփսոնի. և զայգին նոցա ետ 'ի ձեռս այլոց մշակաց՝ որ եղեն բումնիկք նորոգ և կենդանի, պտղաբեր եղեալ և աճեցունք

յարմատոյ անտի նահապետացն, այս ինքն 'ի գլխոյ ժողովրդեանն: Եւ զբանն զոր երդմամբ եդ ընդ Աբրահամու և ընդ զաւակի նորա յաւխտ յաւիտենից, յիշեաց 'ի ձեռն զաւակի նորա՝ որ եղեւ նմա ըստ մարմնոյ, որով օրհնեցան ամենայն ազգ երկրի: Նորածնեալք 'ի հաւատոց անտի Աբրահամու՝ կոչեցան որդիք նորա և ժառանգք աւետեաց նորա, և եղեն նորատունկք սիրելի՝ ծնունդք լուսոյ շուրջ զսեղանով խաչին զօրացեալք Հոգւովն 'ի փառս: Որով կարողք եղեն ամենայն զօրութեամբ խաչին 'ի դիմի հարկանել չարին յաւուր մարտի և պատերազմի, և եօթնպատիկ հատուցանել նեղչացն նեղութիւն ծառայութեան, և նեղելոցն պատրաստել հանդիստ ազատութեան: Եւ այսպէս ըստ բնաւորին՝ նորագործ կազմածօք մտեալ 'ի տուն հզօրին՝ զգործիս նորա յափշտակեցին. և զամուրս նորա հանդերձ սեամբքն հաստատելովք, որ իբրեւ պարանօք եռահիւսիւք երրորդական միականութեամբ նորին զօրութեամբ, և աջեայն և ահեկեացն հակառակօքն միաբանելովք 'ի կործանումն զօրացեալք հակառակամարտին, յինքնաքարշմամբ զողնայարս տանց նոցա 'ի միմեանս՝ խարխարեալ փլուցին 'ի վերայ գլխոց նոցա. և կորուսին զանձինս իւրեանց չարչարանօք 'ի նոցանէ ընդ այլազգիս վասն աստուածահրաման օրինացն և սքանչելի անուան նորա, զի գտցեն զնա յաւուրն յետնում և պահեսցեն 'ի կեանսն յաւիտենականս: Եւ այսպէս զնախատինս նախատչացն զմեզ՝ բարձին 'ի մէնջ, և փառաւորեցաւ անուն սրբոյն Իսրայէլի. և պարծիմք այսուհետեւ՝ նովին փառօք փառաւորեալ 'ի փառս նախնական մերոյն փառաց:

Նա և այլ տեսութիւն, որ եղեւ շնորհալի գիտակացն նորա. խորհուրդ եօթնօրեայ կենցաղոյս, որով թուով ժամանակս սկսանի, և անդր 'ի նա դարձական յոգնապիսութեամբ բազմանայ, և 'ի նոյն թիւ եօթներեկին կատարի. 'ի միակէն սկսեալ և 'ի մասնականսն բազմացեալ, և 'ի նոյն աւարտումն բոլորեալ, և ըստ շնորհի արարչութեան միմեամբք զօրացեալք: Այնպէս և ըստ ժամանակին եղեալքս 'ի գերագոյն գոյէն գոյացեալք յառաջատելով 'ի յոգնապիսութեան եղանակութիւն, այս ինքն 'ի բնութիւնն, 'ի տեսակ, 'ի դէղ և 'ի վայել-

չութիւն տրամագրդութեան զօրացեալք՝ անհակառակ և անմարտ թերելով ըստ բնութեան, այն որ ըստ թղորին տեսանի։ Իսկ յորժամ ախտակրեցան մասնաւորքն 'ի բոլորին տարբերական այլայլութեամբ, արտամերժեալք եղեն 'ի համազօր իսկականութենէն. 'ի հնութիւնն ապականութեան ստորանկեալ թանական բնութեանս հանդերձ զգայականօք և գոյացականօք, որոց պատճառ գտաւ՝ իշխանականաւն պակասեալ 'ի բարւոյն՝ զօրացաւ չարն հնացուցիչ եօթնակի յանցանօքն նախաստեղծին, յոգնապիսութեամբ առաւելեալ և բազմացեալ քան զհեր գլխոյ. և տռամբք մեղաց պարաւանդեալ ամենայն զգայութիւնք ախտակրեալք գողացեալ եղեն ըստ հեշտութեանն։ Այլ ահա ծառայք գտան այլազգի դիւացն և մեղացն. մինչեւ յայց ել արարիչն և փրկիչն Ադամայ՝ ոչ այլ ուստեք, բայց 'ի բնութեանս եգիտ զկայծակն նորոգման մերոյ հնութեանս. զոր 'ի պատճառս նորա առեալ զմարմին խոնարհութեան մերոյ, վերընծայեալ նորոգեաց ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոց յազատութիւն փառաց որդւոյն Աստուծոյ. Եկեալ ամենայն եղականօքս հանդերձ, որ ըստ ինքեան ապականեցաւ, և ահա փառաւորեալ զօրացան և գտան յաղթողք 'ի վերայ յաղթողին՝ որ կենացն է հակառակ։ Այլ վերաբուսեալք առին հասկ և եղեն յայր կատարեալ, և միաւորական զօրութեամբն յօդեցան 'ի գլուխն Քրիստոս։ Այլ այնուհետեւ յայտնի եղեւ աստուածպետականին Յիսուսի կեանքն 'ի մարմնի մերում. որով կենեղուտ եղեալ, յաղթող գտան մահաբերին։

Այսպէս զանազանի խորհուրդ եօթնագիսակ հերացն Սամփսոնի 'ի խորհուրդ Ադամայ. զի ստեղծ Տէր Աստուած զմարդն հող յերկրէ և զկենդանական շունչն եդ 'ի նմա, և այնպէս արար Աստուած զմարդն 'ի պատկեր իւր. գոյարարողական զօրութեամբն տպաւորեալ վերածեաց 'ի նմանութիւն պատկերի անմահական և անապական իւրոյ փառացն։ Իսկ 'ի ձեռն ուխտազանց յանցաւորութեանն վայրածեցաւ տարամերժեալ 'ի մնկազրեալ յաստուածակերպ փառացն որ 'ի նմա։ Այլ ահա գոյր 'ի ծնունդս Ադամայ հնացուցիչ նոյն զօրութիւնն մահու և ապականութեան. նա և գոյր 'ի զարս

դարս նշան յաւերժական փառաց նորա, անմահականն՝ յաւերժական կենաց նախահօրն. նոյնպէս ընդ անմահիւ անապականն՝ 'ի փոխումն Ենովքայ և 'ի վերացումն Եղիայի. իսկ լուսազգեստութիւն՝ 'ի լուսաւորութիւն երեսաց փառացն Մովսէսի, և զօրութիւն անձինն նորա՝ յեօթնագիսակ 'ի հերս գլխոյն Սամփսոնի: Իսկ յամենայնէդ նուաղիլ սոցա յետ մահուն, տարամերժեալ նորա յետ յանցանացն նշանակէ:

Իսկ առ Սամփսոնի այլ ինն յայտնի նորահրաշ եւս տեսութիւն: Քանզի յետ յապաւելոյն հանդերձ զօրութեամբ զհերս գլխոյ նորա, ընդ երկար ժամանակս աճեաց բուսողօրէն եօթնագիսակ հեր գլխոյ նորա. և 'ի վախճան ժամանակաց իւրոց կանգնեաց նշան յաղթութեան յօրինակ ծննդոցս Ադամայ. որ յետ մահուն և 'ի դժոխս իջանելոյն գոյացուցիչն կենաց՝ կենդանարար նովին սկզբնական կենացն զօրութեամբ դիմեաց 'ի դժոխս, և սերմանեաց 'ի նմա զբուսական զօրութիւնն կենացն հատի, և բազում արդիւնարար ներգործական զօրութեամբ վերաբերեաց ընդ ինքեան ամենայաղթ նշանաւ:

Նա և այլ տեսութիւն: Քանզի զօրութիւնն Աստուծոյ, որպէս ասէ գիր, 'ի տկարութեան առաւել կատարի, որպէս յոլով ունի օրինակ. զի Ադամ՝ որ 'ի պատկեր և 'ի նմանութիւն Աստուծոյ արարաւ, 'ի հողոյ ըստեղծաւ. և Նոյ լաստափայտիւն ապրեցաւ հանդերձ ամենայն կենդանեօք, և սերմն աշխարհի պահեցաւ: Ի ճախոյրճս մականի Յակոբ հօտս բազում ստացաւ. 'ի ձեռն համբակի միոյ գերւոյ՝ զԵգիպտոս բացակայ և մերձաւոր գաւառօք յեօթնամեայ սովոյն կերակրեաց. 'ի ձեռն մունի և գորտի զԵգիպտոս տանջեաց: Մականաւ ծայրիւ հարեալ գաւազանաւն Մովսէսի՝ զհամատարածն վիմատառեաց, նովին և զապառաժն հոսանուտս գործեաց. ձեռաց տարածմամբ Մովսէսի զԱմաղէկ բազմութեամբ սատակեաց. տապանակաւ զՅորդանան 'ի վեր կապեաց, և զԵրիքով 'ի ձայն փողոյ 'ի վայր կործանեաց, զքանանացիսն տկար պիծակօք խայթահարեալ կոտորեաց, և 'ի ձեռն փողոյ և ջահի զՄադիամ վանեաց. և ծնօտիւ միով ցամաքելով Սամփսոն յայլազգեացն զհազարսն սատակեաց և զբիւրսն վա-

նեաց ։ Որպէս պաղատիտ թզոյ զվէրսն Եզեկիայի բժշկեաց, այսպէս տկար և չնչին հերով երկնային և ոչ երկրաւոր ցուցանէր յաղթութիւն. զի ոչ մարդոյ երեւոյթ զօրութիւնն, այլ Աստուծոյ անտեսականի. զի ոչ յոսկերաց ստուարացելոց, այլ 'ի հերաց նուաղացելոց. զի առաւելութիւն զօրութեանն իցէ յԱստուծոյ՝ և ոչ 'ի մէնջ, յանդիմանութիւն թերահաւատին Իսրայէլի ։

Եթէ այր մի եբրայեցի այնչափ զօրանայր շնորհօքն Աստուծոյ՝ որ ենթակայացեալ էր յեօթնագիսեան հերս գլխոյ նորա, անպարտելի զօրութիւն ցուցեալ՝ միայն յանձն իւր ցուցանէր զբոլոր ազատութիւն ազգի ժողովրդեան իւրոյ, վասն որոյ դատեաց զԻսրայէլ ամս քսան, որչափ ևս առաւել բոլոր ազգն հազարօք և բիւրօք՝ եթէ կացեալ էին յուխտին Տեառն և ըստ հրամանց նորա գնացեալ ։ Իսկ արդ ապախտաւոր գտաւ շնորհացն Աստուծոյ, և մոլեկան ախտին երկիր եպագ Սամփսոն. և անդէն մերկացաւ 'ի շնորհացն, լքաւ և կնատեցաւ. ուստի և ուստերաց և դստերաց հեթանոսաց յաղօրիս համակեալ, այպն և խաղ եղեւ նոցա ։ Որպէս և ամենայն Իսրայէլ յորժամ որթոյն երկիր եպագ, և երինջուցն զոհեաց, Բամաւսեայ նուիրեաց և զԲահաղ պաշտեաց, 'ի Ճանճիկն Ակկարոնի հարցանէր և նըստեալ լայր զԹամուզ, յայնժամ մատնեաց 'ի գերութիւն զզօրութիւնս նոցա, և 'ի սուր հեթանոսաց էած փակեաց զնոսա, և ոչ ոք էր որ օգնէր նոցա. և այսպէս լի եղեւ նախատանօք 'ի մէջ հեթանոսաց ։

Իսկ Սամփսոն որչափ նախատեցաւ 'ի նոցանէ, այնչափ լի արար զերեսս նոցա անարգանօք 'ի յաճել հերացն և 'ի զօրանալ շնորհացն Աստուծոյ 'ի նմա ։ Այսպէս և Իսրայէլ յետ դարձի գերութեանն. յորժամ հայեցաւ Աստուած 'ի նեղութիւնս նոցա, յայնժամ յիշեաց զուխտ իւր՝ որ ընդ Աբրահամու, և զղջացաւ փոխանակ նոցա ըստ բազում ողորմութեանն. այց արար և ժողովեաց 'ի հեթանոսաց զորդիս ազգի ժողովրդեան իւրոյ. և այնուհետեւ ոչ ասէին 'ի նոցանէ՝ թէ ուր է Աստուած նոցա ։ Եւ ահա յայտնի եղեւ զօրութիւնն Աստուծոյ 'ի վերայ նոցա առ 'ի խնդրել զվրէժ մահու յատելեաց իւրեանց, և հատուցին դրացեայ

եօթնպատիկ։ Եւ այսպէս փառք Աստուծոյ ծագեցաւ առ նոսա, որով փառաւորեալ պարծին 'ի Տէր․ զի նմա վայել է փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն։



# ՅԱՂՕԹՍՆ ՈՐ ԱՍԷ

# ՀԱՅՐ ՄԵՐ ՈՐ ՅԵՐԿԻՆՍ

Ի պարզ բնութեամբ, և առաւել ունի զբարձրութիւն բանից. 'ի վեր հայեցոյց, և զԱստուած Հայր ուսոյց ամենեցուն. որդւոց առ Հայր կարդալ՝ անձուկ գըթոյն ստիպէ զնոսա, և կամք կարօտութեանն զՀայրն ածէ 'ի գութ ողորմութեան։ Ըստ կամաց Հօրն՝ և որդիքն պարտին լինել. ապա և Հայրն ըստ կամաց որդւոցն՝ զպէտս նոցա կատարէ, և բոլոր մեծութեան իւրոյ զնոսա առնէ ժառանգորդս։ Հայրդ անուն՝ մի է հոգեւորաց և մարմնաւորաց. պէտքն ըստ մասանց բաժանեալ որոշին 'ի միմեանց։ Օ երկրաւոր հարս ախտք ցանկութեան մարմնոյ շարժեցին յորդեծնութիւն, ըստ ախտաւոր յղութեանն՝ ախտաւոր որդիս ծնանել։ Փոփոխական է հայրութիւնն. երբեմն որդի եղեւ հայր. Նա հրաժարեաց 'ի կենաց աշխարհէս, բարձաւ 'ի նմանէ հայրութիւնն. 'ի տեղի մատեաւ որդին և եղեւ հայր, և զնոյն ճանապարհ գնաց։ Այսպէս փոխանորդութեամբ վախճանելոց է աշխարհս։

Մի է Հայր ճշմարիտ և արարիչ բոլոր աշխարհիս. առանց ախտից յղացաւ, և առանց ցաւոց ծնաւ զամենայն զերեւելիս և զաներեւոյթս. որ ծնաւն՝ նոյն եկեալ ուսուցանէ զորդիսն կարդալ առ Հայրն երկնաւոր, զի մի հանապազ 'ի խանձարուրս և յօրրանս կացցէ աշխարհս, կաթնածուծք և ջամբակերք, թաթաւեալ և թաղեալ գարշելի աղտովք. յորմէ ձանձրացան մարք և ստնտուք, և զերեսս 'ի բաց դարձուցին դայեակք և սնուցիչք։ Այս են սոքա օրէնք և մարգարէք. 'ի ծով լուացին և ոչ կարացին սրբել. ընդ գետս անցուցին և ոչ ողողեցան. յաճախեցին յօճառս և լուացան բարակաւ, և ոչ սրբեցան. զիւրեանցն ածեալ բարձին, ըն-

կեցին և 'ի բաց կացին։ Գթացաւ Հայրն երկնաւոր, խոնարհեցաւ յերկնից յերկիր, եգիտ զամենեսեան յարիւն յապաժոյժ, 'ի զոհս մեռելոտի կռոց պաշտամանն։ Եւ, լուաց, սրբեաց, զգեցոյց զհանդերձն երկնաւոր, և մերձեցոյց անդրէն 'ի նոյն որդէգրութիւնն։ Ուսոյց ըզհայրենի վարդապետութիւնն, զի կարդասցեն առ սիրելի Հայրն երկնաւոր։ Յորժամ, ասէ, յաղօթս կայցէք, մի տղայաբար շատախօսք լինիջիք. Աստուած սըրտին խորհրդոցն է լսող, և բարի գործոցն է հատուցանող փոխարէն բարի։ Բերանով վկայութիւն այսչափ է բաւական ասելն. “Հայր մեր որ յերկինս, սուրբ է անուն քո”։

Մեծ է այս պարգևս քան զամենայն պարգևս առ մարդիկ, Աստուծոյ՝ Հայր լինել մարդկան։ Չիք իշխանութիւն հրեշտակաց զայս ասել. Թէպէտ և հզօրք են և հոգևորք, սպասաւորք են և ոչ որդիք։ Ով մարդ, զգոյշ կաց անձին քում, յորպիսի պատիւ մեծարեցար՝ մինչև Հայր քեզ զԱստուած իշխեցեր անուանել. և զայս եւս ած զմտաւ քով, ըստ Հօրն պատուի և զքեզ ձևացո, զի ծանիցեն վերինք և ներքինք՝ թէ արդարև Աստուծոյ որդի ես։ Բանիւ ծնանի Աստուած զմարդն. Թէպէտ և բանիւ ոչ կարես, մի ըստ մարմնոյդ կամաց թաւթաւիր ընդ երկիր. հատ ընկեա 'ի քէն 'ի բաց զաւելորդ ցանկութիւնս։ Շատ և բաւական համարեա քեզ զհարկաւոր կերակուրսն. մի անցաներ և շուայտանար։ Ի գիրութենէ սոնքանայ մարդ, և 'ի բազում ճարպոյ ելանեն անօրէնութիւնք, որպէս յարբեցութենէ գիջութիւնք պղծութեան. այնպիսին ոչ կարէ անուանել զԱստուած Հայր։ Ոչ ահա քեզէն իսկ վըկայեցեր ասելովդ սուրբ է անուն քո. անուն Աստուծոյ ո՞ կարէ դնել. սուրբն ասելովդ այն է ճշմարիտ անուն Աստուծոյ։ Սուտ աստուածոցն անուանքն ոչ են սուրբ. ոմն գող, ոմն սպանող, ոմն շուն, և ամենեքին իւրաքանչիւր ախտիւքն չարչարանաց. մանաւանդ թէ չիցեն իսկ, և ոչ այլ լինելոց են։ Մարդիկ որ զնոսա աստուածս անուանեցին, նոքա ոչ են ճշմարիտ որդիք Աստուծոյ. որոց ուսուցանէ կարդալ առ Աստուած, և որոց յաղօթման հրամայէ կալ առ Հայրն, նոքօք բանայ դուռն ամենեցուն, զի ամենեքեան ընդ այն դուռն դիմեսցեն

մնանել, զնոյն աղօթս ուսցին՝ աղաչել զԱստուած և ասել. Հայր մեր որ յերկինս, սուրբ է անուն քո: Յորժամ Ճշմարտախօս ուսցին լինել յաղօթսն, ապա և Ճշմարտագործք երևեսցին յաշխարհի, յայնժամ կարեն քակել և 'ի բաց թողուլ զսուտ աստուածսն. որ քարին և փայտեն հայր և մայր կարդային, և 'ի նոցանէ 'ի բաց կացին, և յանպատակ գործոց իւրեանց հրաժարեցին, սրբեցան միտք իւրեանց 'ի գիտութիւն իմաստութեան, և բացան բերանք նոցա համարձակս բարբառել և ասել. "Եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի":

Իբրև թագաւորեաց Աստուած 'ի վերայ ամենայնի, արքայութիւն նորա 'ի վերայ կամաւորաց իւրոց: Միայն, ասէ, եկեսցէ արքայութիւն քո: Այս իբրև զայն, "Ծագեսցէ աստղն Յակոբայ, և յարիցէ այր յԻսրայելէ, և հարցէ և սատակեսցէ զզօրութիւնս Ամաղեկայ": Աստղն ծագեաց, և այրն յարեաւ, եհար սատակեաց զսատանայ, որ էր զօրութիւն հեթանոսաց: Այս կամք Աստուծոյ էին 'ի սկզբանէ, և կատարեցան 'ի գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զայս աղօթս քանիցս պարտիմք ուսանել, և հաւատովք յուսալ յերկրորդ գալուստ նորա, յորժամ ըստ աղօթից մերոց և գործք մեր երևեսցին ստուգութեամբ:

"Եկեսցէ արքայութիւն քո": Ինքն արքայութիւնն ուսուցանէ վասն իւր խօսել. "Էր յաշխարհի, և աշխարհ նովաւ եղև, և աշխարհ զնա ոչ ծանեաւ": Ուսուցանէ Հայր ասել, զի զնա միայն գիտասցես արարիչ աշխարհի, արարչութեամբ՝ բոլորովին, որդեգրութեամբ՝ մարդոյ միայն. որ արարն՝ նոյն և արքայ, և որ եկն՝ նոյն և արքայութիւն նորա. որ բնութեամբ Աստուած մեր, նոյն Հայր մեր՝ շնորհօք աստուածութեամբն իւրով: Յորժամ Աստուած Հայր է ամենեցուն, Քրիստոս եղբայր է ամենայնի՝ որ առնեն զկամս նորա: Էր արքայ, և եղև քո եղբայր: Այս պարգևք մեծ են քան զառաջինն արարչութեանն. յայնժամ ըստ պատկերի Աստուծոյ ասացաւ լինել մարդ, իբրև թէ ըստ օրինակին ձևացոյց. որպէս և կամեցաւ հոգեղէնն հողեղինիս տիպք լինել, զի և սա 'ի նա ուսցի առաքինութեամբ ձևանալ: Իբրև ոչ կարաց միաբանել նմա,

ինքն իսկ զնորա տիպն էառ, որպէս և ինքն գիտէ. ինքն ձեւացոյց անխափանելի և անքակտելի զորպիսութիւնն, անհասանելի և անասելի, միայն հաւատալի և յուսալի, և զնա միայն արժանի սիրելութեան՝ որ մերձն ընդ մեզ խօսի և ուսուցանէ. խօսի ազգակցաւն և ուսուցանէ զաներեւոյթ աստուածութիւնն յերեւելիսս, զի երեւելեօքս զաներեւոյթ արքայութիւնն ծանիցես. որով եկն՝ նոյն և երկրորդ անգամ եկեսցէ։ Այժմ վարդապետութիւնն զաշակերտսն որդիս ասաց, և զծառայս տէրս արարեալ, և զմահկանացուս յանմահութիւն հրաւիրեալ ասելով՝ եկեսցէ արքայութիւն, 'ի զգուշութիւն պատրաստութեան. ապա 'ի հատուցմունս իւրաքանչիւր իշխանութեան։ Որչափ և զքեզ կարասցես վիճակեցուցանել, 'ի մասունս արքայութեան վերաբերել, ըղձական են աղօթքն, և 'ի վեր քան զմնութիւնս մեր պարգեւս խոստանայ։

“Եղիցին, ասէ, կամք քո”։ Կամք Աստուծոյ է սրբութիւն մարդոյն, զի բաժանակից արար արքայութեան իւրում. ոչ զի ոչ կարիցեմք հասանել յայն բաժին, այլ զի դիւրաւ ստանայցեմք զհամբերութիւնն վասն յուսոյն մերոյ իբրեւ զայնոսիկ՝ որոց զաղօթսն ուսոյց. եթէ նոքա կատարեցան ըստ աղօթիցն, ապա և մեք կարեմք. միայն հաւատա յուսա սիրեա, և անդէն կատարեցար խնդութեամբ։ Իսկ եթէ տրտմութեամբ չարչարակից լինիս Քրիստոսի, ինքն Աստուած զօրացուցանէ 'ի համբերութիւնն. և եթէ ոչ գոյր կարողութիւն, և ոչ զայնպիսի զաղօթսն Աստուած ուսուցանէր մեզ։ Յառաջինսն հայեցարուք և քաջալերեցարուք. ոչ զչարչարանսն միայն բաւական համարեցան անձանց 'ի հաւատս, այլ և զմեռանելն քան զապրելն. 'ի նահատակագիրսն հայեցան և կատարեցան։ Այգա՝ բանիւ գովողք եղիցուք, և գործովք՝ զանձինս մեր 'ի նոյն նահատակութիւնն կատարեալք։ Հասարակաց է Աստուած հայր ամենեցուն. հասարակ պարտիմք որդիք լինել ամենեքեան, զի և մի է ժառանգութիւնն զոր բաշխեաց ամենեցուն։

“Եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի”։ Որքան կարէ Աստուած զբոլոր մարդիկ երկնաւորս առնել, զաղօթսն 'ի մեր կամս ընկենու. զի մեք երկրա-

ուրքս՝ մինչէն կարեմք լինել երկնաւորք։ Եւ երին զօրքն ամենեւին կամաց նորա սպասեն սիրով. ընթեալ կան 'ի միաբանութեան փառաւորելով զԱստուած, և յանհագին փառաց նորա ծածկեն զոտս և զերեսս, զի յինքեանս սիրեսցեն զԱստուած. փոխանակ աչօք տեսանելոյ՝ զսէրն բաւական համարին յանձինս իւրեանց. 'ի նոցա սիրոյն և Աստուած զկամս իւր սիրով 'ի նոսա կատարեաց։ Մի՛ փութասցուք մարմնաւոր աչօք տեսանել զԱստուած, զի մի ծախիցիմք տարաժամ։ Սէրն 'ի մէնջ լիցի առ նա պատգամաւոր, և 'ի սիրոյ նորա կատարեսցին կամք նորա 'ի մեզ։ Զոր ինչ ուսուցին մեզ մարգարէքն, զայնու փութասցուք երթալ. քանզի նոքա բանիւք խօսեցան և գործովք կատարեցին. ոչ այլ ոք էր նոցա վարդապետ, այլ որ քեզ զաղօթս ուսոյց. և դու բանիւ ուսիր զաղօթս, և գործով փութա կատարել։ Ոչ հեռի ես 'ի հրեշտակաց, այլ ընդ նոսա կաս յաղօթս, զի ընդ նոսին փառաւորեսցես զԱստուած. որպէս դու ընդ նոսա միաբանիս, նոյնպէս և նոքա ընդ քեզ երգակիցք լինին յաղօթս և յօրհնութիւնս։ Համարձակ բանաս զբերանդ և ասես, “Եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի„։ Մեծ է այս իշխանութիւն քան զառաջին օրհնութիւնն. անդ 'ի վերայ երկրի միայն տիրել իշխանութեամբ. աստ, ասէ, յերկինս և յերկրի։

“Զհաց մեր հանապազորդ տուր մեզ„։ Զերկրաբոյս հացս Աստուած առանց աղաչելոյ ամենեցուն շնորհէ առ հասարակ. “Զմարդիկ և զանասուն կերակրանես դու, Տէր„։ Իսկ որպէս մարթի ասել. սա և հանապազորդ իսկ չէ. տղայութիւն արգելու, հիւանդութիւն կարճէ, կարօտութիւնն խափանէ, մահ քակէ և 'ի բաց հատանէ։ “Հարքն ձեր կերան զմանանայն յանապատին և մեռան. այս է հացն ճշմարիտ՝ որ յերկնից իջեալ. յայսմ հացէ եթէ կերիցէ ոք՝ մի մեռցի յաւիտեան„։ Լսէին 'ի նմանէ զբանն, և ոչ կարէին վաղվաղակի 'ի միտ առնուլ. կրկնէ և երեքկնէ զնոյն բան և ասէ, զի դիւրաւ լուիցեն և հաւատովք ընկալցին ըզբանին զօրութիւն. “Ես եմ, ասէ, կենդանի հացն՝ որ իջեալ յերկնից. յայսմ հացէ որ ուտէ, մի ճաշակեսցէ զմահ„։ Զայս հացս ուսուցանէ յաղօթս խնդ֊

րեւ յԱստուծոյ հանապազորդ։ Եթէ քաջ միտ դնես, ոչ զայս հայս սրբութեամբ ուտէ և ըստ արժանի սմա պատրաստէ զանձն իւր, երկրաւոր արքայութեանս նա ոչ կարօտանայ. 'ի մահկանացու ձեռս անմահ հաց եդեալ՝ անդէն վաղվաղակի և ձեռքն անմահացան. և ուտելով զսա՝ բոլորովին մարդն շնչով և հոգւով և մարմնով հոգիացաւ և բաժանակից եղեւ Քրիստոսի. միայն զսկիզբն զօրութեան մինչեւ 'ի վախճան անարատ պահելով։ Չիք ինչ յերկրաւոր չարչարանաց, որ նմա յաղթէ. արհամարհեալ է առաջի նորա արծաթ, և ոսկի ատեցեալ է յաչս նորա, ցաւ համարի զմեծութիւն աշխարհիս, վասն զի խորհուրդք իւր սրբեցան յազատութիւն երկնաւոր՝ անմահ հացիւն աճեցեալ։ Այն եղեւ բաւական ամենայնի. եթէ տղայ է, կատարելահասակ երեւեցաւ. եթէ 'ի ցաւոց տկարացաւ, զօրութիւն Աստուծոյ 'ի նմա բնակեցաւ. եթէ վախճանեցաւ 'ի կենաց աշխարհիս, զանմահ կեանսն ընդ իւր տարաւ առ Աստուած։ Զայս ուսուցանէր Տէրն մեր յաղօթսն աղաչել առ ինքն՝ զհաց մեր որ ըստ օրէ տուր մեզ, ոչ յերկրէ, այլ 'ի Տեառնէ. յայտ է թէ և ոչ յերկնից, այլ զՏէրն ամենեցուն. "Այս է, ասէ, իմ մարմին, և այս է իմ արիւն,,։ Թէպէտ և անփշրելի էր, վասն սիրոյ քո փշրեցաւ. և զքեզ՝ որ 'ի կամս քո փշրեցար, անփշրելի աստուածութեամբն յինքն յարեաց. "Ոչ թողցես զանձն իմ 'ի դժոխս, և ոչ տացես սրբոյ քում տեսանել զապականութիւն,,։ Յուրբաթու խաչեցաւ 'ի փշրումն մահու. 'ի միաշաբաթոջ զփշրեալ ոսկերսն Ադամայ ժողովեաց և յարեաց յանմահութիւնն, և երեւեցոյց բազմաց ճշմարտութեամբ և ոչ առ աչօք. մի օր հացացաւ 'ի վերնատանն, և հանապազ հացանայ յեկեղեցիս 'ի վերայ սուրբ սեղանոյն. նախ ինքն յինքենէ ճաշակեաց, և ապա զմեզ զամենեսեան ճաշակիցս արար նմին չարչարանաց։ Նա և ոչ այսուհետեւ 'ի չարչարանս է, այլ 'ի հայրենի փառսն փառաւորի 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ, և զմեր ամենեցուն զչարչարանս եբարձ յիւր անչարչարելի աստուածութիւնն։ Զայս յոյս հաւատոց մերոց իբրեւ զխարիսխ հաստատուն պահեսցուք յոգիս և 'ի մարմինս մեր. որպէս սիւն շինուածոյ է հաստատութիւն, հա-

ւանք մարդոյ են անքակութիւն առ Աստուած. որով համարձակութեամբ կարէ բարբառել և ասել. « Թող մեզ զպարտս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց »:

Այս են աղօթք ճշմարիտ, բանական և գործնական. յորժամ դու ոչ պահանջեսցես զպարտս յընկերէն քո առ քեզ, յայնժամ և Աստուած զբոլոր յանցանս շնորհեսցէ քեզ յանմեղութիւն: Լուր Պետրոսի՝ զկարգ ուսաւ 'ի Տեառնէ: Նա եօթն անգամ կամեցաւ թողուլ զյանցանս եղբօրն, Տէրն մեր զեօթն եօթանասուն անգամ ասաց: Պետրոս իբրեւ զմարդ սահման եդ, Տէրն մեր ոչ սահմանեաց զբարերարութիւն մարդասիրութեան աստուածութեանն իւրոյ: Հանապազ մեղանչեմք բանիւք և գործովք մերովք, և Աստուած տեսանէ և զանց առնէ, զի երկայնմտութեամբն իւրով ածցէ զմեզ յապաշխարութիւն. չմեղանչելն իսկ՝ է մարդոյն 'ի կատարեալ արդարութիւն. իսկ եթէ յանցեաւ իբրեւ զմարդ, փութասցի զղջանալ յապաշխարութիւն. Ի բաց են դրունք ողորմութեան նորա, ոչ փակէ ընդդէմ ապաշխարողաց. մանաւանդ որք հաւատովքն գիտեն խնդրել, նոքա և առաքինութեամբ կարեն ձգնել 'ի վաստակս հոգեւորս. նոքա ոչ միայն զպարտսն թողուն ընկերաց իւրեանց, այլ և զինչս իւրեանց բաշխեն 'ի կարօտեալս. զօրութիւն Աստուծոյ է՝ որ ձգէ զնոսա յառաքինութիւն, որպէս և առաջինքն առնէին. « Որ միանգամ, ասէ, գեղից և ագարակաց և ընչից տեարք էին, վաճառէին զիւրաքանչիւր ստացուածս և բերէին դնէին առ ոտս Առաքելոցն »: Տէր մեր զնոսա քարոզս բանին առաքեաց. նոքա քարոզք էին բանին, և ընչից մատակարարք: Զայն բանի յունկն հասանէ, և սէր վերնոյն առանց բանի ուսուցանէր զառատութիւն. ոչ զի աղքատանալ կամէին, այլ զի այլում մեծութեան հասցեն՝ երկնաւորին: Եւ դու յորժամ ընկերին թողուս զպարտիսն քո, ոչ զի ատելով ատէիր զիրսն քո, այլ զի սակաւ ողորմութեամբն զոր արարեր՝ զբազմապատիկ պարտսն քո զոր պարտէիր՝ թողցէ քեզ Աստուած: Օ այս բանից զհետ երթիջիր. յորժամ ընկերին քում թողուս, և դու թողութեան արժանի եղեր:

Համարձակութեամբ բանաս զբերանդ և ասես. « Որ

տար զխ 'ի փորձութիւն, այլ փրկեա 'ի չարէն,,: Ոչ են կամք Աստուծոյ զմարդն տանել 'ի փորձութիւն, այլ ապրեցուցանել 'ի փորձութենէ և փրկել 'ի մահուանէ. զի որ յիւր Որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր ամենեցուն 'ի մահ մատնեաց, նովաւ զամենայն բարիս շնորհէ ամենեցուն՝ որ խնդրեն 'ի նմանէ: Թէպէտ և ոչ է մեր կարողութիւն փոխարէն հատուցանել Աստուծոյ, որչափ կարն է մեր՝ մի հեղգասցուք: Սակաւապէտութիւն մեր՝ 'ի պահս համարեալ է, և չափաւոր արբումն՝ 'ի գինեհատութիւն, միջին հանդերձքն [illegible], և հարկաւոր ստացուածք յաղքատութիւն. վասն երանութեանն հեզաբան լինել, ընկերին ուսուցանել ցածութիւն: Եթէ անքուն ոչ կարեմք լինել, մի ընաւ զգիշերն քնոյ տացուք, զի մի ընաւ մոռացկոտ լիցուք 'ի սաղմոս և յօրհնութիւնս: Եթէ զկարօտութիւն աղքատաց ոչ կարեմք լցուցանել, մի պատառաւ և բաժակաւ կարօտացուսցուք զնոսա: Մի՛ գտցի յափշտակութիւն որբոց և այրեաց 'ի ստացուածս մեր. ամենայն զինչ և իցէ մեր՝ նուիրեալ լիցի Աստուծոյ. յայնժամ և անձինք մեր լիցին նմա պատարագ հաճոյ և ընդունելի: Ամենեցուն փութալ արժան է 'ի պատուիրանս Աստուծոյ՝ առնել և կատարել, արանց և կանանց, ծառայից և ազատաց, զի Տէր մեր վասն ամենեցուն թողութեան եկն. և նորա մարդասիրութեանն վայելէն փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Յաջորդ Ճառքդ գտանին յանուն Եղիշէի Վարդապետի. այլ հարազատութեանն և իմաստիցն չէք երաշխաւորել:

## Ի ՄԿՐՏՈՒԹԻՒՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Հրաշափառ և պայծառ մեծի լուսաւորութեան աւուրս հանդիպեցաք, զմարգարէական զերգս առեալ աղաղակեսցուք սուրբ սրտիւ և կատարեալ հաւատով. «Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ»: Նա և առաքելական քարոզն գոչէ ասելով. «Ահա ժամանակ ընդունելի, ահա օր փրկութեան»: Երկրորդ և վերստին ծնունդ Քրիստոսի ըստ մարմնոյ, յետ առաջնոյ և անպատումն և անհաս և անքննելի ծննդեանն: Այն անժամանակ 'ի Հօրէ ծնունդն ոչ քննելի մտաց մարդկայնոց, և ոչ հասու եղեալ անմարմին և երկնաւոր զօրութեանցն. բայց միայնոյ Հօրն՝ որ զնայն ծնաւ, և ծնիցելոյ միածնին և քննողին Հոգւոյն սրբոյ զխորս Աստուծոյ: Իսկ երկրորդի ծննդեանս ժամանակեայ լինելով մարմնով 'ի կուսէ յառաջ եկեալ, յայտնեալ երկնաւորաց և երկրաւորացս մասնաւորաբար, այլ ոչ կատարելապէս: Իսկ երկրորդս գերագոյն խորհրդոյ զօրութիւն. քանզի ըստ Թուոյ երեսնամեայ գոլով գայ 'ի մկրտութիւն, կատարեալ յամենայնի ըստ աստուածութեանն, կատարեալ և 'ի հասակի մարդկութեանս: Եւ քանզի երից տասանց գործէ զմարդն կատարեալ, ըստ այսմ ստեղծագործեալ և առաջինն Ադամ, խաբեալ յօձէն արտաքոյ լինի փափկութեանն դրախտին. ըստ այնմ կատարելութեան տնօրինեալ երկրորդ Ադամն ջախէ զգլուխ վիշապին 'ի Յորդանանու հոսանսն:

Արդ 'ի սկզբանն շրջէր Հոգին սուրբ առանց կերպի 'ի վերայ ջուրց առ 'ի յօրինել զտարր արարածոց, զոր կոխեաց նախանձաւոր Թշնամին: Աստ Հոգին աղաւնակերպ տեսլեամբ զապականութիւն արարածոց վերստին հրաշագործեաց. զծածկեալ խորհուրդն յաւիտենական ծանոյց, յայտնեալ զանձնաւորութիւն Երրորդութեանն. ձայն Հօր և 'ի վերայ սիրելի միածնի Որ-

դւոյ: Յառաջնումն ապականի երկիր ջրհեղեղաւն կորստեամբ. իսկ աստ կենագործի երկիր ջրհեղեղաւն մկրտութեամբ, ոչ յընկղմումն արարածոց ըստ բնութեանն, այլ զմեղաց ընկղմէ զգործ: Ընդ թաղումն 'ի ջուրսն սեաւ մարդկան զեղծումն գործեաց. աստ թաղումն 'ի ջուրսն նորոգումն և կենաց հաղորդութիւն: Ընդ աղաւնի շղաբեր ունելով, զաւետիս ցածութեան բարկութեանն աւետարանէր. աստ աղաւնւոյ նմանութիւն զկենացն առհաւատչեայ և զմշտնջենաւոր յարակայութիւն առ աստուածութիւնն աւետարանէր ձայնիւ Հօր, որ զեկուցանէր զսիրելութիւն Որդւոյ: Այսօր կուսածինն յամլորդւոյն ընդունի զձեռնադրութիւնն, Աստուածն Ճշմարիտ յորդւոյ քահանայապետին, ամենասուրբն 'ի մեղաց 'ի լցելոյն Հոգւովն սըրբով յորովայնի մօրն: Այս է շարադրութիւն ազգակցութեան Մարիամու առ Եղիսաբեթ, այլ ոչ ըստ ազգականութեան տոհմից. վասն զի ոչ խառնակի ցեղն Յուդայ ընդ ցեղապետսն Ղեւեայ: Եւ զայսոսիկ օրէնսդիրն ցուցանէ:

Արդ զմի ճանապարհ վարեցին Քրիստոս և Յովհաննէս. այլ Քրիստոս տիրաբար և աստուածապէս և մարդասիրաբար, իսկ Յովհաննէս ծառայապէս, մարգարէօրէն և բարեկամաբար. զմի ունելով կարապետ երկոքեան զԳաբրիէլ հրեշտակապետն: Այլ ոչ համեմատի Զաքարիա ընդ Մարիամու. զի առ քահանայապետն ահիւ և իշխանաբար առաքեալ՝ զամլոյ արգանդին պտղաբերութիւնն քարոզէր. և 'ի չհաւանել ծերոյն՝ կապեաց զլեզուին յարձակումն զքահանային: Իսկ առ Մարիամ զաւետիս գալստեան Բանին աւետարանեաց. և 'ի չհաւանել կուսին՝ զՀոգւոյն սրբոյ զեկաւորութիւնն պատմէ կարող այնմ խոստմանն լինել, յիշատակ բերելով զմարգարէականն բան: Աստի և 'ի լեռնակողմն հրէաստանի ընթացեալ 'ի նկատել զասացեալն հրեշտակապետին որ վասն յղութեանն Եղիսաբեթի. որ զազգականութիւնն առ միմեանս համեմատէր, զՄարիամուն առ Եղիսաբեթ. այս ինքն զկուսական արգանդին զյղութիւնն, և զամլոյն զպտղաբերութիւնն յանցեալ ժամանակի:

Արդ մնայ Մարիամ 'ի տուն Զաքարիայ, կեն-

դանի տապանակն ունելով յինքեան զԲանն կենդանի։ Իսկ Եղիսաբեթ ունելով յինքեան յիւրում տապա֊նակին զձայն Բանին կենդանւոյ, և տուեալ ողջոյն Եղիսաբեթի Մարիամ, խայտաց ձայնն ընդ գալուստ Բանին։ Յարգանդէ յարգանդ նոր սքանչելիք լինէին։ Եղիսաբեթի մանուկն յարգանդէ մօրն յորովայնի կու֊սին բնակեցելումն զպարտս երկրպագութեանն հատու֊ցանէր։ Ո՛վ հրաշիցս. 'ի միում վայրկեան ժամանակի յորովայնի բնակեալքն բացայայտեն զճշմարտութիւնն. մինն ծառայաբար մատուցանէր, իսկ միւսն տիրապէս ընդունէր զխայտումն խոնարհութեանն։ Յետ այսորիկ հասանէր օր ծննդեան Եղիսաբեթի. և կոչելով զյոր֊ջորջումն անուանն՝ լուծանի կապանք լեզուին հօրն և քահանայապետին. քանզի ոչ էր պարտ 'ի գալ ձայնին լռել հօրն։ Արդ հասանէ օր ծննդեան կուսին, և խզէ զկապանս նախահօրն քահանայապետին յաւիտենա֊կանաւ, որ կոչեցաւն Յիսուս։

Դարձեալ դադարէ Յովհաննէս յանապատին ամս երեսուն, և առաքի 'ի մկրտութիւն յետ կատարելոյ այնց ժամանակաց։ Լռեալ դադարէ և Յիսուս նոյն֊գունակ. մտեալ ընդ Թուոյ ամաց երեսնից՝ և գայ 'ի մկրտութիւն, անաղտն 'ի մեղաց, առլցեալն անդստին յորովայնէ մօրն Հոգւովն սրբով, առաքեալն 'ի Հօրէ տիրապէս առ առաքեալն 'ի Հոգւոյն սրբոյ յանապա֊տէն ծառայապէս, Տէրն մարգարէից և Առաքելոցն առ Առաքեալն և մարգարէն, սկիզբն և անդրանիկն ա֊մենայն արարածոց առ 'ի յետին մարգարէիցն և առ 'ի վերջին օրինացն և առ անդրանիկն Առաքելոց և առ որ 'ի յայնմ հետէ արքայութիւն Աստուծոյ բռնադատի։ Այս կարապետս՝ կատարած հնոց օրինացն Մովսէսի. և սկիզբն նոր օրինացս՝ Քրիստոս։ Տեսէ՞ր զառ 'ի մի֊մեանց զճշմարտութիւնն հետեւողութեամբ, այլ ոչ համեմատաբար. զի ոչ հեռանձգեալ որոշին նմանու֊թեամբն, և ոչ բովանդակին յարելութեամբ։ Զի թէ֊պէտ և ասիցի ծնունդ և ծնունդ, այլ մինն կուսական, իսկ միւսն ամլական. մին 'ի Հոգւոյն սրբոյ յղացեալ, իսկ միւսն սերմանական 'ի Զաքարիայէ սաղմնաւեալ։ Բա֊զում օրինակս ունի յինքեան Եղիսաբեթ. իսկ 'ի կու֊սութեանն ծնանել և 'ի կուսութեան մնալ մօրն, ոչ

օրինօք և ոչ 'ի մէջ արարածոց լինեալք կամ լինելոց է կարողութիւն. բայց միայն 'ի միոյն 'ի միածնէն ըստ բարբառոյ մարգարէութեանն Եսայեայ՝ որ գուշակեաց Էմմանուէլ զծնիցեալն: Տեսանե՞ս զանջրպետութիւնն 'ի մէջ Քրիստոսի և Յովհաննու, մերձեալ և յոյժ հեռագոյն:

Արդ երկբայ յայտնեցի քեզ և զանուանցն զանազանութիւն զՅիսուսի և զՄկրտչին, պէսպէս և այլազունակ մերձենալով և հեռաձգելով: Նախ տէր Յիսուս, ասի և տէր Յովհաննէս. այլ նա ըստ բնութեան տէր և արարչութեան, իսկ Յովհաննէս ըստ հաստարակաց առ 'ի միմեանց յորջորջմանց: Դարձեալ կոչի մարդ և Յիսուս. սակայն ոչ իբրև զմի 'ի մարդկանէ, զի ոչ ունի ըստ մարմնոյ հայր, որպէս և ոչ ըստ առաջնոյն ծննդեանն մայր: Իսկ Յովհաննու հայր և մայր գոլով յապականացու սերմանէ ունելով զմարդեղութիւնն: Կոչի Քրիստոս ծառայ ըստ մարմնոյ, եթէ "Որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ, այլ պաշտել". ոչ ըստ բնութեանն, այլ կամաւոր աղքատութեամբ: Իսկ Յովհաննէս ըստ բնութեան գոլով ծառայ հաւասար մեզ 'ի ծառայական կերպի: Դարձեալ անուանի արեգակն արդարութեան Քրիստոս, անուանի և Յովհաննէս ճրագ. անուանք լուսաւորութեանն, և զանազանութիւն յոյժ մեկուսի. զի մին զաշխարհս լուսաւորէ անվախճան լուսովն, իսկ միւսն աղօտաբար սուղ ինչ առ աչս մատուցանէ զտեսաւորութիւնն: Ճանապարհ ասի Քրիստոս. իսկ Յովհաննէս պատրաստող ճանապարհին Տեառն: Քարոզէ Քրիստոս աշխարհի ապաշխարել, զի մերձեալ է արքայութիւնն երկնից. քարոզէ և Յովհաննէս. այլ և Յիսուս ընդհանուր տիեզերաց, իսկ Յովհաննէս յատուկ միայն ազգին Հրէից: Գառն է Քրիստոս բարձող զմեղս աշխարհի սակս խաչին. գառն է և Յովհաննէս Հերովդիադայ մոլեգնութեամբն զենեալ: Նա վասն փրկութեան առ 'ի մաւտս որդութեան յաւիտենականի, և սա վասն յանդիմանութեան օրինացն: Կարապետ կոչի Քրիստոս տիեզերաց. կարապետ ասի և Յովհաննէս երկնային կարապետին: Մկրտէ Քրիստոս, այլ 'ի Հոգի և 'ի հուր զկատարեալ մկրտութիւնն. մկրտէ և Յովհաննէս, այլ

միայն ապաշխարութեամբ։ Մկրտեցաւ Քրիստոս դա-
ձեալ արեամբ. մկրտեցաւ և Յովհաննէս արեամբ ձեռ-
նադրեալ 'ի Հերովդիայ։ Պարզէ Քրիստոս որք ընդ
իշխանութեամբ մահու էին 'ի դժոխս. քարոզէր և Յով-
հաննէս նոյն 'ի դժոխս զգալուստ արեգականն արդա-
րութեան։ Յոլով և այսպէս պատմէ կտակ աստուա-
ծային զյորջորջումն անուանցն զանազանութեանցն, որ
բաւականացեալքս կալցին։ Բայց և ոչ զմեծն և զառա-
ւելագոյնն թողում. ասել արժանաւոր վարկանիմ զան-
զուգականն և զարարչականն։ Աստուած է Քրիստոս,
աստուածացոյց և զՅովհաննէս. Քրիստոս բնութեամբ,
իսկ Յովհաննէս ըստ նորին։ Որպէս է որդին Աստու-
ծոյ ըստ բնութեանն Աստուծոյ, իսկ Յովհաննէս և որ
ըստ նորա՝ հաւատովք որդիք ըստ շնորհաց։ Այլ մի՛
հիացուցէ զքեզ ասացեալքդ՝ եթէ աստուածացոյց ըզ-
Յովհաննէս. որ և զիս աստուածացուցէ, ըստ այնմ՝
եթէ երեւեսցի Աստուած 'ի մէջ աստուած եղելոց և
թագաւորաց. քանզի ասէ մարգարէութիւնն. "Ես ա-
սացի թէ աստուածք իցէք, կամ որդիք բարձրելոյն".
այլ և առ Մովսէս ասէ. "Ետու զքեզ աստուած փա-
րաւոնի"։ Ըստ այսմ օրինակի ասին սուրբքն աս-
տուածք, այլ ոչ ըստ անզուգական արարչութեանն։

Այլ դարձեալ վերստին երկրորդելով զկարապետին
շարադրելով զանուանսն և առընթեր զփրկչականն ա-
նուն, զի 'ի մեծի այսմ աւուր ընծայեցուցից 'ի լուսա-
ւորական յայտնութեանս զբանից իմոց զպտուղ։ Առա-
քեալ և մարգարէ առաքեցելոյն 'ի Հօրէ Բանին. մար-
գարէ՝ որ զմարգարէացեալսն տեսեր. կարապետ արե-
գականն արդարութեան. ճրագդ մեծի լուսոյն. արու-
սեակդ թափանցիկ և անհասանելի լուսոյն. պատրաս-
տող կենաց ճանապարհին. բարեկամ փեսային. ձայն
Բանին. քարոզ ճշմարտութեանն. ձեռնադրող այնմ՝
որ ձեռօքն իւրովք ստեղծ զամենայն. վկայ վկայեցելոյ
'ի Հօրէ Բանին. մկրտիչ՝ որ մկրտէ 'ի հուր և 'ի Հո-
գին. 'ի ծնունդս կանանց վերագոյն ամենայն արարա-
ծոց. աւետարանիչդ Միածնի, քարոզդ Երուսաղէմի,
աղաղակէիր ասելով. Ահա գառն Աստուծոյ՝ որ բառնայ
զմեղս աշխարհի. ահա գառն Աստուծոյ՝ որ 'ի խաչին
պատարագի, և զապականութիւն արարածոցս նորոգէ

Ջրով և Հոգւով և արեամբ. հրեշտակ մեծի խորհրդոյ հրեշտակին, որ երիւք կատարեալ մկրտութեամբն զերից զանձնաւորութեանն կատարէր զդաւանութիւն: Ջրով զապականեալսն մաքրէր, որպէս առ համաշխարհական բարկութեամբն. բայց սակայն լուացումն բարկութեան և կորստեան, իսկ սա լուացումն կենդանութեան, և մաքրումն հոգւոյ ընդդիմակաց զօրութեանն յարձակելոյն 'ի սատանայական հոգւոցն ազդեցութեանց: Իսկ հրով, որպէս զի փորձեսցէ իբրեւ զոսկի ընտիր, զի խոտանն տօչորեսցի, և 'ի բանից որոշեսցի 'ի պատուական նիւթոցն. զի զտեալ ընտիր կացուսցէ ըզմարդկային բնութիւնս. ստեղծագործելով վերստին արարչագործեաց: Այս է մեծի մկրտութեանն զօրութիւն, լուսաւորութեանն պայծառութիւն, որով Հայր յայտնի և Որդի ճանաչի և սուրբ Հոգին քարոզի. մկրտչին պատիւն համբաւի. մկրտեալն զմկրտչին առաւելութիւնն քարոզէ ասելով. “Ոչ յարուցեալ 'ի ծնունդս կանանց մեծ քան զՅովհաննէս. բայց փոքրիկն յարքայութեան երկնից մեծ է քան զնա„: Նմա փառք յաւիտեանս. ամէն:



# Ի ԹԱԲՈՐ ԼԵՐԻՆ

## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ ԱՌ ՊԵՏՐՈՍԵԱՆՑ

Մինչդեռ երթային նոքա 'ի Ճանապարհի, ասէ Տէր մեր ցերկոտասանսն. “Զո՞ ասեն զինէն մարդիկս թէ իցեմ”: Պատմեցին նմա զարտաքնոցն, զի այլ ընդ այլոյ կարծէին: Ասէ ցնոսա. “Իսկ դուք զի՞նչ ասէք զինէն”: Յառաջեցաւ Պետրոս և ասէ. “Դու ես Քրիստոս Յիսուս որդի Աստուծոյ: Գովեաց Տէր մեր զգեղեցիկ վկայութիւն նորա, և Հօր իւրում ետ զյայտնութիւն շնորհին. և զի դեռ ևս Պետրոս այսր և անդր դեգերէր, կարծէր եթէ Քրիստոս ոչ մեռանիցի, ոչ քաջ գիտացեալ՝ եթէ մահուամբն նորա մահ մեռանի և աշխարհ կենդանանայ. ետես Տէր մեր եթէ մոռացաւ Սիմոն զերանութիւնսն երկնաւորս, արկ մորմոքումն բանից 'ի լսելիս նորա. բոլոր ինքն շարժեցաւ յահագին երկիւղէն իբրև լուաւ 'ի Տեառնէ, եթէ “Պարտ է որդւոյ մարդոյ բազում չարչարանս ընդունել, մեռանել և յերիր աւուր յառնել”. յոյժ տրտմեցոյց անուամբ մահուն, և առաւել քան զյոյժ մխիթարեաց աւետեօք յարութեանն: Իսկ նորա 'ի մեծ տագնապէ մահուն յիշատակօք մոռացաւ զաւետիս յառնելոյն. որպէս և է տեսանել 'ի բնութեանս մերում. հին ախտքն բնութեանն մեղացն՝ ոչ տայ թոյլ վաղվաղակի եկամուտ նորոյ կենացս 'ի ներքս անկանել. որպէս և որդիք ժողովրդեանն հին կուրութեամբն խանտային ընդ նորոյ կենացս երևումն, անուանելով զնա Եղիա կամ Երեմիա կամ զայլ ոք յառաջին մարգարէից, չար 'ի մխիթարութիւն անձանց իւրեանց մահկանացուացս: Մահկանացու կարծէք՝ զմիտս ժողովրդեանն յերկուացուցանելով յայնմանէ, որ եկն կատարել զբանս մարգարէիցն: Նոյն ախտիւ խօթանայր և

Պետրոս. զվկայութիւնն գեղեցիկ մատոյց, զխորհուրդն չարաչար հիւանդացոյց. իբրեւ յանզգայ սաստկագոյնս ընդդէմ չոգաւ. «Քաւ քեզ, մի՛ լիցի այդ բան» ասէ: Զբոլոր հին կարծիս մտացն ած թափեաց, զառաջին գեղեցիկ վկայութիւնն եղծ. Հայր յայտնեաց նմա զբոլոր աստուածութիւնն Որդւոյ, զի աստուածութեամբ եւ մարդկութեամբ զչարչարանսն ընդունիցի, եւ որ չարչարիցի՝ նոյն եւ յառնիցէ: Յայսմ աւետիս խնդալ էր ամենեցուն, եւ ոչ ըղձիւք արգելուլ զնա յերկոցունց: Տեսե՞ր, ուր զաստուածոյսն խօսեցաւ, երանի ետ նմա. իսկ ուր ըստ հին մարդոյն խորհեցաւ, ասաց նմա յայտնապէս. «Յետս երթ, սատանայ, զի ոչ խորհիս զԱստուածոյն, այլ զմարդկանս»:

Մարդոյ խորհուրդք իբրեւ զծուխ անպիտան են. 'ի ծուխ անդր սաստեաց եւ հետակորոյս արար զնա 'ի նոր մարդոյս, զի իցէ ինքնածագ լոյս առանց ապականացու խորհրդոյ, որ եւ արքունիքն իսկ անուանելոց էին՝ յորս սաստեաց. եւ առ ընկէց զնա յետոյ իւր, զի ինքն ըղկամն Հօր իւրոյ կատարիցէ առանց գայթակղութեան իրիք դնելոյ: Ուսոյց եւ նոցա չարչարանս ընդունել յիւրաքանչիւր անձինս, եւ անդէն առ նմին յուսով յարութեամբ հաստատեաց զնոսա. ոչ միայն որ յապայն լինիցի, այլ զի եւ առժամայն փոքր 'ի շատէ ցուցցէ զնմանութիւն երկրորդ գալստեանն իւրոյ, որպէս եւ ասէ իսկ անստուտ վկայութեամբ. «Արդարեւ ասեմ ձեզ, իցեն ոմանք որ այժմ աստ կայցեն, մի՛ ճաշակեսցեն զմահ, մինչեւ տեսցեն զարքայութիւնն Աստուծոյ, զի եկեալ հասեալ իցէ զօրութեամբ իւրով»:

Եւ յայսմ տեղւոջ երեւի ոմանց սակաւիկ մի ընդդէմ միմեանց բանք աւետարանագրացն: Մատթէոս յետ վեց աւուր ասէ. իսկ Ղուկաս եւ Մարկոս յետ ութ աւուր ասեն. այլ մեք բաւական համարիմք զոմանց ասացեալսն. Մատթէոս, ասեն, զատտի անտխն եթող եւ միայն զմիջոցն առ 'ի համար. իսկ երկուքն եւ զխոստանալն եւ զերեւելն հանդերձ միջաւն. եւ հաճոյ թուեցաւ ամենեցուն ընդունել զայս. եւ մեք 'ի նոցունց հաւանիմք միաբանեալ, որպէս ցուցանէ մեզ Մարկոս աւետարանագիր. Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ իբրեւ անցին աւուրք ութ, առեալ Տէր մեր ընդ իւր

զՊետրոս և զՅակոբոս և զՅովհաննէս, և ել 'ի լեառն մի բարձր առանձինն. և յայլակերպս եղեւ առաջի նոցա, և ձորձք իւր եղեն փայլուն և սպիտակ յոյժ, որպէս զի ոչ կարէին Թափիչք երկրի այնպիսի ինչ սպիտակացուցանել. և երեւեցան նոցա Մովսէս և Եղիա զի կային և խօսէին ընդ Յիսուսի և պատմէին զելս նորա զոր կամէր կատարել յԵրուսաղէմ: Յայս վայր սուրբ աւետարանագիրս երկրորդեաց զյայտնութիւնն երկնաւոր: Յամենայն բանս աստուածային գրոց՝ յոյժ է զարմանալ հողեղէն բնութեանս. իսկ յայնպիսում յերկնաւոր երեւման՝ ոչ միայն մեք տկարանամք, այլ և անմարմին զօրութիւնք երկնից: Զբոլոր ժամանակսն զոր շրջեցաւ Տէր մեր յաշխարհի՝ առաւել զանցուցանէ ըստ մարդկան խոնարհութեանս. իսկ 'ի լերինս յայսմիկ՝ և ըստ հրեշտակացն անցոյց ահաւորութիւնն. ոչ միայն զի ինքն լուսեղէն փառօքն երեւեցաւ, այլ զի և զմահուն եբեկ դրունս, և զառաքելոյն կատարեաց զխոստմունս. “Աստուծոյ, ասէ, այսպէս լաւ խորհել, զի առանց մեր մի ինչ կատարեսցի”: Եւ Դաւիթ յաղաղակէին իւրում ասէ. “Ինձ սպասեն արդարք մինչեւ հատուսցես”: Եւ երկրորդ մեծ ձայնիւքն 'ի մեծամեծաց մինչեւ ցփոքրկունս՝ կատարածին ոչ ուրուք ընկալեալ լինի զհատուցմունսն իւրաքանչիւր. որպէս 'ի միում շաբաթու հաստատեաց զամենայն արարածս, 'ի միում աւուր շաբաթանան երկինք և երկիր, և ամենայն մարդ ընդունի ըստ վաստակոց իւրոց: Արդ էած ընդ իւր ըզՄովսէս և զԵղիա 'ի վկայութիւն. զի Մովսէսիւ զյարութիւն մեռելոցն ուսուցանէ նոցա, և Եղիայիւ ցուցցէ զսիրելի մահ աստուածութեանն իւրոյ նոցա, որում Եղիայն յոյժ էր տեղեկագոյն, և ցանկայր Թէ Երբ լինիցի տեսանել. և տեղին ճշմարիտ էր արքայութիւն, քանզի լնուլ էր անդ միաբանական Երրորդութիւնն: Եւ վասն զի ոչ է Աստուած 'ի տեղւոջ, երեւեցաւ մարմնականացն իբրեւ զտեղաւոր. և 'ի տեղւոջն ուր Աստուածն գումարեցաւ՝ առանց պատկառելոյ անուանի արքայութիւն. քանզի այն իսկ է արքայութիւն՝ ուր աստուածութիւնն երեւի:

Եւ դու, ով տէր իմ Պետրոս, ընդէր զահի հարեալ ես 'ի մահուանէդ, ուստի բոլոր բարիքն զեղանին աշխար-

հի. զոր և այժմ իսկ յայլոց գգոյն լուիցես. զի ասէ աւետարանագիրն եթէ Մովսէս և Եղիա զելսն նորա պատմէին զոր կատարելոցն էր յԵրուսաղէմ։ Արդ իբրև ետես Պետրոս, եթէ մեռեալք և կենդանիք զնոյն բանս քարոզեն, և ինքն կամօք Տէր յայն եկեալ է Հօր միաբանութեամբ, ևս քաջ վտանգեցաւ յառաջին երկիւղն. քանզի հաստատեալ գիտաց եթէ 'ի մահուանէ Տէր մեր ոչ է զանգիտելոց, և մեզ թողուլ և փախչել զսա անհնար է. նա և զայն ևս քաջագոյն ածէր զմտաւ՝ եթէ յորժամ իջանէ սա 'ի լեռնէ աստի, պարզ յԵրուսաղէմ երթայ, ուր մեզ կասկած իսկ է մահու. վասն այսր խղճի մտաց իւրոց սկսաւ աղել ցՏէր, զի հրամայեսցէ առնել տաղաւարս իւրաքանչիւր նոցա, և զՄովսէս և զԵղիա մի արձակեսցէ անդրէն. որպէս թէ ասիցէ ոք 'ի կարծիս մտաց իւրոց, թէ չիք յայսմ լեռին իշխանութիւն մահու, և եթէ 'ի լեառնս յայս մահ երկնչի ելանել. Հրեայքն իսկ ոչ կարեն յանդգնել 'ի սա. ապա եթէ և մեք իսկ երթիցուք յԵրուսաղէմ, յորժամ և Մովսէս և Եղիա ընդ մեզ իցեն, ոչ կարեն քահանայքն խուել զմեզ. քանզի յոյժ տեղեկագոյն են սաստիկ ահին սոցա։ Այն Մովսէս է այս որ յանապատին բիւրս բազումս կոտորեաց 'ի նոցանէ, և բանիւ հրամանաւ սորա բացաւ երկիր և եկուլ զբանակս նոցա։ Չեն անտեղեակ և վասն Եղիայի, թէ սակաւիկ ինչ խօժոռին ընդդէմ սորա, կապէ զերկինս և արգելու զանձրև 'ի սոցանէ. և եթէ ևս յանդգնեսցին՝ իջուցանէ հուր յերկնից և այրէ զթշնամիսն ճշմարտութեանն. 'ի բազում տեղիս գիտեն զզօրութիւն ահի սորա, ոչ միայն անուանեալ քահանայքն, այլ և արտաքին ուրացողքն նոցա. չէ մոռացեալ նոցա զատակումն զութհարիւր քրմաց նոցա զոր ինքն իւրովք ձեռօքն կոտորեաց 'ի հեղեղատն Կիշոնի. և եթէ Աքաաբ թագաւոր երկնչէր 'ի սմանէ, որչափ ևս Աննա և Կայիափա՝ որ տկարագոյնք են քան զԱքաաբ։

Վասն այսր ամենայն կարծեաց նոցա որ մարդկաբար երկնչէին, յոյժ ողորմեալ նոցա Հօր 'ի վերուստ ասէ. “Դա է որդի իմ սիրելի, դմա լուարուք„։ Ծառայք երկրաւորք պահապանք լինէին տեառն իւրեանց. զի երկոքեան անկեալք են ընդ ախտիւք երկիւղի. երկնից

տէրութիւնն ոչ ինքն յումեքէ պահեալ լինի, այլ նա պահէ զամենեսեան իւրով զօրութեամբն։ Եւ տաղաւարս հարկանել դուք մի՛ աշխատիք. եթէ կարի ջեռարուք, ահա տուեալ է ձեզ ամպ հովանի, ընդ ամպովդ հովանեաւ զովացարուք։ Այս բարբառ իբրեւ եկն նոցա յերկնից, հայեցան տեսին զՅիսուս միայն. և ապա կարացին իմանալ, եթէ յահէ անտի թմբրեալ էին նոքա, և ոչ գիտէին զինչ խօսէին։ Եւ եթէ թմբրեալս կոչէ զնոսա գիրն, զիա՞րդ ծանեան զՄովսէս և զԵղիա. յայտ է թէ յիմարելոց էին թմբրեալք, այլ ոչ 'ի լսելոյ և յիմանալոյ. զոր աչօքն տեսին՝ ճշմարիտ էր, և զոր ականջօքն լուան՝ չէր սուտ. այլ քանզի կարի ահագին էր ժամն, ոչ կարաց մարդկային բնութիւնն հասու լինել երկնաւոր բնութեանն. վասն զի այսր և անդր սայթաքէին և մեղադրել ոք ոչ կարէր։ Զի եթէ մեծն Աբրահամ զվերին զօրութիւնսն բոլորովին մարդացեալս ետես, բախելով 'ի յօգիսն՝ ոչ կարէր կալ 'ի վերայ ճշմարտին, այսր և անդր տարաբերէր զմիտսն. տեսանէր երիս և մի կարծէր, կարծէր մի և խօսէր ընդ երիս. երեւէին մարդ, նա իմանայր Աստուած. և ո՞ իսկ 'ի հողեղէն բնութեանս կարասցէ ճշմարտին կալ և իմանալ զայն զանբաւ մեծութիւն. ոչ միայն մարդիկ մարմնաւոր, այլ և ոչ պարզ բնութիւնքն երկնից։ Յիրաւի կոչէ գիրն թմբրեալս զնոսա. յորմէ զօրութենէ լերինք հալին և անդունդք ցամաքին, և ամենայն թանձրահող երկիրս 'ի հիմանէ դղրդեալ սասանի. ողորմութեամբ իւրով խնայէ 'ի մեզ, զի գործք ձեռաց նորա եմք. որպէս հանապազ յամենեսեան և այն օր երկեան 'ի լերինն։

Գիտեմք զի աստուածային գիրք այլ ընդ այլոյ չխօսին, այլ զամենայն պատմեն ճշմարտիւ. բայց է բան, որպէս ասի՝ նոյնպէս և իմանի. այլ պիտոյ է ծածկեալ մտաց բանին յայտնութիւն, որ հաւատովք ընդունին 'ի փրկութիւն անձանց։ Ծանեան, ասեն, պետրոսեանք զՄովսէս և զԵղիա. իբրեւ ասես, եթէ այո՛ ծանեան, զիա՞րդ ասեն ծանեան՝ զոր ոչն գիտէին. քաջ 'ի միտ առ զզօրութիւն բանին, և մի՛ մոռացկոտ լինիր իբրեւ զտէր Պետրոս. 'ի գլուխ ճառիդ ընթերցիր, արքայութիւն ասաց տեղւոյն. չիք անդ մոռացումն մարդկային, այլ յիշողութիւն անմոռացման. քանզի մեզ

նմանութեամբ էր տեղւոյն արքայութիւն, իսկ առ աստուածութիւնն ամենայնիւ բովանդակ։ Ուստի մեզ Տէր ոչ զբնական դպրութիւնս, այլ զիմացական գիտութիւնն. իբրեւ թէ փոխեցան արքն յերկրէ յերկինս, զոստի իմացմունս թմբրութիւն կոչեցին. զանտեսն ճանաչելով արքայութեան մանկունս անուանեաց, և մարգարէութեան մանկունս. ուսոյց նոցա գիտութեամբ, զի ոչ եւս կարօտանայցեմք յերկնաւոր ժառանգութեանն, անծանօթս լինել առաջնոց, միջնոց և վերջնոց։ Յորժամ արքայութեան որդիք լինիցին արժանաւոր մարդիկ, ծանօթութիւն յաստուածատուր շնորհէ անտի քաշխի. զոր այժմ մտօք իմանամք՝ ընդ հայելի օրինակ անուանեցաւ. իսկ յորժամ մարմնական քող ՚ի մէնջ բարձցի, դէմ յանդիման տեսանեմք զաստուածութիւնն որպէս՛ և մարթի, զհրեշտակաց բնութիւն բովանդակ, զանծանօթսն իբրեւ զանձինս մեր, արտաքնովքս իբրեւ զարտաքին դէմս, մտօք զարտաքին և զներքին։ Եւ զի դեռ եւս պետրոսեանք մարմնաւորք էին, կաթեաց ՚ի նոսա նշոյլ իմանալի շնորհին ՚ի յոգիսն. բաւանդակ ծանեան զՄովսէս և զԵղիա. իսկ արտաքին զգայութեամբք էր ՚ի տեղւոջ անդ՝ որ այլ ընդ այլոյ խօսեցան. և այլոյ մասամբ դարձեալ ողորմեցաւ նոցա Աստուած. այն է՝ զի հաւաստեաւ ծանեան զՄովսէս և զԵղիա. և զի մի ինչ դէզ մնացէ ՚ի միտս նոցա, ՚ի բանից անտի նոցա եւս քաջ հաստատեցին զծանօթութիւնն։ Նոքա յայտնի խօսէին ընդ Տեառն, և սոքա զամէն լռով լսէին ՚ի նոցանէ, և զոր լուանն՝ այլ ոչ իմացան. զի եթէ մոռացեալ էին՝ և գրէին ոչ աւետարանագիրքն։

Բայց խնդիր այս կայ առաջի. զինչ արդեօք Մովսէս խօսէր ընդ Տեառն, և կամ զինչ Եղիա երկրորդէր առաջի նորա։ Աւետարանիչն պատմէ եթէ զելս նորա ասէին զոր կատարելոց էր յԵրուսաղէմ. ելքն նորա մահ նորա է, և ՚ի մահուանէ իսկ նորա եղեն ամենայն բարութիւնքն երկնաւորք։ Եւ ո՞ւր արդեօք գրեաց Մովսէս վասն մահու որդւոյն Աստուծոյ։ Մի՛ այդպէս հարցանէր ցիս թէ ո՞ւր արդեօք գրեաց. ամենայն մարգարէք և օրէնք վասն մարդանալոյ Բանին Աստուծոյ պատմեցին մեզ, չարչարելոյ և մեռանելոյ և յառնելոյ.

'ի Ծնունդն. «Մարգարէ ձեզ յարուսցէ Աստուած յեղբարց ձերոց» յօրէնսդրութիւն նորոց կտակարանաց. մի՛ իբրեւ զինն ասելով՝ Նմա լուիջիք, զիւր օրէնսն լուեցոյց. զՏեառնն յառաջ հրամայեաց մատուցանել, 'ի մկրտութիւնն, 'ի ծոմն, յամպն, 'ի սիւն հրոյն, 'ի խոցումն կողիցն, 'ի վտակաբուխ վէմն: Եթէ յիմէն ոչ ընդունիս, յԱռաքելոց հարկաւ՝ որ ընդունիս. «Վէմն, ասէ, որ երթայր զհետ ժողովրդեանն՝ նա ինքն էր Քրիստոս». 'ի փայտ խաչին, 'ի գաւազանն նշանագործ, 'ի մահ անարատին, 'ի հեղումն արեան գառանցն յԵգիպտոս, 'ի զօրութիւն մահուն՝ փրկութեամբ նոցին 'ի ծառայութենէ, զաւետիս յարութեանն, զայն սուրբ ոսկերքն Յովսեփու պատմէին նոցա. մեռեալք զկենդանիս ապրեցուցին 'ի մահուանէ. զվերանալն նորա՝ մեծն Դաւիթ գրեաց նոցա և ամենեցուն. «Համբարձաւ Աստուած օրհնութեամբ և Տէր մեր ձայնիւ փողոյ»: Զայս ամենայն և Եղիա գիտէր, քանզի մի հոգի էր որ խօսէր յամենեսեան, միօրինակ գիտէին ամենեքեան. էր ոք որ սակաւ բանիւք զայս ասէր, և էր որ բազմագոյն առնէր զյանդիմանութիւնն, սակայն զօրութեամբ զնոյն երկրորդէին: Զայս ամենայն խօսէին ընդ Տեառն Մովսէս և Եղիա, զի Առաքեալքն վկայ լինիցին անսուտ բանից նոցա, եթէ վաղու հասեալ էր դատավճիռն մահու 'ի վերայ նոցա, և մի ոք իշխեսցէ լինել ընդդէմ բանիցն նորա. և որպէս երեւեցաւ յայտնի, յայնմ հետէ այլ ոչ ոք իշխեաց երկրորդել զնոյն բանս առաջի Տեառն:

Բայց դու իբրեւ լուիցես զկալն մովսիսեանց և խօսել ընդ Նմա, մի՛ վարկպարազի անփոյթ առնիցես և մի՛ սակաւ բանս իմանայցես, և մի՛ ընդ վայր շատխօսութիւն համարեսցիս. քաջ զմտաւ ած և տես զպատուական արսն. եթէ միտ դնես, զբոլոր երկրային արքունեօքս զանց առնէ տեղին. և կամ ո՛ր առաջի կանն, և կամ որք կանն՝ եթէ ոչ զերկնից մեծութիւնն ունէին, ոչ կարէին առաջի Տեառն երկնից կալ և խօսել ընդ Նմա. այլ սիրով իւրով ած զնոսա, և ողորմութեամբ իւրով մերձեցոյց առ ինքն, և ներելով իւրով արար նոցա զունկնդրութիւնն. վասն որոյ կարացին լինել յերկարաբանք: Թուի ինձ թէ յոյժ ողբային զազ-

զատոհմն, զի գութ ունէին 'ի վերայ գաւառացն վասըն քաղցր արմատոյն. Թէպէտ և լեալ էր 'ի նոցանէ յառաջ արդարք բազումք, յայնմ ժամանակի չար տեսանէին զամենեսեան: Ճշմարտեցին եթէ եկն եհաս ժամանակ, և մերձեցաւ օրն յորում շիջանելոց էր նոցա ճրագն առկայծեալ, և եղէգն ջախջախեալ արմատաքի խլելոց էր. 'ի ծածուկ ողբային զազգն 'ի միտս իւրեանց. տեսին եթէ ամենայն ինչ նոցա 'ի հեթանոսս փոխելոց է, և նոքա մնան լոկ իբրեւ մարմին առանց շնչոյ: Տեսին և զբարերարութիւնն Աստուծոյ, որ ոչ կամի ընդ կորուստ և ոչ ընդ մի մարդոյ, համարձակեցան հարցանել զՏէր՝ որ գիտէր զծածուկս սրտից նոցա, եթէ գուցէ ինչ հնարս, ասեն, այլով օրինակաւ քեզ չմեռանել, և ազգին չկորնչել, և հեթանոսաց լինել փրկութիւն: Իսկ Տէր մեր ոչ տրտմեցոյց զսիրելի ծառայսն իւր, այլ զհարցումն պատասխանւոյն 'ի կամս Հօր իւր արար:

Գուցէ ասիցէք ցիս, ուստի իշխեցէր զանգիտող երկրորդել: Ես իսկ տեսի զՏէր զի լայր զԵրուսաղէմ, և յոյժ լայր զազգն ընտրեալ. նոյնպէս մեծ էր, զի այսօր 'ի վերայ երեսաց իւրոց յաղօթս անկաւ առ Աստուած. ոչ մարդ էր դուզնաքեայ, այլ բոլոր զօրութեամբ իւրով, յերկար տաժանութք զողջոյն գիշերն, մինչեւ քրտունք սաստիկք հոսեցան 'ի նմանէ: Եւ 'ի կատարել աղօթիցն, զմովսիսեանց հարցուածն երկրորդէր. "Հայր, ասէ, եթէ հնար է՝ անցցէ բաժակս այս յինէն„. և անդէն վաղվաղակի զխնդիր իւրացն 'ի կամս Հօր իւրոյ ապաստան առնէր: Եւ դարձեալ եկաց յաղօթս, և զնոյն բանս երկրորդեաց: Եւ մեզ այս կարեւոր է ուսանել քան զամենայն. որպէս նա ըստ կամս Հօրն ոչ կամեցաւ եղանել, և մի դու ըստ նորա կամսն եղանիցես: Վասն որոյ և եղիայեանք ոչ կարասցին մեղադիր լինել Տեառն. Նոյնպէս և պետրոսեանք որք ականատեսք եղեն, ոչ միայն մեղադրեալք, այլ և նոքա շնորհակալու ընդ ամենայն տիեզերս: Այս է յերկարաբանութիւն արանցն առ Տէր, ոչ միայն շատ խօսելով ընդ նմա, այլ ամենեւին չփնալ 'ի նմանէ, նա և եթէ հնար ինչ գուցէ՝ մեռանել ընդ նմա. և եթէ Մովսէս ոչ մարթէր կրկին մեռանել, վասն Եղիայի՝ եթէ Տէր կամէր՝ գոյր հնար:

Յորժամ առաջին հարցուած նոցա 'ի գլուխ ոչ չոգաւ, վասն երկրորդին յոյժ էին ցանկացեալք։ Ո՞ ոք 'ի սիրելի զօրականացն մնացէ 'ի պատերազմէ, յորժամ թագաւորն ինքնին 'ի վերայ թշնամեացն ելանիցէ. և եթէ երկրայինքն զայս առնեն, որք յերկրաւս են յաղթիլ քան թէ յաղթել, քանի՞ն յօժարութեամբ երկնաւորին լինել նահատակակից. զի ոչ մահու կասկած առաջի կայ, այլ անմահ կենաց յաղթութիւն։ Յայսմ պատերազմէ ոչ ումեք օրէն է զանգիտել, ոչ արանց և ոչ կանանց, ոչ արդարոց և ոչ մեղաւորաց, թէ հնար է՝ գուցէ և երկնաւորացն։ Բայց սա աւասիկ թէպէտ և Եղիայի կարի անձկալի՝ լինել նմա խաչակից, բայց արգել զնա Տէր, զի մի՛ ոք յարդարոց խաչեսցի ընդ նմա. քանզի ոչ իսկ էր եկեալ եթէ վասն արդարոց խաչեսցի, այլ վասն բարւոյ՝ որպէս և համարձակեցաւն իսկ մեռանել, զի իւրով մահուամբն զամենեցուն մահ խափանեսցէ։ Արգել զԵղիա 'ի մահուանէ, զի մի՛ ըղտուեալ պատիւն հանցէ 'ի նմանէ. և ոչ միայն զԵղիա արգելու լինել իւր մահակից, այլ և ոչ զմի ոք յարդարոց՝ ոչ կամի եթէ ոք մեռցի ընդ նմա, այլ 'ի մեղաւորաց, ոչ իւրով բանիւ, այլ զոր քահանայապետքն կամեսցին. յայնժամ թերեւս և անդ երեւեսցի նորա բարերարութիւնն, զոր և յառաջագոյն իսկ ասացեալն է, եթէ վասն մեր ընդ անօրէնս համարեցաւ։ Առ սէր իւր խնայեաց յԵղիա, զի կեցցէ յանմահութեան պարգեւին, և լիցի քարոզ երկրորդ գալստեան նորա։

Գիտէ Աստուած զինչ գործէ, և զբարին ինքն առանձինն կատարէ. շատ իցէ քեզ եթէ 'ի նորա յոյսն գիտիցես վայելել, և յորժամ նա դուռն բացցէ քեզ. ապա եթէ կամիս՝ և դու կարես գործել իբրեւ զնա, որպէս եղեւ Առաքելովքն և լինի Քրիստոսիւ մինչեւ ցայսօր։ Գիտեմ զի բազումք ցասուցեալ են ինձ. Տէր մեր, ասեն, զարքայութիւնն եցոյց 'ի լերին անդ, և դու եկեալ զմահու ճառս պատմես մեզ։ Ո՞ւր դիր ճառիդ, և անտի հաւանիս. ելանել իսկ նոցա 'ի լեառնն՝ մահու պատճառք եղեն սկիզբն. և եկեալ մովսիսեանց զնոյն երկրորդեցին առաջի Տեառն, և մեք 'ի նոյն ճառ տեսաք զարքայութիւնն։ Յոյժ սպիտակ էր պայծառութիւն ձորձոյն և անցանէր ըստ արեգականային ճառա-

գայթս այն. ըստ արժանաւոր տեղւոյն և հանդերձիցն վայելչութիւն պիտոյ էր. այլ կատարեալ այնիւ էր արքայութիւնն՝ ուր Հայր և Որդի մարդկան յայտնեին. զայն և անփոփոխ իսկ է իմանալ, անանց կալ մնալ յաւիտենական: Բայց 'ի սպիտակութիւն ձորձոյն սակաւիկ մի ակնարկեցից 'ի մահ անմահին: Ամենայն արարածք յանմխիթար սուգ նստէին. վասն զի անմահին Աստուծոյ անմահ պատկեր՝ մարդս է. ընդ մահուամբ անկեալ դնէր յանլոյծ խաւարի, և սգածէին առ հասարակ արդարք և մեղաւորք, և ծանրալից հանդերձ սգոյ ունէին, որ է նմանութիւն խաւարի. և ոչ ոք կարէր յեղելոցս զծանրութիւն սգոյն բառնալ յաշխարհէ, բայց միայն այնիւ էր հնար՝ որով եղեւն ամենայն: Արդ զարդարեցաւ 'ի մահն իւր, ոչ երկրային պատուական հանդերձիւք, այլ բնական ինքնածագ լուսովն իւրով, զի հալածեսցէ յաշխարհէ զիշխանութիւն խաւարի, և զթախծալից տրտմութիւն մարդկան մխիթարեսցէ. և զներկուած հին տրտմութեանն՝ իւրով անապական լուսովն սպիտակացուսցէ: Եւ մարդիկ որ 'ի վերայ մահուան սիրելեաց իւրեանց տխրէին և մթանան, և գրեթէ կենդանոյն զմահ ճաշակէն, հայեսցին նոքա 'ի զըւարթութիւն պայծառութեան մահու որդւոյն Աստուծոյ, և բարձցի 'ի նոցանէ սուգն անյոյս տրտմութեան, և լցցին յուսով յարութեամբն, և մի եւս այլ երկիցեն 'ի մահուանէ, որ դողացոյց զարդարս և զմեղաւորս: Վասն այսորիկ խօսիմք 'ի տեղւոջ աստ զճառս մահու, զի տեսանեմք 'ի սմա զարքայութիւն երկնից, որ եկեալ հասեալ է զօրութեամբ իւրով մեծաւ համարձակութեամբ: Ոտն հարկանեմք 'ի վերայ մահու. վասն զի յուսով 'ի վերայ արքայութեան տեսաք զանձինս. հաճեալ եմք ընդ տեղի լերինս, ուր կրկին յայտնութիւնն եղեւ առ մեզ, մանաւանդ թէ երեքկին. մեռեալ գիտէաք զՄովսէս և կենդանի տեսաք. նա եբեր զաւետիս յարութեան ամենայն մարմնոյ: Կիսահաւատ ազգն Հրէից զհոգին Եղիայի յափշտակեալ խոստովանէին, և զմարմինն իբրեւ զանպիտան ինչ գոյացութիւն 'ի վայր ընկեցեալ. եկն երեւեցաւ բովանդակ հոգւով և մարմնով, զի բարձցէ զխիղճ 'ի մտաց նոցա, եթէ կամեսցին ընդունել: Կարծէաք եթէ ոչ անցանէ թագա-

ւորութիւն մահու . տեսաք անդ 'ի լերին զմահ մեռեալ,
և զկեանս թագաւորեալ :

Եթէ դուք կամիք՝ անդէն 'ի Ճառս լերինն դարձջիք ,
քանզի և իջեալ իսկ չեմք 'ի լեռնէ անտի . և մինչ անդն
եմք՝ զանտիոն եւեթ խօսեսցուք . և զինչ անդ բանքն
են՝ համակ զնովիմբ եկեսցուք . և եթէ առ 'ի պէտս այ-
լոց բանից իջցուք 'ի լեռնէ անտի , դարձեալ 'ի նոյն լեառն
ելցուք . եթէ երկիցս և եթէ երիցս , սակայն զնոյն ա-
րասցուք . մինչև կատարեսցի Ճառս , շուրջ զլերամբն
փակեսցուք : Բայց առ այժմ 'ի վեր անդ զտէր Պետ-
րոս հարցանել պարտ է , եթէ առ ինչ սիրեցեր այդ-
չափ զլեառնդ և այդր կամիս առնել քեզ բնակութիւն ,
քեզ և ընկերացդ . եթէ առնիցես՝ սակաւիկ մի պատե-
հագոյն է քեզ և Տեառն և Մովսէսի : Իսկ այդ ինձ
կարի պատեհագոյն թուի : Յարեաւ , ասէ , 'ի մեռելոց ,
վասն այսր կամիմ թէ աստ կայցեն : Յարուցեալ՝ որ
տաղաւարի կարօտանայ , այնմ եւս յարութեան իսկ
չէ արժան ասել , այլ երազ և առ աչօք երեւումն : Ու-
րեմն չեւ եւս տեղեկացեալ վասն յարուցելոյն , սակաւ
մի Ճաշակ եցոյց քեզ յարութիւնն , ընդ տեսանելն և
թմբրեցար . եթէ այնպէս փառօք էին նոքա քեզ՝ որ ան-
փոփոխ ընդունելոյն են , դու ապաքէն եւս առաւել վր-
տանգէիր : Բայց ոչ կարեմ մեղադիր լինել քեզ , զի
դեռ եւս հրէախառն ես . ընթեռնուս զգրեալսդ օրի-
նացն , այլ իմանալ չեւ եւս կարացեալ զարժանն :

Ի լերինն շքեղացան դէմքն Մովսէսի , և հարքն ձեր
որ կարացին հայել յերեսս նորա մերկ , և դու զոգիսդ
ընդ մարմնական վարագուրովդ ծածկեալ ունիս : Մով-
սէս ծածկելով զդէմսն՝ մերձեցոյց վնասս առ ինքն , և
Տէր զայն քող մերկանայ 'ի սրտից ձերոց . անդստին իսկ
ունի զմարդասիրութիւն առ ազգդ ձեր . աստուածա-
նուն մեծարեաց զծառայս իւր և փառօք իւրովք զար-
դարեաց զնա , և ժողովուրդն առ ատելութեան իւ-
րեանց փախչէին 'ի նմանէ . և նա նշանօք և արուեստիւք
արծարծէր զնոսա , զի ընդելեալ մարդասիրութեամբ
նորա մերկ դիմօք կարասցեն տեսանել զաստուածու-
թիւնն : Այն սա նա է , որ բազում իրօք կրթեաց ըզ-
ձեզ , զի այսօր արժանի լինիցիք տեսանել զՃաճանչ լու-
սոյ աստուածութեանն . բայց այսօր դու լաւագոյն ցու-

ցար քան զնոսա. Թէպէտ և զարհուրեցար, այլ ոչ 'ի փախուստ դարձար. այդպէս երեւեցաւ, եթէ սէր Աստուծոյ մեծապէս բնակեալ է 'ի քեզ՝ քան յառաջին ժողովուրդն:

Այլ և արդ շուրջ զքեւ հայեաց քաջ. ընդ ում շրջիս, առ ում նստիս, ո՞յր ես ուղեկից, և կամ ո՞յր խորհրդակից: Ո՞չ դու ետուր զգեղեցիկ վկայութիւնն և դու խոստովանեցար զՔրիստոս որդի Աստուծոյ. ո՛վ քաջ. Աստուած խոստովանիս և 'ի տաղաւարս բնակեցուցանես. զայդ ոչ միայն Քրիստոս չառնու քեզ յանձն, այլ և ոչ ընկերակից քո Մովսէս. զվերանալն նորա տեսեր դու, և պատիւ մեծութեանն երեւեցաւ քեզ. եթէ զայն ճշմարիտ գիտացեր, զայս ոչ արժանապէս խօսիս: Յի՞նչ նիւթոց կազմեսցես զխուղսդ, ասա ինձ. ապաքէն 'ի փայտէ և 'ի խոտոյ. ո՛վ մեծ յերկրատատանսդ, քաջայուշ լեր. կառս ունի հրեղէնս, երիվարս բոցեղէնս, հուր և խոտ 'ի միասին ոչ բնակեն. բայց եթէ զայն եւս արտաքոյ թողուցու, ինքն 'ի նոյն պատիւ է զարդարեալ. և եթէ ոչ այնպէս էր, զիա՞րդ հանդարտէր կայր բոցոյն առաջի: Քեզ այսօր սակաւիկ մի սպիտակութիւն երեւեցաւ, և դեռ ատամնդես բանիւք. ուր Մովսիսայն բնակեալ է, եւս առաւել պայծառագոյն է, քան որ քեզդ երեւեցաւ. և դու զայդպիսի այր 'ի տաղաւարս հրաւիրես, և ո՞չ պատկառիս 'ի շքեղ պատուոյ նորա: Դարձեալ և զտէրդ աշխարհաց 'ի կարօտութիւն ածցես և 'ի տեղւոջ կարծես. զդա գիտեա տեղի ամենեցուն և զամենեցուն կարօտութիւն բառնալ: Ոչ 'ի տեղւոջէ այտի երեւեցաւ դա պատուական, այլ տեղիդ դովաւ շքեղացաւ: Սակաւիկ մի սպիտակ ձորձովդ զարհուրեցար, յորժամ բուռն հայրենի փառօքն տեսցես, յայնժամ և ոչ զմի տեղի յերկրաւոր պատուականաց աստի դմա համարեսցիս արժանի. այլ բարբառն որ եկն 'ի վերուստ՝ զայն գիտեա դմա տեղի և փառս և վայելչութիւն անպատում. և դու յայն հայեաց, զհետ այնր ձայնի լեր կաթոգին: Յորժամ աչք մարմնոյդ լցան լուսով, ապա բոլորովին իսկ դու լուսալի լինիս. զի և դու իսկ քեզ հազիւ կարիցես հասու լինել: Այլ տէրդ արքայութեան՝ չէ կարօտ տաղաւարաց. ամպոյն արժան էր քեզ ուսանել, որ եհար ժո-

զովրդեանն տաղաւարս յանապատի անբաւ բազմութեանն. ամա՛ն էր բաւական հովանի, և զբոլոր գիշերն լոյս հրոյ առաջնորդէր. և եթէ 'ի չարմն այնպէս գթայր, որչափ եւս առաւել 'ի ձեզ տառապեալս: Ամենայն ինչ թողէք և զհետ դորա շրջիք. զի՞նչ ասէ ձեզ՝ լուարուք, և զամենայն բարի կամս ձեր՝ դա կատարէ: Ընդէն իսկ 'ի տեղւոջդ փոքր մի աղէխարշեցայք 'ի տապոյ փառաց դորա, արագ արագ թանձրացոյց զամպն 'ի վերայ ձեր. եթէ սակաւ մի յամեալ էր՝ և դուք և տեղիդ բոցակէզ լինէիք. նա և 'ի բնական ջերմութենէս աստի են տեղիք, ուր ամարանի հրդեհք բորբոքին. և եթէ մանաւոր լոյս այդպիսի սաստիկ տապով հարկանէ՝ զի՞նչ կարծես զինքնածագն լոյս, եթէ թոյլ տայր որ ունէր զծով և զցամաք՝ առ հասարակ կիզույր: Յայնմ լուսոյ ձաձանչ սակաւ մի երեւեցաւ Պաւղոսի. թէպէտ և ոչ այրեաց զմարմին նորա, զլոյս աչաց նորա եկեզ. թէպէտ և այլ շնորհեցաւ նմա, զառաջինն կորոյս: Ողորմութեամբ իւրով ծածկեալ ունի ինքն զինքն, զի թէ ոչ բաւեն տեսանել զաստուածութիւն նորա: Տեսե՞ր, ուր խոնարհութեամբ խօսի Աստուած ընդ արարածս, զմարդասիրութիւնն իւր յայտնէ. եթէ որպէս էրն՝ և յայտնէր զինքն, եղեալքս յապականութիւն դառնային առաջի նորա:

Արդ մի, տէր Պետրոս, բարիոք թուեսցի առնել դմա տաղաւարս, զի չէ ժամանակդ այդպիսի գործոյ, և ոչ դու ունիս կազմած շինողաց. չես տեղեակ հիմնութեան, և ոչ գիտես յորմ կարգել քարինս: Վարդապետ անուանեցաւ և զիւր արուեստն ոչ թաքոյց 'ի քէն. բայց եթէ դու մոռացկոտ ինչ իցես, ես ոչ գիտեմ. հանապազ քո առաջի գործեաց և գործէ, և յոյժ կամի զի ուսջիք և բանիւք և գործովք, որպէս ինքն առանց մարմնաւոր աշխատութեանց վարէ զարուեստն, 'ի դոյն նահատակութիւն և զձեզ կրթէ: Մ՛ի ընդ քուն խօսիր և մի զճշմարտութիւնն երազակոծ եղեալ՝ այլ ընդ այլոյ պատմես. յերկնաւոր մանրագորս հաստատեցար, զհետ հետոց դորա ուսիր վերաբերիլ. 'ի ստուերաշուք տարերցս ելանել փութայիր, քան նստել ընդ սովաւ. յանապական լուսոյն 'ի ծմակային տեղիս մի աղաչէր բնակել զայդպիսի չքնաղ լոյս. թէ և ջրայինքն տեսա-

նէին՝ 'ի ցամաք դիմէին, և եթէ 'ի սանդարամետականսն ծագէր՝ 'ի վեր կոչեալ ածէր զամենեսեան. եթէ գոյր իշխանութիւն՝ հրեշտակաց թողեալ զայն երկնից լոյսն՝ առ այդ լոյսդ իջանէին: Այդ լոյս յերկնից յերկիր երեւի, զերկրաւորս յերկինս տանի հանէ. և յորժամ յերկրէ 'ի վեր ծագէ, զվերինսն 'ի վայր խոնարհեցուցանէ. այդ լուսով ետես Յակոբ զսէր լուսեղէն սանդղոցն. 'ի լուսեղէն տեղւոջ բնակեալ էր Եղիա, զայն լոյս թողեալ՝ առ այս լոյս խոնարհեցաւ և եկն. յայդ լոյս աւանդեալ էր Մովսէս, աղդեցաւ նմա 'ի Նաբաւ լերինն, փութացաւ եկն առ անձկալիդ: Տեսանէս զհարդ փայլն երկոքեան զլուսոյն. չյագին բազում բանիւն զոր խօսէինն ընդ նմա. 'ի ծագել այդ լուսոյ՝ արեգակն խաւարեցաւ, որպէս աստեղք յարեգականէ. արեգակն 'ի դիմանէ չերեւեցաւ: Եւ քեզ յայժ երանի տամ, զայդ տեսեր և յայն հրաւիրեցար. ամենայն աշակերտ զվարդապետին արուեստն փութայ ուսանել: Ո՞չ 'ի քոց տաղաւարաց անտի եհան դա զքեզ. խղկունս իմն արարեալ ձեր 'ի ծովեզերին, վասն այդր լուսոյ՝ ետ թողուլ ձեզ զայն, զի յայդ թեւակոխեսջիք, ընդ այդ ընդելջիք, զայդիւ եկեսջիք, 'ի դոյն խոկասջիք, դմին արժանի լիջիք զգենուլ: Զի՞ք տեսեալ զազգ թռչնոցդ. ձագուցն յորժամ թեւքն թաւացեալ հաստատեալ՝ ոչ ընթացս ունին 'ի վերայ բունոցն, այլ 'ի հայրենի արուեստ վերաբերին. զոր տեսանենն՝ զմտաւ ածեն զայն. մինչդեռ մատաղաբոյս են թեւքն՝ անդէն 'ի տեղւոջն ոստեալ բոտեալ շարժին. յորժամ բոլոր վարազաթեւք աճեցեալ մեծանան՝ տակաւին 'ի վեր վազեն ոստախաղաց լինելով և աներկիւղք եղեալ յանկանելոյ, ապա բարձրացեալ 'ի վերոյ օդոց ճախրեն զվերամբք, թռուցեալ առ ամպովք քերեն, անկասկածք անցանեն գնալ յերկրասող փառակարացս:

Օրինակաւ իմն Տէր զձեզ ուսուցանէ. կրթեաց 'ի նշանս և յարուեստս մեծամեծս, զի ամենայնիւ զձեզ յինքն սպասաւորեալ միացուսցէ, զի և դուք զայս 'ի մահուանէ 'ի կեանս որսասջիք. արար զձեզ կիրթս և հմուտս և տեղեկագոյնս, զի իցէք պատճառք կենաց ամենայն աշխարհի: Բայց դու որ ոչ էիր 'ի լերին անդ, մի իբրեւ զանուն լուսոյն լսես՝ առ այսմ լոյս հարցին

կացցեն միտք քո. զայս լոյս հանապազ տեսանեմք, ոչ յիմարիմք և ոչ թմբրիմք, և ոչ ամենևին երկիւղ ինչ անկանի 'ի սիրտս մեր. այլ որ զցայգն եմք՝ նոյն եմք և զցերեկն. վասն զի նիւթեղէն արարած է, և մեզ 'ի սպասաւորութիւն տուեալ. պղտոր, մթին, փոշեխառն, մրրկեալ, խթացեալ տեսեր, և ոչ զերկինս վերինս կարէ ցուցանել. և այնչափ օտար է յայնմ լուսոյ, որպէս և նկարեալն 'ի կենդանւոյ: Որպէս և ինքն աստուածութիւնն բազում մասամբք երևեցաւ մարգարէիցն, և մի ոք 'ի նոցանէ զԱստուած ոչ կարաց տեսանել. այլ նմանութեամբքն որով տեսին՝ բաւական համարեցան. հանգեան կամօք իւրեանց և կատարեցան բանք նոցա գործովք: Որպէս և այսօր 'ի լերինն երևեցաւ, այն է զոր հանապազ տեսանէին. այլ ոչ այսօր նոյնպէս տեսին, և ոչ այլ ընդ այլս զայլ ոք Քրիստոս տեսին. որ էրն՝ զնոյն տեսին, ոչ նոյնպէս գձուձ. փոքր մի վերագոյն քան զառաջինն տեսին և թմբրեցան 'ի նշանաց անտի. և եթէ աւելի քան զձեզ կարծէիք՝ այլ ոչ ինչ 'ի վեր հայէին միտք ձեր: Աստուծոյ նշանագործութիւն բոլոր արարածքս են. զաշխարհս ոչ 'ի նշանս ինչ արարեալ է ումեք, զի և գոյր իսկ ոք ոչ յառաջ քան զաշխարհ. և նա բնութեամբ ունի զբարերարութիւնն. զոր ինչ կամի՝ կարէ առնել, ոչ 'ի պէտս իւրոյ անկարօտ բնութեանն, այլ 'ի յեղելոցս 'ի լրումն առանց պակասութեան. և զմարդ սիրէ քան զբոլոր արարածս. և կամի 'ի ձեռն նշանացն՝ զի զանեղ բնութիւնն ծանիցեն, և 'ի ճանաչելոյ անտի լցի սիրոյ բարեկամութիւն. և դարձեալ եւս վերագոյնս ձգիցէ, որպէս թէ իւր իսկ առնիցէ գահակից: Զոր և այսօր առ ձեզ նորին սիրոյ եցոյց զօրութիւն, ոչ երկրաւոր նշանօք, այլ երկնից մասնաւորութեամբ. ցայսօր զմարմնականսն տեսանէիք իբրև զմարդ, վարդապետ կարդայիք, ըստ մարդկութեան ևեթ իմանայիք զզարմացումնդ. վասն այսորիկ փարատեաց 'ի նոցանէ զմարմնաւոր տգիտութիւնն, զի երկնաւոր յայտնութեամբն կրթեսցէ զնոսա, և մի համակ զմարմնականօքն եկեսցեն. որպէս և ասէ գիրն, եթէ "Յայլակերպս եղև առաջի նոցա": Յայլակերպումն ոչ այլ ինչ է իմանալ, այլ աստուածակերպ երևեցաւ առաջի նոցա, զի և զնոսա յայն կեր-

պարանս փոխեաց 'ի ժամանակի իւրում. կրթեցան աչք նոցա հայել 'ի մարմնաւորութիւնն Տեառն. ոչ կարացին խորհուրդք նոցա համբառնալ յերկինս. ընդհարան աչք նոցա 'ի լոյս փառաց նորա, կարացին զարժանի էութիւն նորա իմանալ: Ի բարձում բարձր տեղիս ելեալ էին նոքա ընդ Տեառն, այլ ոչ մտօք. այնպիսի տեսիլ եցոյց նոցա այն օր զիմանալի լոյսն, զի կրթեսցէ զնոսա յեւս առաւելութիւն: Ըստ մարմնոյ 'ի լեառն ելին, մտօք վերացոյց յամենայն աշխարհական ցանկութեանցս. բարձր է լեառն քան զքաղաքս, զնոսա քան զընաւ աշխարհս բարձրացոյց: Նորքեմն ելին ընդ Տեառն 'ի Գալիլեայ 'ի լեառնն՝ ուր զերանութիւնսն աւետարանեաց նոցա. բանս երկնաւորս լուան, այլ միտք նոցա ոչ ինչ բարձաւ 'ի յերկրաւորացս. իսկ աստ բանիւք ինչ ոչ խօսեցաւ ընդ նոսա. լուսով երկնացոյց զլեառնն, և լռութեամբ երկնաւորս արար զնոսա:

Եւ իսկ 'ի բնութեանս մերում, յորժամ շրջիմք 'ի բազմամբոխ քաղաքի, զքաղաքական կարգսն սիրեմք ուսանել. յաճախագոյն պնուիմք ընդ փառս երկրաւորս, և խոնարհին միտք մեր յիրս երկրաւորս ապականացուս. և եթէ ոչ մեծաւ պատրաստութեամբ զգոյշ կայցես անձին քում, հազիւ կարասցես ապրել 'ի պատիր զբօսանաց աշխարհիս: Վասն որոյ և Մովսէս հանեալ զժողովուրդն յԵգիպտոսէ, շրջան առ յանապատի անդ ամս քառասուն, և ապա կարաց լինել նոցա օրէնսդիր. իսկ իբրեւ բնակեցան 'ի քաղաքս բազմամարդիս, և զեդեալ օրէնսն ոչ կարացին պահել: Նա է ճշմարիտ, որ ընդ երկիրն պնու՝ զերկինս ոչ կարէ տեսանել: Այլ և Տէր մեր իբրեւ յԵգիպտոսէ եհան զաշակերտսն 'ի լեառն անդր, և ուսոյց նոցա զանդիր օրէնս երկնից. քանզի և մեր տեղին առաջին անդիր էր: Գիր զմարմնականացն խօսի, անգրութիւն զանմարմին էութիւնն ցուցանէ: Գիր՝ զմահն Մովսէսի պատմէ, իսկ անգրութիւն՝ զյայտնութիւն Տեառն առ աշակերտսն: Գիրն ինքն անցական է, և զանցաւոր աշխարհս արկանէ ընդ պատմութեամբ. անգիրն յինքեան գրէ զանցաւորս, զի անանցս արասցէ: Գիրն զվերանալն Եղիայի նիւթական պատուականօքս ասէ. անգրութիւն զերեւումն Տեառն և զեղիայեանց: Եւ իբրեւ այլք յայ-

լում նստեալք և եկեալք, այլ ինքն ինքեանք երևե-
ցաւ 'ի վերոյ քան զերկինս. ոչ այրեցող բնութիւն՝
մարմնականացս ահ արկանելով, այլ լոյս փափուկ և ա-
րարող, որպէս և ժառանգաւորաց արքայութեան՝ յան-
մարմնականաց տեղիսն զգենուլ: Այնպէս տէր ե-
րևեցաւ, և ըստ իւրում էական բնութեանն շնորհեաց
և ծառայիցն զնոյն փառաւորութիւն. զի եթէ ոչ այն-
պէս էին, և ոչ մերձենալ կարէին 'ի հուրն ամենակէզ:
Եւ պետրոսեանք որք անդ էին աստուածային փա-
ռացն, և նոքա 'ի վեր կոչեցին 'ի ծանր մարմնակա-
նացս, հասանելով մինչև յիմանալի հրեշտակաց բնա-
կութիւնս. անցեալ կային զեր 'ի վերոյ մահուանն, որ-
պէս և երեքն՝ այնպէս և երիւքն. ոչ միայն չերկնչել
'ի մահուանէ, այլ և 'ի բազում տեղիս հալածական
առնել զմահ 'ի մարդկանէ. քանզի յոյժ մեծացաւ աղ-
քատութիւնն նոցա: Եղին իբրև զերկչոտս գտանել 'ի
վերոյ քան զերկիւղ. եղին իբրև ընդ որդւոյ մարդոյ,
զնոյն տեսին անդ որդի Աստուծոյ. եղին տգիտագոյնք,
ուսան անդ զկատարեալ գիտութիւն. եղին ընդ այնմ
զոր գիտէին ծնեալ 'ի կուսէ, իմացան անդ զնոյն ծը-
նեալ 'ի Հօրէ յառաջ քան զաշխարհս. եղին ընդ այնմ՝
որ մկրտեալն էր 'ի Յովհաննէ, տեսին անդ զնոյն՝ որ
բնակեալն էր 'ի ճառագայթս անմատոյց լուսոյ փառաց
իւրոց. եղին ընդ այնմ՝ որ հետիոտս վաստակէր գնա-
լով, զնոյն իմացան անդ որ նստի 'ի կառս քերովբէա-
կանս. եղին ընդ այնմ՝ որում Հրեայքն սպառնային ըղ-
մահն, զնոյն գիտացին տէր մահու և կենաց. եղին ընդ
այնմ՝ զոր աղաչէին մի մատնել զինքն 'ի մահ, իմացան
եթէ ոչ սա երթայ 'ի մեռանել՝ աբրահամեանք ոչ կա-
րեն գալ առ մովսիսեանս. և զոր արգելուին 'ի մա-
հուանէ, յառաջ քան զժամանակն փութային տեսա-
նել զմահ նորա: Արքայութեան պատճառանօք եհան
զնոսա 'ի լեառն անդր. իմաստնացոյց եթէ առանց մա-
հու միածնին ոչ ոք կարէ ժառանգել զարքայութիւնն:

Եւ իբրև երկոքեան հատածքս այս ունին յինքեանս
զերկնաւորս և զերկրաւոր բարութիւնս, առ ինչ ար-
դեօք պատուիրէր Տէր մեր աշակերտացն և ասէր, ա-
մենեւին չասել ումեք զմեծ յայտնութիւնն որ երևե-
ցաւ նոցա: Այս սովորութիւն է վարդապետութեանն

Քրիստոսի. յորժամ զմարդասիրութիւնն ցուցանէր բժշկելովն առ ախտաժետս նոցա բազմաց 'ի նոցանէն զնոյն պատուիրէր ։ Մի՛ ումեք, ասէ, ասիցէք վայրապար կամ 'ի գիւղս կամ 'ի քաղաքս. զի և դու զնոյն ուսանիցիս չառնել աշխարհագոյժ զողորմութիւնս քո. ապա եթէ պիտոյ եւս է ցուցանել, փոխանակ բանից գործքն քարոզեսցեն ։ Աստուած զբոլոր աշխարհս արար և ետ մեզ, և երախտիս ինչ ոչ համարեցաւ մեզ, բայց միայն ճանաչել զնա և զհետ երթալ կամաց նորա ։ Պատուիրեաց աշակերտացն լինել աստուածանման. քանզի ժառանգ իւր հաստատեաց զնոսա և նոքօք զամենայն աշխարհ. յորժամ Աստուծով առնիցեն զամենայն մեծամեծս վարդապետին իւրեանց, ծածկագիտին միայն աւանդեսցեն զխորհուրդսն ։ Դարձեալ և յոյժ խնայեաց 'ի նոսա. միթէ ըստ մարմնոյ ինչ պարծեսցին վասն մեծամեծ սքանչելեացն՝ զոր և գործեցին և տեսին անդ. զի ընդ մէջ թշնամեաց շրջէին և ոչ բարեկամաց, և աւելի առաջի կեղծաւոր մեկնչաց, որ իբրեւ զճանճս կեղասերք էին, ուր գտցեն թարախս՝ առաւել եւս զայրացուցանեն զվէրսն. չարագոյն եւս քան զայս լինէին բանք նենգաւոր մարդոց. որպէս և եղեն իսկ նոքա պատճառք մահու ժողովրդեանն, ոչ միայն հողածին մարմնոյ, այլ և անմահ ոգւոյ սպանողք ։

Պատուիրեաց նոր նորոգելոցն՝ որք արբին զճաշակս նոր գինւոյն, մի՛ արկցեն 'ի տիկս զզօրութիւն գինւոյն 'ի հինս, զի ոչ հանդարտեն ընդունել զոյժ նորա. արգել զնոսա 'ի մեծ վնասէն. քանզի գիտէր եթէ տիկքն պատառին և գինին հեղու 'ի կորուստ նոցա, որպէս առ Կայիափայիւն իսկ երեւեցաւ. զի յորժամ տեսանիցէք զորդի մարդոյ զի նստի ընդ աջմէ զօրութեանն Աստուծոյ, իբրեւ զտիկ հին ցելաւ 'ի պատառել պատմուճանին իւրոյ. բոլոր ինքն հեղաւ անկաւ յաստուածային աշտիճանէն. և եթէ 'ի Տեառն բանից անտի այնպէս զարկան անկան գանալիք, զի՞նչ համարիցիս դու՝ եթէ յաշակերտաց անտի լուեալ էր վասն երկնաւոր սքանչելեացն. ո՞չ ահա իբրեւ զհուր բորբոքէին ընդդէմ նոցա, այրէին զանձինս և զնոսա առ հասարակ ։ Քանզի յորժամ լսէին 'ի նոցանէ՝ անդէն հարցանէին զնոսա, զի՞նչ էր առաւելութիւն վերին տեսլեանն ։ Իսկ եթէ

վասն Մովսէսի և Եղիայի պատմէին նոցա՝ սուտ համարէին, զի ոչ կարէին յայտ ուրեք ցուցանել. թէ ասէին՝ եկին երևեցան և գնացին, զայն ոչ արդար համարէին, քանզի ոչ ունէին զհաւատոյն գիտութիւն. յայնժամ և զոր աչօքն իսկ տեսեալ էր 'ի Տեառնէ՝ չհաւատային: Դարձեալ թէ և վասն սպիտակ ձորձոցն ինչ ասէին, կրկին կորուստ կորստականացն իսկ հաստանէր, կամ լռէին իսկ ոչ զբանս նոցա, կամ 'ի մէջ բերէին զսպիտակ ձորձս նոցա. քանզի երկրապիղծք միայն էին և անհաւատ լսելիք, զիմանալի յայտնութիւնն ոչ կարէին տեսանել. և նոքա 'ի լերին անդ մարմնաւոր ինչ յայտնութիւն ոչ տեսին, այլ երկնաւոր զօրութիւն իմանալով, զայն՝ որոյ 'ի յայտնութիւնն նա միայն գիտէ, և ում կամի ինքն յայտնէ ըստ մասանց, և մտացն միայն ծոց բաւէ ժողովելով, այլ ոչ բանիւ պատմել և սփռել 'ի լսելիս ուրուք. զի որ բանիւ գծագրի՝ ընդ մարմնաձևութեամբ անկանի երևումն նորա. իսկ երկնաւոր փառքն յայսմանէ վերագոյն են, և 'ի մարդկանէ և 'ի հրեշտակաց: Եւ ուր Պաւղոսի առաքելոյ, որ ոչ միայն 'ի լեառն բարձրացաւ, այլ և յերկինս երրորդ և 'ի դրախտն, և զպատրաստութիւն սրբոցն ետես, և զբարբառ պարգևատուին լուաւ, այլ դէմ յանդիման ոչ կարաց հանդիպել. և բարբառ որ եկն նմա 'ի վերուստ ըստ մասանց՝ զզօրութիւն բանիցն ոչ ումեք կարաց երկբորդել: Նոյնպէս և վասն երկնաւոր պարգևացն՝ զի պատրաստեալ պահէին՝ զայն ասաց. այլ 'ի պատուական երկրաւորաց աստի նմանել ումեք ոչ կարաց, իբրև է ճշմարիտ հանդերձեալ. և մեք յայն եմք յուսացեալք՝ զոր Պաւղոսն ետես և պատմել ոչ կարաց. հաւատացեալք 'ի Քրիստոս լիով իմանան և զիմացեալն տեսանեն. և յուսով այնպէս ակն ունիմք՝ որպէս և երանելին Պաւղոս:

Արդ վասն այսր ամենայնի զոր Առաքեալքն 'ի լերին անդ տեսին Հոգւով սրբով, չհրամայեաց պատմել 'ի լսելիս թերահաւատ ժողովրդեանն. մի՝ զի կարէին իսկ ոչ նոքա պատմողք լինել. միւս ևս՝ որոց պատմէինն՝ նոքա ոչ էին արժանի լսել: Որպէս և ինքն Տէր յառաջագոյն ուսոյց զԱռաքեալսն. "Մի՛ տայք, ասէ, զսրբութիւն շանց, և մի՛ արկանէք զմարգարիտս ձեր առաջի խոզաց". շան՝ սուրբ և պիղծ կերակուր ընդ մի հա-

մարեալ էն. և խոզի քան զպատուական մարգարիտ ընդ պարանոցի՝ խոհերական տիղմ յոր Թաւալի՝ լաւ Թուի. զայս տեսանել՝ չար պարգևաց տուողին Թուի, և ևս չարագոյն արտաքին տեսողաց: Վասն որոյ և Տէր մեր զլուսաւոր խորհուրդն լուսոյ մանկանցն յայտնեաց, զի եղիցին վկայք ճշմարտութեանն լուսոյն՝ որ երևեցաւ նոցա 'ի լերին անդ. և նովին լուսով լուսացեալք կայցեն մնասցեն իբրև զանստուեր ճառագայթս. և նոքին եղիցին քարոզք լուսաւորութեան նորա, որք եղեն իսկ և կատարեցան. և ամենայն արարածք որք նստէին 'ի խաւարի և 'ի ստուերս մահու՝ յայն լոյսն յանանց դիմեցին, և նովին լուսովն լուսաւորեցան և լուսաւորեցին մինչև յերկրորդ յայտնութիւն նորին լուսոյ. և նոյն Տէր գալոց է լուսաւոր ամպովք յերկնից ամենայն լուսաւոր զօրօք երկնաւորօք. և 'ի նոյն լոյս լուսաւորին մեռեալք, և կենդանիք ամենայն արժանաւորք՝ յանփոփոխ և յանվախճան յաւիտեանս:

Յոյժ կասկած եղև մտաց իմոց իբրև մերձ եղէ 'ի կատարած ճառիս. ապա յիշեցի եթէ իրք անխնդիրք մնացին 'ի միջի սորա. քանզի փոքր 'ի շատէ տեղեկագոյն եմ խուզող մտաց՝ որ անմեղութեամբ քննեն զզօրութիւն բանին 'ի շահն անձանց և 'ի փառս սուրբ եկեղեցւոյ: Տեսանեմք իսկ աստէն և 'ի մերում աշխարհիս, բազումք վարեցեալք առաքինութեամբ անսխալ հաւատովք ըստ առաքելական կանոնին, յորոց ցնծացեալ բերկրի սուրբ եկեղեցի հեթանոսաց: Զայս հաւատ յանձին պահելով դեգերէին յուսումնասիրութեան ուխտաւոր մանկունք Հայոց մեծաց, զանձինս պարապեցուցեալ 'ի վաճառաշահ օգտից. ոչ ինչ ընթանան զհետ ընչաւէտ մեծութեան, այլ գործ հանապազօրդ այնպիսեացն՝ պահք և աղօթք, զանձինս պահել յամենայն ոգեսպան վնասուց: Այլ հարցք և խնդիրք վասն ծածկեալ բանին զոր ընթեռնուն 'ի սուրբ կտակարանս, գիտեմ զի հարցանեն յայսմ ճառի ցմիմեանս և ցիս. Յարեաւ, ասեն, Մովսէս 'ի մեռելոց մարմնով և եկն 'ի Թաբաւ լեառն առ Տէրն մեր. Եղիայի ահա չէր ինչ խափան, որպէս վերացաւն երագ՝ ահա երագագոյն ևս գայր. Մովսէսի ընդ այն ինչ ոչ զարմանամք եթէ ընդ Եղիայի արագութեամբ գտաւ. այլ

եթէ մարմնով յարեաւ և կամ եթէ հոգւով՝ կերպարանեցաւ առաջի նոցա։ Եթէ մարմնով յարեաւ՝ ճըշմարիտ վիշտ եղեւ նմա, այն որ աղաչէր զԱստուած միանգամ չմեռանել՝ կրկին արդեօք զմահ ճաշակեաց. մանաւանդ զի զԵղիա ետես յանմահութեան, և զՏէր հայրենի փառօքն յարքայութեան. և ինքն անդ եւս 'ի հողոյ եկեալ և անդէն արագ արագ դառնայր. կարի դժուարագոյն է տեղիդ ասեն։

Ինձ ոչ ծանրագոյն թուի հարցուածդ. է ինչ որ 'ի գրոց ունիմ առնել անդրէն պատասխանի, և է ինչ որ յանգիր էութենէն՝ հայելով յաստուածային զօրութիւն. և ընդդէմք ինչ ոչ են միմեանց. քանզի գիրն 'ի լսելիս ազդէ զաստուածային պատուիրանս, իսկ անգրութիւնն՝ յաներեւոյթ մտացն տախտակս. և են երկոքեան աստուածատուր շնորհք, զոր աչք տեսանեն, շրթունք ընթեռնուն, ականջք լսեն. առանց գրոց միտք բերեն զմեկնութիւն։ Արդ քաջ մտառուացն մեծ է որովայն և անձանձրոյթ է ծովն, և անծանրանալի է բազմութիւն բեռինն. որչափ և անկանի 'ի ներքս, ոչ յագեալ շատանայ բազմութեամբն. աղաչելով զԱստուած՝ ընկալեալ զերկակն և երրեկին կարիցէ հասու լինել. որպէս և է տեսանել, որք առանց գրոց խորամուխ եղեն 'ի սէր որդւոյն Աստուծոյ՝ ճշմարտութեամբ հասու եղեն գրելոցն, և ոչ ինչ ծածկեցաւ 'ի նոցանէ յանգիր օրինացն Աստուծոյ. որպէս և ինքն իսկ Առաքեալ ասէ. “Զի այն զոր կամք յաղօթս՝ որպէս արժան իցէ ոչ գիտեմք, այլ ինքն Հոգին հասանէ 'ի թիկունս՝ 'ի հեծութիւնս անմռունչս բարեխօսէ առ Աստուած„։ Ամենայն սուրբք առանց բանի պատմութեան խօսին ընդ Աստուծոյ, և առանց ձայնի արձակելոյ 'ի վերուստ՝ լսեն կամաց նորա. և զոր ասենն և զոր լսենն՝ ընդ գրով արկանել ոչ կարեն, և առաքինի գործովք իւրեանց յայտնի առնեն զանգիր օրէնսն Աստուծոյ։ Եւ յորժամ զայսպիսի զօրութիւն յոգիս մեր հետազօտեմք, կարեմք զծածուկս բանին Աստուծոյ ծածկապէս իմանալ, և ըղտուչութիւն պարգեւին որ շնորհեաց մեզ՝ արտաբերեմք բարբառով. զի և յայլոց լսելիս ազդիցէ հնչումն երկնաւոր։

Յարոյց Եղիա զմեռեալ և երկուս Եղիշա, և կըրկ-

նամահ ոք ոչ ասէ նոցա, այլ մի կեանք և մի մահ. և Տէր մեր յարոյց զՄեռեալս, նոյն ասի և նոցա. այսքանք էին և Մովսէսի. քանզի յառաջին մահուան իւրում ոչ հիւանդացաւ. ինքն Տէրն կոչեաց զնա 'ի լեառն, և ինքն Տէրն որպէս և զտէր առանց չարչարանաց աւանդեաց զնա գերեզմանին: Այլ և մահ իսկ ոչ է արժան ասել՝ այլ և փոփոխումն. Դաւիթ և զայս քուն իսկ անուանեաց. «Ես ննջեցի և 'ի քուն եղէ, զարթեայ և Տէր ընդունելի մեր է»: Դու իսկ որ հարցանեսդ՝ ո՞չ համապազօր 'ի քուն մտանես, ընդ առաւօտն յարուցեալ կանգնիս. ոչ ինչ տրտմիս յաղագս յառնելոյն. զի գիտես եթէ անդէն հասանէ ընդկողմանել: Ապա թէ ասիցես թէ այս դիւրագոյն է և այն դժուարագոյն, մի՛ ասեր, սուտ կարծես. հազար անգամ մահն Մովսէսի դիւրագոյն է, քան զքունդ քո: Եթէ քաղցեալ և ծարաւի 'ի քուն մտանիցես, յար ուտես և ոչ յագիս. աղբեր աղբեր շրջիս և ոչ ըմպես. և եթէ բըռնադատեցար ինչ աւելի քան զչափն անքուն, զառաւօտն ցանկաս տեսանել. և եթէ պայմանաւ կերակրոյն և առողջութեամբ մարմնոյդ դէպ եղեւ քեզ շարժել զաղտեղութիւն, և կամ լինիս երազակոծ, այսր և անդր միտքդ դղրդուին, որով 'ի տուընջեան քեզ չարաւ թուիցին. և չիք իսկ ամենեւին խաղաղութիւն 'ի մերում շարժմունս: Իսկ յայսմանէ Տէրն մեր զՄովսէս պարկեշտագոյնս ամփոփեաց. ծերութիւն ոչ թարշամեցոյց զգեղ նորա, և հիւանդութիւն ոչ ապականեաց զմարմին նորա, ոչ յառաջնում նուազին հեծութեամբ էջ 'ի դժոխս, և ոչ 'ի վերջնում հրաժարելս 'ի Տեառնէ դանդաղեցաւ ինչ թերեւս. և վասն այնորիկ Աստուած ինքնին իսկ ամփոփեաց ... սա 'ի մահ անդր. 'ի ձեռն նորա փոխեաց զնա և ծածկեաց. և ձայն նորա կոչեաց զնա, և զամպն հովանի արար 'ի վերայ նոցա. նոյն ինքն փութանակի ած առ սիրելին իւր զՄովսէս, որպէս և ինքն Տէրն մեր ասէ. «Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ»: Յարոյց Որդի զՂազար կարդալով առ Հայր. յարոյց զՄովսէս Հայր միաբանութեամբ Որդւոյ, զի երեւեսցին իսկ առ նմա. ըստ այսմ իմասցիր զանքակ միաբանութիւնն սուրբ Երրորդութեանն, և յարարչութեան և 'ի փրկութեան և 'ի նշանագործութեան և 'ի

յարութեան նորոգմանն։ Նա վասն Մովսէսի յարութեն մարմնոյն մի՛ ինչ տկարասցին միտք ուրուք. չէ ճառ բանից այսոցիկ առակ օրինակի, որպէս մեծատանն 'ի դժոխս և կամ Աբրահամու և Ղազարու յարքայութեանն. այն զհանդերձելոցն յայտ առնէ։ Տեսեր և յաշակերտաց անտի չիք ոք այնմ վկայ. քանզի ծածուկքն Աստուծոյ միայն են յայտնի. իսկ որ ճշմարտիւս երևեցան, զայս և մարդիկ ընդ Աստուծոյ կարացին տեսանել։

Բայց ես յոյժ աղաչեմ զամենեսեան, ինչ որ յերկրէ և այսր է՝ բաղում այն է որ քննի իմաստուն մտաց, և սակաւ այն է որ ծածկի 'ի մէնջ. իսկ առ աստուածութիւնն և ոչ քան զական քթթումն՝ անկանի ընդ գիտութեամբ. զի ետ վէմն զջուրն՝ զայն գիտեմք ամենեքեան. որպէս ետ, ծածկեալ 'ի մէնջ. որպէս երթայր զհետ նոցա, թարգմանէ մեզ Պաւղոս. զիարդ գնայր առանց ոտից, զայն և ոչ Պաւղոս գիտէր. նոյն իսկ Պաւղոս զվերանալն իւր յերկինս՝ զնշան ճանապարհին եթէ հարցանես՝ ոչ գիտէ պատմել։ Զի եկն Մովսէս 'ի մեռելոց մարմնով՝ հաւատամք ճշմարիտ. որպէս եկն, և ոչ ինքն Մովսէս գիտէ։ Հաւատամք եթէ կերան անմարմինքն զճաշն Աբրահամու. նոյնպէս հաւատամք եթէ եկին Մովսէս և Եղիա առ Տէրն մեր 'ի Թաբօր. և եթէ ոք յայսմանէ յերկբայս լինի, երեք սիւնքն մեզ վկայեն դարձեալ. և եթէ այլ ոք անհանճար միտք ասիցէ, եթէ կերպարանաւ միայն երևեցան, այդմ չէ հնար, մի հաւատար. ստուեր 'ի հայելւոջ երևելին բանք. ոչ սուտն աստուածային գիրք՝ ուր առակն է. ոչ 'ի մարդկանէ խնդրեն վկայ, այլ մտաց իմացուցանեն զմեկնութիւն բանին. իսկ ուր ճշմարտութիւնն է, յայտնի երևի պարզաբանութիւնն։

Ասաց Եսայի. “Տեսի զտէր յաթոռ բարձրութեան„. ճշմարիտ էր տեսիլն, այլ ոչ զօրպիսութիւնն կարէր տեսիլն ցուցանել մեզ. ուր կամի Աստուած՝ առակօք խօսի ընդ ծառայս իւր մարգարէս. և ուր եւս խոնարհութեամբ խօսի՝ և զինքն թանձրացուցանէ, որչափ բաւէ մեր բնութիւնս տեսանել. և վկայս ածէ հրաշակերտս և 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ արդարոց. է զի 'ի կենդանեաց և է զի 'ի մեռելոց։ Նոյնպէս և յայսմ տեղւոջ բաղում ինչ նշանս արար Աստուած 'ի ձեռն Մովսէսի,

և մեծարեաց զնա քան զամենայն մարգարէսն. զսա յա- րոյց 'ի մեռելոց, զսա տեսաք զի կայր և խօսէր ընդ Քրիստոսի. որպէս տեսաքն և վկայեմք, որպիսութիւն յարութեան նորա՝ Տեառն միայն յայտնի: Այլ զի ե- կին Մովսէս և Եղիա և խօսեցան ընդ Քրիստոսի և տեսին երեք Առաքեալքն, վկայեմք ճշմարիտ բանից նո- ցա. և որ յաչս մեր անհնար է, Աստուծոյ ամենայն ինչ հնարաւոր է:

Այլ վասն լերինն գեղեցկութեան և վայրացն վայել- չութեան՝ եթէ կամիք ախորժելով ունկն դնել, սակա- ւիկ մի երկրորդեցից ձեզ զտեսիլ ցանկալի տեղւոյն: Լսելով յաւետարանէն գիտէք ամենեքեան զտեղին. բայց մեր և անձամբ իսկ հասեալ և աչօք տեսեալ, ոչ յատուկ միայն առանձինն, այլ բազում ընկերակցօք. որոց և կամ իսկ եղեւ ուրանց մնալ 'ի լերինն, ոչ ըստ մարմնոյ ախորժութեանս բաղձանաց, այլ առ գութ սի- րոյն Քրիստոսի: Քանզի բնակեալ են անդ բազմու- թիւն սքանչելի եղբարց, որք հոգւով յաճախագոյն վա- րին՝ քան թէ մարմնով: Քանզի թէ ըստ մարմնաւէր մնաց որ հայի 'ի տեղի անդ, վայելչագոյն երեւի քան զտեսիլս բազում լերանց. Նախ զի նիստ նորա է 'ի մէջ դաշտի միոջ յերկրին գալիլեացւոց, և այլ լերանց ամե- նեւին հաւպ ոչ գոյ 'ի նմա, բայց տեսանելով հեռա- գոյն. և ինքն է բարձր և բոլորանիստ. և շուրջ զիւրեւ ունի ինքնաբուղխ գուբս ջրոց և խիտ առ խիտս ծառա- տունկս բազումս՝ որք պտղաբերին յանձրեւաբուղխ ամ- պոց, և լինին ազգի ազգի միրգք քաղցրահամք. և բա- զումք և այլ համադամք անուշութեան. որթք գի- նեբերք, որ իբրեւ թագաւորաց ըմպել արժանիք. ընդ- դէմ լերինն յաճախագոյն ծառք ձիթենիք և եղջիւ- րենիք. չորեքեան օդք 'ի նա շնչելով, յոլովագոյն հիւ- սիսի զօրանայ 'ի նա: Եւ շաւիղն ընդ որ Տեառնն ելեալ է, յոյժ ողորդ է ելն, այսր և անդր մանուածով արարեալ ճանապարհ. ով և կամի ելանել կալ յա- ղօթս, դիւրաւ զելսն 'ի վեր առնիցէ: Յորժամ ելանէ ոք 'ի բուն գագաթն լերինն, բոլոր դաշտն առ հասա- րակ յայտնի երեւի, յարեւելից կողմանէ մինչեւ 'ի Յոր- դանան գետ, յարեւմուտս՝ մինչեւ 'ի ծովն մեծ յաշ- խարհն ծայդանացւոց, 'ի հիւսիսի՝ մինչեւ 'ի ծովն Տի-

նոցա դարման պաճուճանաց 'ի պէտս հիւանդաց, և ոչ պատրաստութիւնք վասն օտարաց. այլ օտարաց և ընտանեաց հասարակ է նոցա միաբանութիւն. երբ ոչ եթէ ինքեանք մարդատեացք ինչ են, այլ մարտ եդեալ կռուին ընդ ապստամբ մարմնոյս, եթէ գուցէ զասպարէզսն չկալեալ ուղիղ՝ զհեծեալն քարավէժ անկցէ: Վասն որոյ և ոչ կամին հանապազ ճաշակել. այլ սովորութիւն է նոցա բնական ամարանի ագանելով, և ձմերանի հաւաքելով զաւուրս շաբաթուն. իսկ որ հզօրագոյնքն են 'ի նոսա՝ զողջոյն շաբաթն ձգեալ 'ի գլուխ տանին: Ապա եթէ ոք երթայր 'ի հեռաստանէ առ սէր սուրբ ժողովոյն, կամ եղեւ ամենեցուն 'ի սովորականն լուծանել բերան. կարի յոյժ փոյթ յանձին ունին 'ի հօգեւոր կերակուրն, զի մի երբէք դադարեսցեն 'ի ճաշակելոյ. թէպէտ և հանապազ ուտեն անյագութեամբ՝ եւս առաւել քաղցնուն և ծարաւին: Ոչ միայն զհարիւր և զյիսուն սաղմոսն արկեալ 'ի վար ձայնիւ, այլ բովանդակ զսուրբ կտակարանս եկեղեցւոյ, որով փառաւորեալ և ահաւոր ձայնիւք շքեղացուցանեն զսուրբ եկեղեցին 'ի լերին անդ: Եւ զոր ընթեռնուն բանիւք, և է զոր պաշտեն փոփոխական ձայնիւք, զդադարումն ոչ երբէք առնուլ յագելով՝ փոխանորդութեամբք միմեանց զունդք զունդք աբեղայիցն, յերիս եկեղեցիս բաժանելով հասարակութեամբ առանց կատարելոյ ունին զկարգ պաշտամանն, զտուընջեանն և զգիշերւոյ. իսկ զերեկունն և զառաւօտին ժամն՝ ոչ եւս փոխանակաւ յաջորդութեամբ միմեանց, այլ միաբանելով ընդ միմեանս լինի բազմութիւն ժողովոյն վեցերորդ քան զայլոց ժամուցն: Եւ մի յերիս եկեղեցիս մեծագոյն է քան զերկուսն, զոր և Տերունեանն իսկ անուանեն. և յերկուս անդ եդեալ են մնչխարս Առաքելոյն, որք և հիմնարկեցին իսկ զտեղին այն օր՝ առելով զանուն երից տաղաւարացն. և անուանեն զնոսա վկայարանս սուրբս, և յիշատակեն զնոսա յանուն Մովսէսի և Եղիայի. և զբոլոր աղօթսն 'ի կիւրակէին կատարեն. իսկ յերկուսն եւս երթան և անդ զԱստուած փառաւորեն: Եւ են ամենեքեան մաշկազգեացք, գիտեն և ձեռնակերտիկ արուեստ. ոմն է որ զփիւրիղն առնէ, և ոմանք զնոյն նիւթս սապատս գործեն. եթէ այլ ինչ պէտք են՝ գործեն, ընդ

լեառնն 'ի վայր իջանելով. և զամենայն զէնս և գործեն զարուեստն՝ ոչ յայլ ինչ պէտս օգտի, այլ 'ի գինս ձիթոյ կանթեղացն հանապազորդ պաշտաման, և 'ի ծախս օղեննեացն, ուստի զմաշկեղէն հանդերձիկն ձեւեն, նովին և զհողաբիրան հայթայթեն: Դարձեալ հարկատուք են միմեանց սիրով. քանզի գոն 'ի միջի նոցա օտարատունք, և յիւրաքանչիւր վաստակոց անդր հարկին. են 'ի նոսա ծերագոյնք, որք ոչ հարկին զպէտս անձանց վճարել միաբան. վասն այնպիսեացն տուեալ հոգ տանին քան անձանց. վասն զի հրեշտականմանք են, ոչ միայն արտաքին պիտոյիւքն սիրեն զմիմեանս, այլ և զծածկութիւն խորհրդոց իւրաքանչիւր ոք ոչ թաքուցանէ յընկերէ. եթէ յանկարծ շարժեսցան միտք ուրուք յիշելով զկերակուր տենչալիս, յայտնէ զախտն իւր միւսումն որ լաւագոյն է քան զնա. միաբանութեամբ աղօթս արարեալ 'ի վերայ՝ վաղվաղակի եկն յառողջութիւն անցաւութեան. քանզի և ինքն իսկ որ հիւանդացաւն՝ տեղեկագոյն գիտէ կռուել ընդ եկամուտ չարին խորհրդոց, մանաւանդ զի փորձիւ իսկ զչափ առեալ էր յառաջագոյն, եթէ ընդ կերակուրս մտանեն ամենայն մեղք 'ի բնութիւն մարդոյն. եթէ զայն դուռն մեղաց փակէ ոք, բազում վնասք արգելուն 'ի նմանէ. զոր ոմանք բազմագլուխ գազան կարդացին զպարարումն որովայնի: Տեսէք, և նոքա նախ զնա սպանին, և յայլ եւս 'ի վնասարար գլխոց նորա՝ աներկիւղք դադարեցին 'ի լերին անդ, զի յերկրաւոր բարձրութենէն յերկնաւոր բարձրութիւնն առ Տէրն իւրեանց կարասցեն վերաբերել, որպէս Մովսէսն և Եղիայն փառօք երեւեցան Տեառն 'ի նմին լերին:

Եւ ես տառապեալս քան զամենայն մարդ, որ հետեւեցայ հետիոտս ընդ տէրունեան շաւիղն 'ի լեառն անդ, և աչօք տեսի զժողով սքանչելի եղբարց, աղաչեմ զընթերցողդ և զլսողդ, աղօթս արարէք 'ի վերայ իմ և ձեր հասարակ. ընդ նոսա ապրեցուք յահաւոր դատաստանացն Աստուծոյ, և երկնից արքայութեանն արժանի լինել 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր. որում փառք յաւիտեանս յաւիտենից:

ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՍԻՐԵԼՒՈՅ

# Ի ՉԱՐՉԱՐԱՆՍ ՏԵԱՌՆ

Յոյժ առաւել զարմանամ քան ժպրհութիւնս մեր, թէ յոր բարձրութիւնս ձկտեցաւ հասանել. ոչ զի եհաս զարմացաւ, այլ զի կամեցաւ հասանել և ոչ եհաս, որպէս և կարծէ իսկ ամբարտաւանութիւնս մեր. զառ ՚ի ծայրիւք բարձրութեանն բերիլ, և գործէ առնելով զառ երկրաւս զամենայն վատթարութիւնս։ Վասնզի բաղումք են ծնունդք վատթար մտացն, և անպիտան են պտուղք որ ՚ի նմանէ չարալին խորհուրդք։ Վասնզի խելքն ՚ի վեր, և գործք գետնամածականք և հեշտութիւնք աղտեղիք և ցանկութիւնք անասնականք, ուրեք լկտութեանց և տենչանք անյագութեանց, զբաղումն մեծութեանց և հանդիսոս ժամանակեանք ոչ ինչ առնենուին ՚ի վեր կարացեալ հայել, և զխոնարհն մեծութիւնն տեսանել յոգիս և ՚ի մարմինս։ Յոր. եթէ սակաւ մի մերձեցցիս և քննեսցես քան այն մեծութիւն, ծաղր արասցես զառ ՚ի նոցունց արհամարհանս. հետևեսցես այսուհետև յախտագլի տեսանելոյ, և մինչ դեռ իցես ՚ի մարմնի՝ վերացուցեալ դնիցես զքեզ ՚ի վերոյ քան զամենայն երևելիս։ Որպէս և մեծն այր Յովհաննէս աւետարանագիրն ոչ ընդ ումէ, ոչ ՚ի ծովէ, ոչ ՚ի ցամաքէ, և ոչ յարգաւորաց մարդկանէ, և ոչ ՚ի տեղւոջէ անտի ուստի ծագումն կենդանւոյ երևեցաւ. նա և ոչ ի վեր յերկնից և յերկնային լինելութեանցն։ Իսկ ուստի պարտ էր սկսանել. յանսկզբնականէն. ընդ ժամու և ընդ ժամանակս, ընդ գոյս և ընդ յաւիտեանս հասանել յանհիմնաւորն և յանմարմնականն, ՚ի միապէս զօրութիւնն, ուստի ամենայն սքանչելի լինելութիւնն։

«Ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն»։ որ և բողոքեցուն սա է պատ-

ճառ։ Արդ զայս ճշմարտութիւնս լսելով՝ մի յանցաւոր կար 'ի կեանս և 'ի ժամանակեայս. այլ ընդ նմին Առաքելոյ թռիցուք յանմարմին տեղին, տեսանելով անդ զբանն Աստուած մարմնացեալ, և աղաչեսցուք զՏէրն ամենագութ, զի ծագեսցէ զլոյս շնորհի իւրոյ յոգիս և 'ի մարմինս մեր. և լուսաւորեսցին աչք մտացս մերոց, լինելով մեզ արժանի ըստ նորա փառացն պատմող սուրբ չարչարանաց և լուսաւոր յարութեան նորա. յորմէ մեծացեալ է յոյժ եկեղեցի, և ունի բազում հարս հոգեկիրս, առաքեալս, մարգարէս, հովիւս ճշմարիտս. որոց ստացուած է զանձն երկնաւոր։ Այլ որչափ բազում են հարքն հոգեւորք, և բազում ունին որդիս առաքինիս, և որչափ բազում են յոյժ ժառանգութիւնքըն՝ առաւել քան զայն եկք և ժառանգիչք։ Իսկ եթէ առաջինքն 'ի դարս իւրեանց գտան կատարեալք վաստակօք, արթնութեամբ տքնեալք, և հաւատովք հաստատեալք, և մեծաւ ճգնութեամբ 'ի հեռաստանէ հայեցեալք, անդուստ զինքեամբք տեսեալ զՏէրն ամենայնի, որ եկն 'ի փրկութիւն ամենեցուն, ոչ վրիպեցին 'ի կենարար աւետեաց նորա. ընկալան և հաւատացին, և կան հաստատուն մինչեւ ցայսօր։ Ապաքէն և որդւոցս ընդ նոյն հետս հարցն պարտ է ընթանալ, զնոյն հաւատս ունելով, զնոյն վաստակս յանձին բերելով, նովին համբերութեամբ երկայնամիտ լինելով, նորին միւսանգամ գալստեանն ակն ունել, նորին աւետեացն սպասել։ Եւ յորժամ այսմ ամենայնի խոկք և կիրթք իցեմք, ընդհարք և ընդելք 'ի վաստակս հարց մերոց հոգեւորաց, և երեւիցիմք եթէ նոցա հարց հոգեւոր որդիք եմք, նա և 'ի ձեռն Հոգւոյն իսկ օգնականութեան կարիցեմք գտանել զժառանգութիւն սուրբ հարցն զոր աւանդեցին մեզ։ Զի ահաւասիկ առաջինքն սերմանեցին և սնուցին, և միջինքն հնձեցին և վաստակեցին, և մեք եկեալ մտաք ի վաստակս առաջնոցն։

Արդ և մի մեք վերջինքս հեղգութեամբ ծուլասցուք, զուցէ վրիպեալ գտանիցիմք 'ի սկսմանէն, յաճմանէն, և անպտուղք 'ի ծայրէն գնացեալք իբրեւ վատ ժառանգիչք՝ սովամահ զանձինս առնիցեմք, ահա գիտեմք իսկ ամենեքեան թէ ունի եկեղեցի բազում մեծութիւն և զանձ երկնաւոր, զոր ոչ ոք կարէ հասու լինել և ար-

կանել ընդ Թուական համարօք: Բայց ես փոքր 'ի շատէ ասացից զգլխաւոր ծայրից երկնաւոր պտղոցն 'ի քաղման զմանն. զի միով մասամբն երեւեսցին ամենայն մասունքն: Զի թէպէտ և յոյժ առլցեալ իցէք ամենեքեան աստուածային մեծութեամբն, ես ոչ ինչ առ 'ի յոյժ գիտութեան առաջ անցեալ մատուցանիցեմ զձեզ 'ի նոր հաւատս գլխաւորելով, կամ նորաձայն բարբառս ինչ օտարոտիս պատմելով, որ քաւ և մի լիցի, կամ ասել կամ լսել զայնպիսիս 'ի սուրբ եկեղեցւոջ: Այլ առ գութ սիրոյն Տեառն ամենեցուն, և առ խանդաղատանս հարցն մերոց առաջնոց, որք հաւատովքն իւրեանց եղեն սիւնք հաստատութեան յաղթողք եկեղեցւոյ, կամիմք և մեք ըստ մերում փոքր գիտութեանս՝ տալ զանձինս յաշխատութիւն 'ի տուէ և 'ի գիշերի, անդադար լինել յընթերցուածս երկնաւոր կտակարանաց, և 'ի մտածութիւն տեսական խորհրդոց. զի և 'ի մեզ կաթեսցէ նշոյլ Հոգւոյն սրբոյ. զի ճշմարտեսցուք ընդ անվրէպ շաւիղս որ տանիցեն ընդ նուրբ ճանապարհն՝ մտանել ընդ նեղ դուռն 'ի մեծ քաղաքամայրն երկնաւոր:

Արդ ահա հասաք 'ի կէտն միջին՝ որ է սկիզբն վերջին, և կատարումն առաջին: “Ամիս այս, ասէ, եղիցի ձեզ սկիզբն ամսոց յամիս տարւոյն”: Արդարեւ նոր չքնաղ զօրութիւն Հոգւոյն սրբոյ օրէնսդրէ 'ի ձեռն Մովսէսի՝ որ բուռն հարկանէ զամսոյն, և ամսոյն պատճառանօք տանի հանէ յարարչութիւնն: “Առաջին ամիս այս, ասէ, ձեզ սկիզբն ամսոց”, որ է արեգ ամիս. զի 'ի սկզբանն լինելութեան ոչ է սա ամիս, այլ օր և սկիզբն, և օր դարձեալ նորածին և ամիս նախադաս և ժամանակ գարնանային: Զի 'ի փարատել ջուրցն յերեսաց երկրէ և ընդ երեւել ցամաքին՝ ձայն 'ի վերուստ արձակեալ “Բուսուսցէ երկիր զբոյս խոտոց սերմանեցելոց և ծառոց պտղաբերեցելոց”, և անդէն երկիր ըզհրամանն երկնային լուեալ իբրեւ մտաւոր և բանաւոր՝ զարդիւնս գործեալ 'ի մէջ բերէ: Իսկ ըստ իւրաքանչիւր տեսակաց կատարելութիւն երեւէր միանգամայն խոտոց և ծառոց. ոչ միայն անձինք ըստ ազգի և ըստ նմանութեան, այլ և պտուղք իւրաքանչիւրք հասեալք

և կատարեալք։ Այն ամիս այս յաւուրս արկածից ջրհեղեղին, որ զբովանդակ տարին արգելեալ փակեցաւ արդարն 'ի ներքս 'ի տապանին, ողորմութիւն 'ի վերուստ կաթեցեալ՝ հրամայէ նմա ելանել 'ի տապանէն և ամենեցուն որ ընդ նմայն էին, լինի ամիս այս սկիզբն ամսոց յաւուրս տարւոյն. և միւսանգամ երկիր դալարաբեր լինէր, և սնուցանէր զամենայն կենդանիս որ 'ի նմա, զի աճեցեալք բազմասցին արարածք ըստ առաջին գոյացութեան։

Արդ Մովսէս՝ որ արժանի եղեւ Հոգւոյն սրբոյ պատմել զլինելութիւն արարածոց, դնէ զամիս զայս 'ի սկզբանն սկիզբն լինելութեան աշխարհի, և խանգարման ջուրցն ապականելոյ զերկիր. յարմարական թուոց ամսոց զամիս զայս ցուցանէ սկիզբն։ Նա փրկեալ Մովսէսի զժողովուրդն յեգիպտոսական ծառայութենէն՝ օրինադրէ զեբրայեցիսն 'ի մեծ տօնիս ասելով. “Ամիս այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց յամիս տարւոյն„։ Ոչ միայն փրկելով զնոսա 'ի չարաչար ծառայութենէն, այլ և զատուցեալ 'ի հեթանոսական տօնիցն հրամայէ 'ի տասն և 'ի չորս ամսոյն զենուլ զառն. ըստ տան իւրաքանչիւր առնել տօնս 'ի գիշերին՝ յորում կատարեսցի լուսաւոր խորհուրդ յարութեանն Քրիստոսի։

Արդ որովհետեւ գտանի ամիս այս սկիզբն արարչութեան, հիմն հաստատութեան գոյացութեանց աճմանց, և թուական ժամուց և ժամանակաց և դարուց կատարման աշխարհիս, և պատարագ հաշտութեան 'ի սմա մատուցաւ՝ որպէս և վերագոյնն ասացաք՝ յաւուրս արդարոյն, և պատճառք ազատութեան 'ի խիստ ծառայութենէ աբրահամեան զաւակին, արդ որովհետեւ փրկիմք յերկրաւոր ծառայութենէս յազատութիւն, յայսմ վայրի, եղեալք, մտադիւրութեամբ վաստակեսցուք. զորէն առաքինի մշակաց 'ի խոր հերկեսցուք և ճգնութեամբ մեծաւ զխստութիւն երկրիս կակղեսցուք, զի 'ի խոր բրելոյ շուրջ զանիւն արմատախիլ զփշաստակար սէզն քաղեսցուք. զի գեղեցիկ սերմանեցեալք ցորեանահատքն զտէր անդոյն ուրախ արասցեն։ Զի եթէ յովտն նշանախեց՝ որ է մի 'ի փոքրկանց տառից, և ունի զտեղի մեծամեծաց, և եթէ ոք զնա արհամարհիցէ՝ յետնեալ գտանիցի յարուեստին իւրում,

որչափ եւս առաւել մեզ արժան է երկնչել զանց առնելով զմեծամեծ պարգեւօք Հոգւոյն սրբոյ, որոյ սկիզբն և միջոցն և կատարածն լի է երկնաւոր մեծութեամբն։ Զի եթէ սկսայց 'ի միակէն և անցից 'ի հարիւրեակն և հասից 'ի հազարսն և յանդգնեցայց 'ի բիւր բազումս, առաւել քան զնոյնս անդրէն մնաց բազում։

Թէպէտ առ քեզ տարացոյց կատարեալ՝ որով հաւանեսցիս միտքդ գալ 'ի ճշմարիտ հաւանութիւն։ Յորժամ ծարաւեալ յաղբերն դիմեսցես դու և եւս բազումք ընդ քեզ, եթէ բիւր անգամ ըմպիցես, ոչ կարասցես արբմամբն քով զաղխումն աղբերն ցամաքեցուցանել, և ոչ զնոյն ջուր արբցես զոր յառաջին արբեր։ Այլ եթէ նստիցիս առ աղբերն, ոչ նմին ջրոյ կրկին դիպեսցիս, և ոչ օտարոտի ինչ դարձեալ 'ի նա խառնեալ տեսանիցես, և ոչ որ երէկն՝ քեզ այսօր կրկին երեւեսցի։ Իսկ արդ եթէ բնութիւն ջուրցն անհատ գնացիւքն այսպէս մեծամեծ խոհականութիւնս ցուցանեն մարդոյ, քանի՜ եւս առաւել բանքն աստուածայինք՝ եթէ արբցես զնա յոգիս ծարաւեալս. ոչ երբեք առլցցիս ծանրութեամբ, այլ թեթեւացեալ անդէն 'ի նոյն փափագիցես։ Թէպէտ և համն և բնութիւնն նոյն իցէ, այլ տեսակք խոհականութեանցն այլ և այլ ճաշակիցին 'ի միտս իմաստասիրաց, և ամենեքեան առ մինն գլխաւորեալ հայեցուցանեն ճշմարտութիւն։

Արդ զի՞նչ է այն որ հրամայէ արգելուլ զգառնն 'ի տասներորդ աւուր ամսոյն, զկենդանին 'ի մէջ կենդանեաց, զձայնաւորն 'ի մէջ բանաւորաց։ Ահա խորհուրդ յայտնի. յոր եթէ կամեսցի ոք, ամենայն իրօք կարասցէ հայել։ Զի տասնեակն ունի զկատարումն թուականին, և թուականն զնիւթական գոյութիւն աշխարհիս։ Զի նիւթականաւն զմարմնականս ասացէ ուսումն կատարեալ վարդապետութեան։ Այլ 'ի լուսաւոր լուսնին առ երեկոյի ժամանակին զենու պատարագն. որ յայտնապէս ցուցանէ զարատութիւն պակասութեան օրինադրեցելոյ տօնին։ Բայց զի է մեծախորհրդութիւն ճշմարիտ գառինն Աստուծոյ, որ գալոց և փրկելոց է զԻսրայէլ, ոչ յԵգիպտոսէ միայն, այլ 'ի սատանայական ծառայութենէ, նշանակի արիւն գառանցն 'ի վե-

րայ-սեմոց իւրաքանչիւր, և պահէ զտունս ամենեցուն 'ի հարուածոց, յորում եգիպտացիքն հարան 'ի մեծամեծաց մինչև 'ի փոքունս։ Եւ զոր օրինակ ուրախ լինէին երկրպագորդք 'ի տեսիլս ծաղկանց ծառոց յառաջ քան զհասանել պտղոց, այսպէս և մեք ուրախ լիցուք 'ի խորհուրդ տօնիս այսորիկ մինչև զենցի գառնն Աստուծոյ, որ է տօն փրկութեան Հրէից և հեթանոսաց։ Արդ փոխանակ զի ոչ ունէին իւրեանց իսրայէլացիքն երկիր բնակութեան և տաճար յանուն Աստուծոյ ժողովել ամենեցուն, և ոչ զազգն Ղեւեայ ձեռնադրեալ 'ի քահանայութիւն, բաւական համարեցաւ չնորհն Աստուծոյ զանձն իւրաքանչիւր առնել տաճար և բնակութիւն Աստուծոյ, և յամենայն տունս լինել քահանայս։

Բայց մեք այսու ամենայնիւ ճեպով 'ի կատարեալ հրամանն Մովսէսի անցցուք. որ գործով զգառնն Աստուծոյ առ որդիսն Իսրայէլի օրինադրէ, և զօրութեամբ առ որդիսն Աստուծոյ 'ի հեռաստանէ ակնարկէր։ Մի հում ուտիցէք, ասէ, որ է դազանային չաղղակերութիւն. և մի եփեալ ջրով, որ է տարածումն և զեղխութիւն ամէն յաշխարհիս. և մի բնաւ չուտիցես, որ է վրիպումն ուրացութեան. այլ խորովս կերիջիր, որ է անպաճոյճ ծախումն երկնաւոր հրոյն։ Աղխաղակի կերիջիք, մի յամելով իբրև եթէ միով մասամբ մարմնոյն ուտել. այլ զօրութեամբ զօրէն հրոյ ամենայն մասամբք գոյացութեան իւրոյ։ Զգլուխն հանդերձ ոտիւքն և փորոտեաւն, ասէ։ Եւ կարի յոյժ վայելչաբար զնախաստեղծ գլուխն և զտորադիր ոտս մարմնոյն հանդերձ մնդալական փորոտեաւն հրամայէ ուտել, զանց արարեալ ընդ չարչարանացն, զի յերեցունց քաջապէս ապրել կարասցես։ Իսկ զաւելորդն յերիցն մնացեալ յայգ՝ հրով հրամայէ այրել, որ է մեղք և անօրէնութիւնք։ Դարձեալ ասելով գոտիք ընդ մէջ և կօշիկ յոտս, ցուպ 'ի ձեռին, ճրագունք լուցեալք, ամենեքեան այսք նշանակք են արութեան պնդութեան՝ առժամայն յելս գաղթին փոյթք, իսկ առ յապա՝ գաղութ լինել 'ի բնաւ աշխարհիս կենաց։ Վասնզի գոտիքն ուսուցանեն զարիական պատերազմն, և ցուպքն զարքունեանն և զխրատականն. իսկ կօշիկքն զաներկիւղութիւն ճանապարհին՝ անվնաս գնալով 'ի վերայ թիւնաբեր սողնոց. և

լուցեալ ջրագունքն զանշէջ մտաց մարդոյն լուսաւորութիւն, որ զտէր խորհրդոյն 'ի հեռաստանէ իբրեւ 'ի մօտոյ տեսանէ, առաւել յայտնագոյն յասելն, եթէ “Ոսկր նորա մի բեկանիցէք և 'ի յայգ մի հանիցէք”. որպէս և եղեւ իսկ, զոր և յառաջիկայ բանիս տեսցուք։

Արդ եթէ Մովսէս յառաջագոյն կրթէր զժողովուրդն յայսպիսի յայտնագոյն խորհուրդ՝ յորում ծածկեալք յԱստուծոյ առ յապա յայտնելոց էին, և մարգարէքն նովին հոգւով զնոյն քարոզէին, և արդարքն հաւատային, և ժողովուրդն ամենայն գալստեան Տեառն ակն ունէին, որպէս և կինն շամրտացի ասէր՝ եթէ յորժամ Մեսիայն եկեսցէ՝ նա մեզ զամենայն պատմեսցէ, արդ նոյն Տէր՝ որ զայս ակնարկութիւնս առ ժողովուրդն կատարեաց, 'ի սմին արեգ ամսեան աւետարանեցաւ 'ի հրեշտակէն սրբոյ կուսին 'ի Նազարեթ. զի զսոյն ամիս արասցէ սկիզբն նորոյ փրկութեանս։ Եւ եմուտ արգելաւ գառնն Աստուծոյ յորովայն կուսին՝ լինելով անդ ամիսս ինն. զի բացցէ զաչս կուրացելոցն, յիշատակելով նոցա զզենումն գառինն որ յԵգիպտոս. զի ածեցեալք և 'ի չափ հասեալք կատարեալ գիտութեանն՝ թերեւս ոչ վրիպեսցին 'ի գառնէն Աստուծոյ, որ փրկելոցն էր զնոսա յանլոյծ կապանացն հնութենէ մեղաց։ Որպէս զի և ինքն իսկ գառնն Աստուծոյ զամենայն դեգերումն յամելոյն երեսնամեայ ժամանակաւն և աւելի եւս ամօք առ որդիս ժողովրդեանն զումարէր ծննդեամբ ծագմանն և յայտնութեամբ մկրտութեանն, որպէս զի զնշանագործութիւնն զամենայն 'ի մէջ հրէաստանի կատարէր, և զընտրութիւն Առաքելոցն 'ի նոցունց որդւոցն որոշէր, և հանապազորդ կրթելով զամենեսեան ուսուցանէր յօրինաց և 'ի մարգարէից՝ եթէ վասն իմոյ գալստեանս քարոզեցին ամենեքեան, և ասելով յԱռաքեալսն՝ եթէ “Ոչ եմ ուրեք առաքեալ, բայց միայն առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայելի”։ Նա և զաւետիս հարցն հաստատէր մտանելով ընդ Թլփատութեամբ, յանձն առնուլ՝ ծանօթս և բարեկամս առնել 'ի մէջ ամենեցունց. դուռն բանայր յինքն մերձենալոյ մաքսաւորաց և մեղաւորաց. հալածականս առնէր զդեւս 'ի սահմանաց ընտրեալ ազ-

գին. զախտս և զպարշարանս բժշկէր, թօլթափեալք յանձանց՝ որք հաւատով մերձենային 'ի նա: Նա և որ մեծն էր քան զամենայն, 'ի բազում տեղիս բազում անգամ զմահ կապէր, և դնէր 'ի ներքոյ իւրոյ յաղթող զօրութեանն. և զմեռեալս կենդանիս պահանջէր յանօրէն բռնաւորէն. և զամենայն արտօսր հատեալ յամենայն աչաց, սուգ և տրտմութիւն փախստեայ լինէր յերեսաց նորա. ատելութիւն հալածէր և ագահութիւն յանգիմանէր. խաւար փախչէր և լոյս թագաւորէր:

Նա զայս ամենայն իբրեւ այսպէս յօրինեալ կազմեաց, քահանայքն և քահանայապետքն հարեալ նախանձուն ախտիւք՝ կափուցին զաչս իւրեանց 'ի լուսոյ ճշմարտութեան, և խցեալ զլսելիս իւրեանց՝ ոչ կամեցեալ ունկնդիր լինել օրինաց և մարգարէից, և ոչ ընդունել զքարոզութիւնն՝ որ կատարէր զաւետիս մարգարէիցն: Նաև 'ի վերայ այսր ամենայնի բարեգործութեանցս հակառակեալք և ընդդէմ դարձեալք արգելուին զժողովուրդն անունկնդիր լինել կենդանարար վարդապետութեանն: Որդ եկեալ եհաս 'ի նոյն ամիս, որ 'ի սկզբանց զխորհուրդ կենարարին նշանակէր, և Տէրն ամենեցուն առ սէր որդւոցն Աստուծոյ 'ի նոյն գութ եկեալ զնոյն զատիկ ընդ նոսա խնդութեամբ կամէր կատարել. զի թերեւս յետս փարատեսցի խաւար նախանձու 'ի խորհրդոց նոցա, և բացցին աչք մտաց նոցա՝ զորս կամօքն կուրացուցին. և ծանիցեն զՏէր տօնին՝ որ եկն 'ի կեցուցանել զարարածս առ հասարակ, որք մեռեալ էին 'ի մեղս իւրեանց:

Բայց արդ դու լուր զմեծամեծ չարիսն: Իբրեւ մերձեցաւ, ասէ, տօն բաղարջակերացն՝ որ անուանեալ կոչէին զատիկ, գիտացին եթէ գայ Յիսուս 'ի բազմութիւն ժողովրդեանն ուսուցանել զնոսա, զահի հարան և յոյժ յերկիւղի էին, եթէ գուցէ կամ զկոյրս բանայցէ կամ զանդամալոյծս բժշկիցէ կամ զդիւահարս սրբէ. մանաւանդ եթէ զմեռեալ ոք յարուցանիցէ, ամենայն ժողովուրդն հաւատան 'ի նա: Վասն այսր երկիւղի խորհուրդ արարին քահանայապետքն և մեկնիչքն և պատմեցին իշխանացն և ուսուցին զբազմութիւն ժողովրդոցն, զի ուր տեսցէ ոք՝ գուշակեսցէ. և

ինքեանք իսկ վառեալք իբրու զինուք, զի ուր և գտանիցեն՝ սպանցեն։

Եւ իբրեւ այսպէս ոչ հնարեցաւ նոցա, գտաւ նոցա օգնական՝ որ 'ի սկզբանէ իսկ բնակեալ էր 'ի սիրտս նոցա։ Եւ 'ի ձեռն միջնորդի ուրեմն՝ որ անուամբ էր ընդ աշակերտսն, և գործակից չարակամաց քահանայիցն լինէր, որպէս և աւետարանն յայտնագոյն իսկ ցուցանէ. "Սատանայի իսկ, ասէ, արկեալ էր 'ի սիրտն Յուդայի, զի մատնեսցէ զնա նոցա,,։ Տեսանես, զի գործակից էին՝ ոչ քահանայութեանն, այլ սատանայական գործոյն։ Չոգաւ առ նոսա և ասէ. Զի՞նչ տայք ինձ, և ես մատնեցից զվարդապետն։ Եւ նոքա մատուցին նմա վաղվաղակի կշիռ երեսուն արծաթոյ։ Ո՛վ մոլիք, և ոչ քահանայք. զի թէպէտ և չարաչար մատնէր, այլ զանուն գեղեցիկ խոստովանէր. վարդապետ ասաց, և ոչ գող և սպանող, և ոչ այլ ինչ մի 'ի չարագործաց աշխարհիս։ Վասնզի զարծաթդ խոստանայք, ընդէ՞ր ոչ գործոց նորա հարցանէք եթէ վասն որո՞յ չարեաց մատնես զնա 'ի ձեռս մեր։ Այլ թերեւս երկեայք հարցանել եթէ վասն որո՞յ չարեաց մատնեցեր զնա. զայդ բարւոք արարէք, զի ձեզէն իսկ գիտէք և հասեալ էք 'ի վերայ եթէ ոչ գտաւ նենգութիւն 'ի բերան նորա, և ոչ անօրէնութիւն 'ի գործս նորա, որով ոչ ոք 'ի մարդկանէ զնա յանդիմանել կարէ։

Բայց աղէ դուք, հարցանեմ զձեզ, ընդէ՞ր տայք զարծաթդ, և ուստի՞ տայք, և վասն է՞ր երեսուն լիտր։ Եթէ մահապարտ է, որպէս ասէքդ, մի՛ առնէք զկորուստ արծաթոյդ. ոչ ոք 'ի մարդկանէ գնէ արծաթոյ զմահապարտ և սպանանէ. Թո՛յլ տուք այդր, մեղքն իւր ամբաստանեն զնմանէ. զգործոց նորա բուռն հարէք, զի չարիք նորա մատնեն զնա 'ի մահ։ Այս գիտեմ զի ճշմարիտք էք. մանաւանդ և իմաստունք և քահանայապետք և առաւելեալք գիտութեամբ քան զամենեսեան. գիտէք՝ աւադիկ գուշակ յաշակերտաց նորա, հարցէք և գրեցէք զգործս վարդապետին իւրոյ։ Սկիզբն արարէք՝ ուստի սկսաւն նա առնել, այդրէն իսկ 'ի տօնիդ գտանէք բազում գալիլեացիս։ Եւ գտանէք անդ 'ի հարսանիսն զջուրն գինի եղեալ, և 'ի Կափառնաում 'ի հինգ նկանակէն հինգ հազարքն յագեցեալք և եր-

կոտասան սակառի լի մնացեալք. և եթէ 'ի Նային հասցանիցէք, զորդի այրւոյն միամօր 'ի մեռելոց յարուցեալ տեսանիցէք. և եթէ 'ի տուն քահանայապետին մտանիցէք, զնոյն տեսանիցէք. և եթէ յերկիրն գերգեսացւոց մտանիցէք, ոչ միայն զբազմադեւ պատանին բժշկեալ տեսանիցէք, այլ և զդեւսն 'ի ծովն հեղձուցեալ. և եթէ 'ի Պէնեադա քաղաք մտանիցէք, ոչ միայն զկինն առողջացեալ տեսանիցէք, այլ և զտէրունեան անդրին կանգնեալ, և բժշկեալն բուսն հարեալ ունի զգրօշակէն Տեառն, և ընդ նորին անդրեան բուսեալ արմատ՝ որ մատուցանէ զբժշկութիւն ախտացելոց: Բայց ես գիտեմ, զի ոչ կարէք երթալ 'ի հեռաստան, քանզի և կամիք իսկ ոչ. 'ի Բեթանիա մատերուք, մօտ այդրէն հարցէք զՂազար՝ եթէ ո՛ւր չոգաւ և կամ ուստի եկն. և եթէ զնա ոչ կամիք հարցանել, քանզի չարաչար պատմէ զձէնջ վասն հանդերձեալ տեղւոյն որ պատրաստեալ է ձեզ. և կամ յԵրիքով զկոյրն հարցէք, զոր 'ի հեռաստանէ ձայնիւն բժշկեաց: Իսկ եթէ զնոսա պատճառանօք կարծէք, այդրէն իսկ 'ի դմին քաղաքի տեսէք 'ի Բեթհեզդա զերեսուն և զութ ամ. զանողորմութիւնն ձեր մահիճքն աղաղակեսցեն: Իսկ 'ի Սելովմ հարցեալ, զառ 'ի ծննդենէ կոյրն տեսանիցէք լուսաւորեալ. և տեղեկութեամբ իսկ գիտէ տալ պատասխանի:

Արդ վասն որո՞յ գործոյ մատնի 'ի ձեռս ձեր վարդապետն: Իսկ եթէ գիտէք և չար են գործքն, ահա լուայք ապաքէն, գրեցէք և մատուցէք դատաւորին ձերում, զի 'ի գործոց իւրոց մատնեսցի: Ապա եթէ բարի են գործքն, որպէս և են իսկ բարի, ոչ դուք միայն պարտեալ ամաչէք, այլ և ամենայն մերձաւորք ձեր ընդ ձեզ: Իսկ որ մատնեացն՝ ոչ միայն ամօթոյ արժանի է, այլ և բազում հարուածոց փոխանակ զայնպիսի շնորհս զլանալոյ: Իսկ եթէ ճշմարտասէրք էիք, դուք ձեզէն իսկ առնուիք վրէժս 'ի նմանէ. զի որ ընդ այն հայէր, չար ընդ բարւոյ ոչ հատուցանէր: Արդ քանզի զայդ ոչ արարէք, արծաթ եւս տայք նմա. և ոչ 'ի տանց ձերոց, այլ 'ի սուրբ նուիրաց տաճարին. ո՞չ ահա յանդիմանեալ կշտամբիք. քանզի ոչ զմարդոյ աւանդ, այլ զԱստուծոյ հատանէք և կողոպտէք զամենասուրբ տաճարն. ոչ 'ի փրկանս գերեաց և ոչ 'ի տուրս աղքատաց, այլ 'ի

գինս արեան արդարոյ. և արդարոյ ոչ 'ի մարդկանէ ուրուք, այլ զորդւոյ Աստուծոյ:

Այս յիրաւի ուրեմն Զաքարիա մարգարէ յառաջագոյն գիտելով զչարութիւնդ ձեր, որ տարապարտ սուտ մարգարէիցն ձերոց մատուցանէիք վարձս բազումս, քանզի խօսէին զկամս չար անձանց ձերոց, և զոմինչք եւս լինէին չարութեան գնացից ձերոց, ասէ և ճշմարիտ մարգարէն. "Եթէ բարւոք թուի ձեզ այդպիսեացդ ծախս անբաւս լինել, տուք և ինձ զվարձս իմ. ապա թէ ոչ, զոյց արարէք, զի և ես գիտացից". և նոքա վաղվաղակի կշռեցին և ետուն 'ի ձեռս նորա երեսուն արծաթի: Այլ այս էր յաչս մարգարէին անհնարին դառնութիւն, տեսանել 'ի նմա զամենամեծ և զահագին չարիսն զոր գործելոց էր ժողովուրդն. ոչ կարէր հանդարտել ծանրութեան իրացն, առեալ արկանէր զայն 'ի տուն Տեառն 'ի բովս, զի թերեւս պատկառեսցեն 'ի մոլեկան գործոյն, որ և զդիւայն ամբարշտութեամբ զանցուցանէր: Արդ ոչ յաւելուն և ոչ հատանեն 'ի կատարեալ չարեացն. պահեն զերեսուն թիւն և բերեալ մատուցանեն մատնչին, զի գնեսցեն զարիւն աստուածային, ոչ դիպուածով և ոչ որ են յանկարծակի 'ի ներքս անկեալ, այլ հնացեալ խորհրդով զոր կատարէին 'ի նորոգիչն ամենայնի չարութեամբ:

Արդ զերեսուն թիւ արծաթոյդ եթէ յոսկի փոխանակեսցես, լինի բաժանեալ յերրեակ յիններորդ. և եթէ 'ի նոյն իսկ 'ի թիւ արծաթոյն, բաղկանայ յերիս տասնեակս. առաջին տասնեկաւն անարգեցին զտառն պատուիրանին. երկրորդ տասնեկաւն ուրացան զփրկութիւն Մովսէսի. երրորդ տասնեկաւն չհաւատացին երկրին պարգեւաց: Դարձեալ 'ի ձեռն սորին երրեակ թուականի զՀայր ընդ որթուն փոխանակեցին յանապատին, և քարկոծելով զմարգարէսն դառնացուցին զսուրբ Հոգին, և միացորդօք նորուն թուականին գնեցին զսուրբ արիւնն յանձինս և յորդիս իւրեանց մինչեւ ցյաւիտեան:

Այլ քանզի զայրացեալք էին 'ի նախանձ բարկութեան իբրեւ գազանս անապատի, ոչ ինչ փոյթ արարեալ վասն պատուական տօնին, ժողովեցան քահանայքն և քահանայապետքն, ծերք և փարիսեցիք, և որ իշխան էր

տաճարին հանդերձ ամենայն բազմութեամբն՝ վաճառեալք իբրեւ զխնուք, և առաջնորդս եւս ունէին, որում ետուն զարծաթն 'ի տաճարէ անտի. ընդ նմին և զօրաւիգն իւրեանց զանմարմին և զիմանալին սատանայ. և զժամանակ գիշերոյն օգնական, զի 'ի խաւարային ժամուն անկցին 'ի խորխորատն կորստեան: "Ընդ որում ես համբուրեցից, ասէ, նա է, կալջիք և տարջիք զգուշութեամբ": Ընդ ճախողակի ողջունին յետս ընդդէմ հատուցումն անդրէն ընդունի: "Որում ես թացից, ասէ, 'ի սկաւառակէս և տաց, նա է որ մատնելոց է զիս". Թացիցն՝ զօրհնութիւնսն լուացից ասէ: Որոյ սիրտն եղեւ բնակութիւն նենգաւոր Թշնամւոյն, ոչ դադարի անդ շնորհն աստուածային. իսկ ուր աստուածային շնորհն ոչ բնակեալ լինի, նա կորստեան անցաւորաց ճանապարհի է:

Իսկ Պետրոս որ լի էր բարեսէր նախանձու, մանաւանդ իբրեւ զաշակերտակիցն իւր ընդ նոսա ետես, ոչ կարաց համբերել սատանայական զօրութեանն. քանզի լուեալ էր յամենագէտ Տեառնէն, եթէ որ դոյ սուսեր՝ առցէ, և որ ոչն գուցէ՝ գնեսցէ և բերցէ: Զինչ են հրաման պատասխանւոյս այսորիկ. իբրու զի յայտնի է իմաստնոց, սրոյ նմանեցոյց զճշմարտութիւնն. որոյ ստացեալ իցէ զաստուածպաշտութիւնն՝ պինդ կացցէ, և որ սակաւ մի թուլացեալ իցէ՝ գնեսցէ, ոչ սուսեր 'ի մարդոյ ումեքէ, այլ յորդւոյ մարդոյ զճշմարտութիւնն, ոչ գնոյ արծաթոյ, այլ արեամբ անձին իւրոյ. քանզի՝ սուր եկն արկանել, ոչ միայն յերեւելի մերձաւորութիւնն, այլ և ընդ հոգի և ընդ մարմին յանձինս իւրաքանչիւր: Այս է սուսերն բնական և ստացական. իսկ Պետրոս զերկոսեանն ունէր. բնական առ սէր վարդապետին զոր ունէր 'ի սուրբ ոգւոն, իսկ ստացական որով զծառային ունկն 'ի բաց հատանէր: Եւ կարի վայելչաբար զծառային և ոչ զազատի, զմեղաց և ոչ զարդարութեան, զունկն զապստամբ, ոչ զգլուխն պատուեալ զմասնն, և ոչ զամենայնս. քանզի ոչ այլ ինչ նման է ծառայութեանն, որպէս զգայութիւն մտաց: Քանզի ակն ընդհարութեամբ՝ միտքն ընդ իմանալին բախեցան, և ունկն ընդ լսողութեամբ, աչք 'ի տեսաւորութիւն պատրաստեցան, և խոհականութիւն ան-

զուտ սրտախանդաղատութիւնն առաքինութեանց. իսկ ընծայեալն հաստատութիւն զձեռնարկելեացն ուղղութեանց յաջողութիւն պաշտպանութեան. և 'ի ձեռն զգաստութեանցս այսպիսիկ ամենայն զգալիքս առ ի զգուշութիւն պահպանութեան:

Իսկ անկանելեացն դժուարագոյն իմն է առնուլ պահպանութիւն անձանձրութեան, որ և կարի իսկ 'ի բազում անարժան ձայնից. և ոչ միայն ծառայ մեայ, այլ և ծառայեցելոց զգաստութեանցս կրկին ծառայեցեալ: Արտհանելով 'ի բաց զանձն ծառայելին, նշանակեաց զանդրդուելին 'ի սկզբանէ զանլրութիւն և զանհնազանդութիւն մարդկան: Բայց քանզի շատ է զի և բարերար Տէր երկնի և երկրի զամենայն խնդութիւնս մեր եդն 'ի բժշկել, և զթերութիւնս մեաց մերոց լնուլ և կատարել, ոչ զանց արար մարդասիրութիւն նորա և զանկամ ծառայելն. այլ առեալ անդրէն 'ի տեղւոյն եղեալ' անպէր և անսայր զտեղին ցուցանելով, որ է նշանակ դարձի մեղուցելոցն յապաշխարութիւն. և խօսի ընդ ամենեսեան աղերս բանիւք և քաղցր բարբառով:

Բայց քանզի զօրութիւնն էր անպարտելի, թէպէտ և յոյժ խոնարհագոյնս խօսի, սակայն եւ եւս առելով Աստուածն մարդացեալ, երկիցս անգամ անդրէն յառաջ բնութիւնն զարկոյց զնոսա և ոչ իմացան: Ողորմեալ այնուհետեւ և բարերարին անարժանից, երիցս անդէն 'ի տեղւոջն կատարէ բան. զՊետրոսի զսուրն անդրէն հրամայէ դարձուցանել, և զինքն փոխանակ աշակերտացն մատնէ 'ի ձեռս ունելեացն, միանգամայն և զ[illegible]օր կատարէ զհրամայեալն զբաժակ մահուն ըմպելով: Եւ քանզի էր Աստուած անսուտ, եղեւ մարդ ճշմարիտ' անկասկածելի աստուածութեամբն աներկիւղ մատնէր 'ի ձեռս ունելեացն. իսկ մարդկային բնութեամբն երկիւղագին խանդաղատական աղօթիւք զայն որ կարողն էր փրկել 'ի մահուանէ' աղաչէր ոչ դուզնաքեայ և մտահաճոյ, այլ ընդ այլոյ ինչ երազատես լինէր, այլ յառաջահոգակ և նախախնամ հոգիւ կենդանի բանաւոր խաշանց կանխագէտ տեսանէր զինչ լինելոցն էր:

Առեալ այնուհետեւ զաշակերտսն գայ հասանէ 'ի տեղին զոր յառաջագոյն նկարեալ էր մարգարէիցն.

« Ժողովեցից, ասէ, զամենայն ազգս երկրի, և իջուցից զնոսա 'ի ձորն Յովսափաթայ. և անդ նստայց դատել զամենայն ազգս շուրջանակի »։ Արդ ոչ զի յառաջագոյն ասացեալ էր մարգարէութեանն՝ ակամայ իրքն կատարէին, այլ նոյն ինքն հոգի Աստուած մարգարէիւքն խօսէր որ ինչ լինելոցն էր. ոչ այսօր, այլ որ 'ի սկըզբանց յեղումնն ըստ կամաց յազատութեանն առաջին մարդոյն էր։ Եւ քանզի ոչ հարկաւոր էին իրքն, այլ ըստ խրատու թշնամւոյն և ըստ յօժարութեան վատթարի ոգւոյ անփոյթ արարեալ զյօժարութիւնս, քաջաբեր լինել քան անարգագոյն պտուղս։ Եւ քանզի Տէրն ամենեցուն ոչ եկեալ էր 'ի դատապարտութիւն, այլ փրկել 'ի ծառայութենէ և նորոգել յազատութիւն, խնդրէր աղօթիւք յայնմանէ՝ որ առաքեաց կոչել զաշխարհ 'ի մոլորութենէ, և հաստուցանել 'ի Հօրն արքայութիւն։

Արդ ետես յայսմ տեղւոջ եթէ եկեալ հասեալ է ամենայն արարածք ականատես լինել մահուան որդւոյն Աստուծոյ, եթող զաշակերտսն 'ի խոնարհագոյն տեղւոջն, և ինքն սակաւիկ մի 'ի վերագոյն տեղին մատեաւ. անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց՝ խոնարհեալ համբուրէր զդէմս երկրի, և հեղոյր զսուրբ զարտասուսն 'ի սուրբ հաստուած հողոյն, և բառնայր զառաջին անէծսն։ Դարձեալ կանգնէր, 'ի վեր հայեցեալ կարդայր առ Հայր աղօթիւք ասելով. Հայր եթէ հնար ինչ է, անցո զբաժակս զայս յինէն։ Իբրու տէր էր հնարից և անհնարից, առ Հայր կարդալով ցուցանէր զմիասնական Երրորդութիւնն, և միանգամայն և ըզմարդկութեանս բնութիւն, որ այնչափ վերաբերեցաւ յաստուածութիւնն։ Աղօթս առնէր ոչ միում ազգի և կամ միում մասին, այլ ամենայն մարդկան և տիեզերաց. ոչ մարդկան միայն, այլ ամենայն կենդանեաց, ցամաքայնոց և ջրայնոց և օդայնոց, երկնի և որ յերկինս։ Զի թէպէտ և որդի էր ըստ աստուածութեանն, սակայն 'ի ձեռն մարմնազգեցիկն լինելոյ՝ ուսաւ 'ի չարչարանացն մահու զնեղութիւն ամենայն կենդանեաց, որ անկեալ են ընդ ապականութեամբ մահու. զի յորժամ իրքն կատարեցան 'ի յապականութիւն ամենայն

մահկանացուացս, կարող իցէ օգնական լինել յանչարչարութիւն. նա և որ առաջինկայ իրքն էին, ոչ փոքր և ոչ դուզնաքեայ ինչ էր, այլ ահագին մեծապէս:

Զի եթէ 'ի մահուանն Ովսիայ որդւոյն Ամոնայ 'ի տարապարտուց մեռանելոյն՝ ամենայն Իսրայէլ առնուլ սուգ՝ ոչ մի ցեղ կամ երկու, այլ ամենեքեան, զոր մեծապէս մարգարէն ողբայ, "Ձայնուրն յայնմիկ, ասէ, դիցես կոծ սաստիկ իբրեւ զկոծն ադադռռամեթով որ 'ի դաշտին, ազգ տանն Դաւթի առանձինն և կանայք նոցա առանձինն, ազգք տանն Նաթանայ առանձին և կանայք նոցա առանձինն, ազգք տանն Շմաւոնի առանձին և կանայք նոցա առանձինն, որչափ եւս առաւել 'ի մահ որդւոյն Աստուծոյ երկինք խոնարհեալ, երկիր դղրդեալ, և ամենայն իմանալի զօրութիւնքն զարհուրեալ:

Իսկ ամենայնի Տէրն յայսմ վայրի ոչ մի անգամ միայն, այլ և երկիցս և երիցս 'ի վայր անկանի, իբրեւ թէ երկինք յերկիր. և դարձեալ կանգնեցաւ՝ որպէս թէ զերկիր ընդ իւր կանգնէ 'ի վեր տարրացեալ, միութիւն գործելով երկնաւորաց և երկրաւորաց. և ոչ փոքր ինչ էր ծանրութիւն բեռինն՝ զերկինս բառնալով և զերկիր կախելով զինքենէ: Տեսանես, և ոչ քիրտն դուզնաքեայ բղխէր յաստուածային մարմնոյն, այլ քիրտն ուժգին և արիւն. և արիւնն ոչ միով մասամբ, այլ վտակք բազմահոսանք. որով զերկինս սրբէր, և զերկիր լուանայր, և զօդ մաքրեաց յառաջին ծխոյ ճենճերաց զոհիցն ապականութեան:

Այլ 'ի վերայ այսր ամենայնի սքանչելագործութեանց՝ աշակերտքն անկեալ դնէին անընդոստ քնով: Այլ սակայն մարդասէր Տէրն հեզաբար հանդարտութեամբ մատուցեալ ընդոստուցանէր զաշակերտսն, իբրեւ թէ զաշխարհ 'ի քնոյ, և աղերս բանիւք ասելով. Ո՛վ Պետրէ, այդպէս վայրիկ մի ոչ կարացէք արթուն կալ. քանզի վեց օր արարի զերկինս և զերկիր և զամենայն զարդս նոցա. և արդ ահա այս վեցհազարեան ամ է, որովք անկեալ խանգարեցան ընդ ապականութեամբք, և իմ եկեալ փրկել և անդրէն նորոգել: Արդ աղէ զարթիր և արթուն կաց սակաւ մի, և թափեա 'ի քէն զծանրութիւն քնոյդ, և տես զինչ ինչ գործելոց է ընդ

իս ազգատոհմդ քո 'ի վերայ ամենայն բարեգործութեանց իմոց մինչեւ ցայսօր ։ Ո րինչ կամիս հատուցանել ինձ ժողովեալ ամենեցուն իբրեւ 'ի վերայ մահապարտի, ոչ ըստ աշխարհի սովորական մահու սպանանել, այլ մեծապէս անարգանաւ ։ Այլ ես յոյժ խռովեալ եմ և տրտմամ դառնապէս, քանզի 'ի մահուան իմում գիտեմ զինչ լինելոց է ․ ընտրեալ տաճարս աւերելոց է, քահանայութիւնն լռեսցի, պաշտօնն դադարէ, ընթերցուածք սուրբ կտակարանացն որ վասն նորա աղաղակէին՝ 'ի սուգ մնասցեն ․ հուրն հանապազօրդ շիջանի, պատարագք խափանին, ողջակէզքն որ վասն մեղաց՝ զտեղի առնու, ուխտադրութիւնն որ 'ի հեռաստանէ՝ ոչ եւս եկեսցէ ․ անձկեալ քաղաքն Երուսաղէմ աւերեսցի, և ամենայն Իսրայէլ ցրուեսցի ։ Այս և դուք իսկ երկոտասանքդ որ ընդ իս էք, յայսմ գիշերի գայթակղելոց էք ․ քանզի գրեալ է, պարտ է զի և կատարեսցի ․ “Հարից զհովիւն, և ցրուեսցին խաշինքն ” ։ Իսկ արդ խաշինք առանց հովուի՝ ապա մատնին 'ի ձեռս գիշակեր գազանաց ․ մանաւանդ զի ոչ եւս սատանայ յայսմ աւուր օձան խաբեալ զձեզ իբրեւ զցորեան ․ և ես աղաչեցից զՀայր, զի մի պակասեսցին հաւատք քո ։

Այլ բարւոք ասաց եթէ մի պակասեսցեն ․ քանզի աստուածութեանն ոչ են կամք տեսանել զչարութիւն մարդկան, բայց և մարդոյն պիտի առաքինութիւն զգենուլ յանձին զգուշութիւն, և 'ի Հօրն արքայութիւն և յուրախութիւն մտանել ։ Ո ր մի պակասեսցեն, ասէ ․ այլ ոչ եթէ մի ուրասցիս ։ Ուրանալն և չուրանալն 'ի ձեռս նորա էր ․ իսկ ընդունելն անդրէն գործ մարդասիրութեան ։ Այլ որպէս վասն ամենայն Իսրայէլի ողբալից աղաչանօք աղաղակէր առ Հայր, զի մի կորիցէ ազգն ընտրեալ, սոյնպէս և վասն երկոտասանիցն յանձն առնէր Հօգւոյն սրբոյ, զի հաստատուն կացցեն 'ի ժամ փորձութեանն ։ Իսկ Պետրոս առ գութ սիրոյն Տեառն իւր անփորձաբար խիզախէր, բայց Տէրն որ ինչ լինելոց էր՝ յառաջագոյն պատմեաց նմա ․ և Պետրոս 'ի փորձանացն իմաստնացեալ՝ դառնագէս արտասուօք և մեծաւ զղջմամբ վերստին զանձն հաստատէր յաշխատութիւն ։ Այլ այն որ 'ի ժամ փորձութեանն քան զնոմ

կակղագոյն, յետոյ քան զադամանդեայ եւս առաւել խստագոյն երեւեցաւ։

Ո՜, քանի՜ մեծ ժպրհութիւն քահանայից և քահանայապետին, և ամենայն մեծամեծացն որ ընդ նոսա. մինչդեռ Տէրն ամենայնի վասն ամենեցուն աղաչէր ողբալով զի մի մատնեսցին յանբժշկելի հարուածս, նոցա ոչ ինչ փոյթ արարեալ 'ի յիսկապէսն որ լինելոց էր, այլ յանդգնագոյն ևս քան զսոդոմայեցիսն յարձակեցան 'ի վերայ։ Նա և յիրաւի ասացի թէ եւս չարութեամբ քան զնոսա. քանզի 'ի Սոդոմ հրեշտակքն նըշան ինչ ոչ արարին, այլ զՍոդոմ իսկ արարին նշան ահագին ամենայն տեսողաց, և արժանապէս հատուցումն անարժանից հատուցաւ. զի եթէ վասն անարգութեան հրեշտակացն ամենայն մասունք երկրին ընկալան զաստուածային հարուածքն, իսկ ուր Տէր հրեշտակացն կրէր զանարգանս մահու, ո՞վ բաւական է հատուցանել վրէժ դատաստանին այնորիկ. ոչ միայն թանձրացեալ մարմինս որ աստէն յերեւելիսս ընդունի զվճիռն մահու, այլ և անապական ոգիքն ընդ սմին մարմնոյ կապեալ և անկեալ յանշէջ հուր գեհենին, որ առաւել սաստկութեամբ այրեսցի քան զերկիրն սոդոմացւոց։

Նա հասեալ, ասէ, քահանայապետն և ամբոխն՝ առանց պատկառելոյ արկին զձեռս իւրեանց կալան զՅիսուս, կապեցին և առեալ տարան 'ի տուն քահանայապետին։ Կապեցին զայն, որ եկն արձակեաց զմեզ 'ի կապանացն անլոյծ։ 'Ի տուն տարան զայն, որ երկինք և երկիր ոչ տանին. հրեղէն բնութիւնն 'ի մէջ փայտեղէն տան մտեալ կայր, և ոչ ծախէր տունն. որ իջուցանէր հուր 'ի պատարագս նոցա և ընդունէր 'ի քաւութիւն մեղաց, ինքն ընդունողն առաջի կայր պատարագամատուցին, յորմէ սերոբէքն և քերոբէքն թեւօքն ծածկէին զոտս և զերեսս իւրեանց յահէ մեծութեան նորա։

Զտէր տաճարին վասն տաճարին պահանջէին։ Ո՜վ մեծամեծ յանցանացն. զի՞նչ ինչ չար ասաց. "Քակեցէք, ասէ, զտաճարդ, և ես յերիր աւուր շինեմ"։ Ո՛եք իսկ, ասեն, լուաք։ Ո՜վ քահանայք, և մե՞ծ իցէ արդեօք յանցանքս այս։ Այն՝ և կարի մեծ. շինեմ,

ասաց, և ոչ եթէ աւերեմ. Թուի ինձ եթէ դուք զե֊
րիս աւուրս ոչ կարէք աւերել, նա և ոչ բազում ամս:
Բայց բարուոք ասէր թէ քակեցէք. քանզի 'ի սկզբանէ
քակել եւեթ գիտէք, և ոչ շինել: Հա՛ քակեցէք
զազգս արդարոցն, և ես այլ արդարս շինեցից 'ի միջի
ձերում. քակեցէք և դուք զմարգարէութիւնն յան֊
ձանց ձերոց, սակայն ես այլ մարգարէս յարուցից ձեզ
քարոզել զճշմարտութիւն. անարգեցէք դուք զվէմն՝
որ էր գլուխ անկեան, և ես այլ երկոտասան վէմս կանգ֊
նեցի յաշխարհի ձերում, զի շինեցից զձեզ 'ի վերայ
անշարժ հիմանն՝ և ոչ կամեցարուք: Իսկ արդ զի՞նչ
մեծ է եթէ քակէք զտաճարդ, և յերիր աւուր կանգ֊
նեմ զդա: Զերկինս ո՛չ ապաքէն առանց աւուր կանգ֊
նեցի, և զերկիր առանց ժամու հաստատեցի, և զամե֊
նայն գոյացութիւնս 'ի վեց աւուր զարդարեցի. դուք
զտաճարդ 'ի քառասուն ամ շինեցիք, ես զմարդ 'ի
քառասուն օր նկարեցի յարգանդի. դուք զտաճարդ 'ի
քառասուն ամ շինեցիք, ես զձեզ քառասուն ամ շի֊
նեցի յանապատին՝ և ոչ շինեցարուք: Արդ որովհե֊
տեւ քառամանամեայքդ՝ անխրատեալք և չշինեալք 'ի
վերայ վիմին՝ որ տայր ձեզ զջուրն 'ի նմին անապատի,
արդ քակեցէք դուք զայս տաճար զոր տեսանէքս զիս,
և ես յերիր աւուր շինեցից զսա առանց ձեռագործի.
զի այլ թէ կամիցիք քակել, ոչ կարէք: Բայց զայդ
տաճար զոր Սողոմոն շինեաց, եթէ կամիք և եթէ ոչ
կամիք, դա քակելոց է 'ի թշնամեաց ձերոց. մանաւանդ
թէ ողբքն իմ իսկ դառնապէս ասացեալ են 'ի վերայ տա֊
ճարիդ. որպէս և դու իսկ, ո՛վ քահանայապետ Կայիա֊
փա, մարգարէացար ոչ 'ի կամաց քոց. "Գայցեն, ա֊
սես, այնուհետեւ Հռոմք, և բառնայցեն զազգս մեր
և զտեղի և զօրէնս մեր„. որ և լինելոց է ոչ յետ բա֊
զում աւուրց, այլ առ կենօք քովք տեսցես զայն:

Եւ զայս ասելով՝ վերամբարձագոյն եւս հայեցու֊
ցեալ, ցասոյց զքահանայապետն և ասէ. որ այժմ մը֊
տեալ կամ առաջի քո կապանօք և մեծ անարգու֊
թեամբք, տեսցես յերկինս վերացեալ, և նստիմ 'ի
հայրենի աթոռն յաջմէ զօրութեանցն Աստուծոյ:
Զայս լուեալ քահանայապետին, ձեռն զօձիք հար֊
կանէր, և յերկուս զպատմուճանն պատառէր. զի 'ի

պատառել պատմուճանին, զազգն ամենայն զայրացուսցէ յարուցանել 'ի վերայ Յիսուսի: Բայց թերեւս յիրաւի պատառեցեր զպատմուճանդ. զի ընդ նմին պատառելոց էր եւ քահանայութիւնն: Վասնզի արժան իսկ էր զօձիս պատառել 'ի մեծամեծ չարութեանն զոր գործելոց էր յայսմ տեղւոջ: Եւ առակքն տերունեան յոյժ հանդիպեցան ճշմարտութեամբ. "Ոչ ոք արկանէ գինի 'ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ պայթուցանէ գինի նոր զտիկս հինս". յորս սակաւիկ մի կաթեաց զօրութիւն ուժոյ՝ սակաւիկ գինի նորոյ, եւ անդրէն հին տիկքըն յերկուս հերձաւ: Իսկ արդ զի՞նչ ինչ մեծ ասաց. որդւոյ մարդոյ նստել ընդ աջմէ Աստուծոյ ասաց: Ո՛ հնացեալ կուրութեանն, որ ոչ ամենեւին եւ առ ոտս անգամ տեսանեն. զորհանապազ սաղմոսարանն երգէ. "Ասաց տէր ցտէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց": Ոչ եթէ զնստեալն յարուցանելով հրամայէ անդրէն նստել, այլ զձեւն նստելն ածէ 'ի նստուցանել, եւ ոչ զեդեալ թշնամին կրկնէ անդրէն դնելով զայլաձեւ եդեալսն, որ իբրեւ զքեզդ է ընդդիմացեալ, դնէ պատուանդան ոտից նորա: Եւ եթէ դժուար թուիցի քեզ մարդոյ որդի Աստուծոյն լինել, ընդէ՞ր ոչ յառաջագոյն պատառեցեր, յորժամ լուար 'ի Հոգւոյն սրբոյ 'ի ձեռն Մովսիսի "Որդի իմ անդրանիկ Իսրայէլ, արձակեա զի եկեսցէ պաշտեսցէ զիմ պաշտօնն". ապա թէ ոչ՝ սպանանեմ զորդին քո զանդրանիկ: Արդ վասն քո կամիմ եթէ սպանանէ Աստուած զորդի զանդրանիկ զթագաւորին եգիպտացւոց, զի դու լիցիս որդի անդրանիկ Աստուծոյ. եւ դու հայհոյես եւ սպանանես զմիածին որդիդ Աստուծոյ, եւ բարկացեալ ես եթէ ընդէ՞ր նստուցանէ ընդ աջմէ իւրմէ:

Այս ընդդիմութիւն եւ ընդ դիւաց ամբարշտութեամբքն զանց առնէ, պատերազմ տայ ընդ Աստուծոյ եւ ընդ մարդկան եւ ընդ սուրբ Հոգւոյն միանգամայն, որ ասաց ցիս տէր. "Որդի իմ ես դու, ես այսօր ծնայ զքեզ": Եւ անդէն զիշխանութիւնն 'ի ձեռս տայ, ոչ միայն 'ի վերայ ազգին յորմէ ծնանի, այլ ամենայն հեթանոսաց 'ի ծագաց մինչեւ 'ի ծագս երկրի: Արդ որովհետեւ ատեցեր եւ մերժեցեր զխաղաղութիւնն 'ի

բայ 'ի քէն, խումբ առեալ աշխարհական պատերազմաւ 'ի վերայ երկրի, զոր յառաջագոյն իսկ նշանակեիր դու 'ի հարկանել փողոյն 'ի գլուխս ամաց և 'ի շաբաթս քո և 'ի լրմունս և 'ի պակասութեան լուսնի և յամենայն տօնս երեւելիս քո, յայտ է եթէ 'ի սկզբանէ 'ի մարտ պատերազմի մտեալ էիր ընդ իս: Արդ որ ընդ ամենայն երեւելիս կռուէիր, ամենեքեան ընդ քեզ տայցեն պատերազմ. փողն լռեսցէ, շաբաթն լուծցի, լրմունք լուսնին քեզ յերկրի հեթանոսաց երեւեսցին, երեւմունք հրեշտակաց քեզ այլ մի՛ հանդիպեսցին. վասն զի ամենայնքս 'ի վերայ քո հեղեալ էին 'ի պատիւ և 'ի փառս մեծարանաց: Արդ հոգին սուրբ ելցէ և գնասցէ 'ի քէն, զի այլ մարգարէ 'ի միջի քում մի՛ մարգարէասցի. որովհետեւ ասացեր թէ հայհոյեաց, և իշխեցեր զայդ ասել, ամենեքեան քում սուտ բանիցդ ետուն վկայութիւն թէ մահապարտ է:

Իսկ արդ որո՞ մահապարտի, ո՛վ նզովեալք, կռուփս հանէին և ընդ երեսս թքանէին: Կափէս զայն որ զարդարեաց զգլուխ քո յականս պատուականս, և թքանէս ընդ երեսս այնմ որ յարարչութեանն փչեաց 'ի քեզ հոգի կենդանի. վասն որոյ և կոյրդ շրջի աղաղակէ յայտնութեամբ ընդ փողոցս քաղաքիդ, "Որում Յիսուս ասեն, առ, նա կաւ արար թքով և ծեփեաց զաչս իմ, հրամայեաց լուանալ 'ի Սելովհա, և տեսանեմ": Կոյրն լուսաւորեցաւ, և դու լուսաւորդ կուրացար: Տեսանես, քանզի յանդգնութիւն անհանճարիցն էր, և անհամեմատ համբերութիւնն Աստուծոյ, յանօրինաց կափի, և 'ի մեղաւորաց թուք յերեսն ընդունի ազատիչն ամենայնի: Այս 'ի վեր է քան զբնութիւն մարդկային. որ արար զարարածս, նա միայն կարաց տանել յայսմ ամենայնի:

Դարձեալ հարցանեմ զքեզ այդրէն, ո՛վ քահանայապետ. ուստի՞ ետուր զարծաթն մատնչին. ո՞չ յառաջ ասացի քեզ թէ մի՛ տար. ոչ երբեք գնի արծաթոյ արիւն արդար. ահա այժմ այդրէն 'ի քեզ ընդունիս զերկոսեանն:

Երբեւ ետես Յուդա եթէ մատնեաց զՏէր 'ի դատաստան մահու՝ յոյժ զղջացաւ, և դարձոյց զարծաթն առ քահանայապետսն և առ ծերս ժողովրդեանն և

գինս արեան արդարոյ. և արդարոյ ոչ 'ի մարդկանէ ուրուք, այլ զորդւոյ Աստուծոյ։

Այս յիրաւի ուրեմն Զաքարիա մարգարէ յառաջագոյն գիտելով զչարութիւնդ ձեր, որ տարապարտ սուտ մարգարէիցն ձերոց մատուցանէիք վարձս բազումս, քանզի խօսէին զկամս չար անձանց ձերոց, և գովիչք եւս լինէին չարութեան գնացից ձերոց, ասէ և ճշմարիտ մարգարէն. «Եթէ բարւոք թուի ձեզ այդպիսեացդ ծախս անբաւս լինել, տուք և ինձ զվարձս իմ. ապա թէ ոչ, զրոյց արարէք, զի և ես գիտացից». և նոքա վաղվաղակի կշռեցին և ետուն 'ի ձեռս նորա երեսուն արծաթի։ Եւ այս էր յաչս մարգարէին անհնարին դառնութիւն, տեսանել 'ի նմա զամենամեծ և զահագին չարիսն զոր գործելոց էր ժողովուրդն. ոչ կարէր հանդարտել ծանրութեան իրացն, առեալ արկանէր զայն 'ի տուն Տեառն 'ի բովս, զի թերևս պատկառեսցեն 'ի մոլեկան գործոյն, որ և զգիւայն ամբարշտութեամբ զանցուցանէր։ Արդ ոչ յաւելուն և ոչ հատանեն 'ի կատարեալ չարեացն. պահեն զերեսուն թիւն և բերեալ մատուցանեն մատնչին, զի գնեսցեն զարիւն աստուածային, ոչ դիպուածով և ոչ որ են յանկարծակի 'ի ներքս անկեալ, այլ հնացեալ խորհրդով զոր կատարէին 'ի նորոգիչն ամենայնի չարութեամբ։

Արդ զերեսուն թիւ արծաթոյդ եթէ յոսկի փոխանակեսցես, լինի բաժանեալ յերրեակ յիններորդ. և եթէ 'ի նոյն իսկ 'ի թիւ արծաթոյն, բաղկանայ յերիս տասնեակս. առաջին տասնեկաւն անարգեցին զտասն պատուիրանսն. երկրորդ տասնեկաւն ուրացան զփրկութիւն Մովսէսի. երրորդ տասնեկաւն չհաւատացին երկրին պարգևաց։ Դարձեալ 'ի ձեռն սորին երրեակ թուականի զՀայր ընդ որթուն փոխանակեցին յանապատին, և քարկոծելով զմարգարէսն դառնացուցին զսուրբ Հոգին, և մնացորդօք նորաւն թուականին գնեցին զսուրբ արիւնն յանձինս և յորդիս իւրեանց մինչեւ ցյաւիտեան։

Եւ քանզի զայրացեալք էին 'ի նախանձ բարկութեան իբրեւ գազանս անապատի, ոչ ինչ փոյթ արարեալ վասն պատուական տօնին, ժողովեցան քահանայքն և քահանայապետքն, ծերք և փարիսեցիք, և որ իշխան էր

տաճարին հանդերձ ամենայն բազմութեամբն՝ վառեալք իբրեւ զինուք, և առաջնորդս եւս ունէին, որում ետուն զարծաթն 'ի տաճարէ անտի. ընդ նմին և զօրաւորքն հերեանց զանմարմին և զիմանալին սատանայ. և զժամանակ գիշերոյն օգնական, զի 'ի խաւարային ժամուն անկցին 'ի խորխորատն կորստեան: "Այդ որում ես համբուրեցից, սա է, նա է, կալջիք և տարջիք զգուշութեամբ,,: Այդ ձախողակի ողջունին յետս ընդդէմ հատուցումն անդրէն ընդունի: "Որում ես թացից, ասէ, 'ի սկաւառակէս և տաց, նա է որ մատնելոց է զիս,,: Թացիցն՝ զորհնութիւնն լուացից ասէ: Որոյ սիրտն եղեւ բնակութիւն նենգաւոր Թշնամւոյն, ոչ զազարի անդ շնորհն աստուածային. իսկ ուր աստուածային շընորհն ոչ բնակեալ լինի, նա կոխան անցաւորաց ճանապարհի է:

Իսկ Պետրոս որ լի էր բարեսէր նախանձու, մանաւանդ իբրեւ զաշակերտակիցն իւր ընդ նոսա ետես, ոչ կարաց համբերել սատանայական զօրութեանն. քանզի լուեալ էր յամենագէտ Տեառնէն, եթէ որ զոյ սուսեր՝ առցէ, և որ ոչն գուցէ՝ գնեսցէ և բերցէ: Օ՜ ինչ են հրամանն պատասխանւոյս այսորիկ. իբրու զի յայտնի է իմաստնոց, սրոյ նմանեցոյց զճշմարտութիւնն. որոյ ստացեալ իցէ զաստուածպաշտութիւնն՝ պինդ կացցէ, և որ սակաւ մի թուլացեալ իցէ՝ գնեսցէ, ոչ սուսեր 'ի մարդոյ ումեքէ, այլ յորդւոյ մարդոյ զճշմարտութիւնն, ոչ գնոյ արծաթոյ, այլ արեամբ անձին իւրոյ. քանզի՝ սուր եկն արկանել, ոչ միայն յերեւելի մերձաւորութիւնն, այլ և ընդ հոգի և ընդ մարմին յանձինս իւրաքանչիւր: Այս է սուսերն բնական և սատանայական. իսկ Պետրոս զերկուեանն ունէր. բնական սուսեր վարդապետին զոր ունէր 'ի սուրբ ոգիսն, իսկ սատանայական որով զծառային ունկն 'ի բաց հատանէր: Եւ կարի վայելչաբար զծառային և ոչ զազատի, զմեղաց և ոչ զարդարութեան, զունկն զապստամբ, ոչ զգլուխն պատուեալ զմասնն, և ոչ զամենայնս. քանզի ոչ այլ ինչ նման է ծառայութեանն, որպէս զգայութիւն մսոյ: Քանզի ակն ընդհարութեամբ՝ միտքն ընդ իմանալին բախեցան, և ունկն ընդ լսողութեամբ, աչք 'ի տեսաւորութիւն պատրաստեցան, և խոնհականութիւն ան-

դուստ պատասխանատուութիւնն արտաբերեաց. իսկ ըռնկացն հոտաւորութիւն զճաշակելեացն զարթոյց յընտրութիւն որոշողութեան. և 'ի ձեռն զգայութեանցս այսոցիկ ամենայն զգալիք առին զզուշութիւն պահպանութեան:

Իսկ ականջացն դժուարագոյն իմն է առնուլ պահպանութիւն անձայնութեան, որ և կոխի իսկ 'ի բազում անարժան ձայնից. և ոչ միայն ծառայ մնայ, այլ և ծառայեցելոց զգայութեանցս կրկին ծառայեցեալ: Արդ հանելով 'ի բաց զունկն ծառային, նշանակեաց զանդրդուտին 'ի սկզբանէ զանլլրութիւն և զանհնազանդութիւն մարդկան: Բայց քանզի շատ է զի և բարերար Տէր երկնի և երկրի զամենայն խեղութիւնս մեր եկն 'ի բժշկել, և զթերութիւնս մտաց մերոց լնուլ և կատարել, ոչ զանց արար մարդասիրութիւն նորա և զունկամբ ծառային. այլ առեալ անդրէն 'ի տեղւոջն եդեալ՝ անվէր և անարատ զտեղին ցուցանելով, որ է նշանակ դարձի մեղուցելոցն յապաշխարութիւն. և խօսի ընդ ամենեսեան աղերս բանիւք և քաղցր բարբառով:

Բայց քանզի զօրութիւնն էր անպարտելի, թէպէտ և յոյժ խոնարհագոյնս խօսի, սակայն ես եմ ասելով Աստուածն մարդացեալ, երկիցս անգամ անդրէն յառաջ բնութիւնն զարկոյց զնոսա և ոչ իմացան: Ողորմեալ այնուհետև և բարերարին անարժանիցն, երիցս անդէն 'ի տեղւոջն կատարէ բան. զՊետրոսի զսուրն անդրէն հրամայէ դարձուցանել, և զինքն փոխանակ աշակերտացն մատնէ 'ի ձեռս ունելեացն, միանգամայն և զհօր կատարէ զհրամայեալն զբաժակ մահուն ըմպելով: Եւ քանզի էր Աստուած անսուտ, եղեւ մարդ ճշմարիտ՝ անկասկածելի աստուածութեամբն աներկիւղ մատնէր 'ի ձեռս ունելեացն. իսկ մարդկային բնութեամբն երկիւղագին խանդաղատական աղօթիւք զայն որ կարողն էր փրկել 'ի մահուանէ՝ աղաչէր ոչ դուզնաքեայ և մտահաճոյ, այլ ընդ այլս ինչ երազատես լինէր, այլ յառաջահօգակ և նախախնամ հովիւ կենդանի բանաւոր խաշանց կանխագէտ տեսանէր զինչ լինելոցն էր:

Առեալ այնուհետև զաշակերտսն գայ հասանէ 'ի տեղին զոր յառաջագոյն նկարեալ էր մարգարէիցն.

«Ժողովեցից, ասէ, զամենայն ազգս երկրի, և իջուցից զնոսա 'ի ձորն Յովսափաթայ. և անդ նստայց դատել զամենայն ազգս շուրջանակի»: Արդ ոչ զի յառաջագոյն ասացեալ էր մարգարէութեանն՝ ակամայ իւրքն կատարէին, այլ նոյն ինքն հոգի Աստուած մարգարէիւքն խօսէր որ ինչ լինելոցն էր. ոչ այսօր, այլ որ 'ի սկզբանց յեղումն ըստ կամաց յազատութեանն առաջին մարդոյն էր: Նա քանզի ոչ հարկաւոր էին իւրքն, այլ ըստ խրատու թշնամւոյն և ըստ յօժարութեան վատթարի ոգւոյ անփոյթ արարեալ զյօժարութիւնս, քաջաբեր լինել քան անարգագոյն պտուղս: Նա քանզի Տէրն ամենեցուն ոչ եկեալ էր 'ի դատապարտութիւն, այլ փրկել 'ի ծառայութենէ և նորոգել յազատութիւն, խնդրէր աղօթիւք յայնմանէ՝ որ առաքեաց կորզել զաշխարհ 'ի մոլորութենէ, և հաստուցանել 'ի Հօրն արքայութիւն:

Արդ ետես յայսմ տեղւոջ եթէ եկեալ հասեալ է ամենայն արարածք ականատես լինել մահուան որդւոյն Աստուծոյ, եթող զաշակերտսն 'ի խոնարհագոյն տեղւոջն, և ինքն սակաւիկ մի 'ի վերագոյն տեղին մատեաւ. անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց՝ խոնարհեալ համբուրէր զդէմս երկրի, և հեղոյր զուրբ զարտասուսն 'ի սուրբ հատուած հողոյն, և բառնայր զառաջին անէծսն: Դարձեալ կանգնէր, 'ի վեր հայեցեալ կարդայր առ Հայր աղօթիւք ասելով. Հայր եթէ հնար ինչ է, անցո զբաժակս զայս յինէն: Իբրու տէր էր հնարից և անհնարից, առ Հայր կարդալով ցուցանէր զմիասնական Երրորդութիւնն, և միանգամայն և ըզմարդկութեանս բնութիւն, որ այնչափ վերաբերեցաւ յաստուածութիւնն: Աղօթս առնէր ոչ միում ազգի և կամ միում մասին, այլ ամենայն մարդկան և տիեզերաց. ոչ մարդկան միայն, այլ ամենայն կենդանեաց, ցամաքայնոց և ջրայնոց և օդայնոց, երկնի և որ յերկինս: Օ ի թէպէտ և որդի էր ըստ աստուածութեանն, սակայն 'ի ձեռն մարմնազգեցիկն լինելոյ՝ ուսաւ 'ի չարչարանացն մահու զնեղութիւն ամենայն կենդանեաց, որ անկեալ են ընդ ապականութեամբ մահու. զի յորժամ իւրքն կատարեցան 'ի յապականութիւն ամենայն

մահկանացուացս, կարող իցէ օգնական լինել յանչարչարութիւն. նա և որ առաջինկայ իրքն էին, ոչ փոքր և ոչ դուզնաքեայ ինչ էր, այլ ահագին մեծապէս։

Զի եթէ 'ի մահուանն Ոզիայ որդւոյն Ամասիայ 'ի տարապարտուց մեռանելոյն՝ ամենայն Իսրայէլ առնուլ սուգ՝ ոչ մի ցեղ կամ երկու, այլ ամենեքեան, զոր մեծապէս մարգարէն ողբայ, "Յաւուրն յայնմիկ, ասէ, դիցես կոծ սաստիկ իբրեւ զկոծն ագադռաամթով որ 'ի դաշտին, ազգ տանն Դաւթի առանձինն և կանայք նոցա առանձինն, ազգք տանն Նաթանայ առանձին և կանայք նոցա առանձինն, ազգք տանն Շմաւոնի առանձին և կանայք նոցա առանձինն, որչափ եւս առաւել 'ի մահ որդւոյն Աստուծոյ երկինք խոնարհեալ, երկիր գլորեալ, և ամենայն իմանալի զօրութիւնքն զարհուրեալ։

Իսկ ամենայնի Տէրն յայսմ վայրի ոչ մի անգամ միայն, այլ և երկիցս և երիցս 'ի վայր անկանի, իբրեւ թէ երկինք յերկիր. և դարձեալ կանգնեցաւ՝ որպէս թէ զերկիր ընդ իւր կանգնէ 'ի վեր տարրացեալ, միութիւն գործելով երկնաւորաց և երկրաւորաց. և ոչ փոքր ինչ էր ծանրութիւն բեռինն՝ զերկինս բառնալով և զերկիր կախելով զինքենէ։ Տեսանես, և ոչ քիրտն դուզնաքեայ բղխէր յաստուածային մարմնոյն, այլ քիրտն ուժգին և արիւն. և արիւնն ոչ միով մասամբ, այլ վտակք բազմահոսանք. որով զերկին սրբէր, և զերկիր լուանայր, և զօդ մաքրեաց յառաջին ծխոյ ճենճերաց զոհիցն ապականութեան։

Այլ 'ի վերայ այսր ամենայնի սքանչելագործութեանց՝ աշակերտքն անկեալ դնէին անընդոստ քնով։ Այլ սակայն մարդասէր Տէրն հեզաբար հանդարտութեամբ մատուցեալ ընդոստուցանէր զաշակերտսն, իբրեւ թէ զաշխարհ 'ի քնոյ, և աղերս բանիւք ասելով. Ո՛վ Պետրէ, այդպէս վայրիկ մի ոչ կարացէք արթուն կալ. քանզի վեց օր արարի զերկին և զերկիր և զամենայն զարդս նոցա. և արդ ահա այս վեցհազարեան ամ է, որովք անկեալ խանգարեցան ընդ ապականութեամբք, և իմ եկեալ փրկել և անդրէն նորոգել։ Արդ աղէ զարթիր և արթուն կաց սակաւ մի, և թափեա 'ի քէն զծանրութիւն քնոյդ, և տես զինչ ինչ գործելոց է ընդ

իս ազգատոհմդ քո 'ի վերայ ամենայն բարեգործութեանց իմոց մինչեւ ցայսօր։ Օ՜ ինչ կամին հատուցանել ինձ ժողովեալ ամենեցուն իբրեւ 'ի վերայ մահապարտի, ոչ ըստ աշխարհի սովորական մահու սպանանել, այլ մեծապէս անարգանաց։ Այլ ես յոյժ խռովեալ եմ և ողբամ դառնապէս, քանզի 'ի մահուան իմում գիտեմ զինչ լինելոց է. ընտրեալ տաճարս աւերելոց է, քահանայութիւնն լռեսցի, պաշտօնն դադարէ, ընթերցուածք սուրբ կտակարանացն որ վասն նորա աղաղակէին՝ 'ի սուգ մնասցեն. հուրն հանապազորդ շիջանի, պատարագք խափանին, ողջակէզքն որ վասն մեղաց՝ զոհեղի առնու, ուխտադրութիւնն որ 'ի հեռաստանէ՝ ոչ եւս եկեսցէ. անձկեալ քաղաքն Երուսաղէմ աւերեսցի, և ամենայն Իսրայէլ ցրուեսցի։ Այս և դուք իսկ երկոտասանքդ որ ընդ իս էք, յայսմ գիշերի գայթակղելոց էք. քանզի գրեալ է, պարտ է զի և կատարեսցի. "Հարից զհովիւն, և ցրուեսցին խաշինքն"։ Իսկ արդ խաշինք առանց հովուի՝ ապա մատնին 'ի ձեռս գիշակեր գազանաց. մանաւանդ զի առ եւս սատանայ յայսմ աւուր օճան խարբալել զձեզ իբրեւ զցորեան. և ես աղաչեցից զՀայր, զի մի պակասեսցին հաւատք քո։

Այլ բարուոք ասաց եթէ մի պակասեսցեն. քանզի աստուածութեանն ոչ են կամք տեսանել զչարութիւն մարդկան, բայց և մարդոյն պիտի առաքինութիւն զգենուլ յանձին զգուշութիւն, և 'ի Հօրն արքայութիւն և յուրախութիւն մտանել։ Օ՜ ի մի պակասեսցեն, ասէ. այլ ոչ եթէ մի ուրասցիս։ Ուրանալն և չուրանալն 'ի ձեռս նորա էր. իսկ ընդունելն անդրէն գործ մարդասիրութեան։ Այլ որպէս վասն ամենայն Իսրայէլի ողբալից աղաչանօք աղաղակէր առ Հայր, զի մի կորիցէ ազգն ընտրեալ, սոյնպէս և վասն երկոտասանիցն յանձն առնէր Հօգւոյն սրբոյ, զի հաստատուն կացցեն 'ի ժամ փորձութեանն։ Իսկ Պետրոս առ գութ սիրոյն Տեառն իւր անփորձաբար խիզախէր, բայց Տէրն որ ինչ լինելոց էր՝ յառաջագոյն պատմեաց նմա. և Պետրոս 'ի փորձանացն իմաստնացեալ՝ դառնապէս արտասուօք և մեծաւ զղջմամբ վերստին զանձն հաստատէր յաշխատութիւն։ Այլ այն որ 'ի ժամ փորձութեանն քան զնոմ

զինս որեան արդարոյ. և արդարոյ ոչ 'ի մարդկանէ ուրուք, այլ զորդւոյ Աստուծոյ :

Այս յիրաւի ուրեմն Զաքարիա մարգարէ յառաջագոյն գիտելով զչարութիւնդ ձեր, որ տարապարտ սուտ մարգարէիցն ձերոց մատուցանէիք վարձս բազումս, քանզի խօսէին զկամս չար անձանց ձերոց, և զոլլիչք եւս լինէին չարութեան գնացից ձերոց, ասէ և Ճշմարիտ մարգարէն. "Եթէ բարւոք թուի ձեզ այդպիսեացդ ծախս անբաւս լինել, տուք և ինձ զվարձս իմ. ապա թէ ոչ, զլոյց արարէք, զի և ես գիտացից". Եւ նոքա վաղվաղակի կշռեցին և ետուն 'ի ձեռս նորա երեսուն արծաթի : Այս էր յաչս մարգարէին անհնարին դառնութիւն, տեսանել 'ի նմա զամենամեծ և զահագին չարիսն զոր գործելոց էր ժողովուրդն. ոչ կարէր հանդարտել ծանրութեան իրացն, առեալ արկանէր զայն 'ի տուն Տեառն 'ի բոլս, զի թերեւս պատկառեսցեն 'ի մոլեկան գործոյն, որ և զգիւայն ամբարշտութեամբ զանցուցանէր : Արդ ոչ յաւելուն և ոչ հատանեն 'ի կատարեալ չարեացն. պահեն զերեսուն թիւն և բերեալ մատուցանեն մատնչին, զի գնեսցեն զարիւն աստուածային, ոչ դիպուածով և ոչ որ են յանկարծակի 'ի ներքս անկեալ, այլ հնացեալ խորհրդով զոր կատարէին 'ի նորոգիչն ամենայնի չարութեամբ :

Արդ զերեսուն թիւ արծաթոյդ եթէ յոսկի փոխանակեսցես, լինի բաժանեալ յերրեակ յիններորդ. և եթէ 'ի նոյն իսկ 'ի թիւ արծաթոյն, բաղկանայ յերիս տասնեակս. առաջին տասնեակն անարգեցին զտասն պատուիրանսն. երկրորդ տասնեակն ուրացան զփրկութիւն Մովսէսի. երրորդ տասնեակն չհաւատացին երկրին պարգեւաց : Դարձեալ 'ի ձեռն սորին երրեակ թուականի զՀայր ընդ որթուն փոխանակեցին յանապատին, և քարկոծելով զմարգարէսն դառնացուցին զսուրբ Հոգին, և մնացորդօք նորուն թուականին գնեցին զսուրբ արիւնն յանձինս և յորդիս իւրեանց մինչեւ ցյաւիտեան :

Եւ քանզի զայրացեալք էին 'ի նախանձ բարկութեան իբրեւ գազանս անապատի, ոչ ինչ փոյթ արարեալ վասն պատուական տօնին, ժողովեցան քահանայքն և քահանայապետքն, ծերք և փարիսեցիք, և որ իշխան էր

տաճարին համդերձ ամենայն բազմութեամբն՝ վառեալք
իբրեւ զխնուք, և առաջնորդս եւս ունէին, որում ե-
տուն զարծաթն 'ի տաճարէ անտի. ընդ նմին և զօրա-
ւիգն իւրեանց զանմարմին և զխմանալին սատանայ. և
զժամանակ գիշերոյն օգնական, զի 'ի խաւարային ժա-
մուն անկցին 'ի խորխորատն կորստեան: "Ընդ որում
ես համբուրեցից, ասէ, նա է, կալջիք և տարջիք զգու-
շութեամբ": Ընդ ձախողակի ողջունին յետս ընդդէմ
հատուցումն անդրէն ընդունի: "Որում ես թացից,
ասէ, 'ի սկաւառակէս և տաց, նա է որ մատնելոց է զիս":
Թացիցն՝ զօրհնութիւնսն լուացից ասէ: Որոյ սիրտն
եղեւ բնակութիւն նենգաւոր թշնամւոյն, ոչ դադարի
անդ շնորհն աստուածային. իսկ ուր աստուածային շը-
նորհն ոչ բնակեալ լինի, նա կոխան անցաւորաց ճանա-
պարհի է:

Իսկ Պետրոս որ լի էր բարեսէր նախանձու, մանա-
ւանդ իբրեւ զաշակերտակիցն իւր ընդ նոսա ետես, ոչ
կարաց համբերել սատանայական զօրութեանն. քան-
զի լուեալ էր յամենագէտ Տեառնէն, եթէ որ գոյ սու-
սեր՝ առցէ, և որ ոչն գուցէ՝ գնեսցէ և բերցէ: Ոչ ինչ
են հրաման պատասխանւոյս այսորիկ. իբրու զի յայտ-
նի է իմաստնոց, սրոյ նմանեցոյց զճշմարտութիւնն. ո-
րոյ ստացեալ իցէ զաստուածպաշտութիւնն՝ պինդ կաց-
ցէ, և որ սակաւ մի թուլացեալ իցէ՝ գնեսցէ, ոչ սու-
սեր 'ի մարդոյ ումեքէ, այլ յորդւոյ մարդոյ զճշմար-
տութիւնն, ոչ գնոյ արծաթոյ, այլ արեամբ անձին իւ-
րոյ. քանզի՝ սուր եկն արկանել, ոչ միայն յերեւելի
մերձաւորութիւնն, այլ և ընդ հոգի և ընդ մարմին յան-
ձինս իւրաքանչիւր: Այս է սուսերն բնական և ստա-
ցական. իսկ Պետրոս զերկոսեանն ունէր. բնական առ
սէր վարդապետին զոր ունէր 'ի սուրբ ոգին, իսկ ստա-
ցական սրով զծառային ունկն 'ի բաց հատանէր: Եւ-
կարի վայելչաբար զծառային և ոչ զազատի, զմեղաց և
ոչ զարդարութեան, զունկն զապստամբ, ոչ զգլուխն
պատուեալ զմասնն, և ոչ զամենայնս. քանզի ոչ այլ
ինչ նման է ծառայութեանն, որպէս զգայութիւն մտաց:
Քանզի ակն ընդհարութեամբ՝ միտքն ընդ իմանա-
լին բախեցան, և ունկն ընդ լսողութեամբ, աչք 'ի տե-
սաւորութիւն պատրաստեցան, և խոհականութիւն ան-

դուստ պատասխանատուութիւնն արտաքերեաց. իսկ ընկալցն հոտաւորութիւն զճաշակելիսն զարթոյց յընտրութիւն որոշողութեան. և 'ի ձեռն զգայութեանցս այսոցիկ ամենայն զգալիք առին զգուշութիւն պահպանութեան:

Իսկ ականջացն դժուարագոյն իմն է առնուլ պահպանութիւն անձայնութեան, որ և կոխի իսկ 'ի բազում անարժան ձայնից. և ոչ միայն ծառայ մնայ, այլ և ծառայեցելոց զգայութեանցս կրկին ծառայեցեալ: Արդ հանելով 'ի բաց զունկն ծառային, նշանակեաց զանդրըտին 'ի սկզբանէ զանլրութիւն և զանհնազանդութիւն մարդկան: Բայց քանզի շատ է զի և բարերար Տէր երկնի և երկրի զամենայն խեղութիւնս մեր եկն 'ի բժշկել, և զթերութիւնս մտաց մերոց լնուլ և կատարել, ոչ զանց արար մարդասիրութիւն նորա և զունկամբ ծառային. այլ առեալ անդրէն 'ի տեղւոջն եդեալ՝ անվէր և անապի զտեղլին ցուցանելով, որ է նշանակ դարձի մեղուցելոցն յապաշխարութիւն. և խօսի ընդ ամենեսեան աղէրս բանիւք և քաղցր բարբառով:

Բայց քանզի զօրութիւնն էր անպարտելի, Թէպէտ և յոյժ խոնարհագոյնս խօսի, սակայն ես եմն ասելով Աստուածն մարդացեալ, երկիցս անգամ անդրէն յառաջ բնութիւնն զարկոյց զնոսա և ոչ իմացան: Ողորմեալ այնուհետեւ և բարերարին անարժանից, երիցս անգէն 'ի տեղւոջն կատարէ բան. զՊետրոսի զունկն անդրէն հրամայէ դարձուցանել, և զինքն փոխանակ աշակերտացն մատնէ 'ի ձեռս ունելեացն, միանգամայն և զօր կատարէ զհրամայեալն զբաժակ մահուն ըմպելով: Այլ քանզի էր Աստուած անսուտ, եղեւ մարդ ճշմարիտ՝ անկասկածելի աստուածութեամբն աներկիւղ մատնէր 'ի ձեռս ունելեացն. իսկ մարդկային բնութեամբն երկիւղագին խանդաղատական աղօթիւք զայն որ կարողն էր փրկել 'ի մահուանէ՝ աղաչէր ոչ դուզնաքեայ և մտահաճոյ, այլ ընդ այլոյ ինչ երազատես լինէր, այլ յառաջահոգակ և նախախնամ հովիւ կենդանի բանաւոր խաշանց կանխագէտ տեսանէր զինչ լինելոցն էր:

Առեալ այնուհետեւ զաշակերտսն գայ հասանէ 'ի տեղին զոր յառաջագոյն նկարեալ էր մարգարէիցն.

“ Ժողովեցից, ասէ, զամենայն ազգս երկրի, և իջուցից զնոսա 'ի ձորն Յովսափաթայ. և անդ նստայց դատել զամենայն ազգս շուրջանակի”: Արդ ոչ զի յառաջագոյն ասացեալ էր մարգարէութեանն՝ ակամայ իրքն կատարէին, այլ նոյն ինքն հոգի Աստուած մարգարէիւքն խօսէր որ ինչ լինելոցն էր. ոչ այսօր, այլ որ 'ի սկզբանց յեղումնն ըստ կամաց յազատութեանն առաջին մարդոյն էր: Եւ քանզի ոչ հարկաւոր էին իրքն, այլ ըստ խրատու Թշնամւոյն և ըստ յօժարութեան վատթարի ոգւոյ անփոյթ արարեալ զյօժարութիւնս, քաջաբեր լինել քան անարգագոյն պտուղս: Եւ քանզի Տէրն ամենեցուն ոչ եկեալ էր 'ի դատապարտութիւն, այլ փրկել 'ի ծառայութենէ և նորոգել յազատութիւն, խնդրէր աղօթիւք յայնմանէ՝ որ առաքեաց կորզել զաշխարհ 'ի մոլորութենէ, և հաստուցանել 'ի Հօրն արքայութիւն:

Արդ ետես յայսմ տեղւոջ եթէ եկեալ հասեալ է ամենայն արարածք ականատես լինել մահուան որդւոյն Աստուծոյ, եթող զաշակերտսն 'ի խոնարհագոյն տեղւոջն, և ինքն սակաւիկ մի 'ի վերագոյն տեղին մատեաւ. անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց՝ խոնարհեալ համբուրէր զդէմս երկրի, և հեղոյր զսուրբ զարտասուսն 'ի սուրբ հատուած հողոյն, և բառնայր զառաջին անէծսն: Դարձեալ կանգնէր, 'ի վեր հայեցեալ կարդայր առ Հայր աղօթիւք ասելով. Հայր եթէ հնար ինչ է, անցցէ զբաժակս զայս յինէն: Եբրու տէր էր հնարից և անհնարից, առ Հայր կարդալով ցուցանէր զմիասնական Երրորդութիւնն, և միանգամայն և ըզմարդկութեանս բնութիւն, որ այնչափ վերաբերեցաւ յաստուածութիւնն: Աղօթս առնէր ոչ միում ազգի և կամ միում մասին, այլ ամենայն մարդկան և տիեզերաց. ոչ մարդկան միայն, այլ ամենայն կենդանեաց, ցամաքայնոց և ջրայնոց և օդայնոց, երկնի և որ յերկինս: Զի թէպէտ և որդի էր ըստ աստուածութեանն, սակայն 'ի ձեռն մարմնազգեցիկն լինելոյ՝ ուսաւ 'ի չարչարանացն մահու զնեղութիւն ամենայն կենդանեաց, որ անկեալ են ընդ ապականութեամբ մահու. զի յորժամ իրքն կատարեցան 'ի յապականութիւն ամենայն

մահկանացուացս, կարող լիցի օգնական լինել յանչարչարութիւն. նա և որ առաջիկայ իրքն էին, ոչ փոքր և ոչ դուզնաքեայ ինչ էր, այլ ահագին մեծապէս։

Զի եթէ 'ի մահուանն Մովսիսայ որդւոյն Ամրամայ 'ի տարապարտուց մեռանելոյն՝ ամենայն Իսրայէլ առնուլ սուգ՝ ոչ մի ցեղ կամ երկու, այլ ամենեքեան, զոր մեծապէս մարգարէն ողբայ, «Յաւուրն յայնմիկ, ասէ, դիցես կոծ սաստիկ իբրեւ զկոծն ադադռաամլթով որ 'ի դաշտին, ազգ տանն Դաւթի առանձինն և կանայք նոցա առանձինն, ազգք տանն Նաթանայ առանձին և կանայք նոցա առանձինն, ազգք տանն Շմաւոնի առանձին և կանայք նոցա առանձինն», որչափ եւս առաւել 'ի մահ որդւոյն Աստուծոյ երկինք խոնարհեալ, երկիր գլորդեալ, և ամենայն իմանալի զօրութիւնքն զարհուրեալ։

Իսկ ամենայնի Տէրն յայսմ վայրի ոչ մի անգամ միայն, այլ և երկիցս և երիցս 'ի վայր անկանի, իբրեւ թէ երկինք յերկիր. և դարձեալ կանգնեցաւ՝ որպէս թէ զերկիր ընդ իւր կանգնէ 'ի վեր տարրացեալ, միութիւն գործելով երկնաւորաց և երկրաւորաց. և ոչ փոքր ինչ էր ծանրութիւն բեռինն՝ զերկինս բառնալով և զերկիր կախելով զինքենէ։ Տեսանես, և ոչ քիրտն դուզնաքեայ բղխէր յաստուածային մարմնոյն, այլ քիրտն ուժգին և արիւն. և արիւնն ոչ միով մասամբ, այլ վտակք բազմահոսանք. որով զերկինս սրբէր, և զերկիր լուանայր, և զօդ մաքրեաց յառաջին ծխոյ ճենճերաց զոհիցն ապականութեան։

Այլ 'ի վերայ այսր ամենայնի սքանչելագործութեանց՝ աշակերտքն անկեալ դնէին անընդոստ քնով։ Այլ սակայն մարդասէր Տէրն հեզաբար հանդարտութեամբ մատուցեալ ընդոստուցանէր զաշակերտսն, իբրեւ թէ զաշխարհ 'ի քնոյ, և ազերս բանիւք ասելով. Ո՛վ Պետրէ, այդպէս վայրիկ մի ոչ կարացէք արթուն կալ. քանզի վեց օր արարի զերկինս և զերկիր և զամենայն զարդս նոցա. և արդ ահա այս վեցհազարեան ամ է, որովք անկեալ խանգարեցան ընդ ապականութեամբք, և իմ եկեալ փրկել և անդրէն նորոգել։ Արդ աղէ զարթիր և արթուն կաց սակաւ մի, և թափեա 'ի քեն զծանրութիւն քնոյդ, և տես զինչ ինչ գործելոց է ընդ

իս ազգատոհմդ քո 'ի վերայ ամենայն բարեգործութեանց իմոց մինչեւ ցայսօր։ Ո՜ ինչ կամիմ հատուցանել ինձ ժողովեալ ամենեցուն իբրեւ 'ի վերայ մահապարտի, ոչ ըստ աշխարհի սովորական մահու սպանանել, այլ մեծապէս անարգանաց։ Այլ ես յայժ խռովեալ եմ և ողբամ դառնապէս, քանզի 'ի մահուան իմում գիտեմ զինչ լինելոց է. ընտրեալ տաճարս աւերելոց է, քահանայութիւնն լռեսցի, պաշտօնն դադարէ, ընթերցուածք սուրբ կտակարանացն որ վասն նորա աղաղակէին՝ 'ի սուտ մնասցեն. հուրն հանապազորդ շիջանի, պատարագք խափանին, ողջակէզքն որ վասն մեղաց՝ զատկի առնու, ուխտադրութիւնն որ 'ի հեռաստանէ՝ ոչ եւս եկեսցէ. անձկեալ քաղաքն Երուսաղէմ աւերեսցի, և ամենայն Իսրայէլ ցրուեսցի։ Դա և դուք իսկ երկոտասանքդ որ ընդ իս էք, յայժմ գիշերի գայթակղելոց էք. քանզի գրեալ է, պարտ է զի և կատարեսցի. "Հարից զհովիւն, և ցրուեսցին խաշինքն"։ Իսկ արդ խաշինք առանց հովուի՝ ապա մատնին 'ի ձեռս գիշակեր գազանաց. մանաւանդ զի ոչ եւս ստանայ յայժմ աւուր օձան խարբալել զձեզ իբրեւ զցորեան. և ես աղաչեցից զՀայր, զի մի պակասեսցին հաւատք քո։

Այլ բարուք առաց եթէ մի պակասեսցեն. քանզի աստուածութեանն ոչ են կամք տեսանել զչարութիւն մարդկան, բայց և մարդոյն պիտի առաքինութիւն զգենուլ յանձին զգուշութիւն, և 'ի Հօրն արքայութիւն և յուրախութիւն մտանել։ Ո՜ ի մի պակասեսցեն, ասէ. այլ ոչ եթէ մի ուրասցիս։ Ուրանալն և չուրանալն 'ի ձեռս նորա էր. իսկ ընդունելն անդրէն գործ մարդասիրութեան։ Այլ որպէս վասն ամենայն Իսրայէլի ողբալից աղաչանօք աղաղակէր առ Հայր, զի մի կորիցէ ազգն ընտրեալ, սոյնպէս և վասն երկոտասանիցն յանձն առնէր Հօգւոյն սրբոյ, զի հաստատուն կացցեն 'ի ժամ փորձութեանն։ Իսկ Պետրոս առ գութ սիրոյն Տեառն իւր անփորձաբար խիզախէր, բայց Տէրն որ ինչ լինելոց էր՝ յառաջագոյն պատմեաց նմա. և Պետրոս 'ի փորձանացն իմաստնացեալ՝ դառնապէս արտասուօք և մեծաւ զղջմամբ վերստին զանձն հաստատէր յաշխատութիւն։ Այլ այն որ 'ի ժամ փորձութեանն քան զնոմ

կակղագոյն, յետոյ քան զանդամանդեայ եւս առաւել խստագոյն երեւեցաւ:

Ո՜, քանի՜ մեծ ժպրհութիւն քահանայից և քահանայապետին, և ամենայն մեծամեծացն որ ընդ նոսա. մինչդեռ Տէրն ամենայնի վասն ամենեցուն աղաչէր ողբալով զի մի՛ մատնեսցին յանբժշկելի հարուածսն, նոցա ոչ ինչ փոյթ արարեալ 'ի յիսկապէսն որ լինելոյ էր, այլ յանդգնագոյն եւս քան զսոդոմայեցիսն յարձակեցան 'ի վերայ: Եւ յիրաւի ասացի թէ եւս չարութեամբ քան զնոսա. քանզի 'ի Սոդոմ հրեշտակքն նշան ինչ ոչ արարին, այլ զՍոդոմ իսկ արարին նշան ահագին ամենայն տեսողաց, և արժանապէս հատուցումն անարժանիցն հատուցաւ. զի եթէ վասն անարգութեան հրեշտակացն ամենայն մասունք երկրին ընկալան զաստուածային հարուածքն, իսկ ուր Տէր հրեշտակացն կրէր զանարգանս մահու, ո՜վ բաւական է հատուցանել վրէժ դատաստանին այնորիկ. ոչ միայն թանձրացեալ մարմինս որ աստէն յերեւելիս ընդունի զվճիռն մահու, այլ և անապական ոգիքն ընդ սմին մարմնոյ կապեալ և անկեալ յանշէջ հուր գեհենին, որ առաւել սաստկութեամբ այրեսցի քան զերկիրն սոդոմացւոց:

Եւ հասեալ, ասէ, քահանայապետն և ամբոխն՝ առանց պատկառելոյ արկին զձեռս իւրեանց կալան զՅիսուս, կապեցին և տարեալ տարան 'ի տուն քահանայապետին: Կապեցին զայն, որ եկն արձակեաց զմեզ 'ի կապանացն անլուծ. 'ի տուն տարան զայն, որ երկինք և երկիր ոչ տանին. հրեղէն բնութիւնն 'ի մէջ փայտեղէն տան մտեալ կայր, և ոչ ծախէր տունն. որ իջուցանէր հուր 'ի պատարագս նոցա և ընդունէր 'ի քաւութիւն մեղաց, ինքն ընդունողն առաջի կայր պատարագամատուցին, յորմէ սերոբէքն և քերոբէքն թեւօքն ծածկէին զաչս և զերեսս իւրեանց յահէ մեծութեան նորա:

Զտէր տաճարին վասն տաճարին պահանջէին: Ո՜վ մեծամեծ յանցանացն. զինչ ինչ չար ասաց. "Քակեցէք, ասէ, զտաճարդ, և ես յերիր աւուր շինեմ": Մեք իսկ, ասեն, լուաք: Ո՜վ քահանայք, և մե՞ծ իցէ արդեօք յանցանքս այս: Բանն՝ և կարի մեծ. շինեմ,

տեսաց, և ոչ եթէ աւերել. թուի ինձ եթէ դուք զերիս աւուրս ոչ կարէք աւերել, նա և ոչ բազում ամս։ Բայց բարուոք ասէր թէ քակեցէք. քանզի 'ի սկզբանէ քակել եւեթ գիտէք, և ոչ շինել։ Ահա քակեցէք զազգս արդարոցն, և ես այլ արդարս շինեցից 'ի միջի ձերում. քակեցէք և դուք զմարգարէութիւնն յանձանց ձերոց, սակայն ես այլ մարգարէս յարուցից ձեզ քարոզել զճշմարտութիւն. անարգեցէք դուք զվէմն՝ որ էր գլուխ անկեան, և ես այլ երկոտասան վէմս կանգնեցի յաշխարհի ձերում, զի շինեցից զձեզ 'ի վերայ անշարժ հիմանն՝ և ոչ կամեցարուք։ Իսկ արդ զի՞նչ մեծ է եթէ քակէք զտաճարդ, և յերիր աւուր կանգնեմ զդա։ Զերկինս ո՞չ ապաքէն առանց աւուր կանգնեցի, և զերկիր առանց ժամու հաստատեցի, և զամենայն գոյացութիւնս 'ի վեց աւուր զարդարեցի. դուք զտաճարդ 'ի քառասուն ամ շինեցիք, ես զմարդ 'ի քառասուն օր նկարեցի յարգանդի. դուք զտաճարդ 'ի քառասուն ամ շինեցիք, ես զձեզ քառասուն ամ շինեցի յանապատին՝ և ոչ շինեցարուք։ Արդ որովհետեւ քառասնամեայքդ՝ անխրատեալք և չշինեալք 'ի վերայ վիմին՝ որ տայր ձեզ զջուրն 'ի նմին անապատի, արդ քակեցէք դուք զայս տաճար զոր տեսանէքս զլս, և ես յերիր աւուր շինեցից զսա առանց ձեռագործի. զի այլ թէ կամիցիք քակել, ոչ կարէք։ Բայց զայդ տաճար զոր Սողոմոն շինեաց, եթէ կամիք և եթէ ոչ կամիք, դա քակելոց է 'ի թշնամեաց ձերոց. մանաւանդ թէ ողբքն իսկ դառնապէս ասացեալ են 'ի վերայ տաճարիդ. որպէս և դու իսկ, ո՛վ քահանայապետ Կայիափա, մարգարէացար ոչ 'ի կամաց քոց. “Գայցեն, ասես, այնուհետեւ Հռոմք, և բառնայցեն զազգս մեր և զտեղի և զօրէնս մեր”. որ և լինելոց է ոչ յետ բազում աւուրց, այլ առ կենօք քովք տեսցես զայն։

Եւ զայս ասելով վերամբարձագոյն եւս հայեցուցեալ, ցասոյց զքահանայապետն և ասէ. որ այժմ մըտեալ կամ առաջի քո կապանօք և մեծ անարգութեամբք, տեսցես յերկինս վերացեալ, և նստիմ 'ի հայրենի աթոռն յաջմէ զօրութեանցն Աստուծոյ։ Զայս լուեալ քահանայապետին, ձեռն զօձիւք հարկանէր, և յերկուս զպատմուճանն պատառէր. զի 'ի

պատառել պատմուճանին, զազգն ամենայն զայրացուսցէ յարուցանել 'ի վերայ Յիսուսի: Բայց թերեւս յիրաւի պատառեցեր զպատմուճանդ. զի ընդ նմին պատառելոց էր և քահանայութիւնն: Վասնզի արժան իսկ էր զօձիս պատառել 'ի մեծամեծ չարութեանն զոր գործելոց էր յայսմ տեղւոջ: Եւ առակքն տէրունեան յայժ համընկեցան ճշմարտութեամբ. "Ոչ ոք արկանէ գինի 'ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ պայթուցանէ գինի նոր զտիկս հինս". յորս սակաւիկ մի կաթեաց զօրութիւն ուժոյ՝ սակաւիկ գինի նորոյ, և անդրէն հին տիկքըն յերկուս հերձաւ: Իսկ արդ զինչ ինչ մեծ ասաց. որդւոյ մարդոյ նստել ընդ աջմէ Աստուծոյ ասաց: Ո՛ հնացեալ կուրութեանն, որ ոչ ամենեւին և առ ստս անգամ տեսանեն. զորհանապազ սաղմոսարանն երգէ. "Ասաց տէր ցտէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց": Ոչ եթէ զնստեալն յարուցանելով հրամայէ անդրէն նստել, այլ զձեւն նստելն ածէ 'ի նստուցանել, և ոչ զեդեալ թշնամին կրկնէ անդրէն դնելով զպաղաձեւ եդեալն, որ իբրեւ զքեզդ է ընդդիմացեալ, դնէ պատուանդան ոտից նորա: Եւ եթէ դժուար թուիցի քեզ մարդոյ որդի Աստուծոյն լինել, ընդէ՞ր ոչ յառաջագոյն պատառեցեր, յորժամ լուար 'ի Հոգւոյն սրբոյ 'ի ձեռն Մովսիսի "Որդի իմ անդրանիկ Իսրայէլ, արձակեա զի եկեսցէ պաշտեսցէ զիմ պաշտօնն". ապա թէ ոչ՝ սպանանեմ զորդին քո զանդրանիկ: Արդ վասն քո կամիմ եթէ սպանանէ Աստուած զորդի զանդրանիկ զԹագաւորին եգիպտացւոց, զի դու լիցիս որդի անդրանիկ Աստուծոյ. և դու հայհոյես և սպանանես զմիածին որդիդ Աստուծոյ, և բարկացեալ ես եթէ ընդէ՞ր նստուցանէ ընդ աջմէ իւրմէ:

Այս ընդդիմութիւն և ընդ դիւաց ամբարշտութեամբքն զանց առնէ, պատերազմ տայ ընդ Աստուծոյ և ընդ մարդկան և ընդ սուրբ Հոգւոյն միանգամայն, որ ասաց ցիս տէր. "Որդի իմ ես դու, ես այսօր ծնայ զքեզ": Եւ անդէն զիշխանութիւնն 'ի ձեռս տայ, ոչ միայն 'ի վերայ ազգին յորմէ ծնանի, այլ ամենայն հեթանոսաց 'ի ծագաց մինչեւ 'ի ծագս երկրի: Արդ որովհետեւ ատեցեր և մերժեցեր զխաղաղութիւնն 'ի

բաց 'ի քէն, խումբ առեալ աշխարհական պատերազմաւ 'ի վերայ երկրի, զոր յառաջագոյն իսկ նշանակէիր դու 'ի հարկանել փողոյն 'ի գլուխս ամսոց և 'ի շաբաթս քո և 'ի լրմունս և 'ի պակասութեան լուսնի և յամենայն տօնս երեւելիս քո, յայտ է եթէ 'ի սկզբանէ 'ի մարտ պատերազմի մտեալ էիր ընդ իս։ Արդ որ ընդ ամենայն երեւելիս կռուէիր, ամենեքեան ընդ քեզ տայցեն պատերազմ. փողն լռեսցէ, շաբաթն լուծցի, լրմունք լուսնին քեզ յերկրի հեթանոսաց երեւեսցին, երեւմունք հրեշտակաց քեզ այլ մի հանդիպեսցին. վասն զի ամենայնքս 'ի վերայ քո հեղեալ էին 'ի պատիւ և 'ի փառս մեծարանաց։ Արդ Հոգին սուրբ ելցէ և գնասցէ 'ի քէն, զի այլ մարգարէ 'ի միջի քում մի մարգարէասցի. որովհետեւ ասացեր թէ հայհոյեաց, և իշխեցեր զայդ ասել, ամենեքեան քում սուտ բանիցդ ետուն վկայութիւն թէ մահապարտ է։

Իսկ արդ որոյ մահապարտի, ով նզովեալք, կռուփս հանեն և ընդ երեսս թքանեն։ Կափես զայն որ զարդարեաց զգլուխ քո յականս պատուականս, և թքանես ընդ երեսս այնմ որ յարարչութեանն փչեաց 'ի քեզ հոգի կենդանի. վասն որոյ և կոյրդ շրջի աղաղակէ յայտնութեամբ ընդ փողոցս քաղաքիդ, "Որում Յիսուս ասեն, ասէ, նա կաւ արար թքով և ծեփեաց զաչս իմ, հրամայեաց լուանալ 'ի Սելովմա, և տեսանեմ,,։ Կոյրն լուսաւորեցաւ, և դու լուսաւորդ կուրացար։ Տեսանես, քանզի յանդգնութիւն անհանձարիցն էր, և անհամեմատ համբերութիւնն Աստուծոյ, յանօրինաց կափի, և 'ի մեղաւորաց թուք յերեսն ընդունի ազատիչն ամենայնի։ Այս 'ի վեր է քան զբնութիւն մարդկային. որ արար զարարածս, նա միայն կարաց տանել յայսմ ամենայնի։

Դարձեալ հարցանեմ զքեզ այդրէն, ով քահանայապետ. ուստի՞ ետուր զարծաթն մատնչին. ո՞չ յառաջ ասացի քեզ թէ մի տար. ոչ երբեք գնի արծաթոյ արիւն արդար. ահա այժմ այդրէն 'ի քեզ ընդունիս զերկոտեանն։

Երբեւ ետես Յուդա եթէ մատնեաց զՏէր 'ի դատաստան մահու՝ յոյժ զղջացաւ, և դարձոյց զարծաթն առ քահանայապետսն և առ ծերս ժողովրդեանն և

ասէ. մեղայ զի մատնեցի զարիւն արդար։ Եւ նոքա ասեն. մեզ չէ փոյթ, դու գիտես. և նա ընկէց զարծաթն 'ի տաճարն, և ինքն գնաց 'ի խեղդ արկ և մեռաւ „։

Ո՛վ Յուդա, քանի՜ չար եղեւ քեզ թողուլ զճշմարիտ վարդապետն քո, որ ուսուցանէր քեզ զգնացս արդարութեան և զխօսս ստուգութեան. ո՛վ ուսոյց քեզ զյետս ընդդէմ խոստովանութիւն։ Մեղայ, ասէ, զի մատնեցի զարիւն արդար։ Աշակերտ որդւոյ մարդոյ էիր, զվարդապետութիւնն յերկնէ և յերկրէ ուսանէիր, զնշանագործութիւնս զՀոգւոյն սրբոյ տեսանէիր, որդի զդա Աստուծոյ գիտէիր. և այժմ ասես՝ մեղայ զի մատնեցի զարիւն արդար։ Ո՞վ երբէք յարդարոց սաստեաց ծովու և դադարեցին ալիք նորա. կամ յորո՞յ մարգարէի դեւքն հնազանդեցան երբէք, որպէս յանուն Յիսուսի Քրիստոսի 'ի ձեռն եօթանասնիցն։ Քան ասացեր եթէ զարիւն արդար մատնեցի, ընդէ՞ր ոչ ասացեր եթէ զորդին Աստուծոյ մատնեցի. թող ամաչեցեալ լինէր Աննա և Կայիափա առաջի ամենայն ժողովրդեանդ։ Քան առ քահանայսդ բերեր զարծաթդ, ընդէ՞ր առ Պիղատոս ոչ տարար. քան 'ի մէջ տաճարիդ ընկեցեր, ընդէր ո՞չ ընկեցեր զայդ 'ի յատենական դատաստանիդ. թող կոչէր դատաւորն զամենայն պատուականս ժողովրդեանն, և յանդիմանեալ կշտամբէր դքահանայապետսն՝ եթէ զայր անմեղ արծաթոյ գնէք և սուտ բանիւք դատապարտէք, և կցո՞րդ առնէք զիս ամբարշտութեանդ ձերոյ։ Դարձեալ՝ քան չոքար 'ի տուն և խեղդեցար, ընթացեալ քո քեզէն առ դատաւորն ճիչ առեալ և զաղաղակ բարձեալ՝ ասելով առաջի ամենայն բազմութեանդ զմեծամեծսն և զսքանչելիսն զոր գործէր վարդապետն քո։ Եւ եթէ այնպէս ոչ լսէին բանիցն քոց, կացեալ իցես քո առաջի խաչին, և խաչելոյն առաջի ասացեալ՝ թէ մեղայ զի մատնեցի զարիւն արդար։ Որ հայրն էր գթութեանց և տէր ողորմութեանց, որ ամենեւին է փրկիչ և ամենայնի կեցուցիչ, որ ոչ եկն դատապարտել զմարդիկ, այլ արդարացուցանել և շնորհել զյանցանս իւրաքանչիւր որ դառնան առ խաչեցեալն։ Ոչ էին մեղքն քո մեծ քան զգթութիւնն Աստուծոյ, որ 'ի ձայն բարձր աղաղակէր և ասէր. ամենայն որ ծարաւի է՝ եկեսցէ առ իս, և արբ-

ցէ յհնեցն զջուրս կենդանի, միանգամայն 'ի Թողութիւն և յանմահութիւն: Ո՞չ ապաքէն զմեծ աղխեմս իւր վասն մեծ մեղաց աշխարհի հեղու յերկիր, և նովին սուրբ արեամբն գնեաց զմեռեալս և զկենդանիս. համա-րեա Թէ դու մի 'ի նոցանէ էիր: Որ զամենայն կարէր առնել, քե՞զ միայն չհամարեցար բաւական 'ի փրկու-Թիւն. յայտ է եԹէ որ զառաջին մարդն յանցոյց, նոյն նա քեզ զգեցոյց զխորղենի կուրութիւնդ. որում ոչ ծագեաց նշոյլ շնորհի որդւոյն Աստուծոյ յոգիս մոլորե-լոց, վասն որոյ և ընդ վայր հարար, և զհեղձամղձուկ դաժանութիւն ժառանգեցեր:

Այս յիրաւի ուրեմն սուրբ Հոգին որք ասեալ 'ի բերանոյ Դաւթի ասէ. «Աստուած օրհնութեան իմոյ մի լռեր. զի բերան մեղաւորի, բերան նենգաւորի բա-ցաւ 'ի վերայ իմ. խօսեցան զինէն 'ի լեզուս նենգաւորս, և բանիւ ատելութեան զիս պաշարեցին. մարտեան ընդ իս 'ի տարապարտուց, այլ ես յաղօԹս կայի»: Արդ ամենայն սաղմոսս այս՝ չարութեամբ և անիծիւք 'ի վե-րայ մատնչին ասացաւ, զոր մեծաւ համբերութեամբ Տէր 'ի խաչելութեանն կատարեաց: Եւ վասն զի զան-պատճառ մեղաց 'ի մահ դատապարտեաց, կատարե-ցաւ 'ի վերայ նորա բանն, «Որ հայհոյեսցէ, ասէ, զՀո-գին սուրբ, ոչ Թողցի նմա յայսմ աշխարհի և մի 'ի հանդերձելումն». որպէս և եղեւ իսկ 'ի վերայ նորա: Քանզի և աշակերտակիցքն բարկացեալ էին և քահա-նայքն ցասուցեալ և ընտանիքն իւր ոստուցեալ. ոչ որ փոյթ առնէր խնդրել զանգիւտ կորուստ նորա, և ոչ որ իջոյց զնա 'ի չարաչար կախաղանէն. ուռաւ փոր նորա, և հեղաւ որովայն նորա, և ցրուեցան ամենայն ոսկերք նորա 'ի դժոխս. իբրեւ զշուն մեռաւ, և իբրեւ զգէշ քարշեցաւ. Եւ սմն 'ի վաստակոցն, և ջնջեցաւ անուն նորա 'ի դպրութենէ կենաց:

Իսկ քահանայապետք և ծերք ժողովրդեանն առին զարծաԹն և ասեն. Ոչ է արժան զայդ ունել 'ի գանձս, զի գինք արեան են. խորհեցան և գնեցին զագարակն բրտի: Ո՜վ մեծի անմտութեան քահանայից. տալ ար-ժան էր զարծաԹդ 'ի տաճարէ այտի, և ընդունել չէ՞ր արժան. ոչ այժմ պղծեցաւ արծաԹդ, այլ յառաջա-գոյն բազում ժամանակօք՝ յաւուրց անտի Երեմիայի

ասէ․ մեղայ զի մատնեցի զարիւն արդար։ Եւ նոքա ասեն․ մեզ չէ փոյթ, դու գիտես․ և նա ընկեց զարծաթն 'ի տաճարն, և ինքն գնաց 'ի խեղդ արկ և մեռաւ„։

Ո՜վ Յուդա, քանի՜ չար եղեւ քեզ Թողուլ զճշմարիտ վարդապետն քո, որ ուսուցանէր քեզ զգնացս արդարութեան և զխօսս ստուգութեան․ ո՞վ ուսոյց քեզ զյետս ընդդէմ խոստովանութիւն։ Մեղայ, ասէ, զի մատնեցի զարիւն արդար։ Աշակերտ որդւոյ մարդոյ էիր, զվարդապետութիւնն յերկնէ և յերկրէ ուսանէիր, զնշանագործութիւնս զՀոգւոյն սրբոյ տեսանէիր, որդի զդա Աստուծոյ գիտէիր․ և այժմ ասես՝ մեղայ զի մատնեցի զարիւն արդար։ Ո՞վ երբէք յարդարոց սաստեաց ծովու և դադարեցին ալիք նորա․ կամ յորո՞յ մարգարէի դեւքն հնազանդեցան երբէք, որպէս յանուն Յիսուսի Քրիստոսի 'ի ձեռն եօթանասնիցն։ Քան ասացեր եթէ զարիւն արդար մատնեցի, ընդէ՞ր ոչ ասացեր եթէ զորդին Աստուծոյ մատնեցի․ Թող ամաչեցեալ լինէր Աննա և Կայիափա առաջի ամենայն ժողովրդեանդ։ Քան առ քահանայսդ բերէր զարծաթդ, ընդէ՞ր առ Պիղատոս ոչ տարար․ քան 'ի մէջ տաճարիդ ընկեցեր, ընդէր ո՞չ ընկեցեր զայդ 'ի յատենական դատաստանիդ․ Թող կոչէր դատաւորն զամենայն պատուականս ժողովրդեանն, և յանդիմանեալ կշտամբէր զքահանայապետսն՝ եթէ զայր անմեղ արծաթոյ գնէք և սուտ բանիւք դատապարտէք, և կցո՞րդ առնէք զխս ամբարշտութեանդ ձերոյ։ Դարձեալ՝ քան չոքար 'ի տուն և խեղդեցար, ընԹացեալ քո քեզէն առ դատաւորն ճիչ առեալ և զաղաղակ բարձեալ՝ ասելով առաջի ամենայն բազմութեանդ զմեծամեծսն և զսքանչելիսն զոր գործէր վարդապետն քո։ Եւ եթէ այնպէս ոչ լսէին բանիցն քոց, կացեալ իցէ քո առաջի խաչին, և խաչելոյն առաջի ասացեալ՝ թէ մեղայ զի մատնեցի զարիւն արդար։ Որ հայրն էր գթութեանց և տէր ողորմութեանց, որ ամենեւին է փրկիչ և ամենայնի կեցուցիչ, որ ոչ եկն դատապարտել զմարդիկ, այլ արդարացուցանել և շնորհել զյանցանս իւրաքանչիւր որ դառնան առ խաչեցեալն։ Ոչ էին մեղքն քո մեծ քան զգթութիւնն Աստուծոյ, որ 'ի ձայն բարձր աղաղակէր և ասէր․ ամենայն որ ծարաւի է՝ եկեսցէ առ իս, և արբ-

ցէ յինէն զջուրն կենդանի, միանգամայն 'ի թողութիւն և յանմահութիւն։ Ո՞չ ապաքէն զմեծ արիւնն իւր վասն մեծ մեղաց աշխարհի հեղու յերկիր, և նովին սուրբ արեամբն գնէր զմեռեալս և զկենդանիս. համարեա թէ դու մի 'ի նոցանէ էիր։ Որ զամենայն կարէր առնել, քե՞զ միայն չհամարեցար բաւական 'ի փրկութիւն. յայտ է եթէ որ զառաջին մարդն յանցոյց, նոյն նա քեզ զգեցոյց զխլրդենի կուրութիւնդ. որում ոչ ծագեաց նշոյլ շնորհի որդւոյն Աստուծոյ յոգիս մոլորելոյդ, վասն որոյ և ընդ վայր հարար, և զհեղձամղձուկ դառնութիւն ժառանգեցեր։

Ապա յիրաւի ուրեմն սուրբ Հոգւոյն ողբ առեալ 'ի բերանոյ Դաւթի ասէ. "Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր. զի բերան մեղաւորի, բերան նենգաւորի բացաւ 'ի վերայ իմ. խօսեցան զինէն 'ի լեզուս նենգաւորս, և բանիւ ատելութեան զիս պաշարեցին. մարտեան ընդ իս 'ի տարապարտուց, այլ ես յաղօթս կայի„։ Արդ ամենայն սաղմոսս այս՝ չարութեամբ և անիծիւք 'ի վերայ մատնչին ասացաւ, զոր մեծաւ համբերութեամբ Տէր 'ի խաչելութեանն կատարեաց։ Եւ վասն զի զանպատճառն մեղաց 'ի մահ դատապարտեաց, կատարեցաւ 'ի վերայ նորա բանն, "Որ հայհոյեսցէ, ասէ, զՀոգին սուրբ, ոչ թողցի նմա յայսմ աշխարհի և մի 'ի հանդերձելումն„. որպէս և եղեւ իսկ 'ի վերայ նորա։ Քանզի և աշակերտակիցքն բարկացեալ էին և քահանայքն ցասուցեալ և ընտանիքն իւր ատուցեալ. ոչ ոք փոյթ արար խնդրել զանդիւտ կորուստ նորա, և ոչ ոք իջոյց զնա 'ի չարաչար կախաղանէն. ուռաւ փոր նորա, և հեղաւ որովայն նորա, և ցրուեցան ամենայն ոսկերք նորա 'ի դժոխս. իբրեւ զշուն մեռաւ, և իբրեւ զգէշ քարշեցաւ. եղ սին 'ի վաստակոցն, և ջնջեցաւ անուն նորա 'ի դպրութենէ կենաց։

Իսկ քահանայապետք և ծերք ժողովրդեանն առին զարծաթն և ասեն. Ոչ է արժան զայդ ունել 'ի գանձս, զի գինք արեան են. խորհեցան և գնեցին զագարակն բրտի։ Ո՜վ մեծի անմտութեան քահանայից. տալ արժան էր զարծաթդ 'ի տաճարէ այտի, և ընդունել չէ՞ր արժան. ոչ այժմ պղծեցաւ արծաթդ, այլ յառաջագոյն բաղում ժամանակօք՝ յաւուրց անտի Երեմիայի

մարգարէի. “Առի, ասէ, զերեսուն արծաթին զգինս վաճառելոյն զոր գնեցի յորդւոցն Իսրայէլի, ետու զնա ’ի գինս ագարակի բրուտի,,: Զի մի՛ կարծիցէք եթէ մարդոյ է տեսութիւնս, ասէ մարգարէն. “Որպէս և հրաման ետ ինձ տէր,,: Ահաւասիկ երեւիք դուք եթէ ծնունդք էք սատանայի, զի զգործս Հօր ձերոյ կատարէք հանապազ: Արդ ոչ եթէ արծաթդ պիղծ է, այլ դուք պղծեցիք զբարութիւն արծաթոյդ:

Պիղծ էր Գողիադ այլազգի, և պիղծ զինուք կամէր կոտորել զԻսրայէլ. իսկ Աստուած ’ի ձեռն Դաւթի կործանեաց զհպարտութիւն նորա, յորում բնակեալ էր սատանայ, և նորուն զինուն եհատ զգլուխ հսկային. և զսուրն որով եհատ, ոչ միայն պիղծ չհամարեցաւ, այլ և յոյժ սուրբ, և ետ զնա զԱբիաթար քահանայապետ. և նա առեալ եդ ’ի պահեստի ընդ սեղանովն, Աստուծոյ նուիրեալ զյաղթութիւնն և ոչ մարդոյ. և սեղանն ոչ պղծեցաւ: Եւ շինեաց Սողոմոն զտաճարն, ոչ զօրութեամբ հեթանոսական մտիւքն, և օգնականութեամբն Խիրամայ կռապաշտի, ուստի և Յեզաբէլ նզովեալ մոլորեցոյց զԻսրայէլ: Դարձեալ ուստի՞ նորոգեաց Զօրաբաբէլ զգոյն տաճարին. իբրու յայտնի է ամենեցուն: Քանզի ’ի գալստեանն դարձին իւրեանց՝ հարին զազգս բազումս, և աւարօք գերութեանն կազմեցին զաւեր տաճարին, զոր և մեծ մարգարէն Անգէաս յանդիման բարբառի. “Եղիցին փառք տանս այսորիկ, ասէ, մեծ վերջինս քան զառաջինն,,: Եւ զի մի՛ պիղծ համարիցին զկապուտ դիականցն անկելոց, ասէ Զաքարիա. “Եւ եղիցի յաւուր յայնմիկ որ ’ի վերայ սանձաց ձիոցն ’ի սրբութիւն տեառն,,. որ կատարեցաւ գործով ’ի վերայ Երուսաղէմի ’ի հարկանել երկոտասան բիւրուցն յաւուրս Յեսուայ յովսեդեկեանցն քահանայի մեծի, և Զօրաբաբելի սաղաթիէլեանց:

Արդ ոչ եթէ զարծաթդ չէ արժան ընդունել ’ի գանձն, այլ զձեզ հանել յամենասուրբ տաճարէդ. որ ոչ միայն զարծաթ դորա պղծեցէք, այլ և զօրէնս Մովսէսի՝ չընդունելով զկատարիչ օրինացն. վասն այսորիկ ամբաստանեն զձէնջ ոչ միայն սպասք տաճարիդ, այլ և երկինք և երկիր ամենայն զարդուք իւրեանց:

"Եւ առեալ ածեն, ասէ, զՅիսուս 'ի վանացն Կայի-
ափայ կապանօք առ Պիղատոս. և նոքա ոչ մտին 'ի ներ-
քըս, զի մի պղծեսցին,,: Ո՞ւր իցէ սրբութիւն ձեր,
ով քահանայք. զսուրբ տաճարն 'ի գինս վաճառելոյն
պղծեցէք. զանձինս ձեր և զամենեցուն՝ որ մերձ են
առ ձեզ, յանձնառութեամբ սուրբ արեանդ պղծեցէք.
արդ ընդէ՞ր ոչ մտանէք յատենատունդ: Եթէ արդա-
րութեամբ լինի դատաստանդ, դա ոչ արժանի մահու
դատանի, և դուք ապրեալ լինիք յարդար արենէդ. իսկ
տեղիդ զորոյ յատակ այդր սուրբ գարշապարքդ կոխե-
ցին, եթէ յառաջագոյն ինչ ունէր զաղտ անիրաւու-
թեան, 'ի ձեռն արդար դատաստանիդ սրբեալ և մաք-
րեալ լինի ամենայն տունդ ատենիդ հանդերձ: Ապա
եթէ 'ի դատաւորէդ ինչ խորշիք իբրեւ յանթլփատ
հեթանոսէ, ահաւադիկ դա առ ձեզ արտաքս ելանէ,
մերձ առ ձեզ կալով առանց միջնորդի խօսի ընդ կար-
ծեցեալ սուրբ քահանայապետսդ: Բայց թուի ինձ՝
թէ յորմէ դուք խորշիք, դորա յառաջագոյն իմացեալ
է ոչ միայն զպղծութիւնդ ձեր, այլ և զմեծդ անիրա-
ւութիւն. քանզի և գիտաց իսկ՝ եթէ առ նախանձու
մատնեցին զնա, վասն որոյ կրկնէ և երեքկնէ և բա-
զում անգամ հարցանէ. Օ՜ ինչ ինչ չարիս գործեալ
է, ասէ, զի ածէք մատուցէք զսա 'ի մահ դատաստա-
նի: Իսկ իբրեւ ոչ գտանէին ամենեւին տեղի պատաս-
խանատուութեան, խռովութեան իմն մեծի պարտ առ-
նէին 'ի Գալիլէէ մինչեւ յԵրուսաղէմ. դարձեալ և
թագաւորութեան զրպարտութիւն 'ի վերայ դնէին:

Իբրեւ ետես, ասէ, Պիղատոս՝ եթէ ինքեանք ոչ
մտանեն, ինքն ել առ նոսա. և ստգտանելով զնոսա 'ի
միտս իւր՝ ասէ. Ո՛վ, գիտեմ զի քահանայք էք և քա-
հանայապետք, ոչ երբեք գիտէք սուտ խօսել, քանզի
սուրբ էք. և 'ի ներքս անգամ առ իս ոչ մտէք, զի մի
պղծիցիք. արդ ասացէք ցիս՝ զի՞նչ չարիս գործեալ է
նորա, զի թողէք զուրախութիւն պատուական տօնիդ
ձերոյ, և իբրեւ արդարութեան նախանձորդք վրէժ-
խնդիր էք, իբրեւ թէ չարագործի. դրով տուք ինձ
զառն ամբաստանութիւն, զի ըստ գործոց նորա զդա-
տաստանն հատուցից: Ասեն ամենեքեան միաբան. Մեք

գիտեմք, զի մահապարտ է ըստ օրինաց մերոց։ Բարկացաւ դատաւորն և ասէ. Թուի ինձ՝ եթէ ճշմարտատեացք ոմանք էք դուք. զիա՞րդ կարեմ ես զայր անմեղ առանց յանցանաց սպանանել. արդ առէք և ըստ օրինաց ձերոց որպէս և սովոր էք՝ դատեցարուք։ Պատասխանի ետուն քահանայապետքն և ասեն. Մե՛ք հրաման ունիմք յօրինաց մերոց չսպանանել զոք։ Նոյն դատաւորն. Իսկ ես երկնչիմ յօրինաց հռոմայեցւոց առանց յանցանաց դատել զարդար ոք։ Նոյն քահանայապետքն. Մե՛ք վկայեմք՝ եթէ մահապարտ է, քանզի խռովիչ է և զանձն իւր 'ի Թագաւորութիւն մատուցանէ։ Նոյն դարձեալ դատաւորն. Որպիսի՞ խռովիչ. յափշտակո՞ղ իբրեւ զաւազակ, թէ բռնութեամբ իբրեւ զթագաւոր, թէ յափշտակող և աւարառու. յորո՞ւմ լերին բնակեալ էր, և զո՞ր ճանապարհս պաշարեր, և զո՞ 'ի ճանապարհորդաց կողոպտեաց, և կամ զո՞ր գաւառ հինեալ աւարեաց. զի՞նչ չար տարաւ 'ի գերութիւն, ըղմարդի՞կ եթէ զանասուն. ածէք զմնացեալ ոք յընկերաց գերելոցն, զի և 'ի նոցանէն եւս ճշմարտեցից. և եթէ զգանձս ուրուք առ բռնաբար, ընդէ՞ր յառաջագոյն ինձ ոչ բողոքեցէք. և եթէ որպէս ասէքդ՝ թէ թագաւորութեամբ խռովէ զմեզ և հանէ 'ի հարկաց կայսեր, ցուցէք ինձ ո՞վ են սպասաւորք դորա, և կամ քանի՞ զինուոր ունի, և որպիսի՞ սպասաւորութիւն զինուց, որով կարէ զդէմ ունել հռոմայեցւոց՝ հանելով զձեզ 'ի ծառայութենէ կայսեր, որպէս ասացէքդ։

Իբրեւ տեսին քահանայքն թէ յամենայն կողմանց ած և արգելեաց զնոսա յանպատասխանատուութիւն, սկսան լրբենի դիմօք խօսել ընդ դատաւորին և ասեն. Ո՛վ քաջ դատաւոր, ընդէ՞ր ոչ հաւատաս արդարոցս. դու իբրեւ զմեզ տեսեր յատենիս, չէր արժան քեզ այդպիսի բանիւք բազում քննութիւնս առնել, այլ միայն հաւատալ մեզ, և զինչ ասեմք՝ վաղվաղակի կատարել։ Իբրեւ զայն լուաւ Պիղատոս, ստգտանէր զանմտութիւն պատասխանեացն նոցա, դսրովելով ընդ միտըս իւր զքահանայապետսն։ Եմուտ անդրէն Պիղատոս առ Յիսուս և ասէ. Արդարեւ դո՞ւ ես թագաւորն հրէից։ Եւ պատասխանի Յիսուս և ասէ. Իւրո՞վ բանիւ խօսիս դու ցիս զայդ, եթէ այլ ոք ետ քեզ բանս

'ի բերանդ ։ Ասէ Պիղատոս. Ես ոչ Հրեայ եմ. ազգատոհմն քո մատնեաց զքեզ 'ի ձեռս իմ, ի՞նչ արարեալ է քո նոցա ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. Արքայ եմ իսկ արդարեւ, ո՛վ դատաւոր, այլ ոչ յայսմ աշխարհէ ։ Ասէ դատաւորն. Թէ այդպէս է, Թագաւոր ոմն ես դու ։

Եւ ել անդրէն Պիղատոս առ Հրեայսն և ասէ ցնոսա. Գիտասջիք ամենեքեան, զի ես և ոչ մի ինչ պատճառս մահու կարեմ 'ի վերայ նորա գտանել. է ձեր սովորութիւն՝ մի ոք 'ի կապելոց արձակել 'ի տօնի աստ. կամի՞ք զի արձակեցից ձեզ զարքայդ Հրէից ։ Հասարակ զաղաղակ բարձին ասելով. Մի՛ զդա, մի՛ զդա, այլ արձակեա մեզ զորդի Աբբայ ։ Եւ էր այն որդի Աբբեայն աւազակ մի ։ Իբրեւ զայն լուաւ Պիղատոս, յոյժ տըրտմեցաւ ընդ կատաղութիւն ժողովրդեան ։ Յամենայնի, ասէ, տեսանեմ զձեզ վրիպեալս 'ի ճշմարտութենէն. խռովութենապարտ արարէք, և ոչ մի ինչ բան վնասու 'ի վերայ կարացէք դնել. Թագաւորութեան անուամբ հայհոյեցէք, և զգործ իշխանութեան ինձ ոչ ցուցէք ։ Զայս այր մի աւազակ՝ որ 'ի բազում ժամանակաց բազում չարիս գործէր, որ 'ի դաշտի զճանապարհս պաշարէր, զմարդիկ կոտորէր, զուղեգնացս խափանէր, ըղտուարածս 'ի լերանց հալածէր, ճանապարհաց հատս առնէր, 'ի շէնս զօրմն ծակոտէր, և զմեծատանց գանձս տանէր, զաղքատս անողորմ լացուցանէր, յԱստուծոյ չերկնչէր և 'ի մարդկանէ չամաչէր, 'ի դատաւորաց չպատկառէր, 'ի տանջանաց չզանգիտէր, 'ի տուգանաց չակնածէր, յամենայն պղծութիւնս խառնէր, զամենայն չարիս գործէր, և ես 'ի բազում ժամանակաց 'ի խընդիր էի, և մեծաւ ճգնութեամբ հազիւ ըմբռնեցի, արդ արժա՞ն էր ձեզ զայսպիսի այր յայսմ տօնի խնդրել ։

Ետուն պատասխանի քահանայապետքն և ասեն. Վասն զի մեծ է տօնս, կամիմք զի մեծամեծ այր ապրեալ լիցի 'ի մեծի տօնիս ։ Ետ պատասխանի Պիղատոս քահանայապետիցն և ասէ. Որովհետեւ այդչափ մարդասէրք էք և զմեծամեծի փրկութիւն խնդրէք 'ի մեծի տօնիս, արձակեցից ձեզ զՔրիստոս. որպէս դուք ասէք՝ նա է մեծամեծ քան զամենեսեան ։ Զայս լուեալ հիացան ամենեքեան, և ոչ գտան պատասխա-

նիք 'ի բերանս նոցա. յուզեցին զամբոխ բազմութեանն, 'ի ձայն բարձր աղաղակեցին և ասեն. Մի՛ զդա, մի՛ զդա, այլ արձակեա մեզ զորդի Աբբայ: Ասէ դարձեալ Պի-ղատոս. Իսկ զի՞ արարից զարքայն Հրէից: Եւ նոքա նո-վին բարբառով եւս սնդագոյն քան զառաջինն ասէին. Բարձ 'ի մէնջ և հան 'ի խաչ:

Եւ մինչ դեռ անդէն յատենին էր դատաւորն, ա-ռաքեաց առ նա կինն իւր և ասէ. Չկայ ինչ քո և ար-դարոյդ այդորիկ, քանզի բազում անցք անցին ընդ իս յայսմ գիշերի վասն դորա: Առաքեաց դատաւորն անդ-րէն առ կինն և ասէ. Ես զի՞ առնեմ, բանից բան տամ քահանայապետից, և պատասխանի կարեմ դարձուցանել քահանայիցս. իսկ աղաղակի բազ-մութեանս ես ոչ կարեմ կալ առաջի. ոչ միայն օգնել ոչ կարեմ առնս այսմիկ, այլ և յանձնէ յոյժ երկնչիմ, եթէ զուցէ յակամայ խառնեցայց յարիւն արդար. դու 'ի տեսլեան գիշերոյ զարմացեալ և զարհուրեալ ես ընդ արդարութիւն սորա. բայց ես 'ի տուընջեան իսկ զահի հարեալ եմ յերեսաց սորա: Զի որպէս առաւել է մարդ քան զստուեր անձին իւրոյ, այնչափ առաւել է երեւումն տեսլեան սորա քան զարհաւիրս գիշերայինս:

Արդ իբրեւ ետես դատաւորն եթէ ամենայն բազ-մութիւնն միաբան աղաղակէն ասելով՝ 'ի խաչ հան, և եթէ 'ի նա եւս ձգէն զբանս հայհոյութեան վասն ար-քունի իրաց, վաղվաղակի ջուր խնդրեաց և լուաց ըզ-ձեռսն, և զանձն իւր 'ի բաց թօթափեաց առաջի ամե-նայն բազմութեան ատենին՝ ասելով յանդիման քա-հանայիցն և քահանայապետիցն. Գիտասջիք, ով Հը-րեայք, քաւեալ եմ ես յարենէդ յայդմանէ, զոր դու-քըն կամիք 'ի տարապարտուց հեղուլ: Եւ նոքա միա-բան յանձն առին: Արիւն դորա, ասեն, թէ արդարոյ է՝ 'ի գլուխ մեր, և եթէ մեղաւորի է՝ 'ի գլուխ մեր և որդւոց մերոց, և թէ որդւոյ Աստուծոյ՝ 'ի մեր և յորդւոց մերոց և յորդիս որդւոց մերոց: Յայնժամ արձակեաց նոցա զԲարաբբա զորդի Աբբեայ, և զՅի-սուս կալեալ ետ 'ի ձեռս նոցա, զի 'ի խաչ հանիցեն:

Ո՛վ անբաւ բարերարութեանն Աստուծոյ և անկշիռ մեծութեան սիրոյ նորա, որ քան զմիտս և զխորհուրդս անցանէ, ոչ միայն քան զիմաստնոց մարդկան, այլ և

քան զվէրին զուարթնոցն ։ Ամենայն որ հերկէ զերկիր, զայլոց մարմին կակղէ, և զարտաքին սերմանեացն մնուցանէ զբոյս ․ իսկ Յիսուս երկնայինն երկրագաւ, և կամօք եկն 'ի հերկումն և 'ի կակղումն, և յիւր մարմինն եբարձ զամենայն չարութեան մերոյ սերմանիս ։ Ի սուրբ երեսս ընկալաւ թուք պիղծ 'ի պիղծ և 'ի հայհոյիչ բերանոց ․ և որ ամենասուրբ թքովն եբաց զաչս կուրութեան մարմնոց և զոգւոց մերոց, ընկալաւ ապտակ 'ի ծառայէն ծառայից, և յապտակաց աներևոյթ հարուածոյն զերծոյց ․ ետ զինքն յապտակս՝ որ էրն ազատ և ազատիչ ամենեցուն, զի իւրով ազատութեամբն ազատեսցէ զմեզ 'ի ծառայութենէն ․ որում կամօք տրւաք զանձինս յանարժան ծառայութիւն, և նովին կամօք փշաբոյս արարաք ոչ միայն զերկիր՝ այլ և զմարմինս մեր, մանաւանդ թէ և զհոգի առաւել քան զմարմին, խլեաց արմատաքի զբոյս չարաչար փշոց մերոց ․ և ոչ եթող աստէն յերկրի, այլ բոլորեաց կազմեաց զօրէն պատուական պսակի, և եդաւ 'ի գլուխ ։

Ո՜վ քանի՛ է չարութիւն մարդկան, և կամ որչափ բարերարութիւն Աստուծոյ ․ այն որ պսակեաց զքահանայսն յոսկի և 'ի զմրուխտ և յայլ բազում ականս պատուականս, և զարդարեաց զնոսա 'ի զարդ ոսկեհուռն պճղնաւոր, և 'ի զանգակաձայն հնչումն, և 'ի զարմացումն վակասին, փոխանակ այսր ամենայնի տեսանեմ զձախողակի հատուցումն ․ զի ոչ միայն պսակ 'ի փշոց եդին 'ի գլուխ նորա, այլ և եղէգն ձաղանաց յաջոյ ձեռին նորա ։ Բայց յոյժ առաւել զարմանամ ընդ այս իրս, զիա՞րդ իցէ եղէգն ձաղանաց ․ թուի ինձ թէ ոչ այսօր բուսաւ եղէգնս այս, այլ յաւուրց անտի Եսայեայ մարգարէի ․ “Ճրագն աղօտ աղօտ, ասէ, մի՛ շիջցի ․ և եղէգն ջախջախեալ մի՛ բեկցի, մինչև հանցէ 'ի դատաստան զիրաւունս արդարութեան„ ։ Այս յայտնի է ամենեցուն ․ լուսով ատեանք ուղղին և եղեգամբ գիր հաստատի ։ Իսկ արդ եթէ ճրագ աղօտ աղօտ էր Յովհաննէս, որպէս և էր իսկ ճշմարիտ, որչափ նորա գալ էր՝ փութացան շիջուցանել ․ այլ նա առաւել քան զճառագայթս արեգականն բացափայլ արձակէր զնշոյլ լուսոյ իւրոյ ։ Արդ բարիոք կատարէք զկանխագիր բանս մարգարէիցն ձերոց, այլ չարաչար ընդունիք զվճիռ դա-

տաստանի յանձինս ձեր։ Եղեգամբ մարդիկ գրին և արձակին յազատութիւն 'ի չարաչար ծառայութենէ. իսկ դուք աւադիկ երկրաբոյս եղեգամբ աստուածային ձեռամբն անջինջ դեղով գրիք և արձակիք յերկնաւոր ազատութենէն 'ի սատանայական ծառայութիւնն. ապա յիրաւի ուրեմն առնուք զեղէգն 'ի ձեռանէ դորա և հարկանէք զգլուխ դորա. զի երեւեսցի եթէ անձամբ զանձինս հրաժարեցուցանէք 'ի գլխոյդ յայդմանէ, որ պսակելոց է զամենայն սուրբս յանթառամ պսակ արքայութեանն։

"Դարձեալ, ասէ, մատուցին նմա գինի ընդ լեղի խառնեալ. ճաշակեաց և ոչ կամէր ըմպել"։ Եւ այս եւս առաւել մեծի սիրոյն երեւի տեղի. այգին զոր փոխեաց յԵգիպտոսէ, բազում այգիս խլեաց 'ի Քանան և զնոսա տնկեաց, պարսպեաց օրինօք և ամրացոյց մարգարէիւք. կացոյց նմա թագաւորս վերակացուս, և առաջնորդս քահանայս և քահանայապետս, ուխտս և պատարագս, նուէրս աստուածայինս 'ի տուէ և 'ի գիշերի։ Եկն տէր այգւոյն 'ի ժամ պտղոյն ընդունել 'ի նոցանէ զճաշակս վայելչութեան գինւոյն. գինին զբնութիւն անուշութեանն ոչ փոխեաց, քանզի աստուածային աջոյն էր տնկեալ զայգին։ Լեղի 'ի գինի անդր խառնեալ տային ըմպել։ Լեղին կատարեալ դառնութիւն է. այս բերք ոչ աստուածային տնկոյն են, այլ գիւտք չարասէր մարդոց և նախանձոտ կամաց, որք զանխառն զանգանել կամին և 'ի սուրբ բնութիւն գործոյն Աստուծոյ զիւրեանց դառնութիւն մեղացն խառնել կամեցան։ Զայս աստուածութիւնն քեզ յանձն ոչ առնու. քանզի ոչ եթէ սակաւ մի խառնեցին զլեղին, այլ այնչափ թանձրացուցին, զոր և մարգարէն Դաւիթ յառաջագոյն ասէր ողբալով. "Ետուն 'ի կերակուր իմ լեղի, և 'ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ"։ Որովհետեւ առատ էք 'ի չարութիւնս և կապեալք 'ի բարեգործութենէ, զայդ կամս ձեր ոչ կատարեցից։ "Ճաշակեաց և ոչ կամէր ըմպել"։ Քանզի նոքա այնպէս կամէին եթէ հնար ինչ իցէ՝ յոյժ կերիցէ զլեղին, և առաւել յոյժ արբցէ զքացախն։ Եւ եթէ ոք ասիցէ, ուստի գիտես զկամս աներեւոյթս, մանաւանդ և զանգրեալսն, 'ի պատրաստութենէ անտի իմացիր. ո՞ւմ արդեօք եր-

թեք 'ի մարդկանէ գտաւ 'ի ժամ մահուն լեղի և քացախ 'ի մխիթարութիւն. բայց միայն այսոցիկ՝ որոց առաջնորդ և վարդապետ էր հայր նոցա սատանայ. որք ընդ նմին իսկ ժառանգելոց են զպատրաստեալ տեղին երկոցունց կողմանցն։

Արդ Բարաբբայն զոր արդարադատոյն համարեցան, չնորհեցաւ նոցա արձակել 'ի դատաստանէն, և այլ ևս չարս երկուս աւազակս, որոց էին գործք խորեանց չարութեամբ և դժնդակագոյնք քան զամենայն մահապարտաց, որ յայնմ ժամանակի պահէին 'ի բանտի դատաւորին, և 'ի նմին աւուր դիպեցան 'ի խաչելութեանն Քրիստոսի, մի ընդ աջմէ և միւսն ընդ ահեկէ նորա. զի մի և մի բան 'ի կանխագիր մարգարէութենէ անտի ոչ վրիպեսցի։

Այլ երթայքն զհետ նորա բազմութիւն արանց և կանանց, քահանայից և քահանայապետաց մեկնիչք օրինացն և ծերք ժողովրդեանն, ականատես լինել փութային մահու անարգանաց կենարարին իւրեանց. և յոյժ խնդութիւն էր 'ի միտսին մոլորելոցն, եթէ 'ի մէջ աւազակացն խաչեսցի, հայհոյեալ յերկրէ և դատապարտեալ յերկնից։ Վասնզի ունէին մարդիկ բարս բընութեան. յորժամ տեսանեն զոք 'ի մեծի թշուառութեան և 'ի հարուածս չարչարանաց և 'ի ձաղանս անարգութեան մահու, կարծեն ամբարիշտ մտօքն՝ իբրեւ յԱստուծոյ զպատիժ պատուհասին եկեալ հասեալ 'ի վերայ նորա, տրտմեալ բարկանան, և հնարին յանձանց ևս զառնութենէ յաւելուլ 'ի տանջանս պատժուորացն։ Այլ այս անխորհրդածութիւնս ծնունդ է կոյր մտաց, որ միայն զառժամայն խնամոյ և զառաջիկայսն ոչ տեսանէ, որք անկեալք 'ի ճշմարտութենէ և վրիպեալք 'ի հանդերձեալ կենացն. որպէս եղեւ իսկ 'ի կենսագիւտ տեղւոջն՝ ընտրութիւնք երկոցունց կողմանցն, ումանց 'ի վայր անկեալ, և ումանց 'ի վեր ելանել։ Վասնզի մինչ դեռ փոյթք էին 'ի հայհոյութիւն, և սրատեսիլք 'ի ձաղանս անարգանաց նորա, կամէին լսել և զնորին զթշնամանութիւնս 'ի բերանոյ աւազակաց։ Վասնզի մարդ յորժամ դառնացեալ 'ի վիշտս տանջանաց և հատեալ է յոյս կենաց նորա, մերձեալ է 'ի դուռն անդարձ մահու, մանաւանդ յայնպիսի մա-

հու՝ յորում աւազակքն կային, ոչ ինչ պատկանի այնպիսին թշնամանել զգաստող իւր, նա և յերկինս ձգել հայհոյութիւն բանից:

Բայց արդ դու եկ յարեաց 'ի լուսաւոր տեղլն և մերձեցիր 'ի փրկական խաչն տէրունական, և տես անդ զնոր և զչքնաղ գործն՝ որ գործեցան: Երիս փայտս կանգնեալ և երիս մարդս խաչեալ՝ հասարակ կան 'ի միում պատժի, ոչ ոք քան զոք 'ի դիւրագոյն տեղւոջ, այլ մի քան զմի 'ի դժնդակագոյն հարուածս: Յայսմ վայրի յոյժ զարմացեալ հիանամ, թէ ուստի՞ գտաւ աւազակն ջատագով Ճշմարտութեանն. յայտնի ականատես և ոչ ինչ զարմանալիս. յառաջագոյն ոչ ինչ գիտէր զՃշմարիտ վարդապետութիւն Տեառն. յիւրոց գործոցն՝ ունայն էր յարդար վաստակոց. իմաստութիւն երկնային հեռի էր 'ի նմանէ, քանզի ծնունդ էր մեղաց և սնունդ դառնութեան. այր մի որ 'ի մանկութենէ իւրմէ իբրեւ մոլի 'ի վայր անկեալ 'ի քաղաքէ, հեռացեալ 'ի մարդկանէ, ատեցեալ զլոյս տունջեան, և սիրեցեալ զխաւար գիշերոյ, կցորդ էր քաղաքաւեր գողոց, և հաղորդ յափշտակող աւազակաց. խորհուրդք նենգաւորք և գործք վատթարք, բարեկամ անարգաց և սիրելի լկտեաց, ատելի զգաստից և զազրալի ամենայն բարեսէր մարդկան. որսացեալ 'ի դատաւորէն ըմբռնեցաւ ըստ բազում յանցանաց իւրոց. և ըստ բազում յանցանաց իւրոց կայր 'ի պատիժս մահուն: Եւ արդ զի՞նչ խօսի. յընկերն սաստելով և զանձն իւր դատապարտելով՝ յանդիմանիչ քահանայիցն գտանի, եւս առաւել քահանայապետիցն: Ինձ թուի՝ եթէ զգաստաւորն յոյժ գտրաւէ, միանգամայն և զատեանն կշտամբէ և զիմաստուն աթոռակիցս դատաւորին յամօթ առնէ:

Բայց ընկեր նորա յանկակից էր հայհոյող ժողովրդեանն, և սկսաւ հենգնելով ասել. Եթէ արդարեւ դու ես Քրիստոսն, փրկեա զանձն քո և զմեզ ընդ քեզ: Իսկ միւսն 'ի ձայն բարձր լու 'ի լու ամենայն ժողովրդեանն կագել սկսաւ ընդ ընկերին և ասել. ՅԱստուծոյ ոչ երկնչիս դու, նա և 'ի մարդկանէ արժան էր քեզ ամաչել. մեք ըստ յետս ընդդէմ գնացից մերոց ձախողակի զհատուցումն ընկալաք, իսկ սա ընդէ՞ր. զի սորա չար ինչ ոչ էր գործեալ, և երբեք ումեք 'ի մարդկանէ

չիք մեղուցեալ։ Զայս նորա ասելով, ամենայն բազմութիւն դատողացն ամաչեցեալ լինէր։ Իսկ զղջացեալ անդրէն զբանս իւր աւազակն ասէ. Տէր Յիսուս, յիշեա զիս ՚ի գալստեան արքայութեան քո։ Զանուն ոչ գիտեմ զանձն զայսմիկ, և աւազակ ամաչեմ ասել. զի վերագոյն գտանի ոչ միայն քան զբարեգործ ոք ՚ի մարդկանէ, այլ և քան զյոյժ խրատեալս յօրինաց և ՚ի մարգարէից։

Այսօր է քեզ այդ, ով յափշտակող. ուր կաս, զո՞ տեսանես, և ընդ ո՞ւմ խօսիս. ՚ի խաչի տեսանես խաչեցեալ, և խօսիս ընդ Տեառն Յիսուսի միանգամայն և ընդ արքայի որդւոյ՝ որ իշխէ արքայութեան և բաշխէ պարգեւս ամենեցուն։ Իսկ արդ զինչ տեսեր, միթէ կակղացո՞յց զփայտ խաչին իւրոյ առաւել քան ըզքեզ. ո՞չ տեսանես աւազակ փայտ չորեքկուսի ՚ի վերայ վիմի կանգնեալ, զոտս և զձեռս երկաթով բեւեռեալ, անլոյծ կապանօք պնդեալ. տիգաւորք շուրջ պատեալ, քահանայք հայհոյեն, քահանայապետք դատովեն, ծերք լկտութեամբ այպն առնեն, փարիսեցիք լկտութեամբ ոտնհարեն. բազմութիւն ժողովրդեանն ՚ի ձայն բարձր աղաղակեն ասելով. Զայլս ապրեցոյց, զանձն իւր ոչ կարէ փրկել։ Դու ինքնին իսկ տեսանես եղէգն ձաղանաց և քացախ լեղի խառնեալ ՚ի կերակուր և յըմպելի, զհանդերձսն մերկացեալ, զպատմուճանն վիճակեալ, մերկ զփայտէ կախեալ, գլուխ ՚ի փըշոց պսակեալ, երեսք թքալիցք, և ծնօտք ապտակեալք. և դու ասես՝ յիշեա զիս ՚ի գալստեան արքայութեան քում։

Այսօր արդեօք ծագեաց այնպիսի լոյս յոգիս աւազակին, յոյժ զարմացեալ եմ և առաւել քան զյոյժ սքանչացեալ. ՚ի Նազարեթ ոչ երթեալ, ծննդեանն չէր տեղեակ, ՚ի Կանա գալիլեացւոցն սորա չէր երթեալ, ՚ի հարսանիսն զսա ոչ ոք կոչեաց, ՚ի թակոյկաբուղխ գինւոյն սորա չէր արբեալ, ՚ի նկանակածին հացէն սորա չէր կերեալ, զկաւածեփ կոյրն ոչ էր տեսեալ, ՚ի շամրտացի կնոջէն սորա չէր աշակերտեալ, ըզմահճիճս անդամալուծին սորա չէր տեսեալ, յունայն գերեզմանն Ղազարու սորա չէր երթեալ, զբողոք դիւացն յերկիրն գերգեսացւոց չէր լուեալ. և զի՞ մի մի

թուեցից յանուանէ. որպէս ունայն էր անձն իւր 'ի բարեգործութենէ, սոյնպէս անտես և անլուր էր յամենայն նշանագործութեանց Տեառն մերոյ: Արդ փոխանակ այսր ամենայնի փառաւորութեանց տեսանէր այր մի լի անարգանօք 'ի մահու խաչին, և խոստովանէր զնա տէր Յիսուս, որդի Աստուծոյ, և իշխան արքայութեան փառաց Հօրն. աներկբայ հաւատ, անթերահաւատ խնդիրք: Վասն որոյ և լուէ անսուտ պատասխանի. Արդարեւ ասեմ քեզ, այսօր ընդ իս իցես 'ի դրախտին: Կարճառօտ խնդիրք և համառօտ պատասխանի. բանիւ հաւատոց, բանին բան պատասխանի լսէր. զինչ կայր իւր 'ի ժամու անդ՝ բոլոր զինքն եհեղ առաջի Տեառն ամենայնի իբրեւ զմարդ և զաղքատ, բայց միայն մեծացեալ հաւատովքն: Իսկ Տէր ոչ իբրեւ զմարդ և ոչ իբրեւ զաղքատ և իբրեւ զնախանձոտ, և ոչ իբրեւ զկիսապարգեւ, այլ իբրեւ զբարերար առատ մեծատուն անչարակնածութեամբ շնորհէ ոչ զմասն պարգեւին, այլ զամենայն զբուն զհայրենի տեղին. ոչ ուր ծառն մահու, այլ ուր միայն ծառն կենաց. ոչ ուր անցանկ տեղին էր՝ ուր օձն սողեցաւ եմուտ, այլ զոր ինքն Աստուած պարսպեաց 'ի սուր տէգ նիզակի իւրոյ հրեղէն շուրջանակաւ զոր քերոբէն ինքնին պահէր. զորոյ ըզցանկն ոչ ոք կարաց յարդարոցն խրամատել, ոչ Աբրահամ, ոչ Իսահակ, ոչ Յակովբ, ոչ Մովսէս ինքն օրինօքն, և ոչ մարգարէքն քարոզութեամբքն. ոչ քահանայք պատարագօք և ոչ ղեւտացիք 'ի պաշտաման իւրեանց. ոչ ուխտաւորք յուխտաւորաց, ոչ հարք ճշմարիտք և ոչ թագաւորք արդարք, ոչ գունդք մարտիրոսաց և ոչ վիճակք Առաքելոց. մանաւանդ թէ եւս վերագոյն ասացից, ոչ հրեշտակք, ոչ հրեշտակապետք, ոչ աթոռք, ոչ տէրութիւնք, ոչ պետութիւնք և ոչ իշխանութիւնք զդուռն դրախտին բանալ ոչ կարացին, բայց միայն աւազակս այս:

Յիրաւի ուրեմն ասացաւ թէ աւազակն եբաց ըզդուռն դրախտին. քանզի 'ի ժամուն յայնմիկ ամենայն արարածք 'ի սուգ տրտմութեան էին. արեգակն թաքուցեալ, լուսին խաւարեալ, աստեղք ծածկեալ, տիւ հեռացեալ և գիշեր մերձեալ, վերինք զարմացեալք և ներքինք յիմարեալք, աշակերտք փախուցեալք և ծա-

նօթք հեռացեալք, բարեկամք չարախօսք և մերձաւորք թշնամանողք. ամենեցուն թողեալ՝ ամենեւին յետս կացեալք, միայն սա մերձեալ 'ի խոստովանել։ Ոչ զառ 'ի ծննդենէն ակնդէտ առնէր, և ոչ 'ի մասնաւոր նշանագործութենէ բուռն հարկանէր. այլ և վերանայր ըստ ախտական տեսակս և յաներեւոյթ արքայութիւնն հասանէր և ասէր. Յիշեա զիս յանչարչարելի արքայութեան 'ի քում գալստեանն։

Որ իցէ այն գաւառ, և կամ ուստի՞ գայցէ, և կամ վասն որո՞յ իրաց գայ. և զիա՞րդ գիտացեր դու, ո՛վ աւազակ, պատմեա մեզ. որովհետեւ ընկեր եղեր Մովսէսի, դու աւաղիկ քան զՄովսէս 'ի վեր ամբարձար և զանմարմին տեսիլ տեսեր. թուի ինձ թէ Հոգին սուրբ հանդիպեցաւ քեզ, և զՀայրն բոլորեցունց տեսեր դու. և զոր մեծն Պաւղոս ոչ կարաց թարգմանել մեզ ըզպատրաստեալ պարգեւսն, դու յառաջագոյն մտեր և ժառանգեցեր զայն։

Այո, ասէ, այդպէս է ճշմարիտ. քանզի Տէր ինքնին ինձ առաջնորդեաց, և խոստացեալ եւս է. ոչ միայն յղեաց զիս 'ի դրախտն թէ օձն հանիցէ զիս անտի միւսանգամ։ Վասն այսորիկ ընդ իս իցես, ասէ, 'ի ներքս 'ի դրախտին։ Ընդ իմն առելով, ոչ ժամանակեան և ոչ անժամանակեան, այլ բնաւ հանապազորդեան. միշտ Աստուած ինքն ընդ իւր, միշտ հաւատացեալ՝ ընդ նմա Աստուած։

Վասն այսորիկ եկն 'ի չարչարանս, զի չարչարեցելոյն օգնական լիցի։ Առաջին պտուղն առաջին ծառոյն ըզմարդն առաջին սպան. իսկ առաջին պտուղ խաչին զառաջնորդն մահու յանձին իւրում սպան. և 'ի մեռանել մահուն՝ առաջին պտուղ աւազակն կթեցաւ 'ի զօրութենէ խաչին։ Ո՛վ չարադեւ քահանայք, և ո՞յլ եւս այպանիցէք զխաչդ, և կամ զխաչեալդ ծաղրիցէք. մինչ կամիցիք ընդ անօրէնան սպանանել զդա, յանօրինէ անտի օրինաւորքդ կշտամբեալ յանդիմանեցայք, և անօրէնն քան զօրինաւորսդ գեր 'ի վերոյ գտաւ ոչ միայն քան զձեզ, այլ և քան զօրէնսդ ձեր գլխովին։

Նա ընդէ՞ր արդեօք այսպէս. քանզի ոչ եթէ օրէնքն տկար ինչ էին, այլ դուք տկարացուցանէք զնոսա չպահելով զօրէնսն, վասն զի ոչ հաւատովք էիք։ Իսկ

դա հաւատովք ետես զօրէնսն եւ զօրէնսդիրն: Օրէնս ետես, զի կարօտեալ էին հաւատոց եւ ոչ գտանէին. զօրէնսդիրն ետես, զի եկն կատարել զօրէնսն եւ ոչ պակասեցուցանել. միանգամայն յառաջ մատեաւ, պատուեաց զօրէնսն հաւատովքն, քանզի խոստովանեաց 'ի տուիչ օրինացն. մեծարեաց եւ զօրէնսդիրն, զի ասաց նմա՝ Աստուած եւ որդի Աստուծոյ, բաշխիչ պարգեւաց եւ տէր արքայութեան: Նաեւ սկիզբն հաւատոց եւ կատարիչ օրինաց, որդի Աբրահամու եւ սիրելի մարգարէից, աշակերտակից առաքելոց, առաջնորդ մարտիրոսաց, ժառանգորդ արքայութեանն, դռնապան դրախտին կենաց, միանգամայն սիրիչ եւ սիրելի Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ:

Արդ յոյժ սիրելի է ինձ բանս Առաքելոյ զոր ասէ. "Ուր առաւել եղեն մեղքն, առաւել եղեն շնորհքն Աստուծոյ": Արդ զայս լսելով, եղբարք, ամենեցուն մեր միտք ճշմարիտ գիտելով ընթանան առ ազգն տեսական, 'ի զաւակն արդարոց, յերկիրն պարգեւաց՝ յանձկալի քաղաքն Երուսաղէմ, 'ի հրաշակերտ տաճարն Աստուծոյ. ուր օրէնքն աստուածատուրք եւ մարգարէքն հոգեկիրք, արդարք շնորհալիցք, հարքն կատարեալք եւ որդիք խրատեալք. ուր նշանք երկնայինք եւ արուեստք երկրայինք, ուր յայտնութիւնք հրեշտակաց եւ ընդունելութիւն պատարագաց 'ի ձեռն կենդանի Հոգւոյն սրբոյ, որով Աստուած ճանաչի ճշմարտապէս այնոցիկ՝ որոց ոգիքն սրբութեամբ համեմատեալ են ընդ Աստուծոյ: Արդ վասն այսր ամենայնի յոյժ սիրեմ զաշխարհն, եւ յաշխարհի անդ զգաւառն, եւ 'ի գաւառի անդ զքաղաքն ընտրեալ, եւ 'ի քաղաքին զբարձրացեալ տեղին Գողգոթա, եւ 'ի տեղւոջ անդ զեւս բարձրացեալ վէմն, եւ 'ի վերայ վիմին զաշխարհաձեւ խաչն, եւ 'ի վերայ խաչին զխաչեցեալն, որ կայր առաջի երկնաւոր տեսողացն, եւ էր գեր 'ի վերոյ ոչ միայն քան զբարձրութիւնս լերանց, այլ եւ քան զերկինս. նա եւս քան զերկինս երկնից բարձրացեալ:

Այս զի այսպէս է ճշմարիտ, հայեաց 'ի տեղին, եւ տես ճշմարիտ զեղելութիւն գործոցն որ անդ կատարեցան առանց երկբայութեան: Քանզի մերկացուցին զտէրն արարածոց, զայն որ զգեցոյց զարգս լուսոյ զեր-

կինս, և պսակեաց զերկիր անուշահոտ ծաղկօք։ Եւ վիճակեցին զպատմուճանն զայն՝ որ առանց կշռոյ և վիճակի ետ որդւոց մարդկան զգեստ զարդուց 'ի ծովէ և 'ի ցամաքէ։ Եւ ոչ արբուցին ջուր 'ի ծարաւու այնմ որ մեծ բղխմամբ ամպոց բազմահոսան յորձանօք ոռոգանէր զամենայն երեսս երկրի. մինչեւ ասել նմա 'ի չարչարանսն, ծարաւի եմ ես։ Հաստիչն աղբերաց ծարաւի եմ ասէ. տէրն Ովկիանոսի և տուիչն անձրեւաց, անկարօտն յամենայնի և լցուցիչն կարօտելոյ՝ ծարաւի եմ ասէր։ Նա որ 'ի սկզբան լինելութեանն այնչափ ջրայեղց գործեաց զարարածս, մինչեւ սուրբ Հոգին շրջէր 'ի վերայ ջուրց և ընդ վիհս մեծամեծս 'ի վայր հոսեցոյց զանչափ խորութիւն ծովուց, և Տէրն այսր ամենայնի 'ի գութ սիրոյ առ իւրսն եկեալ, և յիւրոցն մեծապէս չարչարեալ և չարչարանս ընկալեալ, մինչեւ բաժակի միոյ ջրոյ կարօտեալ, ասելով ծարաւի եմ, և ոչ ոք տայր նմա ըմպել։

Ո՛ սիրտք դառնացեալք և միտք խարխարեալք և անձինք յիմարեալք. զի եթէ գոյր յումեք 'ի մեզ այսօր գութ երկնաւոր սիրոյն և տապ նորին անձկոյ, ասէաք և մեք ընդ նմա՝ ծարաւի եմք, լինելով չարչարակից մեծի տանջանաց նորա։ Եւ ոչ զի արբցուք գինի 'ի մխիթարութիւն սգոյ, այլ զի յօժարութեամբ և չարչարանօք զմահ և զձաղանս փրկչին յանձն առեալ՝ քաջութեամբ 'ի հանդէս նահատակութեան համբերութեամբ ընթասցուք, և զախոյեանն կանգնեալ՝ վանեսցուք զթշնամին։ Այլ և կարօտեսցուք բաժակի միոյ ջրոյ առ 'ի մխիթարութիւն ծարաւոյ։ Եւ և արժանաւոր սիրողաց Քրիստոսի պարտ է ընդ սուրբ մարգարէին ձայնակից լինել. "Առնո՛յր ոք, ասէ, և առնէր զգլուխ իմ շտեմարանս ջուրց բազմաց և զաչս իմ աղբիւր յորդ արտասուաց"։ Եւ զի՞նչ առնէիր այդու ամենայնիւ, ով մարգարէ։ "Ի տուէ և 'ի գիշերի լայի զԻսրայէլ"։ Արդ որ յահագին անապատին բազմածով վտակս բղխեաց յանջրդի վիմէն, նոյն ինքն առանց նոցունց աշխատութեան զհետ երթայր ժողովրդեանն՝ արբուցանել զազգն ընտրեալ։ Արդ նոյն վէմ վասն նոցուն և աստ մարդացեալ՝ ծարաւի եմ ես, ասէր։ Եւ ոչ միայն զի չտան ջուր, այլ և փոխանակ ջրոյ՝ քացախ ընդ լեղի խառնեալ մատուցանէին նմա։

Եւ կամ ո՞ր 'ի մարդկանէ իցէ սիրտ քարեղէն կամ պղնձի մարմին՝ զայս լսելով հանդարտել արտասուաց։ Ո՜վ եթէ յանջատման սիրելեաց մերոց ցտիմք և կոծիմք, ճչեմք դառնացեալ սրտիւք, այրիմք խորովիմք 'ի գութ սիրելեաց մերոց, և ըստ մասանց մարմնոյն՝ ողջք դառնութեան ձայնս արկանեմք։ Եւ զայս առնելով ոչ զարժանն կատարեմք, քանզի զպարտսն հատուցանեմք. ոչ զի ինքն է պարտական, այլ զի զմեր պարտիսն իւրովին հատուցէ. և ոչ զի 'ի պարտեացն ապրել աղաչէր, այլ յոյժ ցամաքեալ և պասքեալ՝ ջուր խնդրէր սակաւիկ մի, լուանալ զերաշտացեալ քիմսն։ Ծարաւի եմ ասէր. յականէ զոք ոչ կարդայր, զանուն ուրուք առանձին ոչ ասէր. զաղերսն 'ի մեզ անդր արկանէր, զկարօտութիւն ամենեցուն յայտնէր, զանողորմածութիւնն յամենեսեան տեսանէր։

Քանզի ճմլի սիրտս, հեղձնուն ոգիքս, փղձկին մտաքս, և զխանդաղատանսն Մարիամու ոչ կարեմ ասել։ Քանզի մինչ դեռ կայր Տէրն 'ի շտապ տագնապին, մօտ առ նմա կային, ասէ, մայր նորա և քոյր մօր նորա Մարիամ Մագդաղենացի և այլ ևս կանայք՝ որ յառաջագոյն հաւատացեալք էին գալստեանն որդւոյն Աստուծոյ. աչօք իւրեանց տեսանէին զմեծ չարչարանսն, և ականջօք իւրեանց լսէին զհայհոյութիւնսն, մանաւանդ իբրև լուան 'ի բերանոյ նորա՝ թէ ծարաւի եմ։ Եւ դուք ձեզէն գիտէք զբարս բնութեան կանանց՝ որչափ խանդաղատագոյնք են յողորմածութիւն, և մանաւանդ առ սիրելի ծնունդս իւրեանց։ Իսկ արդ զինչ կարծելի է 'ի ժամուն յայնմիկ վասն կանանցն այնոցիկ. զի թէ և էր հնար գտեալ նոցա, ոչ միայն ամանով մատուցանէին նմա ջուր, այլ և յորդագնաց վտակս առ խաչին գործէին։ Եւ իբրև այսպէս ոչ էր 'ի ձեռս նոցա, զկրծից հարկանէին, զսիրտն կոծէին, 'ի մտոն ողբային, և արտասուս յորդագոյնս բղխէին, վայ անձանց կարդային, և զմահ քան զկեանս ընտրէին. մինչ դեռ կային յաշխարհի, հարեալ դիականց նմանէին։ Վասն այսր ամենայնի յառաջագոյն պատասխանի լուեալ 'ի Տեառնէ՝ զոր ողբալով ասէր 'ի վերայ ամենայն ազգին. Դստերք Երուսաղեմի, մի՛ լայք 'ի վերայ իմ, այլ լացէք 'ի վերայ անձանց և ուստերաց և դստերաց ձերոց.

զի եկեսցեն աւուրք՝ յորս ասիցեն, Երանի ամլոց և ընդերաց այնոցիկ՝ որ ոչ ծնան, և ստեանցն՝ որ ոչ սնուցին. յայնմ ժամանակի սկսանիցեն ասել լերանց՝ Թէ անկերուք 'ի վերայ մեր, և բլրոց՝ Թէ ծածկեցէք զմեզ. զի եթէ ընդ փայտ դալար զայս առարին, իսկ ընդ չորն զինչ գործեսցեն։

Յայնժամ 'ի տեղւոջն ստուգաբանի կանխասացութիւն մարգարէին Զաքարիայ, որդւոյ Բարաքեայ, և նմանի մահ որդւոյն Ամիքեայ՝ մահու որդւոյն Աստուծոյ։ Քանզի Ովսիաս այս՝ այր արդար էր և թագաւոր Իսրայէլի. առաջնորդէր ժողովրդեանն 'ի ճանապարհս աստուածպաշտութեան, և երբեք ումեք մարդկան ինչ ոչ մեղանչէր. այլ յորդորելով բովանդակեաց զսիրտս ամենայն մարդոյ՝ ածել 'ի մի երկրպագութիւն Աստուծոյ։ Այլ մինչ դեռ խաղաղասէր վարուք կատարէր զկեանս իւր, եկն ել 'ի վերայ նորա Փարաւոն Կաղ յերկրէն Եգիպտացւոց, եդ ընդ նմա պատերազմ և սպան զնա յերկրին Հրէաստանի։ Այլ քանզի արդարութեամբ էր թագաւորութիւնն Յովսիայ, և միամօր առ 'ի ծննդենէ, և զուր մեռեալ 'ի պատերազմի, խանդաղատէ մարգարէն 'ի մահ թագաւորին. և յորդորեալ զամենայն ցեղն, ածէ 'ի կոծ լալեաց. և նմանեցուցանէ զաստկութիւն կոծոյն կոտորելոց նռնենեաց 'ի դաշտին։ Զուր ինձ եթէ ցանկալի և վայելուչ է ծաղիկ նռնենեաց 'ի տեսիլ աչաց մարդկան. և 'ի շնչել խորշակի, դիւրահաս վայրաբեր լինի առ հասարակ. և այն որ էր յառաջ պայծառագոյն քան զամենայն ծաղիկս, յետոյ տրտում և տխուր լինի քան զամենայն ծառս փշաբերս։ Նման որոյ և մարգարէն ծաղկի և պսակի նմանեցուցանէ զարդար թագաւորն. ունայն և թափուր մնաց ժողովուրդն իբրեւ ծառս մրգաթափս որ անպիտան երեւին 'ի տեսիլ մարդկան։

Արդ չորիւք թուական ցեղիւքս, զոր եած մարգարէն 'ի կոծ թագաւորին, զարս առանձին և զկանայս առանձինն, իբրեւ զօգի և զմարմին բոլոր բովանդակեաց 'ի սուգ թագաւորին. որպէս և Տէր մեր ասելով ցկանայսն՝ դստերք Երուսաղէմի. և ցուցանէ նոցա թէ կոծելոց են 'ի վերայ անձանց և 'ի վերայ ամենայն Իսրայէլի. ոչ միայն արք և կանայք առանձինն՝ որպէս տան Դաւ-

թի և երից ընկերաց իւրոց, այլ ամենայն ազգք և ազինք՝ ոչ միայն մարդկան, այլ և վերին զօրութեանց՝ որպէս երկնի և երկնաւորաց, և են թուով, և 'ի ձեռն չորից կոծին ամենայնքս: Նոյն ընդէ՞ր արդեօք լինիցի այս. վասն զի ամենեքեան գտան յանողորմածութեան. Հրեայք 'ի զուր պարտաւորեցին և մատնեցին: Որդ որովհետեւ երկոքեան կողմանքն միաբանեցան 'ի չարութիւնս, 'ի ձեռն չորից տարերցս չորիւք մասամբք՝ չորք անկիւնք յերկրիս յահ մեծ և յահագին կոծ առ հասարակ ամենայն երկիր կոծեսցին, արք առանձին և կանայք առանձինն. Իսրայէլ կոծեսցի, զի անջատեցաւ 'ի ճշմարիտն Աստուծոյ. հեթանոսք կոծին, զի անջատին 'ի սուտ աստուածոյն իւրեանց. երկոքեան կողմանքն մտանեն 'ի սուգ և 'ի կոծ սաստիկ. և դառնայ կոծն ոմանց յանգիւտ կորուստ, և ոմանց 'ի կորստենէ յանանց լոյսն: Յայսմ վայրի կատարի ճշմարտութեամբ բան մարգարէին որ ասէ. "Կոծեսցին ամենայն ազինք առանձինն": Նա և անդէն առ խաչին Տեառն ոչ փոքր և դուզնաքեայ էր կոծն, այլ յոյժ մեծ և ահագին, որ զանցուցանէր զամենայն կոծով:

Ի նմին ժամանակի, ասէ, բարձրացաւ Տէր մեր 'ի վերայ խաչին. արեգակն խաւարեցաւ, վարագոյր տաճարին ցելաւ մինչեւ 'ի վայր, երկիր շարժեցաւ, վէմք պատառեցան, գերեզմանք բացան և բազումք 'ի մեռելոց յարեան, և յետ յարութեանն Տեառն մտին 'ի քաղաքն սուրբ և երեւեցան բազմաց:

Նոյն ընդէ՞ր արդեօք թագեաւ արեգակն և կորեաւ լոյս գեղեցիկ տունջեանն, և թանձրացեալ տարրացաւ խաւարն 'ի վերայ երկրի: Յայտնի է, և կարեմք ոչ թագուցանել զճշմարտութիւնն. քանզի զհանդերձսն զերծին առին յիւրեանս, և զնա մերկ պրկեալ բեւեռեցին 'ի փայտին, ոչ կարացին վերին գունդքն հայել 'ի մերկութիւն Տեառն երկնի և երկրի: Սերովբէք որ յառաջ քան զխաչելութիւնն շուրջ կային զաստուածութեամբն նորա, չկարացեալ հայել յահագին փառս նորա, այլ երկուք թեւովք ծածկէին զերեսս իւրեանց, և երկուք թեւօքն ծածկէին զոտս իւրեանց, և երկուք թեւօքն համբարձեալք և վերաբերեալք կախէին զան-

պատուելի զօրութենէ նորա, և հրեղէն բերանովք զան-
հատ սուրբ սուրբ սուրբն ասելով անյագ ձայնիւքն զա-
րարչական զօրութիւնն փառաւորէին։ Այնպէս հրեշ-
տակք և հրեշտակապետք և ամենայն դասք զուարթ-
նոցն կան յահի և 'ի դողման. ոչ կարէին հայել և տե-
սանել զինքնագոյ բնութիւնն, տեղի տուեալ խորշէին և
թագչէին յանմատոյց ճառագայթից յինքնածագ բնա-
կան լուսոյն. ոչ միայն պատուելով զարարչական զօրու-
թիւնն, այլ և գիտելով զիւրեանց նեղութիւնն ոչ
ժպրհէին հայել յանգգնաբար և մերձենալ և մօտել,
զի մի տապականեալ ծախիցին յանմատոյց զօրութենէն։
Եւ այս է խնայութիւն արարչին ամենեցուն, պահել
զարարածս անվնաս յիւրաքանչիւր բնութեանն, և ա-
ռաւել 'ի ժամուն յայնմիկ՝ յորում ահագին մահ որ-
դւոյն Աստուծոյ երևէր վերնոց և ներքնոց, տարերքս
սպասաւոր լինէին 'ի պատիւ խաչելոյն և 'ի ծածկոյթ
զուարթնոց, որոց ոչ էին կամք հայել և տեսանել զա-
նարգութիւն մահուն նորա։ Միանգամայն և յամօթ
առնելով զանհանճար ժողովուրդն՝ որ առանց ամօթոյ
պատկառանաց հայէին 'ի մերկութիւն որդւոյն Աստու-
ծոյ, մածեալ թանձրացեալ խաւարն 'ի վերայ լրբենի դի-
մաց նոցա, զի չէին արժանի հայել և տեսանել զկեանս
իւրեանց 'ի վերայ խաչին։

Արդ զայս օրինակ յառաջագոյն տեսեալ Մովսէս հո-
գւովն Աստուծոյ՝ կանգնեաց յանապատի անդ ատեան
դատաստանի. քանզի 'ի վերայ փրկական բարեգործու-
թեանց Աստուծոյ առ ժողովուրդն՝ գտան նոքա ոչ գո-
հացողք, այլ հայհոյողք և տրտնջողք 'ի Մովսէս և
յԱստուած։ Բարկացուցին և դառնացուցին զսուրբ հո-
գին Աստուծոյ, և առաքեաց 'ի վերայ նոցա Աստուած
օձս մահաբերս. առանց խնայելոյ հարկանէին և սպա-
նանէին 'ի ժողովրդենէն զբազումս։ Իսկ Աստուծոյ ըստ
իւրում բարերարութեանն յիշեցեալ զուխտն որ էր
ընդ սիրելիս իւր, գթացեալ ողորմի հարելոցն և մաշ-
կատելոցն յօձից սատակմանէ։ Հրամայէ Մովսէսի առ-
նել օձ նիւթական, և բարձրացուցանել 'ի մէջ ժողո-
վրդեանն. զի որ կարասցէ հայել և տեսանել զօձն
Մովսէսի, ապրել կարասցէ 'ի դառն թիւնից սպանող
օձիցն։ Եւ այս է յոյժ սքանչելի և իմացական տեսու-

թիւնք. ոճ հրամայէ առնել Մովսեսի, և զնիւթոյն անուն 'ի մէջ ոչ բերէ. և ոչ մի ինչ՝ որ անկանի ընդ կանաւ ճարտարաց, և ոչ յայլոց ձեռակերտից արուեստից՝ որ կազմի առանց հրոյ փորձութեան. այլ միայն հրաման տուեալ, Արա քեզ, ասէ, դու ոճ. քեզ քեզէն արա, ասէ: Եւ յայս հայեցեալ Մովսէսի յոյժ իմաստնանայ. տեսանէ զծածկութիւն իրացն հանդերձելոց, առնէ ոճ պղնձի: Որպէս ինձ երևի փոքր 'ի շատէ, ընդ աղօտ յայտնութիւն իմաստութեանն զանսպարտելի զշնորհսըն Աստուծոյ պղնձոյ նմանեցոյց Մովսէս, զի անմընաս պահեսցին այնոքիկ՝ որոց ստացեալ իցէ հաւատովքն ճշմարտութեան զնա: Բայց զձեւ պղնձի օձին ոչ յայլ օրինակ բաղկացոյց, այլ 'ի թիւնաւորացն և 'ի սպանողացն:

Արդ տես զընտրութիւն որոշմանն. հարկանէին ամենեքեան, մեռանէին ոչ ամենեքեան. իբրու յայտ է ընտրութիւնք դատաստանին: Եւ քանզի յորկորստութենէ մտին մեղք յաշխարհ միջնորդաւ առաջին օձին, նոյն ցանկութիւն կերակրոց շարժէր զմարմինս անյագ ժողովրդեանն, յորմէ և գտաւ իսկ տրտունջ հայհոյութեան 'ի բերանս նոցա. հարկանէին և խածանէին յօձիցն՝ որ մահս 'ի վերայ հասուցանէր: Քանզի ոչ ինչ այլ գոյ նման ցանկութեան, որպէս զօձի բնութիւն խորագէտ և նենգաւոր. սողի և սպրդէ մտանել ընդ նեղ և ընդ նուրբ փապարս, մտանէ և ցուցանէ զգործ դառնութեան մահուն. որպէս իգական ցանկութիւն հեղու և տապալի 'ի տենչանս կերակրոց, շարժի և շռայլի յարբեցութիւն անյագութեան. ուստի բազմագլուխ գազան ցանկութիւնն զօրանայ 'ի վերայ զգայութեանցն մարդոյն և անյագ վարէ յիւրս աղտեղիս: Դարձեալ և ձեւ սողնոյս այսորիկ շարժման ճշմարտապէս ցուցանէ զշարժումնս մերոյ բնութեանս, որպէս և ուսաք իսկ 'ի բնական արանց՝ որ անսատութեամբ տան հաւանութիւն իմաստնասէր մարդոց: Հինգ պատ առնու օձ 'ի սողել իւրում. իսկ առաջքն և զկնիքն ըսուն զեօթներորդ թիւն. և բերէ զնմանութիւն զմերոյ զգայութեանցս, երկուք աչօք և զուգիւք ականջօք, ճաշակաւորութիւն, խոհականութիւն և ներքին համք որովայնին՝ որ շարժէ զամենայն մարդ 'ի մարմնական ցանկութիւնս:

Արդ այս է տեղալ օծիցն 'ի ցանկացող ժողովուրդն՝ որ ամենայն մասամբքն զգայութեանցն յեղեալք էին 'ի ցանկութիւն, և գործով զկամս աղտեղութեանն կատարէին ։

Իսկ ընդ հարկանել օծիցն՝ և մահու վախճանէին. և որ կոխեալն միայն լինէր 'ի շարժմանց ցանկութեանցըն, զխածանելն խածան 'ի Թունաբեր օծիցն, այլ ընդ մահուամբ ոչ արկանէր ։ Կարէք հայել և տեսանել զօձն Մովսէսի, վասն զի օձ էր որ սպանանէր, և որ սպանանէրն՝ նոյն և մաղկատէր. և 'ի ձեռն միւս օձին տեսլեան՝ մաղկատեալքն ընդունէին զառողջութիւն. և պատեցան զբարձրացեալ օձիւն մաղկատեալքն և մաղկատիչքն. և նա միջնորդեցաւ և եկաց դատաւոր երկոցունց կողմանցն, և շնորհեաց ումանց զառողջութիւն կենաց և ումանց զընդդէմն ։ Մեծ էր և օձն պղնձի՝ որ կազմեցաւ 'ի ձեռաց իմաստնոյն Մովսէսի. այլ մեծութիւն զօրութեանն նորա զնմանութիւն բերէր զբարձրացեալ խաչին՝ որ կանգնեցաւ 'ի Գողգոթա, զոր Տէրն ինքնին յառաջագոյն օրինադրեաց ասելով. Որպէս բարձրացոյց, ասէ, Մովսէս զօձն յանապատին, սոյնպէս պարտ է բարձրանալ որդւոյ մարդոյ 'ի մէջ երկոցունց կողմանց, ումանց յանդարձ մոլորութիւն, և այլոց 'ի ճանապարհ ճշմարտութեան ։

Արդ խաւարեցաւ արեգակնն 'ի վերայ մոլորելոցն, զի չէին արժանի տեսանել զարեգակնն արդարութեան՝ որ բժշկէր զհարուածս աներեւոյթ առաջին օձին ։ Նա որպէս յանապատին՝ այնոքիկ որ յոգիսն հարեալ լինէին 'ի ցանկական օձէն, մարմնովքն կատարէր զգործս ապականութեան, ոչ կարէին տեսանել զօձն Մովսէսի, քանզի չէին արժանի շնորհատուր Թողութեանն, վասն այսորիկ մահուամբք անկեալ տապաստ յանապատին դնէին. իսկ ուր դուզնաքեայքն խոտորմամբքն ցանկութեամբքն ախտացեալք էին՝ 'ի դիւրագոյն գային 'ի բժշկութիւն, սոյնպէս և աստ 'ի գագաթն տեղւոյս պատեցան զխաչիւն Տեառն Յիսուսի անօրէնք և օրինաւորք, անարժանք և արժանաւորք ։ Որ հնութեան կ[illegible]ութեամբք հարեալ էին, ոչ կարացին տեսանել զմահն 'ի կեանս դարձեալ, և զմոլորութիւնն 'ի ճշմարտութիւն շրջեալ, զանէծսն յօրհնութիւն փոխանա-

կեալ, յառժամայն նեղութիւնս հայեցան, և 'ի համդերձեալ համգստեանն վրիպեցին ։

Իսկ նա ըստ իւրում մարդասիրութեանն շնորհեաց զառողջութիւն բժշկութեան երկոցունց կողմանց՝ որք խածեալք և խոցոտեալք էին 'ի թիւնից հին վիշապին, և շնորհեալ զառողջութիւն 'ի ձեռն հաւատոցն ական՝ որք կարեն հայել և տեսանել զորդին մարդոյ 'ի վերայ խաչին, որ ընկալաւ չարչարանս յիւր մարմինն. և զնոյն իմանայցեն որդի Աստուծոյ, արարիչ երեւելեաց և աներեւութից ։ Վասնզի ոչ եթէ իբրեւ զՄովսէսի օձն պղնձի է՝ որ կախեցաւ զփայտէ յանապատին, որ առ ժամանս զօրանայր յառողջութիւն, և առ ժամանս տկարանայր յանդարձութիւն մահու ։ Վասնզի նմանութիւն առաց Տէրն մեր, և ոչ զորպիսութիւնն նմանութեան, որ ոչ բերէր զիսկութիւն ճշմարտութեանն ։ Զի եթէ բերէր, զինչ եւս պիտոյ էր երկրորդին գալ մտանել 'ի նորա տեղին, զոր և մեծս Առաքեալ թարգմանէ մեզ զզօրութիւն խաչեցելոյն. "Այն որ ոչ գիտէր, ասէ, զմեղս՝ վասն մեր մեղք եղեւ, զի մեք լիցուք նովաւ արդարութիւն Աստուծոյ" և մեղքն օձիւն մտին յաշխարհ ։

Արդ ձեւացուցեալ զինքն Տէրն օձին տեսակաւ՝ որպաւորեալ կերպարանեցաւ յեօթն թուական զգայութիւնս և յանհատ բաժանելի խոհականութիւնն. և եղէն մեզ, քանզի էաք ամենեքեան ընդ նովին մեղօք մաղկատեալք և մաղկատիչք. մաղկատեալք յառաջին հին թիւնից վիշապին, և մաղկատեալք յիւրաքանչիւր շարժմանց թուական զգոյ մասանց մարմնոյս ։ Ծակոտեցան աչք մեր յանարժանս հայելոյ, և ախտացան ականջք մեր յայլանդակս լսելոյ, ճաշակելիք մեր անյագ տենչալով, և շարժմունք մեր անասնական ցանկութեամբք, և խոհականութիւնս մեր հպարտ բարձրացեալք. և եղեաք ամենայնիւ և ոչ մի մասն արդարութեան ։ Իսկ այն՝ որ ոչ գիտէր զմեղս և հեռի է յայսմ ամենայնէ, 'ի կամս իւրոյ բարերարութեանն եղեւ մեզ՝ որ ոչ էր նորա, զի մեք լիցուք արդարութիւն նովաւ. որ գոյն մեր՝ կորուսաք. արդ գտցուք նովաւ, զի մի՛ կորուսցուք այլ ։

Բայց այս է օձն պղնձի զոր բարձրացոյց Մովսէս

յանապատին. հարկանել ոչ գիտէ, զի չունի Թոյն 'ի բնութեանն. իսկ յայլոց ոչ հարկանի, զի անտանելի է գոյացութիւնն: Ոստլաւ պատեցան հարեալքն և հարկանողքն. հարեալքն բժշկեցան և հարկանողքն պարտեցան, զի ջրեսցին Թոյնքն իւրեանց յանպարտելի զօրութենէ գոյացութեան մարմնոյն: Եւ կախի օձս այս զփայտէ բարձրացելոյ. և ոչ յաներեւոյԹ և ոչ 'ի ծածուկ տեղւոջ, այլ 'ի յայտ բարձրաւանդակի. ոչ Թագուցեալ և ծածկեալ հանդերձիւք, այլ մերկ ամենայն մասամբք տեսլեանն կայ 'ի մէջ բազմութեան ժողովրդեանն: Յայտնի ամենեցուն է, և տեսանեն ոչ ամենեքեան. որ տեսանենն՝ ընդունին զառողջութիւն, և որք ոչն տեսանեն՝ հրաժարեն յաշխարհէս և յաշխարհէն կենաց:

Ապա յիրաւի ուրեմն Տէրն մեր նմանեցուցանէ օձիս այսմ ոչ զոք յարդարոց և ոչ զոք 'ի մարգարէից և ոչ 'ի հարցն կատարելոց ումեք, այլ մարդոյ ումեմն միայնոյ և յայտ միայնացելոյ, ոչ դուզնաքւոյ, այլ որդւոյ մարդոյ՝ որ ունի զբնութիւն ամենեցուն և 'ի վեր քան զամենեսեան, և արարիչ ամենեցուն և բոլորեցունց նորոգիչ, և ունի զմարմին մաղկատելի, այլ ոչ մաղկատող. և մաղկատի 'ի մարմին, այլ ոչ յոգի: Եւ մարմին ասացի 'ի ձեռս և 'ի յոտս, 'ի կողս և 'ի Թիկունս, 'ի ծնօտս և 'ի գլուխս: Իսկ զգայութիւնք նորա տեսակ ունին զմերոյ Թուականիս, այլ ոչ հարկանին ըստ մերոյ նմանութեանս:

Ես և ասացից իսկ փոքր 'ի շատէ սակաւ բանիւք: Ի ձեռն աչաց յառաջ քան գործով մեղանչելն մարդիկ. իսկ Տէրն մեր Քրիստոս աչօք հայեցաւ 'ի կինն բազմամեղ քան զամենայն քաղաքն՝ յորում բնակեալ էր. ծանեաւ զնա, և ծանոյց զինքն նմա: Աչք առ աչս հանդիպեցան, և յորդահոս արտասուս վիժեցին յապաշխարութիւն. մեղքն մեռան և արդարութիւնն կենդանացաւ: Լսելեօք մարդիկ գերին 'ի լկտի երգս ձայնից. նովին լսելեօք եմուտ Տէրն մեր 'ի տուն քահանայապետին, և ետես անդ զմահ Թագաւորեալ. և լուաւ անդ ձայնս ողբոց և կոծոց մեծաց, հալածեաց զմահ և լռեցոյց զողբս կոծոցն յուսահատութեամբ: Ունէր և զճաշակաւորութիւն, այլ միայն զհարկաւորաց և ոչ

զաւելորդաց. լցոյց զբաղմաց կարօտութիւնս, և վաստակեցան Թիկունք բեռնակրացն 'ի պատարուն 'ի սակաւիսն: Այլ 'ի ձեռն խոնարհութեանն ընդ Հօր 'ի բարձունս խօսէր, և յերկրի ընդ մարդկան շնորհալից խոնարհութեամբ շրջէր:

Այլ իբրև այս այսպէս էր ճշմարիտ, ոչ ինչ վրիպեալ գտայ ասելով՝ եթէ մարմին մեր վերագոյն գտաւ քան զանութիւնս մեր: Այլ վասն այսորիկ ինքն զինքն նմանեցուցանէ պղնձի օձին իբրև մեղաց և արդարութեան. մեղաց՝ զի ըստ մերում գոյացութեանս երևեցաւ, իսկ արդարութեան՝ զի ոչ շարժեցաւ ըստ մերոց զգայութեանցս. և այսու ամենայնիւ արկանէ զլսողսն 'ի վարան տարակուսի. “Որպէս Մովսէս, ասէ, բարձրացոյց զօձն յանապատին, այսպէս պարտ է բարձրանալ որդւոյ մարդոյ”:

Արդ ինչ ասաց, ասեն, զայսպիսի բանս Տէրն՝ որ Աստուածն էր բնութեամբ և մարդ ճշմարիտ. արարիչ ըստ աստուածութեանն և արդար ըստ մարդկութեանն, ընդէ՞ր օձին նմանեցուցանէ զինքն: Ո՛ իմաստուն լսողդ, զբարիոք ասացեալդ 'ի Տեառնէ մի այլ ընդ այլոյ տգեղագոյնս լսեր. օձի նմանեցոյց զինքն, ոչ խածանողին և հարկանողին, այլ անթիւնեին և բժշկողին. քանզի 'ի ձեռն Թիւնաւոր օձին հարաք և մեռաք, իսկ 'ի ձեռն անթոյն օձին բժշկեցաք և ողջացաք: Ապաքէն մարմին է գոյացութիւն օձին, մարմին է և բնութիւնս մեր. մարմին մարմնոյ դիպեցաւ 'ի դրախտին, մարմին ընդ մարմնոյ խօսեցաւ, մարմին 'ի մարմնոյ խաբեցաւ, և Թիւնաւորն զանթոյնն եհար և սպան: Մարմին էառ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ոչ զԹիւնաւոր հին օձին, այլ զորոյ վիրաւորեցելոցն, և արար մահկանացու. մարմին մարմնոյ երևեցաւ, անթոյնն Թիւնաւորին, անախտացեալ ախտացելոյն, անչարչարելին չարչարացելոյն, անապականն ապականացելոյն. աստ ահա միանգամայն իսկ ասացից, անմահն մահկանացուին, և Աստուածն մարդոյն. սա՛ գոյացեալ և բաղկացեալ 'ի մարմին Թանձրացեալ և կախեալ զփայտէ՝ ոչ յանապատի և ոչ 'ի քաղաքի, այլ արտաքոյ քաղաքի և հեռի յանապատէ:

Այլ ամենայն աշխարհք և քաղաքք ժողովեալ շուրջ պատեալ զնովաւ հայէին ամենեքեան, և տեսանեն ոչ

ամենեքեան։ Որոց տեսանէնն՝ ջնջին թոյնք օձահարութեանն, և առանց դեղոց ընդունին զկատարեալ առողջութիւնն. աչք զգաստանան ցած հայելով և տեսանելով զաստուածութիւնն 'ի պարտաւոր մարմինն, և 'ի ձեռն ականջաց լսեն նորին բարբառոյ աստուածութեանն որ ասէ. «Հայր, 'ի ձեռս քո դնեմ զհոգի իմ»։ Եւ ընտրող ճաշակելիք քաղցրանայ 'ի քիմս լուղաց բարբառոյն, և լցուցանէ քան զամենայն համս անոյշ կերակրոց, և 'ի ձեռն մարմնաւոր զգայութեանցս առողջանան ոգիքն, և լուսաւորին միտքն և լնին յոյժ սրատեսիլք. հային 'ի չարչարանս խաչին և տեսանեն զանչարչարելի աստուածութիւնն Որդւոյ, և վերաբերին հաւատք թռուցեալ և հասանեն առ Հայրն բոլորեցունց, և յիշեն զՄովսէս և զօձն պղնձի, որ էր առակ օրինակի արդեան ժամանակիս՝ որ կատարեցաւ 'ի խաչելութեանն Քրիստոսի. վասն զի ոչ ամենեքեան կարացին տեսանել։ Այնոցիկ՝ որոց խաւարեալ էին սիրտք իւրեանց, և հնութեամբ կուրութեամբն շլացեալ էին ոգիքն իւրեանց, և մարմնաւոր նախանձուն հարան և մաշեցան 'ի մարմինս իւրեանց, գայթագղեցին և դղրդեցան առ վիմին հաստատութեան, արգելաւ յաչաց նոցա տեսիլ ճառագայթից լուսոյն՝ մեծափայլ խաչին Քրիստոսի, որ ծագեաց 'ի մէջ ամենայն արարածոց։

Վասն այսորիկ երեւեցաւ 'ի տեղւոջ անդ իրք ահագինք՝ և գործք մեծամեծք և սքանչելիք. քանզի վարագոյրն՝ որ արար Մովսէս հրամանաւն Աստուծոյ և ձգեաց 'ի ներքս 'ի խորանին, զի իցէ միջնորդ՝ աներեւոյթ տեսակ պահելով զսուրբսն սրբոց, արտաքին խորանն՝ յորում հանապազորդ ղեւտացիքն կատարէին զպաշտօնս իւրեանց, տապաքէն զնմանութիւն բերէր զերկնից երկնին, յորում կարծեմք զբնութիւն անեղին. իսկ արդ զի՞նչ եւս պիտոյ էր վարագոյրն, որ ծածկեալ պահէր զսուրբ սրբոցն՝ զխորհուրդսն աներեւոյթ զօրութեանն։ Իսկ այսօր ոչ 'ի խորհուրդն ձեռնարկեալ, այլ 'ի բուն իսկ տէր խորհրդոյն, այն որ եկն յայտնել և ցուցանել զխորհուրդն իբրեւ զժամանակեան օգտութիւն, զի ծանիցեն և ընկալցին զանժամանակեան տէրն խորհրդոյն. և նոցա ոչ միայն չընկալեալ,

հու՝ յորում աւազակքն կային, ոչ ինչ պատկառէր այնպիսին թշնամանել զգաստող իւր, նա և յերկինս ձգել հայհոյութիւն բանից:

Բայց արդ դու եկ յարեաց 'ի լուսաւոր տեղին և մերձեցիր 'ի փրկական խաչն տէրունական, և տես անդ զնոր և զչքնաղ գործսն՝ որ գործեցան: Երիս փայտս կանգնեալ և երիս մարդս խաչեալ՝ հաւասարակ կան 'ի միում պատժի, ոչ ոք քան զոք 'ի դիւրագոյն տեղւոջ, այլ մի քան զմի 'ի դժնդակագոյն հարուածս: Յայսմ վայրի յոյժ զարմացեալ հիանամ, թէ ուստի՞ գտաւ աւազակն ջատագով Ճշմարտութեանն. յայտնի ակամբ ետես և ոչ ինչ զարմանալիս. յառաջագոյն ոչ ինչ գիտէր զՃշմարիտ վարդապետութիւն Տեառն. յիւրոց գործոցն՝ ունայն էր յարդար վաստակոց. իմաստութիւն երկնային հեռի էր 'ի նմանէ, քանզի ծնունդ էր մեղաց և սնունդ դառնութեան. այր մի որ 'ի մանկութենէ իւրմէ իբրեւ մոլի 'ի վայր անկեալ 'ի քաղաքէ, հեռացեալ 'ի մարդկանէ, ատեցեալ զլոյս տունջեան, և սիրեցեալ զխաւար գիշերոյ, կցորդ էր քաղաքաւեր գողոց, և հաղորդ յափշտակող աւազակաց. խորհուրդք նենգաւորք և գործք վատթարք, բարեկամ անարգաց և սիրելի լկտեաց, ատելի զգաստից և զազրալի ամենայն բարեսէր մարդկան. որսացեալ 'ի դատաւորէն ըմբռնեցաւ ըստ բազում յանցանաց իւրոց. և ըստ բազում յանցանաց իւրոց կայր 'ի պատիժս մահուն: Եւ արդ զի՞նչ խօսի. յընկերն սաստելով և զանձն իւր դատապարտելով՝ յանդիմանիչ քահանայիցն գտանի, և առաւել քահանայապետիցն: Ինձ թուի՞ եթէ զդատաւորն յոյժ դարովէ, միանգամայն և զատեանն կշտամբէ և զիմաստուն աթոռակիցս դատաւորին յամօթ առնէ:

Բայց ընկեր նորա յանկակից էր հայհոյող ժողովրդեանն, և սկսաւ հեգնելով ասել. Եթէ արդարեւ դու ես Քրիստոսն, փրկեա զանձն քո և զմեզ ընդ քեզ: Իսկ միւսն 'ի ձայն բարձր լու 'ի լու ամենայն ժողովրդեանն կացեալ սկսաւ ընդ ընկերին և ասել. ՅԱստուծոյ ոչ երկնչիս դու, նա և 'ի մարդկանէ արժան էր քեզ ամաչել. մեք ըստ յետս ընդդէմ գնացից մերոց ձախողակի զհատուցումն ընկալաք, իսկ սա ընդէ՞ր. զի սորա չար ինչ ոչ էր գործեալ, և երբեք ումեք 'ի մարդկանէ

չիք մեղուցեալ: Զայս նորա ասելով, ամենայն բազմութիւն դատողացն ամաչեցեալ լինէր: Եւ դարձուցեալ անդրէն զբանս իւր աւազակն ասէ. Տէր Յիսուս, յիշեա զիս 'ի գալստեան արքայութեան քո: Զանուն ոչ գիտեմ զառնս զայսմիկ, և աւազակ ամաչեմ ասել. զի վերագոյն գտանի ոչ միայն քան զբարեգործ ոք 'ի մարդկանէ, այլ և քան զլոյժ խրատեալս յօրինաց և 'ի մարգարէից:

Ուստի է քեզ այդ, ով յափշտակող. ո՞ւր կաս, զո՞ տեսանես, և ընդ ո՞ւմ խօսիս. 'ի խաչի տեսանես խաչեցեալ, և խօսիս ընդ Տեառն Յիսուսի միանգամայն և ընդ արքայի որդւոյ՝ որ իշխէ արքայութեան և բաշխէ պարգեւս ամենեցուն: Իսկ արդ զի՞նչ տեսեր, միթէ կակղացո՞յց զփայտ խաչին իւրոյ առաւել քան զդքոյդ. ո՞չ տեսանես աւադիկ փայտ չորեքկուսի 'ի վերայ վիմի կանգնեալ, զոտս և զձեռս երկաթով բեւեռեալ, անլոյծ կապանօք պնդեալ. տիգաւորք շուրջ պատեալ, քահանայք հայհոյեն, քահանայապետք դսրովեն, ծերք լկտութեամբ այպն առնեն, փարիսեցիք լրկտութեամբ ոտնհարեն. բազմութիւն ժողովրդեանդ 'ի ձայն բարձր աղաղակեն ասելով. Զայլս ապրեցոյց, զանձն իւր ոչ կարէ փրկել: Դու ինքնին իսկ տեսանես եղէգն ձաղանաց և քացախ լեղի խառնեալ 'ի կերակուր և յըմպելի, զհանդերձսն մերկացեալ, զպատմուճանն վիճակեալ, մերկ զփայտէ կախեալ, գլուխ 'ի փըշոց պսակեալ, երեսք թքալիցք, և ծնօտք ապտակեալք. և դու ասես՝ յիշեա զիս 'ի գալստեան արքայութեան քում:

Ուստի արդեօք ծագեաց այնպիսի լոյս յոգիս աւազակին, յոյժ զարմացեալ եմ և առաւել քան զլոյժ սքանչացեալ. 'ի Նազարեթ ոչ երթեալ, ծննդեանն չէր տեղեակ, 'ի Կանա գալիլեացւոցն սորա չէր երթեալ, 'ի հարսանիսն զսա ոչ ոք կոչեաց, 'ի Թակոյկաբուղիս գինւոյն սորա չէր արբեալ, 'ի Նկանակածին հացէն սորա չէր կերեալ, զկաւածեփ կոյրն ոչ էր տեսեալ, 'ի շամրտացի կնոջէն սորա չէր աշակերտեալ, ըզմահիճս անդամալուծին սորա չէր տեսեալ, յունայն գերեզմանն 'Ղազարու սորա չէր երթեալ, զբողոք դիւացն յերկիրն գերգեսացւոց չէր լուեալ. և զի՞ մի մի

Թուեցից յանուանէ. որպէս ունայն էր անձն իւր 'ի բարեգործութենէ, սոյնպէս անտես և անլուր էր յամենայն նշանագործութեանց Տեառն մերոյ: Արդ փոխանակ այսր ամենայնի փառաւորութեանց տեսանէր այր մի լի անարգանօք 'ի մահու խաչին, և խոստովանէր զնա տէր Յիսուս, որդի Աստուծոյ, և իշխան արքայութեան փառաց Հօրն. աներկբայ հաւատ, անթերահաւատ խնդիրք: Վասն որոյ և լուէ անսուտ պատասխանի. Արդարեւ ասեմ քեզ, այսօր ընդ իս իցես 'ի դրախտին: Կարճառօտ խնդիրք և համառօտ պատասխանի. բանիւ հաւատոց, բանին բան պատասխանի լսէր. զինչ կայր իւր 'ի ժամու անդ՝ բոլոր զինքն եհեղ առաջի Տեառն ամենայնի իբրեւ զմարդ և զաղքատ, բայց միայն մեծացեալ հաւատովքն: Իսկ Տէր ոչ իբրեւ զմարդ և ոչ իբրեւ զաղքատ և իբրեւ զնախանձոտ, և ոչ իբրեւ զկիսապարգեւ, այլ իբրեւ զբարերար առատ մեծատուն անչարակնածութեամբ շնորհէ ոչ զմասն պարգեւին, այլ զամենայն զբուն զհայրենի տեղին. ոչ ուր ծառն մահու, այլ ուր միայն ծառն կենաց. ոչ ուր անցանկ տեղին էր՝ ուր օձն սողեցաւ եմուտ, այլ զոր ինքն Աստուած պարսպեաց 'ի սուր տէգ նիզակի իւրոյ հրեղէն շուրջանակաւ զոր քերոբէն ինքնին պահէր. զորոյ ընդցանկն ոչ ոք կարաց յարդարոցն խրամատել, ոչ Աբրահամ, ոչ Իսահակ, ոչ Յակոբ, ոչ Մովսէս ինքն օրինօքն, և ոչ մարգարէքն քարոզութեամբքն. ոչ քահանայք պատարագօք և ոչ ղեւտացիք 'ի պաշտաման իւրեանց. ոչ ուխտաւորք յուխտաւորաց, ոչ հարք ճշմարիտք և ոչ թագաւորք արդարք, ոչ գունդք մարտիրոսաց և ոչ վկաք Առաքելոց. մանաւանդ թէ եւս վերագոյն ասացից, ոչ հրեշտակք, ոչ հրեշտակապետք, ոչ աթոռք, ոչ տէրութիւնք, ոչ պետութիւնք և ոչ իշխանութիւնք զդուռն դրախտին բանալ ոչ կարացին, բայց միայն աւազակս այս:

Յիրաւի ուրեմն ասացաւ թէ աւազակն եբաց ըզդուռն դրախտին. քանզի 'ի ժամուն յայնմիկ ամենայն արարածք 'ի սուգ տրտմութեան էին. արեգակն թաքուցեալ, լուսին խաւարեալ, աստեղք ծածկեալ, տիւ հեռացեալ և գիշեր մերձեալ, վերինք զարմացեալք և ներքինք յիմարեալք, աշակերտք փախուցեալք և ծա-

նօթք հեռացեալք, բարեկամք չարախօսք և մերձաւորք թշնամանողք. ամենեցուն թողեալ՝ ամենեւին յետս կացեալք, միայն սա մերձեալ 'ի խոստովանել: Ոչ զառ 'ի ծննդենէն սկիզըն առնէր, և ոչ 'ի մասնաւոր նշանագործութենէ բուռն հարկանէր. այլ և վերանայր ըստ ախտական տեսակս և յաներեւոյթ արքայութիւնն հասանէր և ասէր. Յիշեա զիս յանչարչարելի արքայութեան 'ի քում գալստեանն:

Ո՞ր իցէ այն գալուստ, և կամ ուստի՞ գայցէ, և կամ վասն որո՞յ իրաց գայ. և զիա՞րդ գիտացեր դու, ո՛վ աւազակ, պատմեա մեզ. որովհետեւ ընկեր եղեր Մովսէսի, դու աւադիկ քան զՍինա 'ի վեր ամբարձար և զանմարմին տեսիլ տեսեր. Թուի ինձ թէ Հոգին սուրբ հանդիպեցաւ քեզ, և զՀայրն բոլորեցունց տեսեր դու. և զոր մեծն Պաւղոս ոչ կարաց թարգմանել մեզ ըզպատրաստեալ պարգեւսն, դու յառաջագոյն մտեր և ժառանգեցեր զայն:

Այո, ասէ, այդպէս է ճշմարիտ. քանզի Տէր ինքնին ինձ առաջնորդեաց, և խոստացեալ եւս է. ոչ միայն յղեաց զիս 'ի դրախտն թէ օձն հանիցէ զիս անտի միւսանգամ: Վասն այսօրիկ ընդ իս իցես, ասէ, 'ի ներքս 'ի դրախտին: Ընդ իմն ասելով, ոչ ժամանակեան և ոչ անժամանակեան, այլ բնաւ հանապազորդեան. միշտ Աստուած ինքն ընդ իւր, միշտ հաւատացեալ՝ ընդ նմա Աստուած:

Վասն այսօրիկ եկն 'ի չարչարանս, զի չարչարեցելոյն օգնական լիցի: Առաջին պտուղն առաջին ծառոյն ըզմարդն առաջին սպան. իսկ առաջին պտուղ խաչին զառաջնորդն մահու յանձին իւրում սպան. և 'ի մեռանել մահուն՝ առաջին պտուղ աւազակն կլթեցաւ 'ի զօրութենէ խաչին: Ո՛վ չարադեւ քահանայք, և ո՞յլ եւս այպանիցէք զխաչդ, և կամ զխաչեալդ ծաղիցէք. մինչ կամիցիք ընդ անօրէնսն սպանանել զդա, յանօրինէ անտի օրինաւորքդ կշտամբեալ յանդիմանեցայք, և անօրէնն քան զօրինաւորսդ գեր 'ի վերոյ գտաւ ոչ միայն քան զձեզ, այլ և քան զօրէնսդ ձեր գլխովին:

Եւ ընդէ՞ր արդեօք այսպէս. քանզի ոչ եթէ օրէնքն տկար ինչ էին, այլ դուք տկարացուցանէք զնա չպահելով զօրէնսն, վասն զի ոչ հաւատովք էիք: Իսկ

դա հաւատովք ետես զօրէնսն և զօրէնսդիրն ։ Զօ-
րէնս ետես, զի կարօտեալ էին հաւատոց և ոչ գտա-
նէին. զօրէնսդիրն ետես, զի եկն կատարել զօրէնսն
և ոչ պակասեցուցանել. միանգամայն յառաջ մատեաւ,
պատուեաց զօրէնսն հաւատովքն, քանզի խոստովա-
նեաց 'ի տուիչ օրինացն. մեծարեաց և զօրէնսդիրն, զի
ասաց նմա՝ Աստուած և որդի Աստուծոյ, բաշխիչ պար-
գեւաց և տէր արքայութեան ։ Եղեւ սկիզբն հաւատոց
և կատարիչ օրինաց, որդի Աբրահամու և սիրելի մար-
գարէից, աշակերտակից առաքելոց, առաջնորդ մարտի-
րոսաց, ժառանգորդ արքայութեանն, դռնապան դը-
րախտին կենաց, միանգամայն սիրիչ և սիրելի Հօր և
Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Արդ յոյժ սիրելի է ինձ բանս Առաքելոյ զոր ասէ.
« Ուր առաւել եղեն մեղքն, առաւել եղեն շնորհքն
Աստուծոյ » ։ Արդ զայս լսելով, եղբարք, ամենեցուն
մեր միտք ճշմարիտ գիտելով ընթանան առ ազգն տե-
սական, 'ի զաւակն արդարոց, յերկիրն պարգեւաց՝ յանձ-
կալի քաղաքն Երուսաղէմ, 'ի հրաշակերտ տաճարն
Աստուծոյ. ուր օրէնքն աստուածատուրք և մարգարէքն
հոգեկիրք, արդարք շնորհալիցք, հարքն կատարեալք
և որդիք խրատեալք. ուր նշանք երկնայինք և արուեստք
երկրայինք, ուր յայտնութիւնք հրեշտակաց և ընդու-
նելութիւն պատարագաց 'ի ձեռն կենդանի Հոգւոյն
սրբոյ, որով Աստուած ճանաչի ճշմարտապէս այնոցիկ՝
որոց ոգիքն սրբութեամբ համեմատեալ են ընդ Աս-
տուծոյ ։ Արդ վասն այսր ամենայնի յոյժ սիրեմ զաշ-
խարհն, և յաշխարհի անդ զգաւառն, և 'ի գաւառի անդ
զքաղաքն ընտրեալ, և 'ի քաղաքին զբարձրացեալ տե-
ղին Գողգոթա, և 'ի տեղւոջ անդ զեւս բարձրացեալ
վէմն, և 'ի վերայ վիմին զաշխարհաձեւ խաչն, և 'ի վե-
րայ խաչին զխաչեցեալն, որ կայր առաջի երկնաւոր տե-
սողացն, և էր գեր 'ի վերոյ ոչ միայն քան զբարձրու-
թիւնս լերանց, այլ և քան զերկինս. նա եւս քան զեր-
կինս երկնից բարձրացեալ ։

Եւ զի այսպէս է ճշմարիտ, հայեաց 'ի տեղին, և
տես ճշմարիտ զեղելութիւն գործոցն որ անդ կատա-
րեցան առանց երկբայութեան ։ Քանզի մերկացուցին
զտէրն արարածոց, զայն որ զգեցոյց զարդուք լուսոյ զեր-

կինս, և պսակեաց զերկիր անուշահոտ ծաղկօք։ Եւ վիճակեցին զպատմուճանն զայն՝ որ առանց կարոյ և վիճակի ետ որդւոց մարդկան զգեստ զարդուց 'ի ծովէ և 'ի ցամաքէ։ Եւ ոչ արբուցին ջուր 'ի ծարաւու այնմ որ մեծ բղխմամբ ամպոց բազմահոսան յորձանօք ոռոգանէր զամենայն երեսս երկրի. մինչեւ ասել նմա 'ի չարչարանսն, ծարաւի եմ ես։ Հաստիչն աղբերաց ծարաւի եմ ասէ. տէրն Ովկիանոսի և տուիչն անձրեւաց, անկարօտն յամենայնի և լցուցիչն կարօտելոց՝ ծարաւի եմ ասէր։ Այն որ 'ի սկզբան լինելութեանն այնչափ ջրայեղց գործեաց զարարածս, մինչեւ սուրբ Հոգին շրջէր 'ի վերայ ջուրց և ընդ վիհս մեծամեծս 'ի վայր հոսեցոյց զանչափ խորութիւն ծովուց, և Տէրն այսր ամենայնի 'ի գութ սիրոյ առ իւրսն եկեալ, և յիւրոցն մեծապէս չարչարեալ և չարչարանս ընկալեալ, մինչեւ բաժակի միոյ ջրոյ կարօտեալ, ասելով ծարաւի եմ, և ոչ ոք տայր նմա ըմպել։

Ո՜ սիրտք դառնացեալք և միտք խարխարեալք և անձինք յիմարեալք. զի եթէ գոյր յումեք 'ի մեզ այսօր գութ երկնաւոր սիրոյն և տապ նորին անձկոյ, ասէաք և մեք ընդ նմա՝ ծարաւի եմք, լինելով չարչարակից մեծի տանջանաց նորա։ Եւ ոչ զի արբցուք գինի 'ի մխիթարութիւն սգոյ, այլ զի յօժարութեամբ և չարչարանօք զմահ և զձաղանս փրկչին յանձն առեալ՝ քաջութեամբ 'ի հանդէս նահատակութեան համբերութեամբ ընթասցուք, և զախոյեանն կանգնեալ՝ վանեսցուք զթշնամին։ Այլ և կարօտեսցուք բաժակի միոյ ջրոյ առ 'ի մխիթարութիւն ծարաւոյ։ Նա և արժանաւոր սիրողաց Քրիստոսի պարտ է ընդ սուրբ մարգարէին ձայնակից լինել. “Առնոյր ոք, ասէ, և առնէր զգլուխս իմ շտեմարանս ջուրց բազմաց և զաչս իմ աղբիւր յորդ արտասուաց”։ Եւ զի՞նչ առնէիր այդու ամենայնիւ, ով մարգարէ։ “Ի տուէ և 'ի գիշերի լայի զԻսրայէլ”։ Արդ որ յահագին անապատին բազմածով վտակս բղխեաց յանջրդի վիմէն, նոյն ինքն առանց նոցունց աշխատութեան զհետ երթայր ժողովրդեանն՝ արբուցանել զազգն ընտրեալ։ Արդ նոյն վէմ վասն նոցուն և աստ մարդացեալ՝ ծարաւի եմ ես, ասէր։ Եւ ոչ միայն զի չտան ջուր, այլ և փոխանակ ջրոյ՝ քացախ ընդ լեղի խառնեալ մատուցանէին նմա։

Եւ կամ ո՞ր 'ի մարդկանէ իցէ սիրտ քարեղէն կամ պղնձի մարմին՝ զայս լսելով հանդարտել արտասուաց։ Ո՜վ եթէ յանջատման սիրելեաց մերոց ցաւիմք և կոծիմք, ճչեմք դառնացեալ սրտիւք, այրիմք խորովիմք 'ի գութ սիրելեաց մերոց, և ըստ մասանց մարմնոյն՝ ողջք դառնութեան ձայնս արկանեմք։ Եւ զայս առնելով ոչ զարժանն կատարեմք, քանզի զպարտն հատուցանեմք. ոչ զի ինքն է պարտական, այլ զի զմեր պարտիսն իւրովին հատուցէ. և ոչ զի 'ի պարտեացն ապրել աղաչէր, այլ յոյժ ցամաքեալ և պասքեալ՝ ջուր խնդրէր սակաւիկ մի, լուանալ զերաշտացեալ քիմսն։ Ծարաւի եմ ասէր. յականէ զոք ոչ կարդայր, զանուն ուրուք առանձին ոչ ասէր. զաղերսն 'ի մեզ անդր արկանէր, զկարօտութիւն ամենեցուն յայտնէր, զանողորմածութիւնն յամենեսեան տեսանէր։

Քանզի ճմլի սիրտս, հեղձնուն ոգիքս, փղձկին միտքըս, և զխանդաղատանսն Մարիամու ոչ կարեմ ասել։ Քանզի մինչ դեռ կայր Տէրն 'ի շտապ տագնապին, մօտ առ նմա կային, ասէ, մայր նորա և քոյր մօր նորա Մարիամ Մագդաղենացի և այլ եւս կանայք՝ որ յառաջագոյն հաւատացեալք էին գալստեանն որդւոյն Աստուծոյ. աչօք իւրեանց տեսանէին զմեծ չարչարանսն, և ականջօք իւրեանց լսէին զհայհոյութիւնսն, մանաւանդ իբրեւ լուան 'ի բերանոյ նորա՝ թէ ծարաւի եմ։ Եւ դուք ձեզէն գիտէք զբարս բնութեան կանանց՝ ո՛րչափ խանդաղատագոյնք են յողորմածութիւն, և մանաւանդ առ սիրելի ծնունդս իւրեանց։ Իսկ արդ զինչ կարծելի է 'ի ժամուն յայնմիկ վասն կանանցն այնոցիկ. զի թէ և էր հնար գտեալ նոցա, ոչ միայն ամանով մատուցանէին նմա ջուր, այլ և յորդագնաց վտակս առ խաչին գործէին։ Եւ իբրեւ այսպէս ոչ էր 'ի ձեռս նոցա, զկրծից հարկանէին, զսիրտն կոծէին, 'ի միտսն ողբային, և արտասուս յորդագոյնս բղխէին, վայ անձանց կարդային, և զմահ քան զկեանս ընտրէին. մինչ դեռ կային յաշխարհի, հարեալ դիականց նմանէին։ Վասն այսր ամենայնի յառաջագոյն պատասխանի լուեալ 'ի Տեառնէ՝ զոր ողբալով ասէր 'ի վերայ ամենայն ազգին. Դստերք Երուսաղեմի, մի լայք 'ի վերայ իմ, այլ լացէք 'ի վերայ անձանց և ուստերաց և դստերաց ձերոց.

զի եկեսցեն աւուրք՝ յորս ասիցեն, երանի ամլոց և ըն-
դերաց այնոցիկ՝ որ ոչ ծնան, և ստեանցն՝ որ ոչ սնու-
ցին. յայնժամ ժամանակի սկսանիցին ասել լերանց՝ թէ
անկերուք 'ի վերայ մեր, և բլրոց՝ թէ ծածկեցէք զմեզ.
զի եթէ ընդ փայտ դալար զայս արարին, իսկ ընդ չորն
զինչ գործեսցեն:

Յայնժամ 'ի տեղւոջն ստուգաբանի կանխասացու-
թիւն մարգարէին Զաքարիայ, որդւոյ Բարաքեայ, և
նմանի մահ որդւոյն Յովիդայ՝ մահուն որդւոյն Աստու-
ծոյ: Քանզի Ովսիաս այս՝ այր արդար էր և թագաւոր
Իսրայէլի. առաջնորդէր ժողովրդեանն 'ի ճանապարհս
աստուածպաշտութեան, և երբեք ումեք մարդկան ինչ
ոչ մեղանչէր. այլ յորդորելով բովանդակեաց զսիրտս
ամենայն մարդոյ՝ ածել 'ի մի երկրպագութիւն Աստու-
ծոյ: Եւ մինչ դեռ խաղաղասէր վարուք կատարէր ըզ-
կեանս իւր, եկն ել 'ի վերայ նորա Փարաւոն Կաղ յերկ-
րէն Եգիպտացւոց, եդ ընդ նմա պատերազմ և սպան զնա
յերկրին հրէաստանի: Եւ քանզի արդարութեամբ էր
թագաւորութիւնն Յովսիայ, և միամօր առ 'ի ծննդենէ,
և զուր մեռեալ 'ի պատերազմի, խանդաղատէ մարգա-
րէն 'ի մահ թագաւորին. և յորդորեալ զամենայն ցեղն,
ածէ 'ի կոծ լալեաց. և նմանեցուցանէ զսաստկութիւն
կոծոյն կոտորելոց նռնենեաց 'ի դաշտին: Թուի ինձ ե-
թէ ցանկալի և վայելուչ է ծաղիկ նռնենեաց 'ի տեսիլ
աչաց մարդկան. և 'ի չնչել խորշակի, դիւրահոս վայ-
րաբեր լինի առ հասարակ. և այն որ էր յառաջ պայ-
ծառագոյն քան զամենայն ծաղիկս, յետոյ տրտում և
տխուր լինի քան զամենայն ծառս փշաբերս: Վասն ո-
րոյ և մարգարէն ծաղկի և պսակի նմանեցուցանէ զար-
դար թագաւորն. ունայն և թափուր մնաց ժողովուրդն
իբրեւ ծառս մրգաթափս որ անպիտան երեւին 'ի տե-
սիլ մարդկան:

Արդ չորիւք թուական ցեղիւքս, զոր էած մարգարէն
'ի կոծ թագաւորին, զարս առանձին և զկանայս առան-
ձինն, իբրեւ զօգի և զմարմին բոլոր բովանդակեաց 'ի
սուգ թագաւորին. որպէս և Տէր մեր ասելով ցկանայսն՝
դստերք Երուսաղէմի. և ցուցանէ նոցա թէ կոծելոց
են 'ի վերայ անձանց և 'ի վերայ ամենայն Իսրայէլի.
ոչ միայն արք և կանայք առանձինն՝ որպէս տան Դաւ-

թի և երից ընկերաց իւրոց, այլ ամենայն ազգք և ազինք՝ ոչ միայն մարդկան, այլ և վերին զօրութեանց՝ որպէս երկնի և երկնաւորաց, և են թուոյդ, և 'ի ձեռն չորից կոծին ամենայնքս: Եւ ընդէ՞ր արդեօք լինիցի այս. վասն զի ամենեքեան գտան յանողորմածութեան. Հրեայք 'ի զուր պարտաւորեցին և մատնեցին: Արդ որովհետեւ երկոքեան կողմանքն միաբանեցան 'ի չարութիւնս, 'ի ձեռն չորից տարերցս չորիւք մասամբք՝ չորք անկիւնք յերկրիս յահ մեծ և յահագին կոծ առ հասարակ ամենայն երկիր կոծեսցին, արք առանձին և կանայք առանձինն. Իսրայէլ կոծեսցի, զի անջատեցաւ 'ի ճշմարիտն Աստուծոյ. հեթանոսք կոծին, զի անջատին 'ի սուտ աստուածոյն իւրեանց. երկոքեան կողմանքն մտանեն 'ի սուգ և 'ի կոծ սաստիկ. և դառնայ կոծն ոմանց յանդիւտ կորուստ, և ոմանց 'ի կորստենէ յանանց լոյսն: Յայսմ վայրի կատարի ճշմարտութեամբ բան մարգարէին որ ասէ. "Կոծեսցին ամենայն ազինք առանձինն,,: Նա և անդէն առ խաչին Տեառն ոչ փոքր և դուզնաքեայ էր կոծն, այլ յոյժ մեծ և ահագին, որ զանցուցանէր զամենայն կոծով:

Ի նմին ժամանակի, ասէ, բարձրացաւ Տէր մեր 'ի վերայ խաչին. արեգակն խաւարեցաւ, վարագոյր տաճարին ցելաւ մինչեւ 'ի վայր, երկիր շարժեցաւ, վէմք պատառեցան, գերեզմանք բացան և բազումք 'ի մեռելոց յարեան, և յետ յարութեանն Տեառն մտին 'ի քաղաքն սուրբ և երեւեցան բազմաց:

Եւ ընդէ՞ր արդեօք թագեաւ արեգակն և կորեաւ լոյս գեղեցիկ տունջեանն, և թանձրացեալ տարրացաւ խաւարն 'ի վերայ երկրի: Յայտնի է, և կարեմք ոչ թագուցանել զճշմարտութիւնն. քանզի զհանդերձմն զերծին առին յիւրեանս, և զնա մերկ պրկեալ բեւեռեցին 'ի փայտին, ոչ կարացին վերին գունդքն հայել 'ի մերկութիւն Տեառն երկնի և երկրի: Սերովբէք որ յառաջ քան զխաչելութիւնն շուրջ կային զաստուածութեամբն նորա, չկարացեալ հայել յահագին փառս նորա, այլ երկուք թեւովք ծածկէին զերեսս իւրեանց, և երկուք թեւօքն ծածկէին զոտս իւրեանց, և երկուք թեւօքն համբարձեալք և վերաբերեալք կախէին զան-

պարտելի զօրութենէ նորա, և հրեղէն բերանովք զանհատ սուրբ սուրբ սուրբն ասելով անյագ ձայնիւքն զարարչական զօրութիւնն փառաւորէին: Այնպէս հրեշտակք և հրեշտակապետք և ամենայն դասք զուարթնոցն կան յահի և 'ի դողման. ոչ կարէին հայել և տեսանել զինքնագոյ բնութիւնն, տեղի տուեալ խորշին և թագչին յանմատոյց ճառագայթիցն յինքնածագ բնական լուսոյն. ոչ միայն պատուելով զարարչական զօրութիւնն, այլ և գիտելով զիւրեանց նեղութիւնն ոչ ժպրհէին հայել յանդգնաբար և մերձենալ և մօտել, զի մի ապականեալ ծախիցին յանմատոյց զօրութենէն: Իսկ այս է խնայութիւն արարչին ամենեցուն, պահել զարարածս անվնաս յիւրաքանչիւր բնութեանն, և առաւել 'ի ժամուն յայնմիկ՝ յորում ահագին մահ որդւոյն Աստուծոյ երեւէր վերնոց և ներքնոց, տարերքս սպասաւոր լինէին 'ի պատիւ խաչելոյն և 'ի ծածկոյթ զուարթնոց, որոց ոչ էին կամք հայել և տեսանել զանարգութիւն մահուն նորա: Միանգամայն և յամօթ առնելով զանհանճար ժողովուրդն՝ որ առանց ամօթոյ պատկառանաց հայէին 'ի մերկութիւն որդւոյն Աստուծոյ, մածեաւ թանձրացաւ խաւարն 'ի վերայ լրբենի դիմաց նոցա, զի չէին արժանի հայել և տեսանել զկեանս իւրեանց 'ի վերայ խաչին:

Արդ զայս օրինակ յառաջագոյն տեսեալ Մովսէս հոգւովն Աստուծոյ՝ կանգնեաց յանապատի անդ ատեան դատաստանի. քանզի 'ի վերայ փրկական բարեգործութեանց Աստուծոյ առ ժողովուրդն՝ փոխան նոքա ոչ գոհացողք, այլ հայհոյողք և տրտնջողք 'ի Մովսէս և յԱստուած: Բարկացուցին և դառնացուցին զսուրբ հոգին Աստուծոյ, և առաքեաց 'ի վերայ նոցա Աստուած օձս մահաբերս. առանց խնայելոյ հարկանէին և սպանանէին 'ի ժողովրդենէն զբազումս: Իսկ Աստուծոյ ըստ իւրում բարերարութեանն յիշեցեալ զուխտն որ էր ընդ սիրելիս իւր, գթացեալ ողորմի հարելոցն և մաղկատելոցն յօձից սատակմանէ: Հրամայէ Մովսէսի առնել օձ նիւթական, և բարձրացուցանել 'ի մէջ ժողովրդեանն. զի որ կարասցէ հայել և տեսանել զօձն Մովսէսի, ապրել կարասցէ 'ի դառն թիւնից սպանող օձիցն: Իսկ այս է յոյժ սքանչելի և իմացական տեսու-

թիւնք. օձ հրամայէ առնել Մովսէսի, և զնխեթոյն անուն 'ի մէջ ոչ բերէ. և ոչ մի ինչ՝ որ անկանի ընդ կանաւ ճարտարաց, և ոչ յայլոց ձեռակերտից արուեստից՝ որ կազմի առանց հրոյ փորձութեան. այլ միայն հրաման տուեալ, Արա քեզ, ասէ, դու օձ. քեզ քեզէն արա, ասէ: Եւ յայս հայեցեալ Մովսէսի յոյժ իմաստնանայ. տեսանէ զծածկութիւն իրացն հանդերձելոց, առնէ օձ պղնձի: Որպէս ինձ երեւի փոքր 'ի շատէ, ընդ աղօտ յայտնութիւն իմաստութեանն զանպարտելի զշնորհսըն Աստուծոյ պղնձոյ նմանեցոյց Մովսէս, զի անվընաս պահեսցին այնոքիկ՝ որոց ստացեալ իցէ հաւատովքն ճշմարտութեան զնա: Բայց զձեւ պղնձի օձին ոչ յայլ օրինակ բաղկացոյց, այլ 'ի թիւնաւորացն և 'ի սպանողացն:

Արդ տես զընտրութիւն որոշմանն. հարկանէին ամենեքեան, մեռանէին ոչ ամենեքեան. իբրու յայտ է ընտրութիւնք դատաստանին: Եւ քանզի յորկորստութենէ մտին մեղք յաշխարհ միջնորդաւ առաջին օձին, նոյն ցանկութիւն կերակրոց շարժէր զմարմինս անյագ ժողովրդեանն, յորմէ և գտաւ իսկ տրտունջ հայհոյութեան 'ի բերանս նոցա. հարկանէին և խածանէին յօձիցն՝ որ մահս 'ի վերայ հասուցանէր: Քանզի ոչ ինչ այլ գոյ նման ցանկութեան, որպէս զօձի բնութիւն խարագէտ և նենգաւոր. սողի և սպրդէ մտանել ընդ նեղ և ընդ նուրբ փապարս, մտանէ և ցուցանէ զգործ դառնութեան մահուն. որպէս իգական ցանկութիւն հեղու և տապալի 'ի տենչանս կերակրոց, շարժի և շռայլի յարբեցութիւն անյագութեան. ուստի բազմագլուխ գազան ցանկութիւնն զօրանայ 'ի վերայ զգայութեանցն մարդոյն և անյագ վարէ յիրս աղտեղիս: Դարձեալ և ձեւ սողնոյս այսորիկ շարժման ճշմարտապէս ցուցանէ զշարժումնս մերոյ բնութեանս, որպէս և ուսաք իսկ 'ի բնական ապանց՝ որ անստութեամբ տան հաւանութիւն իմաստնասէր մարդոց: Հինգ պատ առնու օձ 'ի սողել իւրում. իսկ առաջոյքն և զկնիքն ընուն զեօթներորդթիւն. և բերէ զնմանութիւն զմերոյ զգայութեանցս, երկուք աչօք և զուգիւք ականջօք, ճաշակաւորութիւն, խոհականութիւն և ներքին համք որովայնին՝ որ շարժէ զամենայն մարդ 'ի մարմնական ցանկութիւնս:

Արդ այս է տեղալ օձիցն 'ի ցանկացող ժողովուրդն՝ որ ամենայն մասամբքն զգայութեանցն յեղեալք էին 'ի ցանկութիւն, և գործով զկամս աղտեղութեանն կատարէին։

Իսկ ընդ հարկանել օձիցն՝ և մահու վախճանէին. և որ կոխեալն միայն լինէր 'ի շարժմանց ցանկութեանցըն, զխածանելն խածան 'ի թիւնաբեր օձիցն, այլ ընդ մահուամբ ոչ արկանէր։ Կարէք հայել և տեսանել զօձն Մովսէսի, վասն զի օձ էր որ սպանանէր, և որ սպանանէրն՝ նոյն և մաղկատէր. և 'ի ձեռն միւս օձին տեսլեան՝ մաղկատեալքն ընդունէին զառողջութիւն. և պատեցան զբարձրացեալ օձիւն մաղկատեալքն և մաղկատիչքն. և նա միջնորդեցաւ և եկաց դատաւոր երկոցունց կողմանցն, և շնորհեաց ոմանց զառողջութիւն կենաց և ոմանց զընդդէմն։ Մեծ էր և օձն պղնձի՝ որ կազմեցաւ 'ի ձեռաց իմաստնոյն Մովսէսի. այլ մեծութիւն զօրութեանն նորա զնմանութիւն բերէր զբարձրացեալ խաչին՝ որ կանգնեցաւ 'ի Գողգոթա, զոր Տէրն ինքնին յառաջագոյն օրինադրեաց ասելով. Որպէս բարձրացոյց, ասէ, Մովսէս զօձն յանապատին, սոյնպէս պարտ է բարձրանալ որդւոյ մարդոյ 'ի մէջ երկոցունց կողմանց, ոմանց յանդարձ մոլորութիւն, և այլոց 'ի ճանապարհ ճշմարտութեան։

Արդ խաւարեցաւ արեգակնն 'ի վերայ մոլորելոցն, զի չէին արժանի տեսանել զարեգակնն արդարութեան՝ որ բժշկէր զհարուածս աներևոյթ առաջին օձին։ Եւ որպէս յանապատին՝ այնոքիկ որ յոգխոն հարեալ լինէին 'ի ցանկական օձէն, մարմնովքն կատարէր զգործս ապականութեան, ոչ կարէին տեսանել զօձն Մովսէսի, քանզի չէին արժանի շնորհատուր թողութեանն, վասն այսորիկ մահուամբք անկեալ տապաստ յանապատին դնէին. իսկ ուր դուզնաքեայքն խոտորմամբքն ցանկութեամբքն ախտացեալք էին՝ 'ի դիւրագոյն գային 'ի բժշկութիւն, սոյնպէս և աստ 'ի գագաթն տեղւոյս պատեցան զխաչիւն Տեառն Յիսուսի անօրէնք և օրինաւորք, անարժանք և արժանաւորք։ Որ հնութեան կուրութեամբք հարեալ էին, ոչ կարացին տեսանել զմահն 'ի կեանս դարձեալ, և զմոլորութիւնն 'ի ճշմարտութիւն շրջեալ, զանէծսն յօրհնութիւն փոխանա-

կեալ, յառժամայն նեղութիւնս հայեցան, և 'ի հանդերձեալ հանգստենէն վրիպեցին ։

Իսկ նա ըստ իւրում մարդասիրութեանն շնորհեաց զառողջութիւն բժշկութեան երկոցունց կողմանց՝ որք խածեալք և խոցոտեալք էին 'ի թիւնից հին վիշապին, և շնորհեալ զառողջութիւն 'ի ձեռն հաւատոցն ական՝ որք կարեն հայել և տեսանել զորդին մարդոյ 'ի վերայ խաչին, որ ընկալաւ չարչարանս յիւր մարմինն. և զնոյն իմանայցեն որդի Աստուծոյ, արարիչ երեւելեաց և աներեւութից ։ Վասնզի ոչ եթէ իբրեւ զՄովսէսի օձն պղնձի է՝ որ կախեցաւ զփայտէ յանապատին, որ առ ոմանս զօրանայր յառողջութիւն, և առ ոմանս տկարանայր յանդարձութիւն մահու ։ Վասնզի նմանութիւն ասաց Տէրն մեր, և ոչ զորպիսութիւնն նմանութեան, որ ոչ բերէր զիսկութիւն ճշմարտութեանն ։ Զի եթէ բերէր, զի՞նչ եւս պիտոյ էր երկրորդին գալ մտանել 'ի նորա տեղին, զոր և մեծս Առաքեալ թարգմանէ մեզ զզօրութիւն խաչեցելոյն. "Այն որ ոչ գիտէր, ասէ, զմեղս՝ վասն մեր մեղք եղեւ, զի մեք լիցուք նովաւ արդարութիւն Աստուծոյ" և մեղքն օձիւն մտին յաշխարհ ։

Արդ ձեւացուցեալ զինքն Տէրն օձին տեսակաւ՝ տրպաւորեալ կերպարանեցաւ յեօթն թուական զգայութիւնս և յանհատ բարժանելի խոհականութիւնն. և եղեն մեզ, քանզի էաք ամենեքեան ընդ նովին մեղօք մաղկատեալք և մաղկատիչք. մաղկատեալք յառաջին հին թիւնից վիշապին, և մաղկատեալք յիւրաքանչիւր շարժմանց թուական գրոյ մասանց մարմնոյս ։ Ոակոտեցան աչք մեր յանարժանս հայելոյ, և ախտացան ականջք մեր յայլանդակս լսելոյ, ճաշակելիք մեր անյագ տենչալով, և շարժմունք մեր անասնական ցանկութեամբք, և խոհականութիւնս մեր հպարտ բարձրացեալք. և եղեաք ամենայնիւ և ոչ մի մասն արդարութեան ։ Իսկ այն՝ որ ոչ գիտէր զմեղս և հեռի է յայսմ ամենայնէ, 'ի կամս իւրոյ բարերարութեանն եղեւ մեղս՝ որ ոչ էր նորա, զի մեք լիցուք արդարութիւն նովաւ. որ գոյրն մեր՝ կորուսաք. արդ գտցուք նովաւ, զի մի՛ կորուսցուք այլ ։

Բայց այս է օձն պղնձի զոր բարձրացոյց Մովսէս

յանապատին. հարկանել ոչ գիտէ, զի չունի թոյնս 'ի բնութեանն. իսկ յայլոց ոչ հարկանի, զի անատանելի է զօրացութիւնն: Օտարս պատեցան հարեալքն և հարկանողքն. հարեալքն բժշկեցան և հարկանողքն պարտեցան, զի ջրեցին թոյնքն իւրեանց յանպարտելի զօրութենէ զօրացութեան մարմնոյն: Նա կախի օձս այս զփայտէ բարձրացելոյ. և ոչ յանկերեւոյթ և ոչ 'ի ծածուկ տեղւոջ, այլ 'ի յոյժ բարձրաւանդակի. ոչ թագուցեալ և ծածկեալ հանդերձիւք, այլ մերկ ամենայն մասամբք տեսլեանն կայ 'ի մէջ բազմութեան ժողովրդեանն: Յայտնի ամենեցուն է, և տեսանեն ոչ ամենեքեան. որ տեսանեն՝ ընդունին զառողջութիւն, և որք ոչն տեսանեն՝ հրաժարեն յաշխարհէս և յաշխարհէն կենաց:

Նա յիրաւի ուրեմն Տէրն մեր նմանեցուցանէ օձիս այսմ ոչ զոք յարդարոց և ոչ զոք 'ի մարգարէից և ոչ 'ի հարցն կատարելոց ումեք, այլ մարդոյ ումեմն միայնոյ և յոյժ միայնացելոյ, ոչ դուզնաքւոյ, այլ որդւոյ մարդոյ՝ որ ունի զբնութիւն ամենեցուն և 'ի վեր քան զամենեսեան, և արարիչ ամենեցուն և բոլորեցունց նորոգիչ, և ունի զմարմին մաղկատելի, այլ ոչ մաղկատող. և մաղկատի 'ի մարմին, այլ ոչ յոգի: Նա մարմին առացի 'ի ձեռս և 'ի յոտս, 'ի կողս և 'ի թիկունս, 'ի ծնօտս և 'ի գլուխս: Իսկ զգայութիւնք նորա տեսակ ունին զմերոյ թուականիս, այլ ոչ հարկանին ըստ մերոյ նմանութեանս:

Նա և առացից իսկ փոքր 'ի շատէ սակաւ բանիւք: Ի ձեռն աչաց յառաջ քան գործով մեղանչեն մարդիկ. իսկ Տէրն մեր Քրիստոս աչօք հայեցաւ 'ի կինն բազմամեղ քան զամենայն քաղաքն՝ յորում բնակեալ էր. ծանեաւ զնա, և ծանոյց զինքն նմա: Աչք առ աչս հանդիպեցան, և յորդահոս արտասուս վճժեցին յապաշխարութիւն. մեղքն մեռան և արդարութիւնն կենդանացաւ: Լսելեօք մարդիկ գերին 'ի լսելի երգս ձայնից. նովին լսելեօք եմուտ Տէրն մեր 'ի տուն քահանայապետին, և ետես անդ զմահ թագաւորեալ. և լուաւ անդ ձայնս ողբոց և կոծոց մեծաց, հալածեաց զմահ և լռեցոյց զձայնս կոծոցն յուրախութեանս: Ունէր և զճաշակութիւն, այլ միայն զհարկաւորաց և ոչ

զաւելորդաց. լցոյց զբազմաց կարօտութիւնս, և վաստակեցան Թիկունք բեռնակրացն 'ի պատարուն 'ի սակառիսն: Եւ 'ի ձեռն խոհականութեանն ընդ հօր 'ի բարձունս խօսէր, և յերկրի ընդ մարդկան շնորհալից խոնարհութեամբ շրջէր:

Եւ իբրեւ այս այսպէս էր ճշմարիտ, ոչ ինչ վրիպեալ գտայ ասելով՝ եթէ մարմին մեր վերագոյն գտաւ քան զբնութիւնս մեր: Եւ վասն այսորիկ ինքն զինքն նմանեցուցանէ պղնձի օձին իբրեւ մեղաց և արդարութեան. մեղաց՝ զի ըստ մերում գոյացութեանս երեւեցաւ, իսկ արդարութեան՝ զի ոչ շարժեցաւ ըստ մերոց զգայութեանցս. և այսու ամենայնիւ արկանէ զլսողսն 'ի վարան տարակուսի. "Որպէս Մովսէս, ասէ, բարձրացոյց զօձն յանապատին, այսպէս պարտ է բարձրանալ որդւոյ մարդոյ":

Առ ի՞նչ ասաց, ասէն, զայսպիսի բանս Տէրն՝ որ Աստուածն էր բնութեամբ և մարդ ճշմարիտ. արարիչ ըստ աստուածութեանն և արդար ըստ մարդկութեանն, ընդէ՞ր օձին նմանեցուցանէ զինքն: Ո՞ իմաստուն լսողդ, զբարիոք ասացեալդ 'ի Տեառնէ մի այլ ընդ այլոյ տգեղագոյնս լուր. օձի նմանեցոյց զինքն, ոչ խածանողին և հարկանողին, այլ անթիւնին և բժշկողին. քանզի 'ի ձեռն Թիւնաւոր օձին հարաք և մեռաք, իսկ 'ի ձեռն անթոյն օձին բժշկեցաք և ողջացաք: Ապաքէն մարմին է գոյացութիւն օձին, մարմին է և բնութիւնս մեր. մարմին մարմնոյ դիպեցաւ 'ի դրախտին, մարմին ընդ մարմնոյ խօսեցաւ, մարմին 'ի մարմնոյ խաբեցաւ, և Թիւնաւորն զանթոյնն եհար և սպան: Մարմին էառ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ոչ զԹիւնաւոր հին օձին, այլ զորոյ վիրաւորեցելոցն, և արար մահկանացու. մարմին մարմնոյ երեւեցաւ, անթոյնն Թիւնաւորին, անմխատացեալ մխատացելոյն, անչարչարելին չարչարացելոյն, անապականն ապականացելոյն. աստ ահա միանգամայն իսկ ասացից, անմահն մահկանացուին, և Աստուածն մարդոյն. սա՛ գոյացեալ և բաղկացեալ 'ի մարմին Թանձրացեալ և կախեալ զփայտէ՝ ոչ յանապատի և ոչ 'ի քաղաքի, այլ արտաքոյ քաղաքի և հեռի յանապատէ:

Եւ ամենայն աշխարհք և քաղաքք ժողովեալ շուրջ պատեալ զնովաւ հայէին ամենեքեան, և տեսանեն ոչ

ամենեքեան ։ Որոց տեսանենն՝ ընջլին թոյնք օձահա-
րութեանն, և առանց դեղոց ընդունին զկատարեալ ա-
ռողջութիւնն . այլք զգաստանան ցած հայելով և տե-
սանելով զպատուածութիւնն 'ի պարտաւոր մարմինն,
և 'ի ձեռն ականջաց լսեն նորին բարբառոյ աստուածու-
թեանն որ ասէ . « Հայր, 'ի ձեռս քո դնեմ զհոգի
իմ » ։ Իսկ ընտրող ճաշակելիք քաղցրանայ 'ի քիմս լսո-
ղաց բարբառոյն, և ցուցանէ քան զամենայն համս ա-
նոյշ կերակրոց, և 'ի ձեռն մարմնաւոր զգայութեանցս
առողջանան ոգիքն, և լուսաւորին միտքն և լնին յոյժ
սրատեսիլք . հային 'ի չարչարանս խաչին և տեսանեն
զանչարչարելի աստուածութիւնն Որդւոյ, և վերաբե-
րին հաւատք թռուցեալ և հասանեն առ Հայրն բոլո-
րեցունց, և յիշեն զՄովսէս և զօձն պղնձի, որ էր ա-
ռակ օրինակի արդեան ժամանակիս՝ որ կատարեցաւ 'ի
խաչելութեանն Քրիստոսի . վասն զի ոչ ամենեքեան
կարացին տեսանել ։ Այնոցիկ՝ որոց խաւարեալ էին
միտք իւրեանց, և հնութեամբ կուրութեամբն շլա-
ցեալ էին ոգիքն իւրեանց, և մարմնաւոր նախանձուն
հարան և մնչեցան 'ի մարմինս իւրեանց, գայթագղե-
ցին և դղրդեցան առ վիմին հաստատութեան, որդե-
լաւ յաչաց նոցա տեսիլ ճառագայթից լուսոյն՝ մեծա-
փայլ խաչին Քրիստոսի, որ ծագեաց 'ի մէջ ամենայն
արարածոց ։

Վասն այսօրիկ երեւեցաւ 'ի տեղւոջ անդ իրք ահա-
գինք և գործք մեծամեծք և սքանչելիք . քանզի վարա-
գոյրն՝ որ արար Մովսէս հրամանաւն Աստուծոյ և ձր-
գեաց 'ի ներքս 'ի խորանին, զի իցէ միջնորդ՝ անե-
րեւոյթ տեսակ պահելով զսուրբսն սրբոց, արտաքին
խորանին՝ յորում հանապազորդ ղեւտացիքն կատարէին
զպաշտօնսն իւրեանց, ապաքէն զնմանութիւն բերէր
զերկնից երկնին, յորում կարծեաց զընութիւն անե-
ղին . իսկ արդ զի՞նչ եւս պիտոյ էր վարագոյրն, որ ծած-
կեալ պահէր զսուրբ սրբոցն՝ զխորհուրդսն աներեւոյթ
զօրութեանն ։ Իսկ այսօր ոչ 'ի խորհուրդն ձեռնար-
կեալ, այլ 'ի բուն իսկ տէր խորհրդոյն, այն որ եկն
յայտնել և ցուցանել զխորհուրդն իբրեւ զժամանա-
կեան օգտութիւն, զի ծանիցեն և ընկալցին զանժամա-
նակեան տէրն խորհրդոյն . և նոցա ոչ միայն չընկալեալ,

այլ և մերկ մահուամբ 'ի փայտի բեւեռեալ. վասն որոյ և հերձաւ վարագոյրն, զի 'ի պատառել վարագուրին ունայն և թափուր մնաց սուրբ սրբոցն, քանզի ել գնաց սուրբ Հոգին 'ի տաճարէ անտի: Եւ փոխանակ զի ոչ պատառեցին զհանդերձս իւրեանց 'ի վերայ արեանցն զոր գործեցին, էարկ վարագոյրն զօձիսն 'ի վերայ Տեառնն իւրոյ՝ որ պահէր զխորհուրդ պատուոյ նորա: Ի պատառել վարագուրին պատառեսցին սիրտք քահանայապետիցն, յորժամ տեսցեն զպատիւ սրբութեանն՝ որ յերկուս ցելաւ, և ամաչեսցեն առաջի ամենայն ժողովրդեանն՝ եթէ ոչ 'ի մարդ ձեռնարկեցին, այլ 'ի տէր տաճարին: Եւ որպէս պատառեցաւ վարագոյրն, ցուցանելով նոցա եթէ այսուհետեւ ոչ ինչ եմ ես պիտոյ 'ի ծածկոյթ արուգ սրբութեանցն, յորում ոչ եւս լիցին զօրութիւնք երկնաւորք, քանզի հեռացան անջատան նոքա 'ի Տեառնէն երկնի և երկրի, սոյնպէս և երկիր շարժեցաւ 'ի ներքոյ բնակչաց անօրէն ժողովրդեանն: Քանզի մասն է արեգակն երկնի, միով մասամբ որ արգել զլոյսն իւր յարարածոց՝ ամենայն մասունք երկնի ընդ նմին խռովեցան և զգեցան սուգ: Եւ քանզի մասն է վարագոյր բերոց երկրիս, ընդ միում մասին ամենայն մասունք երկրիս երերեալ դողացին՝ ոչ դուզնաքեայ, այլ յոյժ սաստիկ և ահագին. և այնչափ ուժգին, մինչ զի և ոչ միայն թանձր հողն սորա պայթեաց պատառեցաւ, այլ և վէմք մեծամեծք հիմնացեալք՝ հերձան և պատառեցան:

Միաբանեցին երկինք և երկիր 'ի մահու միածնին Աստուծոյ. և յիրաւի արժանապէս: Քանզի յորժամ գայր յերկնից թագաւորն մեծ 'ի փրկութիւն և 'ի կենդանութիւն, զերկինս ոչ շարժեաց և զերկիր ոչ դողացոյց, այլ հեզ և հանդարտ և յոյժ խաղաղութեամբ, որպէս և Հոգին սուրբ երգեաց 'ի բերանն Դաւթի. "Իջցէ իբրեւ զանձրեւ 'ի վերայ գեղման„. քանզի 'ի վերայ գեղման տեղալով, ոչ լինին ձայնք բարբառոյ և ոչ բաբախմունք ճայթմանց և ոչ թնդիւնք դղրդմանց, այլ յոյժ քաղցրութեամբ անլուր և անտեսակ ձայնից: Եւ գեղմն, ասէ, ոչ հատանելով և ոչ կտրելով 'ի կենդանւոյն զգեղմն և 'ի բաց դնելով, զի այս և սովորութիւն իսկ ոչ է մարդկան. այլ մինչ 'ի կենդանւոջն է,

և իջանէ անձրեւ 'ի վերայ նորա, զփուշն սրբէ, զաղտն լուանայ, զկիղն անձեցուցանէ, զկենդանին զուարթացուցանէ։ Ըստ նմին նմանութեան սուրբ Հոգին 'ի նըմանութիւն ցօղոյ ազդեցաւ 'ի սուրբ կուսին զօրութեամբ մեծաւ, անլուր անտեսակ երեւոյթ տեսակ. որպէս կամեցաւ կատարեաց զարժանաւորութիւնն խաղաղութեամբ առանց խռովութեան և շարժման։ Եկն եհաս 'ի տեղիս յայս՝ ուր արժան էր զայն խաղաղութիւն առնել. և ոչ կամեցան, այլ զընդդէմսն կատարեցին 'ի վերայ նորա։ Տեսանես, զի նոյնք ընդդէմ առ նոսին հատուցաւ։

Բայց վասն զի Աստուած է, ոչ գոն նորա ընդդէմք, այլ յամենայն 'ի կողմանց ամենայնիւ օգտութիւնք երեւին. որպէս և 'ի շարժել վիմացն և 'ի պատառել երկրին՝ բացան, ասէ, գերեզմանք. և բազումք 'ի մեռելոց յարեան 'ի գերեզմանաց իւրեանց, և եկին մտին 'ի քաղաքն սուրբ և երեւեցան բազմաց։ Զանուն ոչ եւս ասէ զյարուցելոցն, և ոչ զտունսն իւրաքանչիւր ցուցանէ, նա և ոչ զթիւ յարուցելոցն յայտ առնէ. այլ միայն բազում ասելով. և բազումքդ ոչ սահմանեալ զատանին 'ի թուական քանակաւն, այլ 'ի միմեանց առնուն զառաւելութիւն. որպէս հինգքն առ երիւքն, իսկ տասունքն առ հնգիւքն, այլ եւս բազումք առ տասամբքն. և սահման բազմութեան ոչ յանգի. եթէ մինչեւ 'ի կատարումն թուականին հասցես, անթիւ քան զթուականն բազմագոյն մնայ։ Բայց զի յարեանն ճշմարիտ, անսուտ աւետարանագիրն գրով հաստատեաց և զյարութիւնն և զբազմութիւնն. և որպէս 'ի մէջ ասաց բազումն, նովին բանիւ անորիշ ասաց և զերեւումն։ Բազմաց, ասէ, երեւեցան. զանուն ուրուք յայտ ոչ առնէ։

Ամենայն ինչ նորոգ և սքանչելի գործք երեւեցան 'ի խաչելութեանն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, քանզի նոր իսկ աշխարհ գործելոց էր. և ասացից փոքր 'ի շատէ զնոյն իսկ զգործն՝ որ անդէն առ խաչիւն գործեցան, ոչ զիմ և ոչ զայլոց 'ի մարդկանէ, այլ զնորին Տեառն յառաջագոյն ասացեալ բերանով սուրբ մարգարէին. "Եւ եղիցի օրս, ասէ, օր մի մեծ, զի ոչ լոյս իցէ և ոչ խաւար, այլ ցուրտ և պարզ. և օրն այն յայտ-

նի Տեառն, զի ոչ տիւ իցէ և ոչ գիշեր. և ընդ երեկս եղիցի լոյս”: Տեսանե՞ս զյայտնութիւն Հոգւոյն սրբոյ. 'ի սկզբանէ արարածոց այսպիսի օր ոչ դիպեցաւ, բայց միայն 'ի խաչելութեան Տեառն. զի ոչ լոյս իցէ օրն, վասն զի թաքեաւ արեգակնն. և ոչ խաւար իցէ, ասէ, վասն զի չեւ էր ժամ գիշերոյն հասեալ. քանզի 'ի հասարակ աւուրն եմուտ արեգակն 'ի մայրն, խաւար առաց և ոչ գիշեր. զի արգելան ճառագայթք ջերմութեանն, ցուրտ ասաց և ոչ ջեր, և ցուրտ՝ ոչ դուզնաքեայ, այլ պարզ, հուրաստաց, նմանեալ է անպտղաբեր ձմերայնւոյ. և ձմեռն նշանակէ ատելութիւն չարին, որ և գործեցաւ իսկ առ ժողովուրդն: Եւ դարձեալ ասէ. “Ընդ երեկս եղիցի լոյս”: Երեկուն ժամդ դրացի և մերձաւոր է խաւարային գիշերւոյ, որպէս և աշխարհս մերձեալ էր 'ի վախճան կատարածի, և դրացի էր անվախճան խաւարին. և ընդ երեկս մեծի աւուրն անխաւար լոյսն 'ի խաչէն ծագեաց յոգիս այնոցիկ՝ որոց կարացին տեսանել զաստուածութիւն որդւոյն Աստուծոյ, և ընդ նմին լուսաւորեցան, զի խաւար այլ 'ի վերայ նոցա մի՛ տիրեսցէ:

“Եւ օրն այն, ասէ, յայտնի Տեառն”: Եւ յայտնութիւնն այն ոչ միով մասամբ կամ երկուք, այլ ամենայն լրութեամբ բազմութեանն: Եւ զի՞նչ մեծ յայտնութիւն աւուրն քան զայն, զի ամենայն ինչ նոր եղեւ և ահագին, և խաւար նոր և գիշեր նոր և օր նոր. նոր է և պատառումն վարագուրին, նոր է և շարժումն երկրին, նոր է և պատառումն վիմացն, նոր է և բացումն գերեզմանացն, նոր է և բազմութիւն յարութեան մեռելոցն, նոր է և յայտնութիւնն նոցա որ երեւեցանն բազմաց, նոր է և սուրբ քաղաքն: Եւ յիրաւի նոր ասացի զամենայն. քանզի նոր է խաչն, նոր էր և խաչեցեալն և նորոգիչ էր ամենայն նորոգելոց. վասն այսորիկ ոչ գրեաց զանուանս յարուցելոցն, և ոչ զայնոցիկ՝ որոց երեւեցանն. քանզի նմանութիւն և օրինակ էին աւուրն յարութեան մեծի, որք ոչ եւս մի մի յառնելոց են, և ոչ մասն 'ի բազմաց, այլ ամենեքեանս միանգամայնք առանց թուոյ և անուանակոչութեան: Բայց բազում անգամ զնորն ասելով, ոչ ինչ վրիպեալ գտանիմք 'ի նորագործ իրաց, որ ամենայն ինչ նորպէս եղեւ:

Իբրեւ տեսին, ասէ, Հրեայքն եթէ խոնարհեցոյց
զգլուխ իւր Քրիստոս եւ արձակեաց զհոգին, աղաչե-
ցին զՊիղատոս վասն շաբաթուն, զի մի ագցին 'ի խա-
չին վերայ. այլ զի զբարձմն բեկցեն եւ իջուսցեն 'ի խա-
չէ անտի: Եւ եկեալ զինուորքն զաւազակացն բեկին.
իսկ իբրեւ եկին առ Յիսուս, տեսին զի նա կատարեալ
էր, եւ ոչ ինչ մատեան 'ի նա. բայց մի ոմն 'ի զինուո-
րացն տիգաւ եհար զկողս նորա, եւ ել անտի վաղվաղա-
կի արիւն եւ ջուր:

Ահա դարձեալ նոր եւ սքանչելի տեսակ: Ո՞վ երբեք
ետես 'ի մարդկանէ, որ յետ մահուան իւրոյ խոցեսցի
'ի կողս իւր 'ի դի անձին իւրոյ, եւ ելանիցէ անտի ա-
րիւն եւ ջուր: Յառաջ քան զայս չիք եղեալ, եւ զկնի
այսորիկ ոչ լինիցի, բայց միայն 'ի մարմինն Յիսուսի
Քրիստոսի: Եւ այս ոչ արտաքոյ մարգարէութեանն,
այլ նորուն խոցեցելոյն հոգւով. “Դարձցին, ասէ, եւ
տեսցեն զոր խոցեցինն„. եւ հարցանեն ոչ խոցողքն, եւ
ոչ տեսանեն զայն զոր խոցեցինն. այլք խոցեն եւ այլք
տեսանեն եւ ընդունին ոչ զխոցեալ, այլ զողջացեալ եւ
զողջացուցիչ վիրաց, եւ զվիրաց ոչ միայն զերեւելեաց,
այլ եւ զաներեւոյթ հարուածոց, եւ 'ի դեղս արիւն ա-
րեան, եւ ջուր ջրոյ: Եւ եթէ կամիս, ընկալ ճշմարտա-
պէս. քանզի ջուր է գոյացութիւն ամենայն կենդա-
նեաց, եւ արիւն է կենդանութիւն ամենայն մարմնա-
ւորաց. ընդ արեանն խառնեալ է մասն հոսման ջեր-
մութեան, եւ ընդ ջրոյ զանգեալ է յոյժ հողոյս զօրու-
թիւն, եւ ընդ երկոսին տեսակս միաբանին ամենայն տա-
րերքս եւ ցուցանեն զգոյացութիւն մարմնոյն Աստուածն
բանի, զոր էառ ճշմարտութեամբ զբնութիւն մերոյ
գոյացութեանս զոր ինքն ստեղծ յանշուշտ արարչու-
թեանն:

Արդ ելեալ անտի ջուր 'ի լուացումն աւազանին սըր-
բոյ, եւ արիւն բաժակ նորոյ ուխտին. զի ջրովն սրբես-
ցուք զանձինս 'ի մեղաց, եւ արեամբն չարչարակից լի-
ցուք մահու խաչի նորա: Զգրեալսն կատարեցին ակա-
մայ վասն անձանց իւրեանց եւ յօգուտ հեթանոսաց.
մարգարէք՝ եւ ոչ անձանց կամօք ճշմարտութեանն, մր-
շակք՝ եւ զայլոյ երկիր գործեն, վաճառականք՝ եւ այլում
ժողովեն մեծութիւն, առաջնորդք՝ եւ այլում բանան

պտուղն կենաց, ընթերցողք՝ և այլում մեկնեն զբանս կտակարանաց և զառակս Ճշմարտութեանն :

Աղաչեցին, ասէ, զՊիղատոս, զի մի ազցին ՚ի վերայ խաչին : Բարուոք հրաժարէք յայնմանէ, որ բարձաւ ՚ի ձէնջ և տուաւ հեթանոսաց : Իսկ քանզի ոչ կարէ մահ լինել դրացի կենաց, հրաժարէք և դուք յերեկուն ժամուդ ՚ի կենաց փայտէդ, զի ծածկեսջիք ընդ ստուերաւ գիշերոյդ զոր սիրեցէքդ . ընդ նմին լիցի ձեզ բնակութիւն : Զանարժան խնդրուածսդ զոր աղաչեցէքդ զդատաւորդ, զի զպարծանս բեկցեն և խջուսցեն ՚ի խաչէ անտի, երկհազարեան և եւս աւելի ամօք զոսկր գառինն ոչ կարացեր բեկանել ըստ հրամանին Մովսիսի, և զգառնդ Աստուծոյ միանգամ և խաչեցեր՝ և բեկանել կամիս . զոր ոչ առնու յանձն քեզ սուրբ Հոգին, զայդ կամօք քովք կատարել կամիս, զոր ոչ կարես : Բայց առ ինչ արդեօք զայս առնիցէ Տէր . զանձն ՚ի մահ տայր չարչարակից լինել աշխարհի, զոսկր բեկանել ոչ ունի յանձին . զոր ասացից փոքր ՚ի շատէ :

Ըստ բնութեան և ըստ բարոյականին գոյացութիւն մարմնոցս մերոց յերկուց է բաղկացեալ, կակղութիւն մսոյ, և անդամք գործական փորոտւոյ նիւթ էգ մասին, և ունի զպատճառ կենաց ՚ի ձեռն սննդական մարմնոց : Իսկ ջիլք, նեարդք, և շունչ և ոսկերք, զօրութիւն արու գոյացութեան . այդ է որ ըստ բնականին : Իսկ բարոյականն, նիւթ իգական մասինն է, բովանդակ մարմնաւորութեանն, և հաստութեան ջլաց և ոսկերաց արուացեալ իմն պնդութեամբ . նմանի անախտ իմն պնդութեամբն անբեկանելոյ երկնային մտաց : Վասն որոյ և նիւթականն՝ անասուն մասինն գառանցն յԵգիպտոս տուեալ լինին ՚ի կերակուր ժողովրդեանն . իսկ ոսկերքն հանդերձ այլովք մասամբքն ՚ի խոհականութեանն նմանութիւն պահեալ լինի առանց բեկանելոյ և փշրելոյ : Վասն որոյ և գառինք իսկ զենանին պատարագ Աստուծոյ, և ՚ի Ճենճեր ծխոյ և ոչ ՚ի կարօտութիւն լման, այլ միայն յիմաստութիւն և ՚ի խորհուրդ կատարեալ ՚ի հանդերձելոյ լինելութեանն, որպէս երբեւի իսկ ՚ի պատարագել գառինն Աստուծոյ : Զբոլոր զինքն ետ ՚ի ձեռն մարդկան, և զբոլոր մարդն աւանդեաց Աստուածն բանի . զբոլոր զկանխագիր բանսն մարգարէիցն

յանձին իւրում կատարեաց, և բոլոր զքեզ յԱստուած կատարեսցէ։

Բեկին, ասէ, զբարձս աւազակացն. և առ Յիսուս եկին, ասէ, և տեսին զի նա կատարեալ էր։ Անսուտ բան և ճշմարիտ տեսակ այս է. զի որպէս կատարեալ էր ըստ աստուածութեանն, նոյնպէս կատարեալ էր ըստ չարչարանացն, կամօք և ոչ ակամայ. վասն այսորիկ, “Ոսկր նորա մի բեկանիցի”։ Իսկ խոցումն ՚ի կողն զոր ընկալաւ՝ աղբիւր բղխման աշխարհի. նորոգումն ջրոյն կենդանութեան, որ առաւել եւս տնկագործեսցէ, ոչ զծառս պարտիզին յԵդեմ, այլ զծառս կենդանիս յեկեղեցւոջ Աստուծոյ։

Դարձեալ յետ այսր ամենայնի կատարման և թաղումն Յիսուսի ընդունի անշուշտ վկայութիւն յազգէն Հրէից. զի միաբանեցին ամենեքեան վկայք մահու որդւոյն Աստուծոյ, այլ ոչ ամենեքեան միաբան կցորդք կենաց նորա։ Եկն, ասէ, Յովսէփ այր արդար, ազատ ըստ բնութեան, և մեծատուն ըստ աշխարհի. ՚ի մարդկանէ ծածկութեամբ, և յԱստուծոյ յայտնապէս։ Սա ոչ միայն ՚ի չարութեան գործս նոցա ոչ գտանի, այլ և ոչ ՚ի խորհուրդս ամպարշտութեան նոցա։ Եւ արդ տես զառնն քաջութիւն. ՚ի ժամուն յորում ամենայն ոք միաբանեալ էր և ՚ի բաց կացեալք յԱստուծոյ, սա միայն վառեցաւ ՚ի ծածուկ զինուք առաքինութեան, և առ իւր զբազմագունդ զօրացն հաւատոց. քաջալերեցաւ յանձն իւր, և յառաջ քան զմտանելն ՚ի պատերազմ ետես զյաղթութիւնն՝ եթէ լինիմ պատերազմակից Աստուծոյ և յաղթեմ մարդկան։ Բայց գիտեմ, զի ոմանք լսելով զայս՝ ոչ ինչ զարմանան ՚ի վերայ բանիցս ասացելոց. և այս է սովորութիւն անփորձ մտաց։ Մ՛ի դու, եղբայր, զայս փոքր ՚ի շատէ ինչ համարիցիս. քանզի ահագին էր տեղին և երկիւղագին ժամն, և կասկած մահու ՚ի վերայ այնորիկ՝ որ իշխէր առնել եթէ յարդարութեան մեռաւ այրն. ոչ միայն յաղօթիցն հանէին զնա քահանայքն, այլ և քան զաւազակս չարամահ սպանանէին։ Նա և աւետարանագիրս ոչ դուզնաքեայ պատմէ զառնս լաւութիւն, այլ ուժգին և մեծապէս։

«Այն, ասէ, Յովսէփ Արիմաթացի. համարձակեցաւ եմուտ առ դատաւորն, և խնդրեաց զմարմինն Յիսուսի»: Իբրեւ լսիցես զհամարձակեցաւն, մի դուզնաքեայ համարիցիս, այլ ոգւով և մարմնով ճգնութիւն. ոգւով, զի մեծապէս հաւատք պիտոյ էին 'ի ժամուն. քանզի ոչ իբրեւ զմարմին մարդոյ լոկոյ բառնայր, այլ իբրեւ զմարմին որդւոյ Աստուծոյ: Դարձեալ ըստ մարմնաւոր կարգի ոչ միայն 'ի ժողովրդենէն էր նմա երկիւղ մահու, այլ եւս առաւել 'ի դատաւորէն և 'ի սպասաւորաց նորա. քանզի ածէին զմտաւ՝ եթէ զինչ են խնդիրք առնս այսորիկ. զայր մի՝ որ յայնչափ բազմութենէ վկայեցաւ եթէ մահապարտ է, որ և ըստ օրինի յանցաւորաց խաչեցաւ և մեռաւ, և սա եկեալ իբրեւ զանյանց և զանմեղ 'ի զուր մեռեալ՝ զմեծ և զճշմարիտ վկայ Աստուծոյ խնդրէ. գուցէ վաղիւ և 'ի մեր վերայ հասանիցէ պատիժ պատուհասի:

Զայս ամենայն զմտաւ ինչ ոչ ած այրս այս. այլ որպէս յառաջ հաստատեալ էր 'ի ճշմարտութիւնն Քրիստոսի, եւս առաւել 'ի մահուն հաստատուն եկաց: Այս բարձեալ զմարմինն Յիսուսի, պատէ ոչ ձեպով և վարկպարազի, այլ յոյժ խորհրդով և զօրութեամբ 'ի կտաւս սուրբս և պատուականս, և զմուռս բազում հանդերձ անուշահոտ խնկովք. և այս ոչ արտաքս քան զնախախնամութիւն Հոգւոյն սրբոյ լինէր: Այս և զոսկին զոր յառաջ ընկալաւ 'ի մոգուցն, փոխանակեաց 'ի ձեռն պատկերակերպ դահեկանին, ասելով ցորդիս ժողովրդեանն. Յորում կայսեր կերպարանք գտանի, այդ նմա անկ է. իսկ յորում իմ կերպարան երեւի, այն իմ է: Քանզի մարդիկ՝ որ են յիշխանութեան, անդրիս կանգնեն յանուն իւրեանց, և զդէմն նկարեն 'ի դահեկանի, զի 'ի ձեռն պատկերագիր նկարուն ոսկին մեծարեալ և յարգեալ լինի յաշխարհի: Այս զիմ պատկերս կենդանի 'ի կենդանի դէմս մարդոյ նկարեցի. և ոչ ոք բերէ յաշխարհի զնմանութիւն Աստուծոյ, բայց միայն մարդ. ոչ ումեք երեւի Աստուած, բայց միայն մարդոյ. ոչ զոք սիրէ Աստուած յերկրէ, բայց միայն զմարդ. Աստուած միայն մարդասէր, և մարդ միայն աստուածասէր. Աստուած մարդոյ, և մարդ Աստուծոյ. վասն մարդոյ Աստուած մարդացեալ, և վասն Աստուծոյ մարդ

աստուածացեալ։ Վասն այսորիկ երթայք տուք զկայսերն կայսեր, և զԱստուածոյն Աստուծոյ։

Զայս պատուիրանս յառաջագոյն ընկալեալ Քրիստոսի յերկրպագութենէ մոգուցն, զոսկին՝ որպէս ասացի՝ ՚ի պատիւ թագաւորութեանն. իսկ զմուռս և ըզխունկս ՚ի մահ վիրաւորելոյն և թաղելոյն։ Որ պատեցաւ ՚ի կտաւս ՚ի ձեռաց մարդկան, զի դու պատիցիս ՚ի զգեստ պատմուճանի փառաց որդւոյն Աստուծոյ։ Զմռսեցաւ դի մարմնոյ նորա, որ է տեւողութիւն անխախտելի պահուն յերկար ժամանակաց, զի զմռսեսցէ ըզքեզ ՚ի տեւողութիւն ոչ ՚ի ժամանակեան, այլ յանմահութիւն նորոգման սուրբ Հոգւոյն։ Ննջեցաւ իբրեւ մարմին մեռեալ, այն որ ննջելոցն է զամենեսեան ՚ի հոտ անուշութեան, որ բուրէ ՚ի լուսոյն կենաց. և եդաւ ՚ի գերեզմանի նորում, յորում ոչ էր ինչ բնաւ ամենեւին եդեալ։ Արդ փոխանակ գերեզմանիդ տարցի զքեզ ՚ի քաղաքն երկնաւոր՝ որ առանց ձեռագործի կազմեալ իցէ։

«Եւ եդ, ասէ, վէմ մի մեծ կափարիչ ՚ի դուրս գերեզմանին և գնաց»։ Բարիոք առնես, ով տէր Յովսէփ, զի լինիս վկայ ճշմարիտ թաղման Տեառնդ. քանզի գիտես զժխտողութիւն ազգիդ քո, թէ դուցէ յուրաստ լինիցին վաղիւ՝ եթէ բնաւ իսկ ոչ եդաք զնա յայդմ գերեզմանի. քանզի բազումք են որ ստեն, բազումք էք և դուք որ ոչ գիտէք ստել։ Նիկոդիմոս գործակից քո, դա է որ ընդ Տեառնն իսկ ճարտարագոյնս մտանէր ՚ի քննութիւն բանից։ Քանզի վկայեն քեզ փորողք գերեզմանիդ, վկայեն և վաճառականք կտաւուցն, վկայեն և հարիւր լիտր զմռսոյն, վկայեն և դիազարդքն՝ որ ննջեցին զմարմինն տէրունեան. վկայեն և ձեռք օգնականացն՝ որք զմեծ վէմն յեցուցին ՚ի դուռն գերեզմանին, եթէ արժան իցէ նմա գերեզման ասել և ոչ յարութիւն կենաց։

Ով տէր իմ Յովսէփ, յիշեցի և զմեծ վկայն քո զդատաւորն, առ որ չոգայր և խնդրեցեր իշխանութիւն բառնալ զմարմինդ։ Իսկ արդ այդ զի՞ առնէ. եթէ ամենեքեան ընդ նոսա միաբանեսցեն ՚ի ստութիւն, յորժամ և դու զյարուցեալն ՚ի մէջ ունիցիս, զինչ ունիցին խօսել։ Եթէ պնդեալ յամառեսցեն ընդդէմ քո,

որպէս և սովոր իսկ են, ասասցես ցնոսա՝ թէ որպէս կապանօք ետուք ցՊիղատոս, և Պիղատոս ետ ցզինուորսն, և զինուորքն ետուն ցխաչն, և խաչն ետ ցգերեզմանն, արդ ձեզ յընտիր լիցի, թէպէտ տուք ցիս 'ի գերեզմանէն զմեռեալն, թէպէտ առէք ընկալայք զյարուցեալն. ապա եթէ մի յայսցանէ ոչ առնէք, ձեր այլ ինչ գործ ոչ է, այլ հրաժարել և 'ի բաց գնալ 'ի յարուցելոյս, զոր և արարէք իսկ: Արդ դու տէր իմ Յովսէփ, խնդա և ուրախ լեր. քանզի մեծ էր Յովսէփն առաջին՝ արդարև մեծամեծ յայտնութեանց արժանի: Ի Յովսէփայ 'ի Յովսէփ ձգտեցաւ մեծութիւնն. նա վկայ անարատ ծննդեանն սուրբ կուսին, և սա վկայ թաղման սորին. և յերկուց ճշմարիտ վկայից երևեսցի այլ բազմութիւն վկայից լուսաւոր յարութեան նորա:

Դարձեալ եկին, ասէ, քահանայքն առ Պիղատոս. Տէր, ասեն, յիշեցաք՝ զի ասէր մոլարն այն, եթէ յետ երից աւուրց յառնեմ 'ի մեռելոց. արդ հրամայեա զի պահեսցեն զգերեզմանն նորա, գուցէ դաւ ինչ յաշակերտաց նորա լինիցի, և բազումք զհետ համբաւոյն մոլորեսցին: Տուեալ ձեզ, ասէ, դաս մի զինուորաց. երթայք՝ որպէս և գիտէք՝ զգուշացարուք: Եւ զայս հրաման առեալ 'ի դատաւորէն՝ կնքեցին զգերեզմանն մատանեօք երկոցունց կողմանցն: Ով նախահոգակ քահանայք, բարիօք առնէք՝ զի զգուշանայք. որ զանձինսդ ոչ կարէք պահել, այլում պահանորդք կամիք լինել. և դուք զարտուղի էք 'ի ճանապարհէն, և նմա մոլար և մոլորեցուցիչ կարդայք. ուստի գիտէք եթէ մոլար է նա, և ոչ արժանի իսկ է ամենեցուն ցուցանել զճշմարիտ ճանապարհն. թերևս այպանիցէք դուք զմոգսն, որք մոլորեցուցին զՀերովդէս, քանզի և օգուտ իսկ չէր զնա կացուցանել 'ի վերայ ճշմարիտ ճանապարհին:

Յիշեցաք մեք, ասեն, զմոլարն զայն: Թուի ինձ՝ եթէ այլ ընդ այլոյ տայք զպատասխանիդ. մոլար ոչ է արժան ասել ձեզ նմա, այլ մոլորեցուցիչ զթիւրդ. որպէս ասէ. " Մոլորեցան նոքա յանապատի և ոչ 'ի ճանապարհի ": Եւ առ ինչ արդեօք ասիցի 'ի Հոգւոյն սրբոյ, հոգեկիր պատմութիւնն իսկ յայտ առնէ. " Չառաջնորդեաց նոցա, ասէ, ընդ Փղիշտ ընդ կարճոյ ճանապարհն. այլ շրջան առին յանապատին զքառասուն

ամ,;․ զի ամենայն յանցաւորութիւնն սպառեսցի յանապատին, և ապա խրատեալք արժանի լիցին մտանել յայն երկիր պարգեւաց։ Որպէս կարծեմ, մոլորեցայք դուք ոչ յանապատի, այլ 'ի քաղաքի․ ոչ յերկրէ խոստմանց, այլ 'ի Տեառնէն երկնի և երկրի․ և արդ եկեալ առ դատաւորն զնա մոլար կարդայք։ Որ մոլորեցոյց, խօսի՞ ճշմարիտ․ եթէ մոլար է, թոյլ տուք, ոչ ինչ պարտ է կասկածել 'ի բանիցն նորա։ Ապա եթէ զոր յառաջն ասէր՝ ճշմարիտ է, և ոչ կարէք յուրաստ լինել․ նա և եթէ լինիք եւս, նոքա բազմագոյնք են քան զձեզ՝ որ տան վկայութիւն նշանագործութեանն․ ոչ միայն կենդանիք ողջացեալք 'ի ցաւոց, այլ և հրաժարեալք մահուամբ և այսրէն դարձեալք յարութեամբ․ և ոչ միայն որդիք ազգիդ ձերոյ, այլ և բազումք 'ի հեթանոսաց և եւս բազմագոյնք 'ի դիւաց։ Արդ եթէ այսք ամենեքին ոչ մոլար զնա ասեն, այլ դարձուցիչ մոլորելոց, ապա եթէ ձեզ միայն թուի մոլար, երթայք զգոյշ լերուք, գուցէ զեղծիցիք, և ապա այլ ընդ այլոյ յետոյ եւս պատճառս խնդրէք։ Հաւաստիկ դատաւորդ առ ձեզ բարերար երեւեցաւ․ զամենայն զինչ ասացէք, զկամս չարութեան ձերոյ կատարեաց․ և այժմ ոչ մի այր կամ երկու տայ ձեզ օգնական, այլ բովանդակ գունդ մի զինուորաց․ և զգունդն ոչ եթէ հասարակազգիս, այլ 'ի ձեռն առաջնորդի և պետի՝ որ մեծ և հաւատարիմ էր դատաւորին։

Եւ երթեալ ամենայն պատրաստութեամբ կնքեցին զդուրս գերեզմանին դասու մատանեօք իւրեանց․ և ինքեանք անդէն զտեղի առեալ մեծաւ զգուշութեամբ անքուն պահելով, զի մի՛ նենգ ինչ ուստեք լինիցի։ Ո՜վ իմաստունք, մանաւանդ եթէ յոյժ մորոսք․ եթէ յառնել կամի 'ի մեռելոց, ապա զամենայն ինչ կարող է առնել․ զդուրս գերեզմանիդ ոչ բանայ, և զկնիքդ ոչ բեկանէ, և ձեզ զանձն ոչ ցուցանէ․ դուք զիա՞րդ կարիցէք գիտել՝ թէ յարիցէ զոր 'ի ներքս 'ի գերեզմանիդ աւանդեցէք․ կարի թանձրամիտք էք, և առաւել թմբրեալք խելօք։ Համարեաց եթէ զինուորքդ դատաւորիդ անտեղեակ իցեն իբրեւ զարտաքինս և ոչ զներքինս․ դուք որ այդչափ տեսէք զմեծամեծ սքանչելիս և 'ի ժամ մահու դորա, տակաւին ապշեալ էք և ոչ

իմանայք՝ եթէ որ զերկիր շարժեաց և զերկինս դղրդեաց, զիա՞րդ կարէք պահել դուք զնա, բայց եթէ պահէք դուք նովաւ: Քանզի զինուորացն մեղադիր ոչ կարեմ լինել, զի սպասաւորք են դատաւորին, և հարկաւորեալք են կատարել զհրամանս նորա. այլ քահանայքն և մեկնիչքն յոյժ լալոյ և արտասուաց արժանի են: Վէմ 'ի վէմ յեցուցեալ, և զվէմն 'ի ներքս արգելեն, մանաւանդ եթէ զարարիչն երկնի և երկրի. և մատանիս 'ի վերայ եդեալ, և պահապանացն զգուշացեալ:

Տեսանե՞ս զյիմարութիւնն. դու քոյոց մտացդ չկարես պահապան լինել. մինչ դեռ կաս 'ի սուրբ տեղւս, գտանիս յանարժան տեղւոջ. գաս արդ 'ի քաղաքի, և տեսանես Իտաղիա. գործես 'ի ցամաքի, և 'ի ծովանաւս 'ի նաւի. կաս 'ի յերկրի, և 'ի վեր յերկնից երկնի շրջիս ընդ գունդս հրեշտակաց: Բայց վասն ձեր գիտեմ, զի ոչ երբէք կարացէք համբառնալ յերկրէս և տեսանել զգունդս երկնից, այլ հանապազ գետնաքարշ աստէն սողելով՝ նմանեցայք անդրավարին հօրն ձերոյ. զի ոչ միայն հողակերք էք, այլ և հողահեղձք յոգիս և 'ի մարմինս. վասն որոյ ոչ գիտէք զինչ գործէքդ: Զի որպէս յամենայնի յամօթ եղեայք առաջի դատաւորիդ և ամենայն բազմութեան ժողովրդեանդ, ևս առաւել յամօթ լինելոց էք առաջի զինուորացդ՝ որ պահեն զգերեզմանդ: Յորժամ դոքա զճշմարիտն ձեզ պատմեսցեն, անկանիք 'ի վարանս տարակուսի. սուտ ոչ կարէք առնել, քանզի հաւատարիմք են. յայտնել և արդարացուցանել դուք ոչ կամիք, քանզի կոյր աչօք էք 'ի դատաւորէդ և 'ի ժողովրդոցդ, միանգամայն և յԱստուծոյ: Եւ արդ զի՞նչ ինչ գործիցէք, եղուկ դուք և վայ ձեզ. չիք մխիթարութիւն և ոչ տեղի ապաստանի, բայց եթէ առ նոյն ինքն զոր սպանէքն և թաղեցէք. և քանզի մարդասէր է, ընդունի և ոչ յիշէ զառաջինն յանցանսն: Բայց ես գիտեմ զի դուք ոչ առնէք զայդ, քանզի չէք արժանի. այլ անդրէն 'ի տաճարն ընթանայք, քանզի դեռ ևս կան կարծիք սուտ յուսոյն: Գիտեմ զի 'ի խորհուրդ մտանէք, և միտք ձեր ընթանան յարծաթն նզովեալ. զարծաթդ կորուսանելոց էք, ընդ նմին և զանձինս և զամենեսեան՝ որք լսելոց են ձերում մոլորութեանդ:

Այլ տէր մեր Յիսուս Քրիստոս զոր 'ի նեղքս ա-րեգականս զամենայն զփրկագործն կատարեաց, և 'ի ստորին կողմն երկրիս ամենայն զօրութեամբ իւրով խաղաց գնաց իջանել տեսանել զզօրութիւն մահու, և մխիթար տալ ազատեան զաւակին՝ որք յուսահատու-թեամբ նստէին 'ի խաւարի և 'ի ստուերս մահու: Եւ իբրեւ եհաս յամուր պարիսպն դժոխոց և յերկաթի պղնձանից դրունսն, ձայն ահագին մեծ կարապետին զպարիսպն առ հասարակ դողացուցեալ կործանեաց. և զօրութիւն կենդանի հրոյն զկարծրանից դրունսն իբրեւ զմոմ հալեալ սպառեաց. և ճառագայթք ինքնածագ լուսոյն առ հասարակ սփռեալ տարածեցան 'ի գոգս և 'ի խորշս անմատոյցս ամուր վայրացն նորա. մաշեցաւ և սպառեցաւ թանձրացեալ խաւարն, և երեւեցաւ մերկ խայտառակեալ զազրատեսիլ զարդ սանդարամետա-կանին:

Յայնժամ Մահու զճիչ առեալ, զաղաղակ բարձեալ և լայր դառնապէս. գոչէր բարձրաձայն և ասէր. Ո՞վ է սա՝ որ եկն եմուտ յանմատոյց ամուրս իմ, մեկնեաց զիս 'ի բնական խաւարէն զգեստէ իմմէ, և այրիմ 'ի տապ տապակիս յահագին 'ի հրեղէն փառաց նորա. ոչ մնաց ինձ խորշ խաւարի և ոչ մութ գիշերոյ, ոչ դաշտ փախստեան և ոչ լեառն թաքստեան և ոչ ծործոր ա-պաւինի. չիք հեռաստան՝ թէ փախեայց, և ոչ խորխա-բատ մոտաւորութեան՝ թէ կացցէ: Անդունդք աղա-ղակեն թէ աստ է, և լերինք իբրեւ զմոմ հալին առա-ջի փառաց սորա. գերեաց զամենայն տարտարոս, դա-զացոյց զզօրս խաւարինս՝ զձախող մանկունսն իմ: Վայ է զինեւ, եղուկ եմ ես. կողոպտեաց զգանձս իմ, յա-ւարի էառ զամենայն զմեծութիւնս իմ, ոչ եթող ինձ յոյս մխիթարութեան, և ոչ զմի ոք յիմոց սեփական-նացս: Ո՞վ արդեօք իցէ սա, զի ես ոչ գիտեմ. Ենովք և Եղիա այսրէն ոչ եկին. Աբրահամ և Իսահակ և Յակովբ ընդ իս զայս ոչ գործեցին. Նոյ և Աբէլ և ամենայն արդարքն ընդ ինեւ անկեալ դնին. Մովսէս և մարգարէքն ինձ հնազանդեալ են. Մելքիսեդեկ և ամենայն թագաւորք արդարք յինէն ոչ ապստամբե-ցին: Եւ զի՞ մի մի թուիցեմ յանուանէ զազգս արանց կամ կանանց. ահա 'ի սկզբանէ մինչեւ ցայսօր արդարք

և մեղաւորք, հզօրք և տկարք, ծերք և տղայք, նա և որք չտեսին զլոյս աշխարհի, առ իս ժողովեալ են. ամենեքեան ընդ իմով իշխանութեամբ կան հնազանդեալ: Իսկ ո՞վ իցէ սա, տայր ոք գիտացեալ: Եթէ զտեղին կարէի գիտել, թերեւս և հնարս ինչ իմանայի. եթէ յերկրէ է, ապա և զգաւառն գիտէի և զազգատոհմն. զբնութիւնն զոր տեսանեմ, ըստ ամենայն ազգատոհմի մարդկան բերէ զնմանութիւն. մանաւանդ զթիւ մասանց մարմնոյն ոչ աւելի և ոչ պակաս գտանեմ, այլ ըստ ամենայնցն և զսորայս: Բայց յերեւաց սորա կարի իմն զարհուրեալ եմ. զի եթէ յիջանելն իւրում առ իս զբազումս կորզեաց եհան յինէն, վայ ինձ եթէ չարակամաց սա անդրէն ելանիցէ, երկնչիմ եթէ բնաւ իսկ զամենայնս ընդ իւր տանի, և ես յիմոցս միայն մնացից: Նա և յանձնէ մեծ երկիւղ է ինձ. զի ոչ միայն զիմն հանէ յինէն, այլ և զտեղի խաւարին ինձ ոչ թողու. և որպէս իմանամ, յայսմ խաւարէ զիս յայլ խաւար առաքելոց է. և երանի եթէ այսպէս էր խաւարն՝ ուր տանելոցն էր զիս: Բայց եթէ այսպէս էր ուր տանէրն, նա և հանէր իսկ ոչ զիս աստի: Այլ արդ և ահա յայտնի եղեւ, որպէս ոչ գիտացի զգաւառ սորա, սոյնպէս և ոչ գիտեմ զխաւարն յոր զիսն տանելոց է: Բայց չար այս իսկ է ինձ քան զամենայն, որպէս երեւի՝ զի ոչ միայն վասն արդարոց եկեալ է այսր, այլ և վասն ամենայն մեղաւորաց: Եւ եթէ ածէ և համար առնէ ընդ իս, և պահանջէ յինէն զտոկոս վախճանելոցն որք առ իս եկին, թերեւս կարեմ տալ: Իսկ արդ եթէ զԵնովք և զԵղիա յինէն խնդրեսցէ, և եթէ զայս եւս արասցէ ընդ իս, յայնժամ է ինձ վտանգ տագնապի և վարան տարակուսի, զի ոչ ուրեք գտանեմ երթալ:

Արդ թերեւս այսու ամենայնիւ մահ յանձն իւր տագնապէր, և ոչ յումեքէ գտանէր բան մխիթարութեան, դժոխք եւ տուն պատասխանի մահու և ասեն. Զբնութիւն դորա գիտեմք մեք, և զազգատոհմն դորա ճանաչեմք. դա է, վասն որոյ ասաց յառաջագոյն Հոգին սուրբ. «Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր, և համբարձցին դրունք յաւիտենից, և մտցէ Թագաւոր փառաց»: Եթէ կրկնեսցես և երեքկնեսցես և բազում

անգամ հարցցես, զնոյն լուիցես՝ Տէր զօրութեանց, սա ինքն է թագաւոր փառաց: Եւ իբրեւ լուաւ մահ զտէր անունն և զհզօր և զպատերազմող և 'ի կախ եկեալ ընդ իշխանութեամբ մահու, լուծաւ լքաւ և բեկաւ ամենայն զօրութիւն նորա, և հատաւ յոյս թագաւորութեան նորա. զահի հարեալ յերեսաց նորա՝ ձեպէր փութայր փախչել և թաքչել, և տեղի ոչ գտանէր. ձայն բարձեալ յաղերս մեծ աղաչէր և ասէր. Գիտեմ զքեզ, Յիսուս Նազովրեցի. դու ես սուրբն Աստուծոյ. մի յառաջ քան զժամանակն տանջեր զմեզ: Արդ իբրեւ կապեաց զնա, և բեւեռեաց բեւեռօք. բեւեռեաց զոտս և զձեռս նորա, և պրկեաց կապեաց ընդ զօրութիւն անպարտելի խաչին. և ետ իշխանութիւն ամենայն մարդկան՝ որ խաչելոյն հաւատան և կատարեն զպատուիրանն Աստուծոյ Բանի, գնալ 'ի վերայ իժից և քարբից և ամենայն զօրութեան մահու. էառ աւար բազում և բերեալ բաշխեաց ամենայն հաւատացելոց:

Եւ մինչ Տէրն զայս ամենայն նահատակութիւնս կատարէր, պահապանքն 'ի քուն կային, և քահանայքն զեղեգնն և զբաղարջն ուտէին: Իսկ Տէրն կանխագոյն քան զասացեալ ժամադրութիւնն յարուցեալ և հրեշտակացն երեւեալ, այլ ոչ զգերեզմանն խախտէ, և ոչ զդուրսն բանայ, և ոչ զմատանիսն բեկանէ, և ոչ պահապանացն յակն անկանի: Յոյժ գոհանան հրեշտակքն զայնմանէ, որ յառաջ ժամանակաւ ոչ կարէին հայել և տեսանել զծածկութիւն փառաց որդւոյն Աստուծոյ, և այսօր 'ի պատճառս մերոյ փրկութեանս եկեալ, և զամենայն տնտեսութիւնն իւր կարգաւ կատարեալ վերնոց և ներքնոց և սանդարամետականաց, և նորոյ աշխարհի նոր պտուղ երեւեալ նորոգապէս նոր և նախնիս, նախ հրեշտակք ընդունին և ուրախ լինին 'ի տեսիլ այնորիկ՝ որովք յառաջն կարօտեալն էին: Եւ քանզի կամս աննախանձ ունին հրեշտակք և սէր սուրբ առանց ստութեան, ձեպեալ փութային տալ աւետիս կանանցն, ոչ միայն բանիւք, այլ և աչաց տեսլեամբք: Աղվաղակի 'ի բաց տապալէին զվէմն 'ի դրաց գերեզմանին, և 'ի ներքս մտեալ երկիր պագանէին տեղւոյն՝ ուր Աստուածն մարդացեալ բազմեցաւ 'ի փրկութիւն մեղաւորաց և 'ի կենդանութիւն հրաժարելոց: Խոնար-

հէին և համբուրէին զպարեխն, և մեծապէս պատուէին զտէրունեան զտեղին, և սքանչացեալ զարմանային՝ եթէ այնմ որում երկինք երկնից չէին բաւական 'ի բնակութիւն, մարդասիրութեամբ իւրով ամփոփեաց զմեծութիւն փառաց իւրոց. էջ և բազմեցաւ 'ի փոքր տեղւոջս, և բաւական համարեցաւ լինել երեքօրեայ ժամանակաւ :

Յայնժամ միանգամայն կատարէին զբանն զոր ասաց Դաւիթ. "Երկիր պագցուք 'ի տեղւոջ՝ ուր կացեալ են ոտք նորա". և դարձեալ. "Երկիր պագէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է": Եւ այնչափ սիրելի է տեղին, զի ոչ միայն 'ի ներքս մտին հրեշտակքն, այլ և նստէին, ասէ աւետարանագիրն, մի 'ի սնարիցն և մի յանոտիցն: Արդ զնստէինն իբրև լուիցես, մի վաղվաղակի 'ի բաց գնասցես 'ի տեղւոջէ անտի. քանզի ոչ եթէ ժամանակաւ նստէին, այլ նստան և նստին և նստցին մինչև յօրն յայն՝ յորում միաբանութիւն լիցի մեր և հրեշտակաց և այնր աշխարհի՝ յոր զերիս աւուրս չոգաւ Քրիստոս, և ժամադրեաց ամենեցուն ժողով լինել առ դուրս նորին գերեզմանի:

Արդ յոյժ սիրեմ զտեղին, և ոչ կամիմ հեռանալ 'ի դրաց գերեզմանին. այլ անդէն նստել ընդ հրեշտակսն, և տեսանել զմեծամեծ սքանչելիսն, և լսել 'ի բերանոյ նոցունց հրեշտակացն՝ որ խօսէին ընդ կանայսն, և հնչեն բարբառ աւետարանաց նոցա ընդ ամենայն աշխարհս: Քանզի կանայքն այնոքիկ անուամբ յորջորջին տեառնամայրք. իսկ հաւատովք ճանաչին մեծ և սքանչելիք: Քանզի գիտեն զնոյն Տէր անմայր յերկինս և անհայր յերկրի, և առ գութ մեծի սիրոյն զոր ունէին առ նա՝ բերին իւղս անուշունս, զի հեղցեն 'ի վերայ գերեզմանին:

Եւ քանզի հատեալ էր քուն յաչաց նոցա զայն երիս տիւս և զերիս գիշերս, կանխագոյն Մարիամ Մագդաղենացի եկն եհաս 'ի գերեզման անդր. և քանզի ըզվէմն 'ի բաց թաւալեցուցեալ էր հրեշտակացն, հայեցաւ 'ի ներքս, և զտէրունական մարմինն անդ ոչ ետես. վասն այնորիկ լայ կոծի ողբալով և ասէ. Օ՜ ինչ արարից, յո՞ երթայց, ու՞ր խնդրեցից. 'ի խաչէն իջուցին, 'ի

գերեզմանիս եգին, զդուրս վիմով կնքեցին և պահեին զգուշութեամբ. աշակերտացն վկայեմ, զի ոչ ուրեք շարժեցան զգիշերս ամենայն. 'ի Հրէիցն զայս ոչ ոք առնէր վասն մեծի շաբաթուն պատուոյ. Հեթանոսաց չէր ինչ փոյթ. նա և ումեք 'ի մարդկանէ չէ օրէն դիագող շրջել. 'ի գաղանաց կասկած ինչ ոչ է վասն մեծի վիմիս ծանրութեան, և առաւել վասն զինուորացն պահպանութեան: Եւ եթէ յարութիւն կարծեցից, այս վաղ կարի է. ընդ երեկս ուրբաթուն թաղեցաւ. գիշերքս ահա երկու են, իսկ տիւս օր մի է և ժամք երկու, և նա զերիս տիւս և զերիս գիշերս ասաց լինել 'ի սիրտ երկրի: Եւ զիա՞րդ՝ որ յամենայնի արդարն խօսէր, յայսմ վայրի ստեա՞ց արդեօք. քաւ լիցի, ոչ կարեմ վասն նորա յերկբայս լինել. սուտ և ոչ երբեք խօսէր, այլ արդար յամենայնի. քանզի զամենայն զոր ասաց 'ի կենդանութեան իւրում, եղեւ և կատարեցաւ. իսկ արդ յայսմ միայն ստիցէ՞ արդեօք: Արդ ես ոչ գիտեմ եթէ արդարեւ յարուցեալ իցէ և կամ նենգեալ յումեքէ:

Զայս ասէր և զկրծիցն հարկանէր և զարտասուս յորդէր. մեծաձայն ձչել ոչ իշխէր վասն ահի քահանայիցն և զգուշութեան պահապանացն, այլ 'ի սրտին փղձկէր և 'ի միտս հեղձնոյր, և իւրացն մխիթարութիւն ոչ գտանէր. մինչեւ յոյժ գթացեալ ողորմեցաւ նմա հրեշտակն և ասէ. Կին դու, զի՞ լաս յուսահատութեամբ և սուգ առեալ կոծիս անմխիթար. ասա ցիս զպատճառս իրացդ, թերեւս լուիցես անսուտ պատասխանի: Եւ նա ասէ. Զի զտէրն իմ բարձին 'ի գերեզմանէ աստի, և ոչ գիտեմ ուր եդին զնա: Ասէ ցնա հրեշտակն. Գեղեցիկ ունիս զսէր սուրբ հաւատոյդ, այլ ոչ իմաստութեամբ արկանես զդատն արտասուսդ 'ի վերայ գերեզմանիդ. ո՞ր ուրուք լուեալ և տեսեալ իցէ՝ թէ մեռեալք զկենդանիս խնդրեն, և կամ մարդիկ 'ի խնդդիր լինին կենդանւոյ Աստուծոյ. Թուի ինձ՝ թէ քան զպահապանսն յիմարագոյն ես դու: Արդ եթէ կամիս, եկ մերձեցիր 'ի տեղի աստ և տես, զի յարեաւ, չէ աստ. և բնաւ ընդէ՞ր իսկ խնդրես զկենդանին ընդ մեռեալս: Եւ զայս ասացեալ՝ 'ի մեծ տարակուսանս զկինն արկանէր:

Դարձեալ ասէ ցնա հրեշտակն. Եթէ և ինձ ոչ հաւատաս իբրեւ օտարաշխարհացւոյ, հարց զգաւառականսդ քո՝ որք են հաւատարիմք դատաւորին և խորհրդակից քահանայից ձերոց. Նոքա պատմեն ոչ միայն ձեզ որ սիրելիքդ էք, այլ և թշնամեաց նորա: Բայց զժամ յարութեան նորա և ես ոչ գիտեմ. այլ 'ի շարժել երկրիս յայնժամ կարծեցի թէ յարեաւ. և առ գերեզմանի աստ՝ ես և բազում ընկերք իմ էաք, գիտաց և ոչ ոք 'ի մէնջ. 'ի դուրս գերեզմանիս հայեցաք ամենեքեան, վէմն անխախտելի կայր, և կնիքն յայտնի երեւէին: Իսկ մեր 'ի շարժմանէն կարծիս առեալ՝ բացաք զդրունս և զնա 'ի ներքս ոչ գտաք, մինչեւ ինքն ողորմելով երեւեցաւ մեզ առ ժամ մի: Այլ այժմ և մեք ոչ գիտեմք ուր է. բայց զտեղիս ոչ իշխեմք թողուլ, որովհետեւ այնչափ սիրէ զվէմդ և զխաչդ և զվիմափոր գերեզմանդ, և առաւել զձեզ որ 'ի խնդիր էք նորա: Եւ յայսմ ամենայնի պատճառս՝ և մեզ դարձեալ ողորմեսցի, և արժանի լիցուք միւսանգամ տեսանել զյարուցեալն 'ի մեռելոց:

Եւ մինչ դեռ զայս ամենայն հրեշտակն ընդ կնոջն խօսէր, ահա ոմանք 'ի պահապանաց անտի յորդեցան մտին 'ի քաղաքն պատմել քահանայապետիցն. Ով, զի՞ կայք, ասեն, զի՞ նստիք, տեսէք զինչ գործիցէք. յարեաւ Ճշմարիտ, թագուցանել ոչ կարեմք. ահա թողեմք յապարանս դատաւորին, և ամենայն քաղաքիս զաղաղակ հարկանեմք. ոչ կարեմք յուրաստ լինել զահագին տեսիլ յարութեանն, քանզի մեծ էր երկրիս շարժումն վերջինս քան զառաջինն. վասն զի և 'ի ժամ խաչին անդ դիպեցաք մեք և տեսաք զմեծամեծսն և զահագինսն որ անդ գործեցան: Այլ մեզ այն օրն դիւրագոյն էր քան զայս օր. վասն զի ոչ 'ի շարժմանէն միայն բեկան սիրտք մեր, այլ և արք ոմանք երեւեցան մեզ՝ ոչ գիտեմք ուստի էին, յերկրէ կամ յերկնից, անհնարին մեծապէս լուսաւորք և ահագինք, և այնպիսի լուսաւորք՝ որ թէ 'ի միջօրէի երեւէին, ծածկէին զճառագայթս արեգականն առ նոցա անմատոյց լուսով: Բայց զարմացեալ եմք, եթէ դուք զխա՛րդ ոչ տեսէք, և կամ տապ բոցոյ նոցա այսր զխա՛րդ ոչ ազդեաց. քարինք տեղւոյն եռացին և հողն երաշտացեալ ցամաքեցաւ. մեք

կիսամահ 'ի վայր անկեալ դնէաք, և բազումք 'ի մէնջ որ անդ մնացին՝ արդ եւս մեռեալ իսկ իցեն։

Իբրեւ լուան քահանայապետքն զայս ամենայն 'ի բերանոյ զինուորացն, սկսան տալ պատասխանի. Յորժամ այդպիսի ահագին գործք գործեցան, որպէս դուքդ ասէք, թէ ոմանք 'ի ձէնջ կիսամահ անկեալ դնէին, դուք զիա՞րդ կարացէք գալ և պատմել մեզ։ Նոքին պատասխանի զինուորքն և ասեն. Կանայք ոմանք երանելիք եկին 'ի գերեզման անդ՝ մինչ դեռ կայր եւս գիշերոյ, որք բարձեալ բերէին իւղս անուշունս և խունկս սքանչելիս իբրեւ նուէրս աստուածայինս։ Եւ 'ի մերձենալ կանանցն 'ի գերեզմանն՝ յոյժ դիւրութիւն եղեւ մեզ 'ի ժամուն. օրհնեալ լիցին կանայքն այնոքիկ, և երանի քաղաքին՝ ուստի նոքա իցեն. և յիրաւի երանեմք այնպիսի կանանց։ Մեք այնպէս թմբրեալ և անկանգնելի 'ի վայր անկեալ էաք, և մի ոմն 'ի նոցանէ աներկիւղ և անկասկած մերձեցեալ 'ի գերեզմանն հայէր. և իբրեւ զմարմինն անդ ոչ տեսանէր, յարտասուս հարեալ լայր դառնապէս. և վասն մեռելոյն պատասխանի լսէր յարանցն զյարուցելոյ և զկենդանւոյ։ Եւ որպէս 'ի ժամուն ազդեցաւ՝ թէ հրեշտակք էին և ոչ մարդիկ, որք մերձաւորագոյն զնշանսն տային կանանցն զխաչելոյն՝ Աստուած խոստովանել և ոչ մարդ, կենդանի և ոչ մեռեալ. քանզի իբրեւ դիւրացաւ մեզ 'ի գալ կանանցն՝ մեք մեզէն իսկ լուաք պատասխանի 'ի բերանոյ երեւեցելոցն՝ որք ասէին. Զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս. ո՞չ յիշէք զոր յառաջագոյն ասաց՝ թէ պարտ է որդւոյ մարդոյ մեռանել և թաղել և յերիր աւուր յառնել։ Եւ եթէ զայն ոչ յիշէք, արդ ահա տեսէք՝ յարեաւ չէ աստ, և յառաջագոյն քան զձեզ երթայ 'ի Գալիլեա, անդ տեսանիցէք զնա. ահա ասացի ձեզ։

Զայս լուեալ քահանայապետիցն՝ զարմացան հիացան և բեկան սիրտք նոցա. գիտացին եթէ ոչ պատճառանօք պատմեն. 'ի խորհուրդ մտին և ասեն. Արդ զի՞նչ գործեսցուք. որովհետեւ այսպիսի յայտնութեամբ յարեաւ, մարդիկ և հրեշտակք տեսին. զպահապանսն զոր խնդրեցաք 'ի դատաւորէն, նոքա մեծամեծ նշանօք պատմեն զյարուցեալն. արդ 'ի Գալիլեա եւս երթայ, և մեծամեծ յայտնութիւնս առնէ անդ։

Նա իբրեւ այլ հնարս ոչ կարացին խմանալ, արկին ձեռս 'ի գանձս տաճարին. արծաթ բազում ետուն պահապանացն և ուսուցին նոցա պատճառս զառաջին պատասխանւոյն՝ յաղագս որոյ զինուորքն հրամայեցան նոցա 'ի դատաւորէն։

Բայց Մարիամ անդէն ընդ հրեշտակին պատեալ փարի զգերեզմանաւն, և 'ի խնդիր է յարուցելոյն. և առ յոյժ ջերմ սիրոյն անդադար ածէ զաչսն զվայրօքն մինչեւ շնորհեալ նմա երեւումն փափաքելի ոչ հրեշտակի ուրուք, այլ նորին տեառն Յիսուսի։ Քանզի գրէ աւետարանագիրն. Զայս իբրեւ ասաց նմա հրեշտակն, հայեցաւ նա 'ի կողմն մի տեղւոյն՝ ուր 'ի խաչ հանեալ էր զՅիսուս. և ետես անդ զՏէրն, այլ ճանաչել ոչ կարաց. այլ կարծեաց եթէ պարտիզպանն իցէ, ասէ ցնա խանդաղատալի բանիւք. Տէր, եթէ դու բարձեր, ասա ինձ՝ ուր եդիր զնա, զի ես առից զնա։

Բարիոք տեսնես, ով Մարիամ, զգիշերս ամենայն, և գեղեցիկ են խնդիրք առաւօտիդ. ոչ ոք 'ի մարդկանէ զրկէ զվաստակաւորս իւր, և ոչ Աստուած զլանայ ընդ վարձս վաստակոց քոց. զվարձս գիշերային աշխատութեան քո հատուցանէ քեզ հրեշտակդ՝ տալով աւետիս զյարուցելոյն 'ի մեռելոց, և զտապ անձկոյ սրտի քո փախուցանէ երեւումն պարտիզպանիդ։ Որպէս ինձ թուի, գտեր զգողն. և ոչ միայն զգողն, այլ և ընդ գողոյն զգողօնսն. քաջ պնդեա 'ի վերայ, դա է ճշմարիտ. և ոչ զայլոյ գողացեալ, այլ զիւրն իսկ առեալ ունի. մի՛ ասեր՝ եթէ դու բարձեր, իբրեւ այլ զայլոյ ինչ, այլ ունի իսկ և զիւրն ունի։ Դա է որ եդաւ 'ի գերեզմանիդ, դա է որ յարեաւն այտի, դա է որ խաչեցաւ, դա է որ 'ի մեռեալս չոգաւ, դա է որ եմուտ 'ի տուն հզօրին, դա է որ կապեաց զհզօրն, դա է որ առ զգանձս նորա յաւարի, դա է որ բաշխեաց պարգեւս բազմաց, դա է ճշմարիտ պարտիզպանն, դա է որ տարաւ զաւազակն 'ի պարտէզն. զդա խնդրէիր, վասն դորա լայիր, վասն դորա լուար 'ի հրեշտակէն թէ յարեաւ, վասն դորա ողբայիր, վասն դորա հրեշտակն զգերեզմանաւն շրջէր, վասն դորա բերէր զիւղդ և զխունկս. եթէ վասն դորա բերէր, այլում 'ի խնդիր մի՛ լինիր։ Բայց զոր ասացերն՝ ուր եդիր զնա, ցոյց ինձ՝ զի ես առից և գնացից, զի-

տեմ՝ զի առ մերձ դառնացեր. և եթէ առայ զինքն ցքեզ, տանիլ ոչ կարես, նա և ոչ միւս Մարիամն յակովբեանց և ոչ Կղէոփայեանց Մարիամն և ոչ քոյր Ղազարու և կոյսն Մարիամ՝ որ է մայր դորա: Իսկ եթէ ամենեքեան միաբանիք, բառնալ զդա ոչ կարէք, քանզի յոյժ ծանրացաւ. ծանր է այսուհետեւ որ կամին մարմնապէս մերձենալ 'ի նա, և թեթեւ այնոցիկ՝ որք հաւատով մերձենան առ նա, զոր այժմ իսկ լուիցես 'ի նմանէ: Քանզի իբրեւ ծանեաւ, ասէ, Մարիամ, եթէ Յիսուս իցէ այն, յորջորջեաց զնա հին սովորութեամբն՝ րաբունի ասելով, որ թարգմանեալ կոչի վարդապետ: Ահա դեռ եւս աւադիկ Մարիամ, 'ի մարմնի ես և մարմնապէս լաս, և մարմնապէս խօսիս, և մարմնապէս խնդիր առնես. արդ զիարդ արգահատեաց և յայտնեաց քեզ 'ի նոյն առաջին կերպարանն, նոյնպէս կամիս մերձենալ 'ի նա թանձրութեամբ. վասն որոյ լուիցես պատասխանի՝ թէ մի մերձենար յիս, զի չեւ եւս ելեալ եմ ես առ հայր իմ: Իսկ վասն էր արդեօք զայս ասէր. քանզի պտուղ էր նորոգ ծառոյն կենաց, ոչ կալաւ յանձին եթէ կանայք յառաջ քան զարս մերձեսցին 'ի նա. բաւական համարեցաւ զազգս կանանց պատուել 'ի ձեռն ծննդեանն. այլ զերեւումն յարութեանն առնէ հրեշտակօքն որ ունին զյանգութիւն առ արս բնութիւնս. միջնորդաւ տեսութեանն և 'ի ձեռն հրեշտակացն առաջնորդութեան երեւի կանանց, և առաքէ առ աշակերտսն:

Երկուս իրս յայտնելով 'ի տեղւոջն, զՄարիամ ուսուցանէ վասն իւրոյ վերաբեր բնութեանն՝ հայր իւր յերկինս անուանելով, և զաշակերտսն մխիթարէ եղբարս զնոսա անուանելով: Քանզի յորժամ ասէ, երթամ ես առ հայր իմ և առ հայր ձեր, հաւասարէ զինքն ընդ աշակերտսն, և մի հայր իւր և նոցա ցուցանէ. բայց իւրն առանձին ասելով, իսկ նոցա ամենեցուն 'ի միասին: Յոյժ անջրպետեալ զատանի 'ի միմեանց, և իմանի յայտնութեամբ յոգիս իմաստնոց. քանզի մարդ է ըստ բնութեան ամենեցուն, հաւասարէ զինքն ըստ աշխարհի. և Աստուած է անեղութեամբ ընդ Հօր, զատուցանէ զինքն ոչ միայն յաշակերտացն, այլ յամենեցուն բանական գոյութեանս: Իսկ առ Աստուած իմ,

ասէ, և առ Աստուած ձեր ։ Մեր աՀա գիտեմք զի Աստուած է, արարիչ և Թագաւոր և տէր. և Թէ գոՀանամք զարարչական զօրուԹենէն, է նա մեր Թագաւոր վերակացու և խնամածու. և եԹէ զընդդէմն գործեմք, է նա մեր տէր, դատի խրատէ և ածէ յուղղուԹիւն ։

Իսկ քո, Տէր, Հայր զի է՝ գիտեմք, վասն զի ուսաք 'ի քէն ճշմարտապէս զայդ. զիա՞րդ ասես՝ երԹամ ես առ Աստուած իմ և առ Աստուած ձեր ։ Այդ, ասէ, քանզի Հայր է ձեր արարչուԹեամբ, Հայր է և իմ ծննդուԹեամբ. Աստուած է ձեր, որպէս ասացի, ըստ ՀաւատողուԹեան, Աստուած է և իմ ըստ տնօրէնուԹեանս ։ Այլ իմ, ասէ, առանձին միայն. իսկ ձեր ոչ առանձին, այլ ամենայնի՝ մարդկան և Հրեշտակաց և երկնի և երկրի և տարերաց գոյացուԹեանց ։ Իսկ որպէս Հայր բարերարուԹեամբ իւրով՝ չաղաչեցեալ ուրուք՝ 'ի ձեռն Որդւոյ արար զաշխարՀս ամենայն զերեւելիս և զաներեւոյԹս, նովին մարդասիրուԹեամբ և Որդի կամօք Հօր յանձն իւր էառ զմարմին մերոյ բնուԹեանս, և ընկալաւ չարչարանս յիւր մարմինն մինչեւ 'ի մաՀ խաչին, 'ի Թաղումն և 'ի յարուԹիւնն ։ Իսկ վասն այնորիկ Աստուած մարմնացեալ. և այսուՀետեւ ոչ եւս մարմին, այլ Աստուած. և Աստուած ոչ առանց մարմնոյ, և մարմին ոչ եւս ծանր բնուԹեամբ, այլ մարմին աստուածային, անորակ և անքանակ, աներբ և անուր ։ Անքաժանելի և անքակ է Աստուած բանն, միշտ անճառ և անպատում, և ընդ նմին անճառելի և մարմինն ։ Միշտ Աստուած ինքն յինքեան, ոչ 'ի տեղւոջ, այլ տեղի ամենեցուն. ոչ 'ի ժամանակի, այլ ժամանակ 'ի նմանէ. ոչ յեղանուԹեան, այլ լինելուԹիւնք նովաւ, և գեր 'ի վերոյ ամենեցուն երկնի և երկրի, և երկնից երկնի շըրջագոյ բնուԹեանն. ընդ նմին իմասջիր և զկուսածին մարմինն ։ Վասն այսր ամենայնի ունիմք իշխանուԹիւն անուանիլ եղբայր Քրիստոսի, և ասել ընդ նմին Հայր մեզ զԱստուած. զի ընդ միոյ մասինն որ միացաւ ընդ Աստուած բանն, և վերաբերեցաւ և ել յերկինս՝ նըստաւ ընդ աջմէ Հօր, ամենայն մասունք մարդկայինն բընուԹեանս ընկալան զաւետիս յուսոյ. զի նովաւ և 'ի ձեռն նորա վերաբերեսցին և Հասցեն և ժառանգեսցեն

զանախտ և զանչարչարելի տեղին, ուր որդին Աստուծոյ նստի ընդ աջմէ Աստուծոյ։

Վասն այսորիկ առաքէ Տէր զՄարիամ մագդաղենացի առ աշակերտսն ասելով. «Երթամ ես առ Հայր իմ և առ Հայր ձեր, և Աստուած իմ և Աստուած ձեր»։ Իսկ եկեալ Մարիամ պատմեաց Պետրոսի և Յովհաննու եթէ ետես նա զՏէր, և զայս ինչ խօսեցաւ ընդ նմա։ Զայս լուեալ Պետրոսի, ազդեցան նմա յիշատակ առաջին բանիցն Տեառն զոր ասէր՝ եթէ «Յետ երից աւուրց յառնելոց եմ ես»։ Յոտն եկաց վաղվաղակի Յովհաննու հանդերձ, և ընթացան երկոքեան 'ի գերեզմանն անդր. և քանզի մեծ էր ձեպ փութոյն, ելեւելս առնէին զմիմեամբք. յառաջագոյն հասանէր Յովհաննէս. զհայելն հայի, այլ 'ի ներքս ոչ մտանէ. և հասեալ Պետրոս, 'ի միասին մտանեն տեսանեն զգերեզմանն զի ունայն և թափուր էր 'ի մեծ գանձէն որ աւանդեցաւ. բայց միայն կտաւքն՝ զի անկեալ դնէին 'ի վերայ բարձրացեալ խարակին. իսկ վարշամակն որով զգլուխն պատեալ էր, ոչ խառն ընդ այլ կտաւսն կայր, այլ ուրոյն ծալեալ եդեալ։

Իսկ այս զի՞նչ նշանակէ՝ ընկենուլ կտաւոցն, և կամ չխառնել վարշամակին 'ի կտաւսն։ Ըստ բնախօսութեան յայտնի է ամենեցուն. երկնաւոր բնակիչքն՝ երկրաւոր հանդերձիցն չեն կարօտացեալք. իսկ Տէրն երկնի և երկրի, ինքնագոյ զօրութեամբն և բնական փառօքն ծնաւ 'ի սուրբ կուսէն. ո՞չ ապաքէն՝ որով եկն առ մեզ 'ի Հօրէ, նովին զօրութեամբ առ Հայր վերանայ։ Այլ ես և ըստ մերում բնականիս ասացից. ապաքէն վասն մեր եկն յաշխարհ Տէր աշխարհիս. իսկ յորժամ զմերս յիւրն տարաւ, պէտք մերայոցս անդ ոչ ինչ էին պիտոյ. եթող զկտաւսն աստէն, և 'ի ձեռն կտաւոցն-մնալոյ՝ աշխարհս մնացին իբրու թէ 'ի սուգ և 'ի չարչարանս 'ի ձեռն այս երեւման, զի և դու քեզէն ըստ քում վարդապետին կազմեսցես։ Քանզի ամենեւին մերկ էիր յաշխարհի. և մինչ էիր յաշխարհիս, վերացար ըստ պիտոյից սորա. իսկ յորժամ ելցես աստի, ոչ ինչ կարասցես տանել ընդ քեզ. այլ որպէս եկիր, նոյնպէս երթիցես։ Իսկ եթէ յառաջագոյն զայս իմասցիս, կեանք վարուց քոց զուարթնոց նմանեսցին, և ելք կատարածի քո զկնի Տեառն հետեւեսցին։

Նոյն վասն վարշամակին յայտ մեծախորհրդութիւն տեսանեմք. քանզի յարութիւն էր մարդոյ և Աստուծոյ. մարդոյ ըստ բնութեան, Աստուծոյ ըստ տարաբնութեան. և երկոցունց միացելոց՝ ոչ եւս այնուհետև երկու թուին, այլ միական՝ գոյականին։ Յայտ օրինաւոր իրք 'ի տեղւոջն երևեցան, զոր և մեծ Առաքեալն հաստատուն վկայութեամբ ցուցանէ մեզ։ "Գլուխ կնոջ այր իւր է, և գլուխ առն Քրիստոս, և գլուխ Քրիստոսի Աստուած". գլխոյ 'ի գլուխ աստիճանեաց զաշխարհս, և զամենեսեան հանեալ տարաւ առ Հայրն բոլորեցունց։ Վասն այսորիկ պատուականագոյն երևեցաւ վարշամակն 'ի մէջ այլոց կտաւոցն. զի դու իմասցիս ճշմարտապէս ոչ զորոշումն զատանելոյ, և ոչ զմիութիւն սեղմութեան. և ոչ այլ ուրուք է գլուխն, այլ որոյ է մարմինն. և ոչ մարմինն այլ ուրուք է, այլ նորին գլխոյ. և ոչ մարմինն գլուխ է, և ոչ գլուխն դարձեալ ոտք են. այլ անդամք բազում՝ կարգեալ և հաստատեալ և կազմեալ են ըստ իւրաքանչիւր մարմին. քանզի պատիւն 'ի գլուխն է, ընդ նմին գլխոյ և ամենայն մասունք մարմնոյն պատուեցան։

Իսկ եթէ առ մերս այդպիսի է տեսաւորութիւն, ո՞րչափ եւս առաւել իմանալի բնութեանն։ Գլուխ է և աստուածութիւնն, գլուխ է և որդիութիւնն, գլուխ է և սուրբ Հոգին։ Նոյն ագէ, մտացդ աչօք հայեաց և տես, և լուր հաւատովք զբանն տէրունական որ ասէ. "Ոչ ոք գիտէ զՀայր՝ բայց եթէ Որդի, և ոչ զՈրդի՝ եթէ ոչ Հայր", և 'ի ձեռն սուրբ Հոգւոյն ճանաչին Հայր և Որդի՝ նորին սուրբ Հոգւովն։ Քանզի Աստուած հոգի է, և հոգի Աստուած. հոգի՝ Որդի, հոգի և սուրբ Հոգին։ Եւ արդ զի այս այսպէս է, ոչ եթէ Հայր Որդի, և ոչ Որդին Հայր, և ոչ սուրբ Հոգին Հայր և Որդի։ Հայր արարչական զօրութիւն, որ ունի նշանակ թագաւորական զօրութեանն. Որդի բնական զօրութիւն, որով երևի դատողական զօրութիւնն. Հոգի հաշտական զօրութիւն, որով յայտնի երևի կենարար զօրութիւնն. և ասի միասնական աստուածութիւն։ Հաճեալ է Որդի 'ի բնական անուանն, որ է զօրութիւն և իմաստութիւն, և նոյն ինքն ծնելութիւն և անեղութիւն. Հաճեալ է և սուրբ Հոգին յիւր անձն և յէու-

թիւն, հանդուլթեամբ յԱստուծոյ, անճառելի և անպատմելի: Հանգուցեալ է և կամք Հօրն յաստուածութիւն հայրութեանն, որ է պատճառ ճառելեացս և անճառելեացն: Արդ ծալեաց և եդ զվարշամակն մեկուսի. ինքն Քրիստոս զիւր գլուխն պատուեաց: Այլ արդ ո՞վ մեծ իցէ, արդեօք որ պատուիցէ, եթէ որ պատուիցին: Իսկ եթէ այլ յայլմէ ունէր զպատիւն, այդպէս էր. արդ եթէ ինքն զինքն պատուէր, զիա՞րդ կարասցես 'ի մէջ անբաժանելւոյն բաժինս ցուցանել. և որպէս ընդ Քրիստոս և ընդ իւր գլուխն չիք անջրպետութիւն 'ի մէջ արկանել, և ոչ ընդ Քրիստոս և ընդ իւր Հայրն, այլ միայն խորհուրդ պատուոյ, զի ուսուսցէ զերկոտասանսն . . . . . . . . . . . . . . Հայր յարուցանէր, Որդի յառնէր, Հոգին սուրբ աւետիս մատուցանէր արարածոց: Այլ որպէս յարարչութեանն հաւասարութիւն էր, Հայր կամէր, Որդի առնէր, և սուրբ Հոգին զարդարէր, այսպէս և Նորոյ աշխարհիս սկիզբն լինելութեան էր յարութիւնն Քրիստոսի. վասն այսորիկ բոլոր բոլորովին բովանդակ անդ էր սուրբ Երրորդութիւնն. միանգամայն և ամենայն զօրութիւնք արարածոցս:

Տեսանե՞ս զի ոչ ինչ պիտոյ էր զկտաւան տանել ընդ իւր. այլ փոխանակ կտաւոյն զամենայն աշխարհս զգեցաւ, և զաշխարհի հայրենի փառսն զարդարեաց: Իսկ զխորհուրդ գերեզմանին և զկտաւոցն և զվարշամակին յայտնեաց գլխոյն աշակերտաց: Վասնզի գերեզմանն է նմանութիւն աշխարհիս՝ յորում թաղեալ եմք, և կըտաւքն ժամանակեան՝ պատանք զարդուց սորա. իսկ պատիւ վարշամակին, որպէս վերագոյն ասացաք, ակընկալութիւն յուսոյ այնոցիկ՝ որ կարեն բացահայեաց ակամբ 'ի հեռաստանէ տեսանել զՀայրն բոլորեցունց, որ պատուելոց է զգլուխ ամենեցուն, որք արժանի լինին երկնաւոր պարգեւաց պսակին:

Բայց թերեւս ոք յուսումնասէր փափաքողաց քննել կամի և լսել զայս եւս՝ եթէ ո՛ ծալեաց զվարշամակ գըլխոյն և եդ մեկուսի, Տէ՞ր ինքնին, եթէ հրեշտակքն. գիտասցէ այնպիսի հարցողն, զի զԱստուծոյ ակնարկութիւնն ամենայն ոք կատարէ՝ բանաւորք և անբանք. բանաւորք 'ի ձեռն զգայութեանց կատարեն զհրամանս

նորա. իսկ անբան տարերքս 'ի բնական շարժմանսն. իսկ հրեշտակք առաւելեալ են բանաւորութեամբ, և բնակութեամբ մերձաւորագոյնք են առ աստուածութիւնն, գիտելով զխորհուրդ կամաց նորա: Եւ որպէս երեւի՝ առ սէր Տեառն իւրեանց յոյժ փարեալ խանդաղատին զգերեզմանաւն, և 'ի ներքս մտեալ զանձուկն 'ի կտաւսն սփռէին, բառնալով և դնելով և բազում անգամ համբուրելով. որպէս ոք զի գտանիցէ զինչ անձկացելոյ՝ պատիցէ փարելով և յոյժ խանդաղատիցէ, և զինչ գործել արժան է՝ զայն ոչ գիտեմ: Նոյնպէս իմն և հրեշտակքն առնէին ընդ կտաւսն. և 'ի ձեռն առեալ զվարշամակն, ծալէին կազմէին և մեկուսի դնէին ըստ բնութեան մարդկան սենեկապանաց զոր գործեն յարքունիս, և զամենայն հանդերձ թագաւորին դնեն 'ի պատուական տեղւոջ. իսկ թագին ուրոյն իմն առնեն զգուշութիւն, և ոչ խառն ընդ այլ հանդերձն պահեն: Նոյնպէս և երկնաւոր թագաւորին մերոյ զօրքն երկնից 'ի սպաս իջեալ՝ շողային զցանկալի գերեզմանաւն. և երկուքն 'ի ներքս մտեալ՝ զամենայն ինչ տեղւոյն պատուէին. բայց զթագն ոչ խառն ընդ այլսն ընկենուն, այլ ուրոյն դնելով ուսուցանէին մարդկան զմիասնական գլխաւորութիւն Երրորդութեանն, ուստի ամենեքեան առին զլինելութիւն:

Արդ Պետրոսի, զայս խորհուրդ իմացեալ գնաց 'ի գերեզմանէն ընդ միտս զարմացեալ, եմուտ 'ի տունն հանդերձ այլովք աշակերտօքն: Եւ քանզի երկիւղ մեծ էր վասն ահին Հրէից, զգուշութեամբ մեծաւ զդուռն 'ի փակի ունէին՝ լուռ նստելով. բազում խորհուրդք յածման մտանէին 'ի սիրտս իւրեանց, և իբրեւ զորս և անվերակացուս զանձինս համարէին. 'ի Հրէիցն հալածեալ և յԱստուծոյ մնացեալ և յընտանեաց վաղու իսկ հեռացեալ էին, տխուր և տրտում և ողորմելի քան զամենայն մարդիկ երեւէին 'ի ժամուն. քանզի գոյր ոք ոչ իսկ 'ի նոսա որ կարէր բանալ զբերան իւր, և բան մխիթարութեան խօսել ընդ նոսա:

Եւ մինչ դեռ յայսմ նեղութեան էին, եկն Յիսուս, եկաց 'ի մէջ նոցա և ասէ. Ողջոյն ընդ ձեզ: Եւ այս էր մեծ զարմացումն և ահագին տեսիլ. դուրք փակեալ, և

շուրջ զշինուածոյն ամենայն զգուշութիւն պատրաստութեան, և մուտ 'ի ներքս ամենեւին ոչ գոյր։ Իբրեւ ետես Տէր եթէ յեւս յափշութիւն կրթեցան սիրտք նոցա, վաղվաղակի եցոյց զձեռսն և զկողս, զի 'ի մեծ և յերեւելի նշանացն ծանիցեն զՏէրն, և փարատեսցէ զտրտմութիւն սրտից նոցա։ Դարձեալ կրկնեաց և քաջալերեաց կրկին ողջունիւն։ Այլ քանզի ընդդէմք են խռովութիւն և խաղաղութիւն, մատոյց զողջոյնն օգնական խաղաղութեանն. հալածեաց և հեռացոյց 'ի սրտից նոցա զլոյզ խռովութեանն, և փարատեաց յանձանց նոցա զերկրային զսուգ և զտրտմութիւն, և արար զնոսա անխախտս մտօք և անչարչարելիս հոգւով։

Այլ իբրեւ յամենայն կողմանց մաքրեաց զնոսա յերկրաւոր ապականութեանցս, անդէն և կարծրացոյց զանձինս նոցա առաւել քան զհաստատութիւն անդամանդի, զի կարասցեն ընդունել զանպատում շնորհս նորա, որ մեծն է և առաւել քան զամենայն, ընդ որում ոչ ինչ կշռի յերեւելեացս։ Իսկ արդ զիա՞րդ կշռեսցի ընդ այնմ՝ որ ոչ տեսանի և ոչ զննի, և ամենայն տեսանելեացս և ըմբռնելեացս նա է կենդանութիւն։ Այլ զինչ, այն որ այնչափ մեծացեալ առաւելու քան զամենայն, ես ոչ կարեմ ասել. իմանամ է, գիտելով ճշմարիտ՝ զի գոյ Աստուած. հաւատարիմ է ինձ. զորպիսութիւն նորա ոչ գիտեմ. ես որ երեւլինս՝ զայս եւեթ գիտեմ, զաներեւոյթն Աստուծոյ՝ Աստուած միայն գիտէ։ Բայց արդ ահա հարկեցայ ասել զոր ոչ գիտեմ. զի որպէս եմուտ դրօքն փակելովք, և որմքն ողջ կային և դուռքն ոչ էին խախտեալք, և ինքն բոլոր 'ի ներքս էր, մինչեւ զձեռսն և զկողսն եցոյց նոցա, երկիցս անգամ բերանալիր ողջունիւ հաստատեաց զնոսա, ըստ նմին օրինակի շնորհէ Տէր աշակերտացն իւրոց զայն պարգեւս՝ զոր ծով ոչ տանի, և ցամաք ոչ հանդարտէ, և երկինք թէ բաւեսցեն առ 'ի բնակութիւն։

Արդ ասա զոր ասելոց ես, մինչեւ յե՞րբ մեծացուցանես յանչափութիւն։ Ասել ահա կամիմ, այլ 'ի դիտելոյն վաղ հրաժարեցի։ Դարձեալ և երկնչիմ յոյժ. գուցէ իբրեւ ես ասիցեմ, ոչ հանդարտիցես լսել. և յոչ հանդարտելն քո՝ կասկածեմ գուցէ և մեռանիցիս իսկ. և մեռանիցիս իսկ ոչ միայն ըստ բնութեան, այլ ըստ

բնութեան և ըստ տարաբնութեան։ Բայց ես գիտեմ զի դու այսրէն ընդդիմանաս ինձ և ասես, թէ դու ուստի՞ լուար, և յորժամ լուար՝ ընդէ՞ր ոչ անդէն և մեռար, այլ այժմէն կեաս և կելոց ակն ունիս։ Այո՛, այսպէս է. ես ոչ միայն այժմէն՝ և կամ սակաւ կելոց ակն ունիմ, այլ և անմահացայ իսկ։ Եւ եթէ արդարեւ այդ այդպէս է, ապա ինձ զի և ես լուայց և ընկալայց և անմահացայց։

Ասեմ, եթէ յանձն առնուս. բայց սրբեցիր մաքրեցիր, ամենեւին պարկեշտացիր, ամենեւին առողջացեալ 'ի բաց արա զքեզ յերկրային ախտից չարչարանօք և տանջանօք. պատրաստեա զքեզ երկնագնաց ընտրելոցն. արտաքս դիր զքեզ ամենայն աշխարհական հոգոց և ամենայն աղտեղութեանց սորա և 'ի պատիր 'ի զբօսանաց սորա, որ է ժամանակեան մեծութիւնս։ Յորժամ զայս ամենայն թողում 'ի բաց, զի՞նչ տացէ ինձ ընդ այսր ամենայնի։ Ասացից քեզ. միայն հաւատա, միայն յուսա, միայն կամեաց, միայն ախորժեաց, միայն բուռն հար և զհետ երթ։ Եւ ո՞ւր երթամ և զո՞ր զհետ. զխաչեցելոյն։ Եւ ո՞ւր տանիցի. 'ի տուն։ Յո՞ր տուն. ուր աշակերտքն ժողովեալ նստին, և դուրքն փակեալ են. ընդ ո՞ր կամի՞ մտանէ, և արարածք չարգելուն զնա. և դու եթէ կամիս՝ կարես։ Նորա բնութիւնն, ասէ, տանի զայն. և դու հաւատա, վստահացիր քեզ, և կարես մտանել ընդ նմա։ Նա խոնարհեցոյց զերկինս և էջ 'ի գալն իւր առ քեզ. և դու հաւատա առաջին գալստեանն և թռչիս և 'ի վեր ելանես։ Նա ծնաւ 'ի սուրբ կուսէն, և կուսութիւնն ոչ խախտեցաւ. և դու հաւատ ունիս 'ի կուսածին բանն Աստուած, և ծնանիս 'ի սուրբ կուսէ աւազանէն, և անուանիս եղբայր Քրիստոսի, և կուսութիւն աւազանին ոչ լուծանի։ Նա յիւր մարմինն ընկալաւ զչարչարանս, և չարչարելի մարմնով եբարձ զչարչարանս ամենայն մարմնոյ, և ինքն անփոփոխ պահեցաւ յամենայն չարութենէ. հաւատա և դու սուրբ չարչարանացն Քրիստոսի, և լեր նմա չարչարակից չարչարելի մարմնովդ, և անփոփոխ պահեա զոգիդ յամենայն փտալի ախտից աշխարհի։ Նա զի ոչ էր պարտ մահու՝ մեռաւ, և թաղեցաւ և յարեաւ 'ի մեռելոց, և զդուրս գերեզմանին ոչ եբաց. դու հաւատա 'ի թաղեցեալն և յարուցեալն,

որ գայ աւերել զամենայն գերեզմանս, և յարուցանել զամենայն ննջեցեալս առանց թերութեան և պակասութեան։ Արդ եթէ զայս զօրութիւնս հաւատոց ընդգեցցիս, և 'ի տուն Պետրոսի մտցես, և նստցիս ընդ աշակերտսն ամենեսեան նովին հաւատովք, զնոյն ողջոյն ընկալցիս, և նովին ողջունիւ դարձեալ արժանի լինիցիս մեծի պարգեւին այնմիկ զոր ասելոց եմ։

Քանզի յորժամ կայր Տէր 'ի մէջ աշակերտացն 'ի տանն՝ յոր եմուտ դրօքն փակելովք, նմանեցաւ տունն այն երկնի և երկրի, և ամենայն զարդուց և զուարթնոց երկնից և ամենայն էից կենդանեաց և մարդկան որ յերկրի, և մանաւանդ ինքեան Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Եւ որպէս յարարչութեանն ըստ ճառեցելումն իմանի “Արասցուք, ասէ, ըստ պատկերի մերում”, իբրեւ առ Թուական, իսկ արարն՝ ըստ պատկերի Աստուծոյ, և փչեաց իմանալին ըստ միականի զօրութեանն, սոյնպէս և 'ի տանս յայսմիկ երկիցս ողջունին։ Եւ “որպէս առաքեաց զիս Հայր իմ, առաքեմ և ես զձեզ”, ճանաչի ըստ առաջին երրեակ Թուին։ Իսկ որ փչեաց 'ի նոսա և ասէ “Առէք զՀոգին սուրբ 'ի ձեզ, և եթէ ումեք թողջիք զմեղս իւրեանց՝ թողեալ լիցի, և եթէ զոք կապեսջիք, կապեալ եղիցի”, այս դարձեալ տանի հանէ անդրէն յառաջինն յիսկզբան բանիցն դիտաւորելով. “Եւ արար Աստուած զամենայն ինչ. և ետես Աստուած զամենայն զոր արար, և ահա բարի է յոյժ”։

Եկա՞ք ինչ արդեօք շուրջ զտամբն, եթէ և այլ եւս պիտիցի գալ։ Օ ցայն ահա եկաք, և 'ի ներքս եւս մըտաք, և սակաւ բանիւ զամենայն ասացաք. այլ հաւանեցուցանել զամենեսեան ոչ կարացաք։ Եւ ընդէ՞ր արդեօք. վասն զի ոչ ամենեքեան 'ի ներքս էին։ Եւ եթէ երկինք էր տունն, ո՞ մնայր արտաքոյ։ Դարձեալ բազում անգամ հարցանեմ զասացեալսն, և այլ տայ ասել. որ ոչ հաւատս ունէր՝ այն էր արտաքոյ. քանզի առանց հաւատոց անհնարին է զսուրբ Հոգին ընդունել։ Ահա այս է մեծ պարգեւն զոր ոչ կարէի ասել, և հարկեցայ ասել։ Եւ եթէ ժպրհեսցի ոք և կամեսցի առանց հաւատոյ մերձենալ 'ի զօրութիւն Հոգւոյն, եթէ քահանայ իցէ՝ իբրեւ զԿայիափայն պատառի և

հերձու. և եթէ յաշխարհէ՝ իբրեւ զԱնանիա և զՍափիրա: Իսկ արդ ո՞վ իցէ բաւական առանց մեծի օգնականին ընդունել զարարող սուրբ Հոգին, բայց եթէ ինքն Տէր փչեսցէ ասելով՝ առէք զՀոգին սուրբ 'ի ձեզ:

Զարմանամ ընդ այս և յոյժ եմ սքանչացեալ, եթէ զիարդ որք տանն ժոյժ կալան, և յատակքն ոչ պատառեցան: Բայց դարձեալ յիշեցի, զի երկնից երկինք էր տունն. որպէս զի թէ յանապատի բնակիցի թագաւորն, շինեցաւ անապատն, և աւանն նմա մեծ քաղաք այնուհետեւ և ոչ անապատ. առաւել քան զայն՝ տունս այս քաղաք երկնային եղեւ, և որք 'ի ներքս էին՝ երկնաքաղաքացիք, և որք ոչ անդ դիպեցան՝ դեռ եւս երկրայինք են՝ դժուարաւ առ 'ի հաւանութիւն: Բայց եթէ նոյն ինքն Տէրն դիպեսցի նովին զօրութեամբ, զնոյն շնորհս ընկալցի. ապա կարասցէ վիճակակից լինել երկոտասանիցն, և մանաւանդ եթէ 'ի նմին տան և 'ի նմին տեղւոջ նոյն Տէր: Եւ եթէ կամիս լսել աւետարանագրէն, զի ասէր զամենայն ճշմարտութեամբ. "Թովմաս, ասէ, մի յերկոտասանիցն ոչ էր ընդ աշակերտսն, յորժամ եկն Յիսուս և երեւեցաւ նոցա": Զի թէպէտ և լուաւ յայլոցն, ոչ ինչ կալաւ յանձին հաւանել նոցա. այլ ինքնատես կամի լինել, և մերձաւորագոյն զմերս բեւեռացն զննել: Եթէ յիշէք զոր ես ձեզ յառաջագոյն ասացի, որպէս դժուարագոյն է կեալ ջրայնոց 'ի ցամաքի և ցամաքայնոց 'ի ջուր, առաւել եւս դժուարագոյն է առանց հաւատոյ ընդունել զպարգեւս Հոգւոյն սրբոյ. որպէս վիճէր այրս այս թերահաւատ բանիւքն ընդդիմանալով ընկերացն:

Ով տէր իմ Թովմաս, ո՞չ ապաքէն հաւատք 'ի լսելոյ են. եթէ տեսանես և զննես և կաս 'ի վերայ ճշմարտին, ոչ եւս ասին հաւատք, այլ ճշմարտութիւն: Ի Տեառնէ բազում անգամ լուար զչարչարելն, զմեռանելն և զյառնելն: Աշակերտքդ բանից նշանաւ խօսին ընդ քեզ և զուրախութիւն յայտնութեանն պատմեն քեզ. և զի սուտ չէին՝ դու քաջ գիտես, և զի Տէրն արդար խօսէր՝ այնմ տեղեակ ես. ընդէ՞ր այդչափ յամառեալ պնդիս: Եթէ ոչ տեսանեմ, ասես, ոչ հաւատամ: Տեսանել արդեօք ահա տեսանես. մի՞ գուցէ ոք պարաւեցէ զքեզ: Ոչ, ասէ. թող միայն երեւեսցի

ինձ, միայն տեսից ես․ զի եթէ տեսից և զննեցից, և զիմ միտս անխիղճ արարից․ և եթէ պարսաւեսցէ զք, ես յանձն առից, ոչ ինչ պատկառեմ ես յայսմանէ․ գիտեմ ես զքաղցրութիւն Տեառն իմոյ, զի մարդասէր է և ողորմած։ Չեմ ես, ասէ, մեծ քան զՊետրոս, և ոչ թերահաւատութիւնս իմ քան զուրացութիւնն նորա մեծ․ և եթէ նմա արտասուքն իւր եղեն փրկութիւն, և ինձ ամօթն իմ լինի թողութիւն․ բայց միայն տեսից զայն՝ որում ցանկացեալն եմ։ Այլ եթէ իշխեմ ասել զայս եւս, աղաչեցից զՏէր զի 'ի նմին տան երեւեսցի ինձ նովին յայտնութեամբ․ ոչ միայն դրօքն փակելովք, այլ և նովին ողջունիւ 'ի մէջ նորին ընտանեաց։ Այս ահա ասացի զիմ կամքն․ հրաման ոչ իշխեմ տալ, այլ աղաչել կամիմ․ եթէ իցեմ արժանի, օգնեսցէ տկարութեանս իմոյ։

Իսկ բարերարն ամենայնի իբրեւ ետես զտապ նեղութեան աշակերտին, գթացեալ ողորմեցաւ 'ի յոյզ մտաց նորա․ բայց թող ետ զի լցեալ կատարեսցին աւուրք թուական առաջին նշանադրութեանն, մինչեւ թլփատեսցի անթլփատութիւն թերահաւատութեան իւրոյ, և ապա արժանի լիցի նորոգել և ընդունել զառանց երկմտութեան աւետիսն, որպէս և աշակերտակիցքն նորա։ Քանզի ցուցանէ աւետարանագիրն․ "Այլ եղեւ, ասէ, յետ ութ աւուր դարձեալ անդէն միւսանգամ անդ էին 'ի միոջ վայրի 'ի ներքս աշակերտքն 'ի նմին տան, և Թովմաս ընդ նոսա․ եկն Յիսուս եկաց 'ի մէջ նոցա դրօքն փակելովք, և ասէ․ ողջոյն ընդ ձեզ։ Այլ զԹովմաս ասէ․ բեր զմատունս քո 'ի ձեռս իմ և զձեռս քո 'ի կողս իմ․ տես և շօշափեա, և մի լինիր թերահաւատ, այլ հաւատա"։

Այլ զայս ասացեալ՝ Թովմայի լինի միանգամայն յամօթ և յերկիւղ, յընկերացն ամաչէ, և 'ի Տեառնէն երկնչի ասելով․ "Տէր իմ և Աստուած իմ"։ Այլ ընդէ՞ր յառաջ Տէր, և ապա Աստուած։ Յարարչութեանն ոչ այնպէս․ և 'ի հինգ աւուրսն՝ Տեառն անուն լռեալ դադարեաց, Աստուած անուն 'ի մէջ անցեալ՝ զամենայն առնէ․ իսկ 'ի վեցերորդին ապա և Տեառն անուն երեւի։ Իբրեւ յայտնի է պատճառ իրացդ․ քանզի Աստուածդ անուն արարչական զօրութիւն է, և է հաշտ.

և համբոյր և արարող։ Իսկ ուր արարչութիւն է՝ օրինագրական չեւ եւս է. ապա եթէ ՚ի դատողութիւն եկեսցէն արարածք, պիտոյ է և օրէնսդրականն. որպէս և Առաքեալս այս յայտ արար. ընտրող իմաստութեամբ եա պատասխանի և ասէ՝ Տէր իմ և Աստուած իմ։ Վասնզի անկայ, ասէ, ընդ դատաստանաւ թերահաւատութեան իմոյ. դատես զիս, քանզի արժանի եմ խրատու. այլ ՚ի թուոյ աշակերտացդ զիս մի հաներ, քանզի գիտեմ եթէ մեծ են յանցանք իմ. բազում են վըկայք յարութեանդ քո, և ինձ ոչ միայն բազմութեանն պարտ էր հաւատալ, այլ քոյ բանիցն իսկ, որ համապազ ուսուցանէիր և կրթէիր զմեզ, զոր և գործով իսկ կատարեցեր։ Բայց արդ որովհետեւ ողորմութեամբ երեւեցար ՚ի սմին տեղւոջ առաջին օրինակաւն, և պարզեցեր զթերահաւատութիւն խորհրդոց իմոց, և բացան աչք մտացս, և դէմ յանդիման տեսի զՏէրդ իմ, իշխեցից ասել՝ Տէր իմ և Աստուած իմ. զի յանդիմանելովդ քով զիս՝ նոր մարդ արարեր, և ոչ թողեր յոգիս իմ և ՚ի մարմինս իմ տեղի դատողութեան։ Արդ յուհետեւ Աստուած իմ ես դու. և որով Աստուած իմ ես դու՝ դովիմք և տէր, դովիմք և օրէնսդիր, դովիմք և թագաւոր, դովիմք և Հայր, ծնիչ և սնուցիչ, տըւող պարգեւաց, և ժառանգեցուցիչ զկեանս յաւիտենականս։

Բայց թերեւս ասասցէ ոք. ահա երիցս անգամ երեւեցաւ Տէր ՚ի նմին տան, ընդէր ՚ի պետրոսեանս փըչեաց և ասէ՝ առէք զՀոգին սուրբ ՚ի ձեզ, և Թովմայի զայս ոչ արար. զի եթէ կատարումն տուչական շնորհին Հոգին սուրբ է, երեւի թէ Առաքեալս այս զրկեցաւ։ Ասացից և վասն այդր որչափ և ՚ի կարի է, ոչ նորոգս և ոչ այլաձայնս, այլ զոր գիտէք ամենեքեան և հաւատովք ընդունիք։ Սուրբ Հոգին Աստուծոյ արարող զօրութիւն է, և գութ սիրոյ իւրոյ թափանցէ ընդ արարածս. այլ ինքն յինքեան իմանի անհատ և անբաժանելի. և ոչ յինքենէ շնորհքն, այլ շնորհքն ՚ի նմանէ. և ոչ յինքենէ պարգեւն, այլ պարգեւատու ամենայնի։ Իսկ որպէս Հայր իւր յանձնէ էութեամբ, սոյնպէս և սուրբ Հոգին ըստ Հօր և Որդւոյ։ Արդ յառէն Որդւոյ ցաշակերտսն՝ ողջոյն ընդ ձեզ, Հոգւով

սրբով լցման ամենեքեան. իսկ զի փչեաց 'ի նոսա, զա-
ռաջին պարգեւութիւնն յերկրորդում աստ յիշեցոյց,
եթէ որ արար զմարդն առաջին, նոյն և որ եկն և փըր-
կեաց և նորոգեաց: Իսկ յասելն՝ առէք զՀոգին սուրբ
'ի ձեզ, խնայութիւն տեսական: Որպէս զգեցաւ Որդի
մարմին բնութեան մերոյ կամօք Հօր, նոյն կամք են և
Հոգւոյն սրբոյ. զի որպէս Որդի զգեցաւ զմարդկու-
թիւն, նոյնպէս և մարդկութիւնս զգեցաւ զՀոգին
սուրբ, զի 'ի ձեռն սուրբ Հոգւոյն զգեցեալ եղեւք զոր-
դիութիւն և զՀայրութիւն: Եթէ ոչ այսպէս էր ճըշ-
մարտիւ, զիա՞րդ կարէաք ասել Հայր մեզ զԱստուած,
և եղբայր մեզ զՔրիստոս, և նորոգումն մեզ զսուրբ
Հոգին. զի ոսկր եմք յոսկերացն Քրիստոսի, ապա և
միտք 'ի մտացն Հօր, նոյնպէս և զօրութիւն Հոգւոյն
սրբոյ:

Ապա եթէ դարձեալ ոք հարցանիցէ, եթէ դու ա-
սացեր՝ անհաս և անխառն զօրութիւն սուրբ Երրոր-
դութեանն, ես ոչ յուրաստ լինիմ յիմոց ասացելոցն,
և ոչ քումդ ընդդիմանամ, և ոչ զարարիչն ընդ արա-
րածս համեմատեմ, և ոչ զանշարժելի բնութիւնն խախ-
տեմ: Քանզի անյեղեղուկ է աստուածութիւնն. իսկ
մերս անկեալ դնի ընդ բազում ապականութեամբք և
փոփոխմամբք, և կարօտ է օգնականի արարչական զօ-
րութեանն. զի որ արարն, նոյն նորոգեսցէ յանապա-
կանութիւն: Եւ որպէս բազում անգամ ասացաք,
նորոգումն 'ի ձեռն փչմանն յաշակերտսն՝ ետ զՀոգին
սուրբ, և նովին Հոգւովն նորոգեալ է զամենայն արա-
րածս, և առաւել զբնութիւն մարդկութեանս մերոյ.
բաժանէ 'ի մասունս բազումս, և պիտոյ է մի Հոգի 'ի
կապ և 'ի զօդ ամենեցուն, որպէս և ոք յիւր մարմնի
ուսցի ճշմարտապէս:

Բայց իմ զքեզ աղաչեցեալ, այդրէն զքեւ 'ի քեզ
հայեաց և տես զխառնուածս քոյոյ բնութեանդ. մար-
մին մի է, և անդամք բազումք, և իւրաքանչիւր ան-
դամքն 'ի բաժանմունս են անքէն և աննախանձ և յօժ-
սիրելիք միմեանց և վաստակաւորք ամենեքեան: Իսկ
յորժամ ընդունին զհատուցումն ըստ իւրաքանչիւր
վաստակոց, ոչ ոք 'ի նոցանէն առանձին զպարգեւն
իւր համարի. և մանաւանդ եթէ իցէ նահատակու-

թիւնն ընթացից ոտին, և կամ կորովութեան ձեռին, կամ ճարտարութեան բանի, կամ մտաց առատութեան յիմաստութիւն, և կամ բնաւ իսկ որոյ և իցէ մասանց մարմնոյն: Քանզի ոչ եթէ խառն 'ի խառն ընթանան, այլ կարգաւ օրինաւորք են՝ ըստ դրական թուոց մասանց մարմնոյն: Արդ ասա դու ցիս, ո՞'ի նոցանէ ընդունիցի զպարգևն: Ես գիտեմ՝ ընթանաս դու 'ի գլուխն, այլ ոչ նախանձին ոտքն. և եթէ ձեռքն ընկալցին, ոչ ինչ զչարին այլքն. թէ միայն 'ի մարմնի իցէ պատիւն, հասարակաց է խնդութիւնն: Նա և անուն զոր ունի մարդն, դրական է և ոչ բնական, իբրև ոչ է նա գործակից քաջ նահատակութեանն. յառաջ քան զմարմինն անունն վկայեալ և պատուի և պսակի. զվէրս և զպխս մասունք մարմնոյն ունին, և զքաջութիւն՝ անուն ժառանգէ. իսկ անդամք ամենայն խնդացեալ բերկրին ընդ անուանն, և այնպէս միաբանութիւն լինի բազմութեանն ամենայնի: Իսկ արդ եթէ առ մի մարդս այսպէս երևի, որչափ ևս առաւել 'ի ձեռն որդւոյն Աստուծոյ, որ զգեցաւ զմի մարմին ըստ թուականի միոյ մարդոյ, և միով մարդով ունի զամենայն մարդկութիւնս:

Արդ եթէ փչեաց 'ի նոսա, և ասէ՝ առէք զհոգին սուրբ 'ի ձեզ, թուով են որ 'ի ներքս են. այլ ոչ գիտեմք եթէ ամենեքեան ընկալան զհոգին սուրբ: Նա և ոչ 'ի վերան տարակուսի պիտի անկանել յայսմ տեղւոջ. քանզի ոչ եթէ տեղին էր որ սրբէր զմարդիկն և արժանիս առնէր ընդունել զհոգին, այլ տէր տեղւոյն. զի վասն տեառն սուրբ երևի տեղին: Եթէ վասն Տեառն լինիցի ամենայն, Տէրն յամենայն տեղւոջ է. և մինչ էրն յերկինս՝ յերկրի էր, և մինչ յերկրի էր՝ յերկինս, և մինչ 'ի տան էր՝ յաշխարհի էր և յամենայն տեղիս և առ իւրաքանչիւր մարդոյ և մարդկան. ապա և ընդ Թովմայի էր. ապա ուրեմն և յամենեսեան:

Եւ փչեա՞ց 'ի հաւատացեալսն: Այո. իսկ 'ի թերահաւատսն՝ թէ և 'ի ներքս 'ի տան էին՝ և ոչ յոք: Իւր նմին իսկ Տեառն յասելն ցԹովմաս՝ ոչ գովելով, այլ պարսաւելով. “Այդ զի տեսեր դու զիս և հաւատացեր, երանի որ ոչ իցէ տեսեալ և հաւատասցէ յիս„: Իսկ արդ փո՞քր ինչ համարիցիս զերանութիւնս զայս. զի ե-

թէ մարդ մարգոյ երանի տայր՝ սակայն և այն մեծ էր, թող թէ Աստուած մարդոյ երանէ. զի թէ 'ի հաւատալ մարդոյն որ ոչ էր զնա տեսեալ՝ երանի ետ, զինչ ինչ կարծես զերանութիւնս զայս, բայց եթէ զՀոգին սուրբ:

Այլ եթէ դարձեալ ասիցես. Ահաւասիկ պետրոսեանքն հաւատացեալք էին, որպէս դու ասես, և զՀոգին սուրբ ընկալեալ էին, կրկին փչումն զինչ պիտոյ էր: Դու իբրեւ զմարդ հարցանես և իբրեւ զմարդ տգիտանաս. զաներեւոյթս Աստուծոյ ոչ գիտես, նմա և ծածուկքն մեր յայտնի են: Նա և քեզ աւադիկ վերըստին իսկ պիտոյ է ոչ փչումն, այլ նախ հաւատք, և 'ի ձեռն հաւատոյն ապա կարես ընդունել զսուրբ փըչումն՝ ոչ թերանով և ոչ ըռընգամբք, այլ իմանալի ըղգայութեամբն Աստուծոյ: Դու զինչ գիտես թէ ուր էին 'ի տանն և քանիք էին: Ես վայրապար ինչ ասացի. և զինչ պիտոյ էր նոցա: Ոչ ասացի եթէ յոյժ դղրդման ժամանակք էին, և ամենեքեան 'ի շարժման էին, թէպէտ և հաւատովք հաստատեալ էին, սակայն և մխիթարութիւն հաւատացելոցն պիտոյ էր մատուցանել. և մխիթարիչ միայն սուրբ Հոգին է:

Բայց այն զի ասացի թէ ուր էին անդ և քանիք էին, ոչ վայրապար ասացի. քանզի խռովութեան պատճառք ոչ այլ ոք է, բայց մեղք, և մեղաց զօրութիւն՝ սատանայ, և սատանայի զօրութիւն՝ դեւք: Արդ փչելով Տեառն յԱռաքեալսն, ասելով՝ առէք զՀոգին սուրբ 'ի ձեզ, դեւք հալածեցան, սատանայ յետս չոգաւ, մեղք կորեան, Առաքեալքն լցան Հոգւով սրբով: Բայց ասելով՝ առէք 'ի ձեզ, ոչ եւս բռնաբար տամ. քանզի աստուածային Հոգին յանձն երկմիտ ոչ մտանէ, և 'ի հոգի ննջաւոր ոչ բնակէ, այլ 'ի մարմինս սուրբս և յոգիս յստակս և 'ի միտս հաստատեալս: Առէք, ասէ, 'ի ձեզ կամօք ձերովք, և կատարեցէք զկամս սուրբ Հոգւոյդ:

Բայց զփչեաց յորժամ լսես, քաջիմաց լեր, մանր քննեա, սրատես լեր մտօք առաւել քան աչօք: Քանզի զանուն ուրուք ոչ ասաց, և առանձինն յոք ոչ փչեաց. այլ 'ի նոսա, ասէ, փչեաց. և 'ի նոսա ասելովն՝ ըստ գրեցելումն երեւի՝ թէ ոյք 'ի տանն էին. իսկ ըստ իմանա-

լոյն՝ յամենայն աշխարհ. և յամենայն աշխարհ ասելով երեւի թէ յամենայն մարդ. և յամենայն մարդ ասելով՝ ՚ի ձեռն ճշմարիտ հաւատոյն. քանզի ուր հաւատք են, անդ և Աստուած. և ուր Աստուած է, ամենայն ոք անդ է։

Արդ Առաքեալս այս իբրեւ լուաւ ՚ի պետրոսեանց, եթէ տեսաք մեք զՏէր, և զայս ինչ խօսեցաւ ընդ մեզ, և սորա թէ հաւատովք ընկալեալ էր զլուր տեսլեանն, նոյն յայտնութիւն էր նմա, նոյն ողջոյն էր ընդ նմա, նոյն փչումն էր նմա, նոյն սուրբ Հոգին երեւէր նմա. որպէս և Տէրն ինքնին ասէ. "Երանի որոց ոչ իցէ տեսեալ, և հաւատասցեն յիս,,։ Եւ որպէս վերագոյն ասացաք, եթէ միոյ մարդոյ մի մարմին է, և մասունք բազումք, և միաբանութիւն առ հասարակ, ապաքէն և աշխարհս մի նիւթ՝ միոյ ձեռին արարած, և ՚ի բազում տեսակս բաժանեալ, և սեռք տեսակայն ըստ իւրաքանչիւրոյն զոյգք և հաւասարք առ մի անդր հային ամենեքեան, ուստի զգոլն և զկեալն ունին յԱստուծոյ. և ամենեցուն իշխան և առաջնորդ՝ մարդ, և առաւելեալ քան զամենեսեան բնական խոհականութեամբ, և ստացական առաքինութեամբք. երկոցուն կատարումն՝ յորդին Աստուծոյ հաւատալ։

Արդ առ որում գտանին հաւատք ճշմարիտք, ՚ի նմա տեսանին ամենայնքս՝ որ են առանց ախտից և չարչարանաց. որպէս և մեծն Մովսէս ունէր փչումն ՚ի Հոգւոյն սրբոյ, և ՚ի նմին շնորհաց Հոգւոյն զոր ունէր Մովսէս տուչութեամբն Աստուծոյ՝ ընուին եօթանասուն և երկու ծերքն, և մարգարէանային ՚ի մէջ ժողովրդեանն. և Մովսէս ՚ի Հոգւոյն սրբոյ շնորհացն ոչ թերացաւ. թէպէտ և արկին ոմանք նախանձուկս, նա եւս առաւել լցեալ Հոգւով սրբով ըղձանայ զամենայն ժողովուրդն Տեառն դառնալ ՚ի մարգարէութիւն։ Ապաքէն նոյն Տէր է, որ Մովսէսի շնորհեաց զՀոգին սուրբ, և ՚ի տանն նա փչեաց զնոյն հոգի։ Զի ՚ի ձեռն սակաւ թուականին անթիւ են բազմութիւնք հաւատացելոց ՚ի Քրիստոս. ընկալցին զնոյն շնորհս Հոգւոյն անքէն և աննախանձ։ Քանզի ոչ եթէ մասն է պարգեւն, այլ ամենայն մասունքն աստուածատուր շնորհին, որով արար զերկինս և զերկիր և զամենայն գոյս որ ՚ի սոսա։

Բայց թէպէտ 'ի թիւ երկոտասանից յոյժ խնդրելի է՝ յորս փչեաց զՀոգին սուրբ, թէպէտ և ոչ ամենեցուն. սակայն այնոքիկ որ սիրեն մեծապէս կամօք զիմաստութիւն ոգւոց և մարմնոց, ստասցին 'ի վիճակս երկոտասան Առաքելոց, որ լինին երրեակ չորք, և վեց երկու. և 'ի միասին գլխաւորելով լինի երկոտասան. որ է սկիզբն միակին 'ի գլուխ երկոտասանից փչումն սուրբ Հոգւոյն. և 'ի միջին և յերկուցն և 'ի չորիցն լինի և կատարի եօթներեակ թիւն. զի 'ի վեցի անդ տեսանիցի աշխարհարարութիւնն, և 'ի միականին՝ կատարումն եօթներեկին, և 'ի չորրորդումն՝ նիւթական գոյացութիւնս: Իսկ 'ի միում վեցեկին երիւք կրկնակօք լինի երրեակ թիւն, և բերէ զնմանութիւն զանեղին և զանսկզբնաւորին զինքնագոյ զօրութեանն: Իսկ միակ երկուն գեր 'ի վերոյ անուն և անճառելի, միայն իմանալի, որ է անբաժանելի. յերիցն լինի և պատարուն երրեակ թուոյն: Դարձեալ և ըստ եօթանն տեսանի գոյացութիւնն և մերոց զգայութեանցս, որ բաժանեալ է յեօթն մասունս տեսակաց՝ աչօք և ընչօք, ականջօք և բերանով: Եւ որպէս 'ի սկզբանն լինելութեան 'ի ձեռն սորին թուականի աշխարհ գոյացաւ 'ի պատճառէն, որ ունի զնմանութիւն միակին՝ աւուրբք վեցիւք, յորում սեռք լինելութեան գոյացան. իսկ յառաջխաղացութեան աճմանն 'ի միակին՝ որ է եօթներեակն, 'ի թիւ անկեալ ընդ վեցեկին՝ աճէ և բազմանայ և լինի երկոտասան թիւն, յորում և ամենայնքս տեսանին՝ երկնայինք և երկրայինք. երկնայինքն՝ արեգական և լուսնին, հինգ մոլորականքն և եօթն անմոլար աստեղքն, որ լինին եօթներեակ երկու. և յայս երկու եօթներեկացս գոյանան ամենայն լինելութիւնք ախտաւորացս, որ են պատճառք կենաց և տեւողութեան աշխարհիս: Դարձեալ նովին թուականաւ եօթներեակ՝ ունին երկինք եօթն պարունակս, որ անուանին դօտիք, և են յարկք օդեղէնք անջրպետեալք 'ի միմեանց բազում միջոցաւն, շրջագայ կազմութիւնն հրամանաւ արարողին ոչ միայն կենաց պատճառք 'ի ներքոյ արեգական, այլ և կենաց և բարի կենաց, և տեսական խոհականութիւն յերկնաւոր իմաստութիւն. զոր և մարգարէն Եսայի ասէ լցեալ Հոգւովն Տեառն, և տեսեալ զա-

մենայն արարածս զի են մեծամեծք և սքանչելիք, և 'ի սմա իմանի սորին արարիչն և հաստատիչն, և լուեալ եւս 'ի նմին Հոգւոյ որ ասէ 'ի բերանոյ Դաւթի. "Իբրեւ զի մեծ են գործք քո Տէր, և զամենայն ինչ իմաստութեամբ արարեր": Եւ մեծ իսկ են արդարեւ, զի Աստուած 'ի գործս իւր տեսանի. և իմաստութեամբ են, զի Քրիստոսիւ արարեալ է. և Քրիստոս Աստուծոյ զօրութիւն և Աստուծոյ իմաստութիւն: Եւ որպէս էր իմաստութեամբն Աստուծոյ որ է Քրիստոս, նոյնպէս և Հոգւովն սրբով. որպէս և նոյն Դաւիթ ասէ. "Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա". նորայն ասելով զՀօրն՝ Հոգւովն, իսկ նոցայն՝ լինելութեանս: Արդ ուր ասէն "երկինք պատմեն զփառս Աստուծոյ", զաստուածութիւնն յայտ առնէ. իսկ ուր "զամենայն ինչ իմաստութեամբ արարեր", անդ զորդին Աստուծոյ ասէ. իսկ ուր բերան և Հոգի ասէ և զօրութիւն, անդ զՀոգին սուրբ զէակիցն Հօր և Որդւոյ:

Բայց Եսայի 'ի շնորհս սուրբ Երրորդութեանն՝ ըստ եօթն պարունակացն երկնից բաժանէ յեօթն մասունս զտուչութիւն նորին Հոգւոյն, և բուռն հարկանէ զերկնէ և զերկրէ, և ածէ 'ի մի միաբանութիւն, և ասէ այսպէս. "Բղխեսցէ գաւազան յարմատոյն Յեսսեայ, և ելցէ ծաղիկ յարմատոյ անտի. և հանգիցէ 'ի վերայ նորա Հոգի Աստուծոյ, Հոգի իմաստութեան և հանճարոյ, Հոգի խորհրդոյ և զօրութեան, Հոգի գիտութեան և աստուածպաշտութեան, և լցցէ զնա Հոգի երկիւղի Աստուծոյ":

Արդ բազում անգամ ասացեալ զեօթներեակ թիւն՝ որ է վերաբեր բնութեանն, մարգարէս Եսայի բոլորեաց բովանդակեաց՝ ած և կատարեաց 'ի բանն Աստուած, որ արար զերկինս և զերկիր անդստին 'ի սկզբանց. զինքն յարարածս կերպարանեալ տպաւորեաց, և յիւրն եկեալ զիւրսն առնու, զիւրն զգենու: Եւ զգեցեալ ոչ դիպուածով և ոչ յայլ ընդ այլս պատահումն, այլ զինքն ձեւացոյց երկնիւ և երկրաւ և միջոցաւս. երկնիւ՝ ըստ միակին, որ է Աստուածն բան. և երկրաւ՝ որ է մեր հողեղինութիւնս. իսկ միջոցաւս՝ թուական գօտեօք՝ ըստ եօթն զգայութեանցս: Զի որպէս առ զհողոտ մարմինս մեր, որ է մասն երկրի, նոյնպէս և զօդեղէնն և

զհրաշալիսն որ յերկինս, և 'ի մեզ Քրիստոսիւ են. զոյն և Տէր յինքեան մարմին ունէր, յոր կատարի ամենայն ինչ. քանզի նովաւ է սկիզբն լինելութեան և կատարումն նորոգման նորոյ աշխարհի: Եւ քանզի զգայութիւնքս որ 'ի մեզ են՝ անօսրագոյն բնութիւն են քան զթանձրութիւն մարմնոյս, յանգութիւն ունին իմանալի խոհականութեան, զոր և մարգարէն հոգւոյ մատունս ասաց: Եւ ճշմարիտ. քանզի ականջօքս լսեմք Աստուծոյ, և աչօք տեսանեմք զարարածս՝ յորում իմանի Աստուած, և ըռնգամբքս ծծեմք զշունչ օդոյս՝ որ է կենդանութիւն ամենեցուն, և ձայնաւոր գործեաւս բերեմք փառաւորութիւն Աստուծոյ փոխանակ արարածոցս:

Իսկ եթէ առ մերս այսպէս է, զինչ ինչ իմանայցեմք առ տէրունի զգայութիւնսն: Կայ յերկրի, և աչօք տեսանէ զՀայր յերկինս. շրջի 'ի Գալիլեա, և հոտ Ղազարու մահուն առնու նման 'ի հեռաստանէ: Սիմովն ընդ միտս իւր յոգիսն հայհոյէր ասելով. Սա եթէ մարգարէ ոք էր, գիտէր՝ զիարդ ոչ՝ որպիսի կին մերձենայ 'ի սա: Իսկ Տէր իբրեւ զքաղցրաձայն զաղաղակ լուեալ՝ յանդիմանէ զնա առակօք պարտապանաց երկոցունց հաւատարաբերական բանիւք ըստ մերում նմանութեան: Եւ առանց ականջաց լսեն նմա ամենայն տարերք, ջուրքն 'ի թակոյկսն, նկանակքն 'ի ձեռսն, հողմք 'ի ծովուն, մեղք 'ի մարդկան, մեռեալք 'ի գերեզմանս:

Արդ այս է զոր մարգարէն Եսայի ասէ՝ եկեսցէ և հանգիցէ 'ի վերայ նորա եօթն հոգի, 'ի ձեռն եօթն զգայութեանցս զոր էառ Տէր, և գործեաց զամենայն կատարելութիւնս հոգւոյն սրբոյ, և յինքն բովանդակեաց զեօթներեակն երկնային, և զեօթներեակն զերկրային, որ է սկիզբն առաջինն, և կատարումն վերջինս. քանզի սկսանիմք 'ի միակէն՝ որ է հիմն և հաստատութիւն, և կատարեմք յեօթներեակն՝ որ է ծայր և յանգումն ոչ թուական մասինն, այլ տեսական իմաստութեանն: Քանզի 'ի վեցն, ասէ, արար Աստուած զամենայնս, և յեօթներորդումն հանգեաւ: Եւ հանգչի Աստուած. և ոչ երբեք: Եւ զիարդ կարացից ասել նմա հանգչել՝ այն որ ոչն վաստակէ: Այլ քաջ իմացեալ ած զմտաւ զինչ է հանգչելն Աստուծոյ, բայց եթէ կատարեսցին կամք նորա: Եւ ո՞ երբեք յեղելոց

աստի կարաց հաճոյ լինել Աստուծոյ և հանգոյց զդատողական զօրութիւն նորա. բայց միածինն 'ի Հօրէ և կուսածինն յերկրէ, որով զամենայն արար Աստուած, և նա եկն գործեաց զամենայն հաճոյս Աստուծոյ: Ապա ուրեմն այս է օրն եօթներորդ, յորում հանգեաւն ասեմք Աստուած. քանզի 'ի վեց աւուրսն ամենայն ախտականքն եղեն, և Աստուած հեռի է յախտից և 'ի չարչարանաց: Նարի անուանեաց, այլ ախտս ոչ. քանզի յախտաւորաց անտի մարթ է բարի լինել, այլ ոչ առանց չարչարանաց և ճգնութեան: Իսկ ուր առաքինութիւն է, անդ և բազում ճնշումն մարմնոյ տեսանի. իսկ ուր մարմնոյ ճնշութիւն է, անդ և աւուրք և ամիսք և տարիք և ժամանակք ընդ ապականութեամբ են անկեալք: Վասն որոյ 'ի միում աւուրն եւեթ հանգիստ սուրբ, որ անուանեալն է շաբաթ, և թուականաւ եօթներեակ. և եօթն թիւդ բերէ զնմանութիւն անծնի, և անծինն զանեղն, և անեղն ունի զարարչական զօրութիւնն:

Արդ 'ի վեց աւուրս տեսանի հազար ամն, յորում ամենայն աշխարհս անկեալ էր ընդ ապականութեամբ, մինչեւ եկն եհաս թիւ եօթներեկին՝ զոր 'ի վեր անդր շաբաթ անուանեաց, և հանգիստ զնա համարեցաւ: Այս է գալուստն Տեառն, որ եմուտ դրօքն փակելովք, և սրբեաց և մաքրեաց զաղտ վեց աւուրց առաջնոց. և անուամբ եօթներեկին՝ որ է կոյս և անծին 'ի մահկանացու գոյացութեանցս, և բազմածնունդ առանց ախտից և չարչարանացն, զայն զօրութիւն շնորհեաց երկոտասան Առաքելոցն, որով զաշխարհս յարդարեցեն և կազմեցեն 'ի վեցիցն 'ի դարն եօթներորդ. զի իցեն բազմաբեղունք յարդարութիւն, և անծինք իցեն 'ի չարութենէն և յատելութենէ և յամենայն ապականացու պիտոյից աշխարհիս. որպէս և նոյն իսկ երկոտասան թիւ Առաքելոցն ունի տեսութիւն 'ի ձեռն գըլխաւոր միակին՝ որով բարձին զախտ յաշխարհէ, ըստ երկոտասան մասինն որ յայտնութեամբ տեսանիւր 'ի հիւանդութեանն տեառատեսին երկոտասանամեայ: Քանզի կինն զցաւն առանձինն միայն ունէր. իսկ աշխարհ 'ի ծածուկ տանջեալ լինէր երկոտասան մասամբք տուընջեան և գիշերոյ. քանզի օրն ունի զթիւ երկոտա-

սան ժամուց, և զոյգ նմին՝ գիշերն, և 'ի ժամու անդ օր մի ըստ թուականն աւուրց ամսոյն, և օրն ողջոյն գիշերային մասամբքն հնազանդեցան ունայնութեան։ Այլ ունայնութիւն ասեմ 'ի բարեգործութենէ. իսկ որ 'ի բարւոյն ունայնացեալ է, լի է անարգութեամբ։ Այլ անարգութիւն ասեմ զվրիպելն 'ի ճշմարտութենէ, և վրիպումն է թողուլն զԱստուած։

Այլ քանզի 'ի սկզբանէ մարդիկ զհետ թշնամւոյն գնացին, և կամօք 'ի հնազանդութիւն մտին ամենայն ապականութեան. առաջին թողուլն զԱստուած. երկրորդ ձեռագործաց երկիր պագանել. երրորդ անզգայից զոհել. չորրորդ անխտիր լինել յապականութիւն. հինգերորդ զպատկերակից իւր սպանանել. վեցերորդ ագահութիւն, որ է արմատ դառնութեան. եօթներորդ ատելութիւն, որ է անպտղաբերութիւն արդար մասինն. ութերորդ գողութիւն, որ է սկիզբն աւերածոյ աշխարհիս. իններորդ յափշտակութիւն, որ գրգռէ զպատերազմունս. տասներորդ ստութիւն, որ է ուրացութիւն յԱստուծոյ. մետասաներորդ ամբարտաւանութիւն, որ է բեկումն ոգւոց և մարմնոց. երկոտասաներորդ պտուղ մահու, զոր ժառանգեցաք յապականութիւնս։

Արդ այս երկոտասան մասամբք ամենայն աշխարհ անկեալ էր յախտ հիւանդութեան, և բղխէր 'ի սմանէ արիւն աներեւոյթ վիրացն. և բազում անգամ ջանայր առ բժիշկս, ոչ զի ողջացուցանէին միայն ոչ՝ այլ և յաւէժ վէրս 'ի վերայ վիրայն դնէին. և ոչ միայն 'ի մարմնոցն հոսէր արիւն, այլ և յաներեւոյթ և յանարիւն ոգւոցն, որ էր բխումն աներեւոյթ ապականացու։ Քանզի 'ի վեր հայելով յերկինս՝ տեսին աստեղս և մոլորեցան, որ են պատճառք ժամանակեայ կենացս. զանժամանակն Աստուած ընդ նոսա փոխանակեցին և աստէն յերկրիս ըստ երկոտասան թուոց, 'ի նմին զորս քերթողք առասպելաբանեցին՝ ասելով այսպէս. Էր ոմն մեծ, ասէն, և առ նմին անհուն ժամանակ. և 'ի մերձենալ նոցա առ իրեարս, ծնան որդիս վեց, որում Տիտանս նկարագրեցին. և զոյգ ընդ նմին էգս, զորս Տիտանիդս ասացին, և ծնունդս կարգեցին, և զախտս անձանց մարդիկ յերկրէ յերկինս ձգեցին. անդ 'ի վեր

գումարելով յաստուածութիւնն մեծամեծ հայհոյութիւնս արձակեցին :

Իսկ այսու երկոտասանիւքս զպարզութիւն ոգւոցս իբրեւ թանձրացեալ մարմինս՝ յարեան թաթաւեցին երկոքումբք մասամբքս՝ հոգւովք և մարմնովք . ոչ միայն զոհեցին, այլ և զոհեցան : Իսկ զոհեցան ասեմ՝ աչք անառակութեամբ հայելով, և ականջք՝ լկտի ձայնս լսելով . ռընգունք 'ի ճենճերս և 'ի ծուխս . և ճաշակաւորութիւն՝ անյագութեամբ ըստ անասնական բնութեան, ուստի բազմանայ անառակ ցանկութիւն . և ամենեքեան թաթաւեցաք յարիւն աղտեղութեան գործոց մերոց . և վասն մեր օրն պղծեցաւ, և յաւուր անդ ժամքն երկոտասան և տարին, և 'ի տարւոջ անդ ամիսք երկոտասանք . և ահա միանգամայն և երկիրս ամենայն :

Իսկ եթէ երկրայնովքս երկիրս պղծեցաւ, և երկնայնովքն երկինք, արդ 'ի բժշկել Տեառն զկինն երկոտասանամեայ տեռատես, որ էր նշանակ ցաւոց աշխարհիս, պիտոյ էր ապաքէն և զաշխարհ բժշկել : Զի ոչ եթէ Տէր վասն մասինն միայն եկն յաշխարհ, այլ վասն ամենայն մասանց աշխարհիս : Բժշկեաց զմի մասնն . զի 'ի ձեռն միոյ մասինն ուսցին ամենայն մասունքն ընթանալ առ նոյն բժիշկն, և բուռն հարկանել ոչ զնոյն դրօշակէ, այլ զՀոգւոյն սրբոյ, և զՀոգին սուրբ տեսանիցեն յերկոտասան Առաքեալսն : Վասնզի կինն ոչ եթէ զձորձոյն բուռն հարկանելով եառ զառողջութիւնն, այլ յառաջ քան զհանդերձիցն՝ զհաւատոյն բուռն եհար, և ստանալով զհաւատսն՝ արժանի եղեւ ոչ միայն 'ի ցաւոցն ապրել, այլ և զաստուածութիւնն Որդւոյն տեսանել : Իսկ տեսեալ ուրուք զԱստուած, անդէն 'ի նոյն միացաւ 'ի նմա : Որպէս և Տէր ինքնին ոչ միայն գովէ զկինն, այլ և յոյժ զարմանայ . "Ով, ասէ, մերձեցաւ յիս . և զօրութիւն, ասէ, բազում գնաց յինէն" : Զի մերձենալն իբրեւ լսես, զմիանալն ընդ Աստուծոյ իմասջիր . իսկ զօրութիւն բազում գնաց յինէն՝ Հոգին սուրբ պահապան և պաշտպան կնոջն հաւատոյ :

Արդ եթէ մին մարդ այսպէս լցաւ անչափ մեծութեամբքն Աստուծոյ, ո՛րչափ եւս առաւել երկոտասանքն, որք ընկալան զփչումն աստուածային Հոգւոյն, և լցան անթերութեամբ, և լցին զամենայն աշխարհս առանց

ապականութեան նովին հոգւովն: Եւ ոչ միայն զմարդիկ բժշկեցին, այլ և զօր. և յաւուրս անդ զերկոտասան ժամ և զտարի, և 'ի տարւոջ անդ զերկոտասան ամիս: Եւ զիա՞րդ բժշկիցի օր: Լսեմ. որպէս ախտացաւ, նոյնպէս և բժշկեցաւ. ախտացաւ 'ի կռապաշտութեան, բժշկեցաւ յաստուածպաշտութեան: Ըստ երկոտասան ժամուց աւուրն՝ մոլորեալ էին մարդիկ յերկոտասան աստեղսն. ուստի խաբէին զնոսա և պատրէին աստեղագէտքն: Իսկ այսօր ըստ երկոտասան ժամուց աւուրն՝ հնչին բարբառք մարգարէիցն յեկեղեցւոջ, և թարգմանին բանք երկոտասան Առաքելոցն, և բաշխեն զաւետիս կենաց ամենայն հաւատացելոց. որով մարդիկ յորդորին յառաքինութիւն, և փոխանակ առաջին մոլորութեանն՝ խօսին զճշմարտութիւն և գործեն զարդարութիւն և տան պտուղ աստուածային՝ սրբութեամբ անմեղութիւն, զկուսութիւն, զողորմածութիւն, զօտարասիրութիւն, զյոյս առ Աստուած, հաւատս ճշմարիտս, զսէր առանց երկմտութեան: Եւ փոխանակ պղծապարծ զոհիցն, որք հեղուին զարիւն անասնոցն՝ դիւաց նուիրելով, այսօր մարտիրոսք կամօք և ոչ բռնութեամբ հեղուն զարիւնս անձանց վասն արեանն Քրիստոսի:

Այս են երկոտասան Առաքեալք որք սրբեցին և սրբեն զամենայն աշխարհս: Քանզի օր է սկիզբն ժամանակաց, և աճեաց լոյս և եհաս 'ի դարն վեցերորդ. և 'ի սրբել աւուրցս, որպէս և ասացաք, քարոզութեամբ Առաքելոցն, սրբեցան ամիսք և տարիք և ժամանակք և յաւիտեանք. Զի եթէ սկիզբն սուրբ է, ապա և ամէնքն որ 'ի նմանէ առնուն զաճումն՝ սրբեցան: Քանզի ոչ թիւ երկոտասան Առաքելոցն դիպուածով ինչ եկն եմուտ 'ի կարգ առաքելութեանն, այլ 'ի հեռուստ ժամանակաց յայտնութիւնք երեւեցան յԱստուծոյ տուչութենէն: Առաջին երկոտասան որդւոցն Յակոբայ. որով թուով ազգն աճեաց և բազմացաւ, և ժառանգեաց զերկիրն պարգեւաց: Դարձեալ և 'ի ձեռն Յեսուայ փոքր ինչ էր յայտնութիւն երկոտասան թըւոց վիմացն, մանաւանդ զի կէսքն ելանէին և կէսքն իջանէին. իբրեւ յայտնի տեսիլ աքանչելեացն, որք ելանէին իբրեւ 'ի խաւարէ 'ի լոյս, և որք իջանէին 'ի լու-

սոյ 'ի խաւար։ Արդ հեթանոսք որք ընկղմեալ էին 'ի գործս մեղաց իւրեանց, եղին յանդնդոց ծովու մեղաց 'ի ձեռն երկոտասան Առաքելոց, որ են վէմք Ճշմարտութեան. և հողմք և հեղեղք զնոսա ոչ կարեն շարժել, և ոչ անձրեւաց բռնութիւն։ Իսկ երկոտասան ազգապետքն վերջացան և մնացին, իջին և դադարեցին յատակս գետոյն ընդ ջրովն Թանձրութեան, և անդէն եղեալ դնին մինչեւ ցայսօր։

Նա թէ և յանապատն երթիցուք 'ի Գալիլեա, ուր Տէր զկարօտութիւն ժողովրդեանն լցոյց սքանչելեօք բազմութեան հացին, իսկ մնացորդքն ոչ աւելի և ոչ պակաս, այլ լի երկոտասան սակառի, ո՞չ ահա յայտնի է և այս տեսիլ սքանչելեաց։ Յառաջ քան զբազմանալ հացին՝ ունայն կրէին զսակառիսն, և լնուին 'ի մնացորդաց Ճաշոյն։ Եւ կարի քաջ արժանապէս. զի Աստուած էր որ մատակարարէր. առժամայն յաղեցոյց, և առյապայն մթերեաց զխոհականութիւնն։ Ըստ յայտնի գրեցելումն՝ սակառիքն որ լցան հացիւն, իսկ ըստ ծածուկ իմանալոյն՝ երկոտասան Առաքեալքն լցան շնորհօք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և սփռեալ տարածեցան յերկոտասան կողմն աշխարհի, և լցուցին զչորս կողմն երկրիս, յորում բնակեալ են ամենայն ազգ հեթանոսաց։

Եկայք բազում անգամ շուրջ զտամբն, որպէս և յառաջն ասացաք, որ երկրացաւ և երկնացաւ, և բաւական եղեւ ընդունել զամենայն։ Թուի ինձ թէ եւս բազմագոյն պատեցաք զերկոտասան թուովս։ Զի թէպէտ և մեք ոչ կարացաք ըստ արժանին յառաջ մատուցանել, այլ յորժամ Տէր ինքնին սփռեալ տարածեսցէ զնոսա ընդ ազգս ամենայն զօրութեամբ Հոգւոյն սրբոյ, յայնժամ կատարեսցի բան մարգարէին որ ասէ. "Պատմեցի և ասացի, և բազում եղեն քան զթիւ". այսինքն եկեղեցիք հաւատացելոց 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, որում փառք և զօրութիւն այժմ և յաւիտեանս։

Դարձեալ միւսանգամ յայտնեաց Յիսուս զանձն իւր աշակերտաց իւրոց 'ի վերայ ծովուն տիբերիացւոց։ Քանզի էին 'ի միում վայրի Պետրոս և Թովմաս և Նա֊

Թանայէլ, Յակոբոս և Յովհաննէս եղբայրն Յակոբայ և երկուք այլ եւս յաշակերտաց անտի։ Արդ զի՞նչ առնէ զնոսա. 'ի տանէն եհան զնոսա. շնորհօք Հոգւոյն սրբոյ ելից զնոսա. յաշխարհ առաքեաց զի գործ գործեսցեն։ Նոքա յանհոգս եղեալ՝ պարապորդ շրջէին. և շրջէին ոչ այլ ուրեք, այլ անդէն զծովուն, և զհայրենի արուեստն ոչ կարէին թողուլ. այլ զնովիմբ գան, 'ի նոյն հոգան, 'ի նոյն կրթին, և զմնացեալն անդէն կամէին յլնել։ Տեսանե՞ս որչափ է թանձրութիւն մըտացն, չընդոստանային՝ այնչափ խրատեալք և վարժեալք 'ի Տեառնէն. և թեքեալք և մխեալք 'ի Հոգւոյն սրբոյ, և չեւ եւս են հասու, և այլ ուրեմն պիտի սրել։

Օ՜ ինչ խօսիս, տէր իմ Պետրոս. 'ի ծովեզերդ նըստիս, և վասն ծովուդ հոգաս, և զմակոյկդ կազմես. երթամք, ասես, ձուկն հանեմք։ Տեսանե՞ս, զայդ ասելով և 'ի դոյն կրթես զայլ Առաքեալսդ, և հարկ է դոցա զհետ քո գալ. զի ուր միտք կամին, ոտք անդր տանին. և միտք 'ի գլուխ են, և գլուխ Աշակերտաց դու ես։ Յորժամ դու ասես՝ երթամք ձուկն հանեմք, այլ զի՞նչ լսես 'ի դոցանէ. բայց եթէ ասեն ցքեզ, եթէ և մեք ընդ քեզ։ Նա քանզի ուր և երթան իսկ, դու ես նոցա տուն և քաղաք և ամենայն ինչ զինչ և պիտոյ է երկրաւոր վիճակիդ ձերում, մի դու և մի մռաօջիր. թիւդ ձեր գեղեցիկ է. աճաւադիկ եօթն էք. 'ի ձեզ տեսանի աշխարհս, միանգամայն և տէր աշխարհիս։ Արդ ոչ է բարի դատարկութիւն ձեր։ Եթէ յապատան անձանց պարապեալ էք, և այլ ինչ գործ ոչ է ձեր, անդրէն 'ի հրէաստան գնացէք, զյարութեան տեղեաւն շրջեցարուք, զվիմաւն պատեցայք, զխաչին դիտեցէք. մօտ դիք, տեսէք ուր թագուցին քահանայքն, նկատեցէք զտեղին։ Անդիր լինելոց է վաղիւ խաչին. ոչ թողու Տէր զզէնն իւր 'ի հող, որով զթշնամին իւր եսպան, և զգերին թափեաց 'ի նմանէ։ Աչս ածէք զտեղեաւն, եկայք զգրօքն. թերեւս անդ իցեն հրեշտակքն, որպէս զի են իսկ անդէն։ Ի Միոնէ երթայք, ելէք 'ի վերնատունն, հայեցարուք 'ի դուրսն փակեալս՝ ընդ որ եմուտ Տէրն. յիշատակեցէք զտեղին՝ ուր եկն եկաց 'ի մէջի ձերում և ողջոյն ետ ձեզ, ուր և

զՀոգին սուրբ փչեաց 'ի ձեզ։ Յայս ամենայն կրթե-ցէք զանձինս ձեր, և 'ի սոյն խոկացէք, զի մի մոռա-ցին 'ի սրտից ձերոց մեծամեծ զօրութիւնքն որ 'ի միջի ձերում գործեցան։

Այս թէ 'ի Հրէաստան երկնչիք երթալ, վասն զի անդ են Աննա և Կայիափա և ամենայն դառնաշունչ ժողովուրդն, թոյլ տուք, զայդ ես չմեղադրեմ։ Անդ է մեծն Յակոբոս, որ բաւական է ամենայն իրաց առա-քինութեան. և որպէս նա արդար է 'ի քարոզութեան յարուցելոյն, և աներկիւղս բարբառի 'ի մէջ խաչահա-նուացն, փութա Զեբեդեա և դու Պետրոս. մի զայդչափ Առաքեալոյդ խափաներ, զորս առեալ 'ի ծովեզրդ կչեալ ես։ Ես ասեմ՝ մի ասեր երթամ ձուկն հանեմ։ Թէ այդպէս է, երթ. ո՞ գիտէ, դու քաջ իմանաս. ո՞ կարէ քեզ վարդապետ լինել. զի ահաւադիկ դու ունիս շնորհս վարդապետութեան զսուրբ Հոգւոյն. բայց ինձ թուի այսօր՝ դեռ 'ի կարծ երթաս. քանզի այլ շնորհք են ձկնահանաց, և այլ այլոց արուեստից։ Դու ոչ զձկնա-հանաց շնորհ ունիս և ոչ զծովուն արուեստ նաւաց. զի թէպէտ էիր երբեմն՝ թողեր 'ի բաց, և թողուլն ոչ 'ի քէն եղեւ, այլ յայնմանէ որ ընտրեաց զքեզ. և եթէ կամիս՝ յիշեա զբանն զոր ասաց. "Թողէք, ասէ, զորս արուեստի ձկնահանութեանդ, և արարից զձեզ որ-սորդս մարդկան". մարդկան որսորդ ես, ձուկն հանել այսուհետեւ դու ոչ կարես։ "Եւ ելին, ասէ, 'ի նաւ, և զգիշերն ամենայն աշխատ եղեն, կալան և ոչ ինչ". Արդար և Ճշմարիտ. գիշեր իսկ է ամենեցուն՝ որ ա-ռանց Աստուծոյ շրջին յաշխարհի. և ունայն է ծոցնո-ցա յորսոյ կենաց, զորս հաւատացեալք միայն ըմբռնեն օգնականութեամբ Տեառն իւրեանց։

Արդ իբրեւ այգ եղեւ, ասէ, երեւեցաւ նոցա Տէր զի կայր յեզր ծովուն։ Եւ ո՞ր երբեք տեսեալ է, թէ յառաջ քան զլոյս՝ արեգակնն երեւեսցի։ Այս միայն 'ի ծովուն տիբերացւոց երեւեցաւ. իմանալի արեգակն յերկնէ յերկիր իջեալ՝ կայր առ ափն ծովուն, և յինքն ամփոփեալ պահէր զճառագայթս անմատոյց լուսոյն իւ-րոյ։ Եւ բարւոք ասեմ եթէ ամփոփեալ պահէր. քան-զի չէր հնար զայն արեգակն տեսանել։ Դայ զծովա-կաւն որպէս յառաջնումն նուագին, մինչեւ կրթեաց և

եհան զնաւս 'ի ծովէն, և հասոյց 'ի միջնակ առաքելութեան. ըստ նմին կարգի և այժմ ասնէ: "Մանկունք, ասէ, ունի՞ք ինչ ուտելու": Նման մանկանց արդարեւ ուտելոյ եւեթ. ես զձեզ վաղ կոչեցի հանի, ասէ, յաշխարհէ, և 'ի չափ արութեան հասուցի՝ ընդ բազում հանդէսս առաքինութեան անցուցեալ, մինչ զի և զհոգի սուրբ ընկալարուք՝ որով երկինք և երկիր կատարեցան. և դուք դարձեալ մանկունք էք, և զմանկականդ եւեթ խոկայք և զդովիմս պատաղէք: Տեսանէ՞ք, աւաղիկ և այդ միանգամ առանց իմ ոչ կարէք ընուլ զպակասութիւն պիտոյից ձերոց, որովհետեւ ոչ ունիք ինչ. զի եթէ ունէիք, ոչ հարցանէի, այլ միայն բերել հրամայէի. վասն այնր հարցի, զի ոչ ունիք. ոչ եթէ ես ոչ գիտէի զձեր ունայնութիւնդ, այլ զձեզ ուսուցից զարդարն խոստովանել զտգիտութիւն անձանց ձերոց: Եթէ կարօտ էիք ձկան, և յոյժ պիտոյ էր ձեզ 'ի ժամանակիս, վասն որոյ և աշխատեալ էք զգիշերս ամենայն, ընդէ՞ր ոչ յիմ անուն արկէք զուռկանսդ. զի և տեղեակ իսկ էիք իմոյ անուանս: Բազում անգամ լուեալ էք՝ յո՞յր անուն դեւք հնազանդեցան ձեզ. ո՞չ ահա յանուն Յիսուսի Քրիստոսի. Յիսուս Քրիստոս այն որ 'ի Նազարեթէն է, և Նազարեթ սահմանք են ձերոյ աշխարհիս, և մանաւանդ յայս ծովու. և զսովիմս ծովեզերբ այնչափ նշանք և արուեստք երեւեցան և բազում զօրութիւնք, և ձեր տակաւին չէ՞ր իմացեալ: Ապա ուրեմն դեռ եւս 'ի սմին թանձրութեան մարմնի էք, և չեւ էք թեթեւացեալ յառաջին ծանրութենէն. ոչ 'ի զգայութենէդ ասեմ, այլ 'ի մտացդ սուաղեցելոց, որ ոչ աճեցուցին զաստուածային տունկսն:

Արդ եկայք, ասէ, զգործիսդ յաջակողմ նաւիդ արկէք. զի որ առանց իմ արկէք, գիշեր էր և ձախակողմ. իսկ զոր ինեւդ արկանէք, տիւ է և աջակողմ. և եթէ աջակողմ է՝ անդ գտանէք. և իբրեւ գտանէք, մի՛ զլանայք զշնորհս հոգւոյն սրբոյ գիտութեանն, զի հաստատուն պահեսջիք յոգիս ձեր: Եւ զայս արարեալ նոցա փակեցին 'ի ներքս բազմութիւն ձկանցն, և այնչափ բազում, մինչեւ կարօտել նոցա օգնականաց. և 'ի քարշել նոցա զուռկանն՝ մեծամեծ աշխատութիւն կրեցին, մինչեւ ածին 'ի ցամաքն: Եւ Պետրոս յոյժ էր

զարմացեալ ոչ միայն ընդ բազմութեանն, այլ և մեծամեծք եւս էին, և անչափք և բազումք, և սակայն գործին ոչ պատառեցաւ։ Քանզի և նոցա ոչ էր սովորութիւն այնպիսի որս ուրեք երբեք գտանել, նշանագործութիւն կարծեցին և ոչ պատահումն որսոյ. վասն որոյ և ասէ Յովհաննէս. «Տէր է այն»։ Նաեւ 'ի բանիցն Յովհաննու և 'ի հրամանէն Տեառն՝ յաջակողմն ասելով՝ ընդոստեաւ Պետրոս և ետ զինքն մերկ 'ի ծով, և վաղագոյն քան զնաւն հասանէր առ Տէրն, և ահիւ և խնդութեամբ լցեալ՝ ոչ ինչ կարէր զարժանն իմանալ. այլ 'ի նոյն սովորութիւնն յառաջին ձգէր զմիտս իւր՝ իբրեւ կերակրոյ և հանգստեան կարօտացեալ։ Վասն որոյ և Տէրն ողորմեալ նոցա՝ գտանէ 'ի տեղւոջ անդ պատրաստութիւն ճաշոյ։ Այլ ոչ ոք յաշակերտացն իշխէր հարցանել՝ թէ դու ո՞վ ես. քանզի գիտէին թէ Տէր ինքն է։ Զգիտելն ահա գիտէին, այլ ոչ ըստ առաջին նմանութեանն։ Իսկ Յիսուս եւս քան զեւս մօտ մերձեցոյց զնոսա, և ըստ առաջին սովորութեանն տայր նոցա օրհնութիւն, և ընդ նոսին հաղորդի 'ի կերակուրս, և զՅարութեանն յայտնութիւնն լնու և կատարէ յետ յարութեանն։

Այլ գիտեմ զինչ ասելոց էք ցիս. Զայդ ամենայն աւետարանագիրն պատմեաց մեզ. արդ առ ինչ իցէ յայտնութիւն Տեառն 'ի վերայ ծովուն, և կամ բազմութիւն ձկանցն, և գործւոյն չպատառելն, և հացին և ձկանն 'ի վերայ կայծականցն գտանիլ։ Նոյն Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ մարդասիրութեամբ իւրով յայտնեաց զինքն աշակերտաց իւրոց, ցուցցէ և մեզ զծածուկս առակաց իւրոց՝ ոչ միայն 'ի վերայ ծովուն Տիբերեայ, այլ յամենայն ժամու և յամենայն տեղւոջ. ոչ միայն զի գիտիցեմք և ասիցեմք զպատուիրանս նորա, այլ և սիրիցեմք զնա յամենայն զօրութենէ մերմէ, ոչ 'ի պատճառս նշանաց միջնորդի։ Քանզի բազումք են 'ի մարդկանէ որ 'ի յաջողութեանց աշխարհի սիրեն զԱստուած. և են ոմանք որ 'ի ստգտանել 'ի գործոց իւրեանց՝ դառնալով յապաշխարութիւն սիրեն զԱստուած և նոքա. իսկ որ քաջքն են և կատարեալք յամենայնի, անդստին 'ի տղայութենէ նուիրեն զանձինս իւրեանց յաստուածպաշտութիւն, և ոչ են 'ի

խնդիր նշանաց և արուեստից, և հեռի են յամօթալի գործոց աշխարհի։ Սոքա են որ գեր 'ի վերոյ են քան զերրեակ թիւն, ընդ որում ոչ ինչ համեմատի յեղելոցս ամենևին։ Բայց սակայն աստուածութիւնն բարերար է, ընդունի զերեսին հաստածն, և ամենեքին յաստուածային յարկսն շրջին։ Եւ մեք, եղբարք, թէպէտ և ոչ յառաջնոցն իցեմք, սակայն զվերջնոյն զհետ երթիցուք. աղաչեսցուք զնոյն Տէր, զի և զմեզ ընկալցի 'ի գութ սիրոյ իւրոյ, որպէս և այլոցն շնորհեաց թողութիւն. և արժանիս արասցէ յամենայն ժամ ըզմեզ երթալ զհետ բանի աւետարանին սրբոյ, զնովիմբ գալ, զնոյն սիրել, նմին միտ դնել, և նովաւ ժամանել 'ի լրումն աւետեացն խոստացելոց։

Բայց առաւել զայս իմանալի է, եթէ ծովն տիեզերացւոց ոչ մասն է անբաժանելի մեծի ծովուն, այլ ուրոյն զատ և առանձնի. անուանի ծովակ՝ և ոչ ծով. և աշխարհ՝ ծովու է զուգութիւն և ոչ լճի։ Եւ որպէս երեւի, յառաջ քան զգալուստն Տեառն ցամաքայինքս ջրայնոց նմանեցան անիշխան և անառաջնորդ, խառնաժար կենօք զմիմեանս զրկելով և կորուսանելով առանց խղճելոյ և պատկառելոյ, և չճանաչելով զարարիչն արարածոց, իբրեւ 'ի գիշերի և 'ի թանձրացեալ խաւարի՝ 'ի վեր ամենեւին ոչ կարացեալ հայել. նմանեալք ձկանց մեծամեծաց՝ որք զմանունս անխտիր կլանեն, և ինքեանք եւս 'ի մեծամեծաց կլանին, և կարծեն ոչ ամենեւին՝ թէ քան զմեզ այլ արարածք վերագոյն գուցէ. որպէս և սուրբ մարգարէն բողոքէ. "Ո՞մ հայեցար յարհամարհոտս, և ստուգանեցեր 'ի կլանել ամբարշտի զարդարն, և առնիցես զմարդիկ իբրեւ զձկունս ծովու, և իբրեւ զսողունս՝ որոց ոչ գոյ առաջնորդ". իբրեւ յայտնի է ամբաստանութիւնս զերկայնմտութենէն Աստուծոյ. ընդէ՞ր, ասէ, յայնց ժամանակաց հետէ թոյլ ետուր։ Եղի մարգարէս սուրբ Հոգւոյն. ոչ կարէ տեսանել զթշուառացելոցն զնեղութիւն։ Փութա ձեպեա, ասէ, եկ Տէր և երեւեցիր, մերձեցիր 'ի փրկութիւն. հան զաշխարհ 'ի ծովէ մեղաց, զի ծանիցեն զքեզ տէր և արարիչ, իշխան և առաջնորդ կենաց. զի մի իցեն գազանք ջրայինք, այլ մարդիկ երկրայինք և երկնայինք, պատկեր և կերպարան իմանալի զօրու-

թեանն։ Ասէ այսուրիկ առ յաջակողմն կոյս արկէք նաւիդ։

Այլ ո՞ է որ զայս ասիցէ։ Որ նստի ընդ աջմէ Հօր յերկինս։ Նոյն ցաշակերտսն. Այլ ընդ աջմէ Հօր նըստուցից զձեզ, և զամենայն ինչ յաջողեցից ձեզ. չիք 'ի ձեզ մասն խաւարի, և ոչ կողմն ձախոյ. մի որպայք գիշերի, զի հեռի է լոյս 'ի նմանէ, և բազումք զայթակղին նովաւ։ Դուք մանկունք լուսոյ էք և որդիք տուընջեան. եւ որպէս որդիք էք լուսոյ, նոյնպէս և լուսաւորեսցին գործք ձեր յաշխարհի, և գնասցէ աշխարհ ընդհետ ձեր 'ի լոյս կենաց։ Այլ մի 'ի ձախ կողմն արկանէք զգործիս ձեր. քանզի որ որդիքն ձախոյ են՝ և ծնունդք են խաւարային իշխանութեան. և որպէս չիք նոցա մասն և բաժին յաջակողմանն, նոյնպէս ձեր մի եղիցի մասն և բաժին ձախակողմանն։

Այլ զայս լուեալ Պետրոսի և ընկերաց իւրոց՝ մինչ առաւել քան ականջօք իւրեանց, արկանեն զուռկանն յաջակողմն նաւին, և ունին հարիւր և յիսուն և երիս ձկունս։ Արդեւ յայտնի է տեսակ իմաստութեանս այս։ Որպէս 'ի հինսն ոմանք զլանական իմաստութիւն 'ի վար արկեալ, ոչ ինչ պակաս յերկնաւոր իմաստութենէն գտանին։ Ամենայն ինչ, ասեն, որ երեքկին է, բաժանելի է. իսկ որ բաժանելին է՝ նա ունի անդրէն յանգութիւն միաւորութեան և զանախտութիւն հաստատութեան։ Արդ բաժանի թիւ ձկանցս յերիս յիսնեակս և միական երրեակ, և յարին անդրէն առ իրեարս 'ի միութիւն։ Յերիս յիսներորդս՝ յորում տեսանի վեց մասն՝ կրկնաբաժանելով, երթեալ ելանէ անդր 'ի սկզբանն լինելութիւն. իսկ այսրէն ընդդարձութեամբ՝ 'ի նոյն թիւ իջուցանելով, զոր և յիսներորդ ասեմք. զոր և Մովսէս օրինադրեաց ասելով զնա յոբելեան և հանգուցիչ յերկրէս և ազատարար 'ի մարդկան ծառայութենէ։ Արդ յայս ամենայն զոր Մովսէս ժամանակեան օրէնս կարգեաց, ակնարկութիւն նորա 'ի ժողովուրդն կատարեցաւ. իսկ ճշմարտութիւն յամենայն ազգս մարդկան երեւեցաւ, որպէս և թիւ ձկանցն յայտ առնէ։ Քանզի 'ի Տեառնէն տուեալ լինէր կարգադրութիւն օրինացն. իսկ ուր Տէր ինքնին գլխովին էր, անդ ոչ եւս խորհուրդ, այլ յայտ-

նութիւն ճշմարիտ. որպէս և պարզագոյն իսկ ասացաք 'ի ճառեցելումս։ Վասնզի բազմութիւն երից յիմնիցն ամենայն աշխարհս էր, և աւուրք և ամիսք և տարիք և ժամանակք և կենդանիք. քանզի նիւթական է և ծննդական և անկեալ ընդ ախտիւ ապականութեան, որում պիտոյ է անախտ օգնական. որպէս և պարզագոյն իսկ երեւի թիւ երից ձկանց սակ ասացելոց միայնութեամբ։ Վասնզի ոչ եթէ վեցեակք են եթէ աճեցեալ լնուցուն զթիւ երկոտասանիցն, և կամ երկոտասանք՝ կրկնաթուեալ բաղկանայցէ վեց թիւն, այլ երիս ասաց, ոչ աւելի և ոչ պակաս. քանզի հրամանն տէրունեան էր, և կողմն աջոյ էր, և խորհուրդն տեսաւորութիւն էր։

Իսկ զինչ մեծ քան զայս՝ որ բանիւ Աստուծոյ գործ կատարիցի, և ինքն 'ի գործ անդր նկարեալ երեւի։ Վասնզի անբաժանելի է սուրբ Երրորդութիւնն, և անսեղմութեամբ տեսաք առանձնացեալ, որպէս և 'ի թիւ ձկանցս՝ Հայր որսակից եղեւ Որդւոյ, և Հոգի սուրբ սատար օգնականութեան Առաքելոցն։ Որսան յայտնի ձուկն 'ի ծովու, և 'ի ձեռն ձկանցն երեւի թէ զամենայն աշխարհ որսայցեն, ոչ 'ի ջրոյ 'ի ցամաք, այլ յերաշտացեալ ցամաքէ 'ի ջուր կենդանութեան։ Վասնզի մարդիկ առ կարօտութեան որսան զձուկն 'ի ծովէ 'ի ցամաք, և 'ի կենաց 'ի մահ. և երբեք զինքեանս յորս որսալ ոչ տան, քանզի մահկանացուք են և ինքեանք և որսքն իւրեանց։ Իսկ Աստուած կենդանի և կենդանարար և կենդանացուցիչ ամենայն մեռելութեանց՝ որսայ զորս 'ի մահուանէ 'ի կեանս, և 'ի կեանս ոչ դուզնաքեայս, այլ յանժամանակս և առանց անցանելոյ։ Իսկ ոչ միայն որսայ, այլ և ինքն յորսոյն որսացեալ լինի, ոչ պատճառանօք, այլ ճշմարտութեամբ. քանզի աներկիւղ է և անկասկած, անհաս և անբաժանելի։ Որպէս 'ի թիւ ձկանցն խառնեաց զինքն երբեակ տեսակաւն առանց նախանձու չարակնութեան, սոյնպէս որսացեալ լինի յորսոյ իւրմէ և տայ զինքն 'ի խանձ կերակրոյ, զի միանգամայն իցէ ինքն ծով և տեղի և խանձող և կերակուր և ձկանցն որսորդ։ Իսկ կարի յիրաւի այսպէս. քանզի կեանք են անպակաս և անսպառելի կերակուր. և ամենայն որ ուտէ 'ի կենացն՝ ընդ-

նմին և կենդանանայ. և կեանք ոչ մեռանելին, այլ առա-ւել ևս բազմանան և մեծանան և խնդան և ուրախ լինին։

Թէպէտ ասացի փոքր 'ի շատէ տարացոյց զձմեռոյս, որ ունի զնմանութիւն, այլ ոչ եթէ զէութիւն. բայց ասացից ոչ զիմ, այլ զնորին զկենացն բանի։ Վասնզի իբրեւ մատեաւ առ նա փորձիչն, ասէ ցնա փորձելով. "Եթէ արդարեւ որդի Աստուծոյ ես, ասա քարանցդ զի հաց լինիցին,,։ Եւ անդէն լուծ պատասխանի զոչ միայն հացիւն կեալ, այլ բանիւ Աստուծոյ։ Եւ բանն Աստուծոյ՝ որդին Աստուծոյ է, և զինքն տայ կերակուր, և պատկառի ինչ ոչ. որպէս կերակրէ զաշխարհս առանց աշխատութեան, սոյնպէս ուտի աշխարհի առանց հատանելոյ և բաժանելոյ։ Նոյն ևս զնոյն իսկ զփոր-ձիչն հարցանեմ. դու իսկ զի՞նչ ուտես. երկիր չունիս, վարք և հունձք քո չիք. յայտ է թէ հացիւ ոչ կեաս, և ոչ այլ թանձրագոյն կերակրովք։ Ահաւասիկ երեւե-ցաւ թէ բանիւ Աստուծոյ կերակրիս. զի թէպէտ և չես արժանի, սակայն Աստուած բարերար է, և ինքն կայ մնայ առանց ծախելոյ և պակասութեան։ Այս զոր ասացի՝ թէ որսայ զմահկանացուս 'ի կեանս, և ինքն որսացեալ լինի, և հաւասարելով զինքն ընդ ապակա-նացու որսոյ, և գաղտնեօք և յայտնի կորզեալ հանէ յապականութենէ։

Եւ էին, ասէ, ամենայն ձկունքն մեծամեծք։ Ընդ այդ զի՞ զարմանաս. յորժամ Աստուած ձուկն որսայ, ոչ ինչ թաքչի յամենատես ականէն, յորժամ կամի՝ զմեծամեծսն, յորժամ կամի՝ զմանունսն, յորժամ կամի՝ զմիջինսն, և այսու երեք թուական մասամբքս՝ ամենեքեան նորա են։ Որ ձկունսն այդպէս է. նախ զմեծամեծսն որսացաւ, զի խորհուրդ էր և ոչ ճշմար-տութիւն. այլ առ ընտրութիւն Առաքելոցն ոչ այդպէս, նախ զմանունսն, և ապա զմեծամեծսն։ Եւ ասացի փո-քրկունս, և յիրաւի. ոչ միայն փոքունք են, այլ և տգետք և գալիլեացիք, անպիտանք լեզուով, պձուձք գաւառաւ, աղքատք և տնանկք։ Եւ զի՞նչ աղքատ քան ըձկնորս, և քան զնոյնս՝ յիմարս. զի ամենայն հոգք իւր 'ի վերայ ջրային մակուկին է, խօսք իւր ընդ անբան ձը-կունս. երեւի թէ քան զամենայն մարդ ոչ միայն տը-

դիտոք, այլ և փութեռնագոյնք։ Վկայեմ ես քեզ ոչ այդ-չափ միայն խոնարհագոյնք որչափ ասացաքդ, այլ բազմապատիկ եւս քան զդոյն։ Դու մի յայնպիսի աղքատութիւն հայեր, որ ոչ 'ի կամաց իւրեանց է, այլ 'ի պատահարաց աշխարհիս. զի մարդիկ ագահութեամբ ակամն հասանեն յիշխանութիւն տէրութեան. զրկեն և զլանան, և հասուցանեն զընկերակիցս իւրեանց 'ի մեծ թշուառութիւն։

Սէրք հայեաց 'ի բարերարութիւնն Աստուծոյ և տես վասն էր եղեւ գալուստն Տեառն յաշխարհս։ Ապաքէն զի զայն ամենայն խափանեսցէ, և զուգութիւն հաւասարութեան կենաց գործեսցէ։ Իսկ արդ զո՞ տայիր ընտրել որ յաղքատաց զարշիս և 'ի տնանկաց փախչիս. քանզի "Իմաստութեամբն Աստուծոյ, ասէ, աշխարհ ոչ ծանեաւ զԱստուած". հարկ էր զյիմարս ընտրել։ Վարձեալ որ հզօրքն էին՝ ոչ միայն Աստուծոյ ամբարիշտք էին, այլ 'ի վերայ տկարագունիցն մեծամեծ հարուածս հասուցին. վասն այսորիկ զտկարս աշխարհիս ընտրեաց Աստուած զի յամօթ արասցէ զհզօրս. և որպէս տկարօքն զհզօրս ամաչեցոյց, նոյնպէս յիմարօքն զիմաստունսն լռեցուցէ։ Քանզի ընտրեաց, ասէ, Աստուած. և ուր Աստուծոյ ընտրութիւն է, չիք անդ տկարութիւն և յիմարութիւն. և որպէս յանգոյութենէ եած զաշխարհս 'ի գոյութիւն, սոյնպէս 'ի տկարութենէ եած 'ի զօրութիւն և յաղքատութենէ 'ի մեծութիւն։ Քանզի նոր աշխարհ առնէ. ոչ զնիւթն ասեմ և ոչ զտեսակն, այլ զառաջինսն որք ապականեցան կամօք, 'ի նոյն բնութիւն տարեալ հանէ նորոգապէս. և նախ որովք նորոգեն զնոսա՝ նորս արար և հարուստս, միանգամայն և իմաստունս, և իմաստութեան նոցա առաջնորդ և վարդապետ և ընդ նոսին սուրբ Հոգին է գործակից, որով ամենայն ինչ եղեւ յառաջագոյն։

Տեսանես զի ոչ այնուհետեւ 'ի Գալիլեա շրջին զծովակաւն, այլ զմեծ ծովաւս. և զծովու՝ ոչ զջրով, այլ զկղզեօք և զամենայն ցամաքօք. և գործի ոչ զովորականն ունէին, այլ զնորմն՝ որով ինքեանք որսացեալ եզեն, որ ոչն պատառի. քանզի երկայն է գործին, և առաւել քան զգործին՝ լար գործւոյն. զի խանձն ընէին

'ի միջոցին, և զգործին սփռեալ տարածանեն զբոլոր երկրաւս :

Նաև քանզի թուով են երկոտասանք, և երկու են լարք ուռկանին, և չորք ծագ լարացն, յորոց երեք երեք զմի մի ծագ առնուն. քանզի երեք կրկինք է անվթար հաստատութիւն. մի կողմն ընդ արեւմուտս, միւսն զզոյգ նմին ընդ արեւելս, և երկուսն ընդ հիւսիս և ընդ հարաւ : Նաև բոլորակ պարուրածեւ զամենայն աշխարհս 'ի ներքս առեալ փակեցին. և ոչ յիւրաքանչիւր կողմանց ձգեն զուռկանն, այլ միաբան ամենեքեան. ուր խանձն եղեալ է, 'ի նոյն ժողովեն զամենեսեան 'ի կեանս և ոչ 'ի մահ. քանզի կերակուրն կենդանի է, կենդանեաց և ոչ մեռելոց :

Բայց գիտեմ զինչ ասելոց ես : Զի՞նչ օգուտ է, ասես. 'ի ծովակէ եհան, և 'ի ծովու դարձեալ ձուկն որսաց : Ոչ ասացի զայդ ես, եղբայր. այլ քանզի իմաստութեան 'ի խնդիր ես, դու քեզէն իսկ ուսիր զառակս ուռկանին զոր Տէր յառաջագոյն իսկ նմանեցոյց : Դարձեալ և զհզօրն սիրես. ո՞ ոք 'ի մարդկանէ քան զայս զօրագոյն, որ զամենայն աշխարհ 'ի մի միաբանութիւն կարէ բովանդակել. նա և ոչ մեծատուն ոք քան զնոսա երեւեսցի : Նաև եթէ յայս երիս մասունս հաձեալ հաւանեցին միտք քո, ասացից քեզ և զուռկանն և զուռկանաւորսն, և զորս ձկանցն 'ի քէն ոչ թագուցից : Այլ վասն բազմութեանն թէ կարես՝ դու թուեա, ես ոչ կարեմ : Ծովն աշխարհս է, ուռկանն քարոզութիւն Տեառն, ծագք ուռկանին չորք աւետարանք, ուռկանաւորք երկոտասան Առաքեալքն, որք ձկանցն ամենայն ազգք հեթանոսաց. իսկ խանձոցն 'ի միջին մարմին և արիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. և միջոցք ամենայնի՝ հաւատք ճշմարիտք : Քանզի գեր 'ի վերոյ է աստուածութիւնն. իսկ մարդկան բնութիւնս զստորին կողմ երկրի առեալ ունի. զօրութիւն Հոգւոյն վերոյ 'ի վայր խոնարհեցաւ, և հաւատք ներքոյ 'ի վեր կանգնեցան, և բուռն հարեալ զզօրութենէն հաստատեալ կայ 'ի վերջնոցն, զի ձգելով 'ի վեր կորզեսցի :

Արդ որովհետեւ ելաք 'ի ծովէն 'ի ցամաք, և 'ի ձկանցն եկաք հասաք յազգս մարդկան, եկ և տես զեր-

կատարման. ոչ միայն ուսկանաւորք են 'ի ծովու, այլ և նաւավարք. և 'ի ցամաքի սուրհանդակք, և 'ի պատերազմի զինուորք, և յաշխարհի քաղաքավարք, նոքին և օրէնսդիրք: Այլ ոչ եւս են կարօտք այսուհետեւ ունել զոք օգնական 'ի մարդկանէ. քանզի ընդ նոսա է զօրացուցիչն ամենայնի, աներկիւղ և անկասկածք են. ուստի զահի հարեալն փախչէին յԵրուսաղէմէ, անտի իսկ առնեն սկիզբն նորոյ քարոզութեանս. և համարձակութեամբ ուսուցանեն ոչ 'ի խորշ ուրեք ծածկեալ և թաքուցեալ, այլ անդրէն 'ի ներքս 'ի տաճարին' ուր ամենայն աշխարհ ժողովեալ էր. և անդ 'ի մէջ բերելով զանունն Յիսուսի' բազում նշանս և արուեստս առաջի ամենեցուն ցուցանեն: Այլ ոչ վաղվաղակի ելեալ մեկնին յանձկալի քաղաքէն. նա և ոչ անարգանս ինչ համարին զտեղին' ուր Տէրն ամենայնի մեռաւ անարգանօք. այլ մեծապէս պարծանք և կենդանութիւն ամենայն արարածոց: Զայնիւ բարբառին, ձեռամբ ցուցանեն, ակամբ տեսանեն զԲեթղեհեմ' ուր ծնաւ, զՆազարեթ' ուր սնաւ, զԳալիլեա' ուր եկաց, զԳողգոթա' ուր խաչեցաւ, զգերեզմանն' ուստի յարեաւ, զլեառն ձիթենեաց' ուստի վերացաւ, զերկինս' ուր ընդ աջմէ Հօր նստաւ:

Արդ ո՞վ իցէ մեծատուն քան զԱռաքեալսն, և իմաստուն քան որ զայս ամենայն գիտեն. նա և առաւ եւս տուող միանգամայն: Որ ի մի լումայ ընդունէր տըկարն' որ նստէր առ գեղեցիկ դրան տաճարին, և զաւուրն պարենիկն թէ խնդր: Տես զմեծութիւն Առաքելոցն, և ընդ նմին զառատութիւնն. ոչ միայն աւուր և ամսոյ տան զառձիկն, այլ զամենայն աւուրս կենաց նորա. քանզի ընկալաւ զբժշկութիւն ոչ միայն յառժամայն ցաւոցն ողջացեալ, այլ 'ի ձեռն հաւատոյն և զյաւիտենականն ժառանգեաց:

Արդ ուստի սկսաւ Տէր յայտնել զաստուածութիւն իւր աշխարհի, անտի սկիզբն արարին և Առաքեալքն. իբրեւ բազում անգամ ուսուցանելով զնոսա և դնելով վկայութիւն ընդ քահանայսն և ընդ մեկնիչսն' եթէ չիք իմ այլ անուն 'ի ներքոյ երկնից' որով լինի բժշկութիւն, բայց միայն անուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Քանզի Յիսուս և Քրիստոս վասն

մարդասիրութեան իւրոյ Թանձրացոյց զինքն 'ի մարմնաւորութիւն, զի մարմնաւորքս տեսանել կարասցեն զնա և ուսանել. և եթէ նովաւ եղեն երկինք և երկիր, և նա է օրէնսդիր 'ի ձեռն Մովսիսի. վասն նորա մարգարէքն քարոզեցին յառաջ ժամանակօք, և զնորա օրն գալստեան ցանկային տեսանել հայրապետքն մեծ և թագաւորք: Այլ այսու ամենայնիւ վկայութեամբ Առաքեալքն խօսէին ընդ ամենայն բազմութեանն, մինչեւ զքահանայապետն անգամ զԿայիափա ածէին 'ի հաւանութիւն լսել նմա 'ի նոցանէ:

Այլ այնչափ համարձակագոյնք էին, մինչեւ սուրբն Ստեփաննոս՝ թէպէտ մանկագոյն էր քան զայլսն 'ի ժամանակին, առ սէրն զոր ունէր ընդ Քրիստոսի, զիւր արիւն փութացաւ հեղուլ վասն նորա: Զի ոչ միայն բանիւք իցէ վկայութիւնն, այլ և մեծաւ զօրութեամբ, մինչեւ ցմահ անգամ: Տես զզօրութիւն խաչեցելոյս, յոր բարձունս ձգեաց զաշխարհս. զոր և յառաջագոյն ասաց. "Յորժամ բարձրացայց, զամենեսեան ձգեցից առ իս": Քանզի սա նոյն Ստեփաննոս մինչ դեռ ողջամարմին էր, խօսել եւեթ գիտէր յանուն Յիսուսի Քրիստոսի. զի թէպէտ առնէր շնորհս և առնէր նշանս մեծամեծս, սակայն դէմ յանդիմանն զնա չէր տեսեալ. այնպէս իսկ այն որ քարինքն 'ի վերայ տեղային, արիւն զերեսօքն իջանէր, մարմինն անկեալ գնէր յերկրի: Սորա զայնմանէ փոյթ ինչ ոչ արարեալ, 'ի վեր հայեցեալ՝ զերկինս բացեալ, զՔրիստոս ընդ աջմէ Հօր տեսանէր, 'ի վերայ սպանողաց աղօթս առնէր: Այս էր նմանութիւն մահուն Քրիստոսի, և աղօթք աղօթից նորա. զի որպէս նա 'ի վերայ խաչահանուացն, նոյնպէս և սա 'ի վերայ քարկոծչացն աղօթս առնէր:

Բայց թերեւս ասիցէ ոք, թէ զինչ օգուտ իցէ 'ի վերայ չարացն աղաչել, զի և այլ եւս յաւելցեն 'ի չարիսն: Ոչ այդպէս է. մի դու և մի զայդ ածեր զմտաւ. աղէ տես զզօրութիւն աղօթից, և ուրախ լեր 'ի պտուղն զոր կթեաց անտի: Պօղոսն Սաւուղ էր որ քարկոծել ետ զնա. և Ստեփաննոս որ աղօթէր "Տէր, թող դոցա, զի ոչ գիտեն զինչ գործեն", ճշմարտութեամբ աղաչեաց, և արդարութեամբ լուաւ նմա. զի ոչ միայն եթող նոցա զմեղսն, այլ և 'ի վիճակ Առաքելոցն խառնեաց զնա:

Արդ զամենայն վկայութիւնս բանիւք և գործովք կատարէին Երուսաղէմ առաջի քահանայապետացն։ Եւ թողուն անդ զՅակովբոս փոխանակ ամենեցուն՝ բաւական համարելով զառնն զազնուականութիւն, և զի մի դատարկ թողցեն զտեղին՝ ուստի և Տէրն հրամայեաց ամենեւին մի մեկնել։ Եւ ինքեանք 'ի վիճակէ առեալ զամենայն ազգս և զազինս, ձեպէին 'ի քարոզութիւն աւետարանին։ Տեսէ՞ր, յայնժամ այնչափ հեղգացան, մինչեւ Տէր ինքնին զարթուցանէր հազիւ հազիւ 'ի քնոյ. իսկ այսօր անդադար զտիւ և զգիշեր ձեպին փութան յասել և 'ի լսել և 'ի կատարել զամենայն կամս առաքչին իւրեանց, և մանաւանդ իբրեւ տեսին զգայլն գազանացեալ՝ որ ընդ խառնելն կոտորէր զամենայն հօտն անհովիւ։ Որպէս նոյն իսկ մեծն Յակոբոս, փութա, ասէ ցՊետրոս, և հասիր 'ի Կեսարիա ստրատոնեանց. զի աւանիկ է Սիմոն կախարդ, որ զգեցեալ է դեւս իբրեւ զհանդերձ, և յոգիսն զէն ունի զսատանայ. զի ոչ ինքն միայն մոլորեալ է 'ի ճանապարհ կորստեան, այլ և ամենեքեան որք լսեն նմա։ Արդ փութա, եղբայր, և վաղ հասիր յօգնականութիւն բազմութեանն, որ տգիտութեամբ կորնչէին. քանզի գտցես քեզ անդ բազում օգնականս։ Եւ զայս ասացեալ Յակովբու, և յանձն արարեալ Հոգւոյն սրբոյ, զնա յուղարկէր և ինքն անդէն մնայր։

Եւ հասեալ Պետրոսի 'ի բազմահոյլ քաղաքն շնորհօք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ մեծամեծ նշանօք և արուեստիւք հաստատեաց զբազումս 'ի ժողովրդենէն. զապստամբութիւն կշտամբեաց, զչար գազանն հալածեաց, զանմեղ հօտն ապրեցոյց 'ի մոլորութենէ, և շնորհօք սուրբ Հոգւոյն և զմահ եւս հալածեաց 'ի սահմանաց նոցա։ Եւ մինչ դեռ էր 'ի Կեսարիա ստրատոնեանց, կին ոմն՝ անուն Այծեմնիկ՝ աշակերտեալ էր Առաքելոցն, և տեսուչ էր որբոց և այրեաց 'ի Լիւդիա քաղաքի. դէպ եղեւ 'ի նմին ժամանակի հրաժարել նմա, և հասեալ Պետրոսի դարձոյց այսրէն զհրաժարեալն մինչեւ զարմանալ բնակչաց աշխարհին։ Եւ յաւելան 'ի թիւ հաւատացելոցն բիւրք բազումք։ Զայս լուեալ զՊետրոսէ Յակովբոս, խնդայր և ուրախ լինէր 'ի Հոգին սուրբ, և համարձակագոյն եւս դնէր զվկայութիւն յա-

նուն Տեառն առաջի ամենայն ժողովրդեանն, և 'ի նմին կայր հաստատութեամբ։ Իսկ Պետրոս դարձեալ բժշկեաց զմիւս ախտացեալս՝ որոց առեալ էր 'ի չարաթոյն գազանէն. և ուսուցանէր զամենեսեան 'ի մոլար կարգէ պաշտամանէ դառնալ առ մի Աստուած հայր ամենեցուն որ արար զամենայն, և 'ի միածինն որ եկն հուրով բարերարութեամբն և երեւեցոյց զինքն աշխարհի մարդկան. զի ոչ միայն լսելով գիտասցեն զԱստուած, այլ եւ հայելով և տեսանելով, խօսեցեալք ընդ նմին մօտ մերձաւորութեամբն՝ ճանաչիցեն և ճանաչիցին. որպէս և եղեւ իսկ։ Եւ մինչդեռ էր Պետրոս Յոպպէ քաղաքի, յայտնեցաւ հրեշտակ Տեառն առ Կոռնելիոս 'ի Կեսարիա՝ որ էր յազգէ հեթանոսաց, և գործովք առաւելեալ քան զամենայն իսրայէլացիսն. բայց միայն կարօտէր ճանաչելոյ զՅիսուս Քրիստոս, և յանուն նորա ընդունել մկրտութիւն. հրամայի [illegible] կոչել Պետրոսի 'ի տուն նորա։

Արդ տես զգործս ուռկանին մեծի՝ որ ոչ պատառեցաւ, և ունի ձկունս մեծամեծս. զի ոչ միայն 'ի ջրոյ՝ այլ և 'ի ցամաքէ, որպէս յայտնեցաւ Հոգին սուրբ առ Պետրոս 'ի նմանութիւն կտաւի անօթոյ, և կախի զչորեցունց տանոցն. ունի յինքեան զամենայն կենդանիս՝ զսուրբս և զանսուրբս, զմանունս և զմեծամեծս։ Իսկ եթէ յիշէք՝ ես յառաջագոյն ասացի, թէ երկնային ուռկանին չորք ողոցք[1] են, և զչորեսին անկիւնս երկրիս 'ի ներքս արգելեալ փակէ։ Արդ իբրեւ լսես զխոնարհել անօթոյն յերկնից յերկիր, մի հարկանէր կար մտօքդ առ անօթն կտաւի, կամ բնաւ իսկ 'ի տարր ինչ նիւթեղէն. քանզի և կարէ իսկ ոչ մի մասն յեղելոցս ընդունել յինքն զամենայն կենդանիս. այլ անդէն իմացիր զզօրութիւն սուրբ Հոգւոյն, որով եղեւ ամենայն ինչ։ Տարածեաց պրկեաց զինքն 'ի նմանութիւն կտաւի անօթոյ։ Իսկ ընդէր արդեօք. վասն զի սրբագոյն է անօթ կտաւոյ, և լուսափայլ տեսիլ ունի։ Ժողովեաց զամենայն ազգս որ սուրբ էին և որ ոչ էին սուրբ. ըստ երեւման յայտնութեանն իբրեւ թէ յերկնէ յերկիր խոնարհեցաւ, այլ ըստ իմանալի խոնարհութեանն

1 Միւսն ուղղ։

զերկրաւորսս յերկնայնոյն մերձեցոյց : Որ Պետրոս յայտնի կենդանիքն՝ որ տուեալ են 'ի կերակուր մարդկան . և են անդ ամենայն զոր օրէնքն ուտել հրամայեն, և զորս ոչ հրամայեն : Եւ քանզի քաղցեալ էր Պետրոս, կերակուր երեւի նմա 'ի մեծ տեսլեանն, միանգամայն և ուսուցանէ նմա զկատարեալ գիտութիւն Աստուծոյ . "Եթէ կերակրոյ քաղցեալ ես, ասէ, զեն և կեր ,, : Իսկ նա 'ի սովորութիւն օրինացն ընթացեալ, "Քաւ, ասէ, խառնակ և անսուրբ ինչ չէք կերեալ ,, : Լսէ անդէն պատասխանի . "Զոր Աստուած սրբէ, դու մի պիղծ համարիր ,, : Եւ որպէս սրբեաց արդեօք . քանզի 'ի վերայ կտաւոյն ետես զամենայն կենդանիսն . և եթէ նմանութիւն է կտաւի անօթն՝ արարող Հոգւոյն, և կենդանիքն որ 'ի նմա՝ ազգք հեթանոսաց, ապա յոյր վերայ էինն՝ 'ի նմին և սրբեցան . քանզի ամենայն որ մերձենայ Ճշմարիտ հաւատով 'ի սուրբ Հոգին, ընդ նմին և հողխացաւ . քանզի պատասխանի ըղդոյն ասէ . "զոր Աստուած սրբեաց ,, : Աստուածային էր տեսիլն և ոչ մարդկային . արդ եթէ Աստուած սրբեաց և դու քաղցեալ ես կերակրոյ, քաղցեալ է և Աստուած մասին արդարութեան :

Արդ ով է սուրբ ըստ քոյոց կամացդ . թերեւս ասիցես՝ որդիք օրինացն : Նոքա ոչ միայն սուրբ չեն, այլ և յոյժ պղծեցան : Ես գիտեմ, դու 'ի հեթանոսաց զարշիս, և ոչ կամիս մերձենալ առ նոսա . քանզի անթլփատք են մարմնով և ոչ սրտիւ : Զայդ և ես ոչ մեղադրեմ . այլ արի և երթ 'ի տուն հեթանոսաց, և մի ուսուցաներ թլփատել, այլ մկրտել . և անդ տեսանես դու մեծամեծ յայտնութիւն Հոգւոյն սրբոյ : Զինչ մեծ քան զերեւումն հրեշտակի առ մարդ, որպէս առ Կոռնելիոսն եղեւ . ոչ միայն տեսաւ նմա, այլ և յոյժ գովութիւն եւս ետ . "Աղօթք քո, ասէ, լսելի եղեն, և ողորմութիւնք քո ելին առաջի Աստուծոյ ,, : Իսկ արդ զի՞նչ եւս պիտոյ է առնս այսմիկ . աղօթիւք սուրբ էր, տուրս տալով բարեգործ, ինքն հաւատացեալ, և ընտանիս ունի ըստ կամաց արդարութեան, և յիշխանութեան մեծի՝ կարէ և այլոց առաջնորդ լինել 'ի բարեգործութիւն :

Եւ արդ տես զզօրութիւնն Քրիստոսի, զի և մի

բան ոչ ստեաց 'ի բանից Տեառն զոր ասաց. «Զի Յովհաննէս մկրտեաց 'ի ջուր, այլ դուք մկրտիցիք 'ի Հոգին սուրբ»: Արդ ինքն Հոգին սուրբ եկեալ առ Կոռնելիոս, և ոչ իշխէր ձեռնադրել զայլս 'ի մկրտութիւն. եկն Պետրոս, և ընդ մտանելն նորա յապարանս հարիւրապետին՝ լցան ամենեքեան Հոգւով սրբով որք 'ի տանն էին, և լեզուս մեծամեծս խօսէին: Եւ զայն գիտացեալ Պետրոսի՝ վաղվաղակի զամենեսեան մկրտեաց:

Եւ զի՞նչ պիտոյ էր զլցեալսն Հոգւով՝ մկրտել 'ի ջուր, ասացից քեզ. զի ոչ միայն զմարդիկն՝ որք ընկալան զՀոգին՝ արժան էր մկրտել, այլ և զՀոգին սուրբ. որպէս և եղեւ իսկ: Քանզի որք ընկալան զՀոգին սուրբ և ձեռնադրեցան 'ի Պետրոսէ 'ի մկրտութիւն աւազանին, ապաքէն և Հոգին ընդ նոսա մկրտեցաւ: Նա թէ և ոչ Հոգին սուրբ մկրտիցի ընդ մկրտեալսն, ոչ մկրտութիւնն կատարեալ ասի, այլ լուացումն ջրոյ. որպէս և ոմանք մկրտեալ ջրով առանց ընդունելութեան Հոգւոյն սրբոյ, անդրէն արժանի արարին Առաքեալքն վերստին մկրտութեան, զի ընկալցին զսուրբ Հոգին: Քանզի և սկիզբն մկրտութեանն՝ Աստուծոյ եղեւ և ոչ մարդոյ. Աստուած 'ի մարդոյ ընկալաւ մկրտութիւն: Քանզի յասելն Տեառն ցՅովհաննէս, «Թոյլ տուր այժմ, ասէ, կատարեսցուք զարդարութիւնս ամենայն»: Եւ կատարումն արդարութեան՝ ճշմարտապէս ճանաչել զսուրբ Երրորդութիւնն. և գիտութիւնս այս յայտնեցաւ մեզ 'ի մկրտութեանն Որդւոյ: Հայր վկայեաց ձայնիւ, և Հոգին սուրբ երեւեցաւ յայտնութեամբ, և Որդի մկրտեցաւ ճշմարտութեամբ, և արդարութիւնն կատարեցաւ առանց պակասութեան: Նոյնպէս և 'ի տանն Կոռնելիոսի Հայր յայտնեցաւ 'ի ձեռն հրեշտակի, Հոգին սուրբ լցոյց զամենեսեան, Պետրոս մկրտեաց յանուն Յիսուսի Քրիստոսի զբոլորեսին: Զոր և յառաջագոյն ասաց Տէր. Նման է արքայութիւնն երկնից ուռկանի արկելոյ 'ի ծով, և ածէ ժողովէ յամենայն ազգաց, յորոց զպիտանացուսն բառնան, և զանպիտանսն 'ի բաց ընկենուն: Առ մարդկան ուռկանս այդպէս է, իսկ առ երկնաւորն ոչ այսպէս. չիք անդ անպիտան և խոտան. այլ ընտիրք ամենեքեան, և խոտան ոչ գոյ 'ի նոսա. նաև մեծամեծք, բայց եթէ կամաւ ոք

ինքնին լինի անարգ և վատթար, և ելանիցէ ընդ հա-գեւոր ուռկանին արտաքս, լինի նա ոչ միայն 'ի բաց ըն-կեցեալ, այլ և կոխեալ քարշի յայնցանէ՝ որ քան զինքն եւս վատթարագոյնք են։

Արդ սկիզբն մկրտութեան Սրբոյ 'ի Յորդանան գետ առնու, և պատի անդէն 'ի հրէաստանի, աճէ և գայ հասանէ 'ի մեծ ծովեզրն, և 'ի սկզբանէ 'ի սկզբան միւսանգամ սկիզբն լինի 'ի տան հարիւրապետին, և սփռեալ տարածանի ընդ ամենայն ազգս հեթանոսաց։ Քանզի իբրեւ ետես Պետրոս՝ թէ և 'ի հեթանոսս տուան շնորհք սուրբ Հոգւոյն, ինքն իսկ եւ յԵրուսա-ղէմ, և եցոյց Յակոբայ. զի թէպէտ և խղճէին 'ի նմանէ որք 'ի թլփատութենէ անտի հաւատացեալք, իսկ իբրեւ լուան 'ի Պետրոսէ հաստատուն վկայութիւն վասն զօրութեան սուրբ Հոգւոյն՝ եթէ յայտնագոյն եւս երեւեցաւ 'ի մէջ հեթանոսաց որպէս 'ի միջի մե-րում, ոչ ինչ այնուհետեւ խղճէին 'ի Պետրոսէ. այլ փութացան ամենեքեան ձեպել յիւրաքանչիւր կողմանս ըստ առաջնորդութեան սուրբ Հոգւոյն. ինքն Պետ-րոս 'ի մեծն Հռոմ. Մարկոս յԱղեքսանդրիա. Թով-մաս յաշխարհն հնդկաց, որպէս և Թադէոս յարեւելս պատահէ, և Փիլիպպոս ներքինւոյն 'ի վերայ կառացն աւետարանէ և մկրտէ, և առաքէ զնա զօրութեամբ սուրբ Հոգւոյն 'ի յԵթովպիա. գտանի և Յովհաննէս 'ի յԱսիա, որպէս և Անդրէաս 'ի կողմանս հիւսիսոյ։ Այս ձեպէին ամենեքեան՝ ոմանք 'ի կղզիս հեռաւորս, և այլք 'ի խորշս և 'ի գօգս ցամաքի ձգեալ սփռեցան յա-մենայն կողմանս երկրի։ Իսկ Պաւղոս սկիզբն առնու մկրտել 'ի Դամասկոս, և անդադար ընթացիւք հասա-նէ յԵրուսաղէմէ մինչեւ 'ի Իլիւրիկոն։

Այս այս են գործք մեծամեծք և տեսիլ սքանչելի. զի ոչ եթէ յանկեան ուրեք քարոզէին, և ոչ 'ի ծած-կոյթ պատմէին զանուն Յիսուսի Քրիստոսի. այլ յայտ յանդիման բարձր բարբառով 'ի քաղաքս մեծամեծս՝ ուր իշխանքն նստէին. և 'ի բուն իսկ մեծն Հռոմ՝ ուր անդ թագաւորութիւն էր. և յԱթէնս՝ ուր ճարտա-րապետք փիլիսոփայիցն էին և օրէնսդիրք աշխարհաց. և յԵփեսոս՝ ուր երեւելի մեհեանքն էին և յայտնա-

գոյն պաշտամունք հեթանոսական օրինաց. և 'ի խուժադուժ կղզիս՝ որք ոչ ինչ պակաս էին բարուք 'ի բնութեանն 'ի վայրենի գազանաց. և յերկիրն եգիպտացւոց՝ որք առաւել զանգեալք էին կախարդութեամբն, և դեւք թանձրացեալք խառն ընդ մարդկան շրջէին, և օրէնք պարսկականք՝ անխտիր տալով զանձինս յանառակ պոռնկութիւն: Նա և ո՞ իսկ կարէ ասել զամենայն չարիս որ գործէին 'ի մէջ հեթանոսաց. զի ոչ միայն զանասուն կենդանիս զոհէին դիւաց, այլ և զուստերս և զդստերս իւրեանց զոհելով և նուիրելով 'ի սպանումն և 'ի յայրումն ածէին, և անխտիր էին յամենայն չարիս. մինչեւ ոմանք 'ի խուժադուժ կղզիսն օրէնս սովորութեան ընկալան առանց խղճելոյ և պատկառելոյ զենուլ և ուտել զընկերակիցս իւրեանց, ոչ միայն յօտարացն հասելոց առ նոսա, այլ և անդէն իսկ յազգէն տոհմայնոց իւրեանց. որպէս յայտնագոյն ցուցանէ մեզ պատմութիւնն Անդրեայ՝ որ ապրեցաւ 'ի ձեռն Մատթէոսի աւետարանչի:

Եւ արդ զի՞ մի մի ասացից. այլ որպէս յառաջագոյն ասացաք ըստ ամբաստանութեան մարգարէին՝ եղեն մարդիկ իբրեւ զգազանս վայրենի և իբրեւ զսողունս 'ի ցամաքի և իբրեւ զձկունս ծովու. սատակեցին զիրեարս և սատակեցան 'ի միմեանց: Իսկ 'ի գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի ձեռն երկոտասան Առաքելոցն՝ զորս յառաջագոյն ընտրեաց, փրկեաց ապրեցոյց զամենայն ազգս մարդկան: Եւ քարոզութիւնն էր սակաւ բանիւք, իսկ գործք մեծամեծք և առաւել զօրաւորք. քանզի ոչ եթէ բազում բանիւք յանդիմանէին զհեթանոսս, և ըստ մասանց բազմամթեր մեղացն պատմէին նոցա զյանդիմանութիւնս, այլ այսչափ ինչ. "Ի բաց լինել ձեզ 'ի պոռնկութենէ և յարենէ զոհից և 'ի շնչհեղձուցիկ ուտելոյ". և զայս պահելով ընդունել զմկրտութիւն յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և նովաւ ժառանգել զսուրբ Հոգին և զՀայրն ամենեցուն: Եւ զայս սակաւաբանութիւն բաւական համարեցան Առաքեալքն առ ամենայն լրումն արդարութեան: Զի թէպէտ և մոլեալք կատաղէին հեթանոսք 'ի մոլորութիւն դիւացն և յանարժան պոռնկութիւն, սակայն օրէնս ունէին քաղաքավարութեան, որ

կարծէր 'ի գողանալոյ և յափշտակելոյ և յանխտիր սպանանելոյ. զեղեալ օրէնս բաւական համարեցան մարդկան առ իշխանութիւն մարմնոյ:

Իսկ վասն յորդորման Հոգւոյն զօրմէ ոչ փոյթ առաքին իշխանքն և թագաւորքն, երիւք այսու կանոնեալ բանիւքս՝ մեծաւ զօրութեամբ յամենայն մասունս արդարութեան նշանայն և արուեստիցն՝ զոր Աստուած 'ի ձեռս Առաքելոցն կատարէր, ահ և երկիւղ անկանէր 'ի վերայ ամենայն կռապաշտիցն: Քանզի դեւք հալածեցան, գոհք խափանեցան, ծուխք ձէնձերացն դադարեցին, երգք լկտութեանց լռեցին, մոլորութիւն կախարդութեանն հատաւ, պոռնկութիւն ամաչեաց, ամուսնութիւն զգաստացաւ, սրբութիւն բացաւ:

Եւ այս ամենայն լինէր 'ի ծագել իմանալի արեգականն 'ի մէջ հեթանոսաց: Յորժամ փարատեալ մերկացաւ 'ի նոցանէ զխաւարն մոլորութեան, ապա կարացին տեսանել զլոյս շնորհի Հոգւոյն սրբոյ, ընդ որում կայր հակառակ անդրանիկն սատանայի Սիմոն, որ պատրեալ մոլորեցոյց զբիւրս բազմաց, և զինքն անուանէր զօրութիւն երկնաւոր 'ի փրկութիւն եկեալ ազգի մարդկան: Եւ հասեալ Պետրոսի զօրութեամբ սուրբ Հոգւոյն, ոչ միայն զնա յանդիմանեալ կշտամբեաց, այլ և բազմութիւն մարդկան հանեալ 'ի նմանէ՝ և հաստատեաց զնոսա 'ի ճշմարտութիւն քարոզութեան աւետարանին: Իսկ նորա 'ի ցամաքէս հալածական եղեալ, ծովամուխ լինէր, անցանէր անցանելով 'ի Հռովմ. և Պետրոս զհետ լինելով ոչ ինչ փութացեալ ձեպէր, այլ շրջէր ընդ քաղաքս փիւնիկեցւոց, առնէր նշանս և արուեստս յանուն Յիսուսի Քրիստոսի, և հաստատէր ժողովուրդս բազումս. և ինքն անցեալ զհետ կախարդին և հասեալ 'ի Հռովմ, ոչ եւս հալածէր զնա 'ի քաղաքէն, այլ բանիւք յանդիմանէր և նշանօք հաստատէր զքաղաքն: Եւ Սիմոն 'ի դիւաց յափշտակեալ, և սակաւ մի դեր 'ի վերոյ քաղաքին զինքն վերացուցեալ, և անդէն առաջի ամենեցուն խորտակեցաւ անկեալ 'ի վայր. որք ոչ միայն ականատեսք եղեալ, այլ և ձեռօք իւրեանց քարշեցին և արտաքս քան զքաղաքն ընկեցին: Եւ զայս տեսեալքն ճշմարտեցին վասն քարոզութեան աւետարանին՝ բազմութիւն արանց և կա-

նանց, որք մկրտեցան 'ի Պետրոսէ, և եղեն ժողովուրդք բազումք, մինչեւ 'ի տուն Թագաւորին ազդեցաւ, և հաւատացին, և հաստատութեամբ զաւետարանն ընկալան, և մարտիրոսութեան շնորհաց արժանի եղեալք կատարեցան:

Որպէս և ինքն իսկ Պետրոս գլուխ աշակերտացն 'ի նմին քաղաքի ընկալաւ զվճիռ մահու ըստ նմանութեան խաչին Քրիստոսի, և եդ վէմ հաստատութեան 'ի հիմն եկեղեցւոյ, և կատարեաց զբանն Տեառն որ ասէ. "Դու ես վէմ, և 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ". արդարեւ իսկ վէմ է ճշմարիտ դաւանութիւն հաւատոյն: Որպէս Պետրոս 'ի վերայ Քրիստոսի շինեաց զանձն իւր վկայութեամբ մահու, նոյնպէս և եկեղեցի շինեցաւ 'ի վերայ Պետրոսի հաւատոյն՝ ոչ միայն 'ի Հռովմ, այլ և ընդ ամենայն քաղաքս և 'ի գեօղս մեծամեծս մինչեւ ցփոքունս. նոյն հաւատք և նոյն հիմն և նոյն հաստատութիւն: Քանզի մի է տէր և մի մկրտութիւն, որով ընկալաք զթողութիւն մեղաց և զկենդանութիւն ոգւոց յանուն տեառն Յիսուսի Քրիստոսի:

Եւ որպէս Պետրոս 'ի Հռովմ հաստատեաց զեկեղեցին, նոյնպէս և այլ Առաքեալքն ըստ իւրաքանչիւր վիճակեցելումն աշխարհաց, ուր հրամայեցաւ նոցա լի առնել զաւետարանն Քրիստոսի: Ետ նոցա Աստուած շնորհս 'ի Հոգւոյն սրբոյ, և կատարեաց 'ի ձեռս նոցա նշանս և արուեստս մեծամեծս. որք զախտս մարմնոց բժշկէին, և զհիւանդութիւնս ոգւոցն զօրացուցանէին, մինչեւ զմեռեալս անգամ յարուցին, և առաւել քան զբնութիւն մարդկան պայծառագոյնք երեւեցան 'ի մէջ հեթանոսաց. որոց առեալ ցուլս և պսակս՝ իբրեւ աստուծոյ զոհս մատուցանէին: Եւ այնչափ մեծացան երկնաւոր յայտնութեամբքն և իմաստնացան 'ի Հոգւոյն սրբոյ, մինչեւ զճարտարապետ փիլիսոփայիցն ածէին 'ի հաւանութիւն, և հաստատէին 'ի հաւատս ճշմարիտս, և գործակից աւետարանին զնա կացուցանէին:

Եւ այս էր տեսիլ նոր և սքանչելի. գալիլեացիքն հռոմայեցիք եղեն. և որ քան զամենեսեան տկարագոյնքն էին, զօրութեամբ մարտնչէին՝ ոչ միայն ընդ իշխանս, ընդ քաղաքապետս, այլ ընդ ինքնակալսն և ընդ

զօրս նոցա. և որ անքանքն մնեալ էին 'ի ծովակին Գեննեսարեթայ, ընդ աթենացւոն վիճէին պայքարաւ. և ոչ միայն յաղթէին և լռեցուցանէին, այլ և կորզէին հանէին 'ի բնական գիտութենէն, ուսուցանելով և հաստատելով զնոսա 'ի շնորհս Հոգւոյն սրբոյ։

Եւ ո՞ իսկ կարէ պատմել զմեծութիւն նոցա. ինքեանք անտունք և անքաղաք յերկրի, և այլոց տունս և քաղաքս խոստանային յերկինս. ինքեանք աղքատք, և զայլոց մեծութիւնս յաւարի առնուին. հալածեալք 'ի մարդկանէ, և զդեւս հալածական առնէին յաշխարհէ. մարմինք իւրեանց գանալիցք, և զայլոց վէրս ողջացուցանէին յանբժշկելի հարուածոց. հացիւ քաղցեալք, և զկերակուր հոգեւոր ջամբէին բազմաց. ջրով ծարաւիք, և բաժակ մխիթարութեան մատուցանէին ամենեցուն։ Ինքեանք բանդարգեալք, և զայլոց խզէին զկապանս մեղաց. դատապարտեալք, և զդատապարտս լուծանէին. մահապարտք, և մահոյից թողութիւնս առնէին։ Երեւէին յերկրի, և շրջէին յերկինս. կռուէին ընդ մարդկան, և յաղթէին դիւաց. ձաղկս յիւրեանց մարմինս ընդունէին, և տանջեալ լինէին գունդք դիւաց։

Ոչ կարեմ յերկրի նմանութիւն գտանել երկոտասան առաքելոցն. զի քան զդաշտս ծաղկալիցս պայծառագոյնք են, և քան զլերինս մեծամեծս բարձրագոյնք։ Մեծ են քան զմեծութիւն ծովու, և խորք են քան զանդունդս նորին. յերկրէս հրաժարեցին, և քան զերկինս գերագոյն գտան։ Իսկ արդ ո՞ւմ նմանեցուցից կամ զո՞վ ածից տարացոյց։ Եթէ զամպս ասեմ, ոչ ինչ են համեմատ. ամպք 'ի ծովէ ջուր առնուն և ցանեն զերկրաւ. իսկ սոքա զՀոգւոյն սուրբ ընդ ինքեանս ունին՝ ոչ տեղալով և ցանելով, այլ միանգամայն մխեն և թաղեն 'ի ջուրս աւազանին, և առնեն բոյսս երկնաւորս, տունկ կենդանի առանց անցանելոյ։ Եւ եթէ զլուսին ասացից, լուսին լնու և պակասի. իսկ Առաքեալքն լնուն և լցուցանեն առանց պակասութեան, և ինքեանք մնան առանց անցանելոյ։ Եւ եթէ զաստեղս ասացից, ոչ մի փառս ունին, և ոչ միով պայծառութեամբ երեւին. այլ ոմն յոլով և ոմն սակաւ, ոմն արուսեակ և ոմն գիշերավար. իսկ Առաքեալքն ամենեքեան արուսեակք,

ամենեքեան պայծառացեալք, ամենեքեան զուարթունք զոյգք և հաւասարք, միաբանք և անհակառակք։ Տեսա օն անդր, զի՞նչ նմանութիւն աստեղացն և Առաքելոցն։ Աստեղք ոմն 'ի վեր, ոմն 'ի վայր, ոմն 'ի միջի. Առաքեալքն ամենեքեան վերաբերք և բարձրացեալք։ Աստեղք գիշերի ևեթ երեւին, և 'ի տուընջեան ընկղմին և ծածկին 'ի լուսոյ արեգական. իսկ Առաքեալքն 'ի տուէ և 'ի գիշերի փայլեն, 'ի տուընջեան լոյս են ոգւոց, և 'ի գիշերի զգաստութիւն ոգւոց և մարմնոց։

Առաքեալք քան զարեգակն պայծառագոյնք են զօրութեամբ Հոգւոյն սրբոյ։ Արեգակն իշխանութիւն ունի աւուր տուընջեան. Առաքեալք իշխանութիւն ունին տուընջեան և գիշերոյ։ Արեգակն 'ի տեսաւորութիւն երկրի և 'ի գործառնութիւն մարմնաւոր պիտոյից. Առաքեալքն 'ի տեսաւորութիւն երկնի և երկրի, և 'ի խոհականութիւն ոգւոց և մարմնոց։ Արեգակն յեղյեղու և փոփոխի. իսկ Առաքեալք առանց յեղյեղման և փոփոխման, առանց շարժելոյ։ Արեգակն ժամանակաւ ծագէ և մտանէ. Առաքեալք զժամանակ ծագման լուսոյն քարոզեցին աշխարհի։ Արեգակն ոչ երբեք ծնանի այլ արեգակն. իսկ ծնունդք Առաքելոց զգործս հարց իւրեանց կատարեն։ Ծնունդք արեգական ճառագայթք լուսոյ իւրոյ են, և մի կոյր ոչ երբեք կարացին լուսաւորել. ծնունդք Առաքելոցն բազում անգամ 'ի սուրբ եկեղեցւոջ զկոյրս լուսաւորեցին, զկաղս բժշկեցին, զախտս հալածեցին, զմեռեալս յարուցին։ Լոյս արեգական զմարմնովք պարի, և զերեւելիս ցուցանէ, և առաջնորդէ 'ի ճանապարհս ուղեգնացից. լոյս քարոզութեան Առաքելոցն և զմարմնովքն պարի, և զաչս հոգւոցն բանայ, և առաջնորդէ 'ի քաղաքն երկնաւոր։ Ի լոյս արեգական մարդիկ և անասունք շրջին 'ի տուընջեան, և 'ի գիշերի հանգչին յաշխատութենէ. 'ի լոյս հաւատոց Առաքելոցն երկնաւորք և երկրաւորք հրաւիրեցան 'ի նորոգումն կենաց, որ առանց անցանելոյ և ապականութեան է։

Այս են Առաքեալքն որ մեծացան և վերաբերեցան և գեր 'ի վերոյ եղեն քան զերկինս և հասին առ Հայրն բոլորեցունց, և յորդորեցին զաշխարհս ամենայն 'ի քարոզութիւն աւետարանին ճշմարտութեան, զի ամենե-

քեան հատցէն 'ի նոյն քաղաքն վերին, ուր երկնասանքն ընդունելոց են զանպատում պսակն արքայութե։

Որպէս ինքն տէր մեր Յիսուս Քրիստոս երիցս անգամ հարց ցգլուխ աշակերտացն ասելով. «Շմաւոն յովնանեանց, սիրե՞ս զիս»։ Եւ նա ճշմարտութեամբ ետ վկայութիւն. եթէ նա միայն է կատարեալ սիրոյ արժանի, վասն զի արարիչ է. եկն զիւր արարածս նորոգել՝ ոչ 'ի ձեռն հրեշտակի, և ոչ 'ի ձեռն մարգարէի, և ոչ 'ի ձեռն այլ իրիք պատճառանաց յերեւելեացս, այլ 'ի ձեռն իւրոյ ստեղծուածոյն։ Զի որպէս առ սէր իւր արար զմարդն, նոյնպէս և վասն սիրոյ եկն 'ի խնդիր կորուսելոյն. վասն սիրոյ իւրոյ եգիտ զկորուսեալ ոչխարն. վասն սիրոյ իւրոյ եբարձ 'ի վերայ ուսոց իւրոց. վասն սիրոյ իւրոյ գգուեաց և եդ 'ի վերայ բազկաց իւրոց. վասն սիրոյ իւրոյ եբեր և խառնեաց 'ի հօտն բանաւոր, որ արածին յարօտս հոգեւորս, և հանգչին 'ի մակաղատեղս անմահութեան։ Վասն սիրոյ Պետրոս ետ պատասխանի և ասէ. Տէր, դու զամենայն ինչ գիտես, և զամենայն ինչ ճանաչես. եթէ սիրեմ ոք զքեզ՝ դու քաջ գիտես։ Գիտեմ զի վասն փորձելոյ հարցանես. եթէ բազում անգամ հարցցես, զնոյն լուիցես յինէն։ Դու իբրեւ զԱստուած և զորդի բարերարի՝ առանց չափոյ սիրեցեր զաշխարհ, և զանձն քո եդիր 'ի վերայ. ես իբրեւ զմարդ՝ ըստ իմում տկարութեան սիրեմ ըզքեզ. տալ ինչ ոչ կարեմ, զի աղքատ եմ. և եթէ տաց, 'ի քումմէ անտի առից և տաց քեզ։

Բայց տայր ոք զպատճառսն գիտել, եթէ իւ խցես դու կարօտ, և զի՞նչ կամիցիս խնդրել, և եթէ զի՞նչ կայցէ իմ զոր տաց քեզ։ Քանզի յառաջին ոչ երբեք զայսպիսի բանս հարցեր զիս։ Արդ եթէ նոր է հարցուածս, ես գիտեմ զի նոր իմն հրաման տաս ինձ. ասա, տէր իմ, համարձակ. գիտեմ ոչ զայն ինչ հրամայես դու ինձ, զոր ոչ կարեմ առնել. և ոչ զայն ինչ խնդրես յինէն, որ չիք իմ տալ քեզ։

Իբրեւ ետես Տէր եթէ սրտիւ ամենայնիւ սիրէ և ամենայն կամօք կամի և ամենայն զօրութեամբ համարձակի, քանզի զամենայն զինչ ետ ցնա, յանձն առար նմա զսկիզբն և զմիջոցն և զկատարածն, զտղայութիւն, զերիտասարդութիւն և զծերութիւն։ Եւ յայս

երկս հատածս է տեսանելի աշխարհս, և իմանի կատարեալ արարչութիւն. բայց լուսագոյն առաջինն է, և կրսերագոյն միջինն: Եւ քանզի յասելն Տեառն զՊետրոս "Արածեա դու զգառինս իմ", զանմեղսն յանձն առնէ. և երկրորդ զոչխարսն ասելով՝ անորիշ ասաց, այլ ոչ պարզագոյն իբրեւ զգառինս. քանզի գառինքն օդեաց են ծնունդք, և օդիքն խոհականութեան իմն տեսակ երեւին աջակողմանն: Իսկ ոչխարսն ասելով՝ է սովորութիւն մարդկան, օդւոյն՝ զնոյն և այծոյն, այլ ոչ պարզագոյն և խառնուածն. քանզի որոշեցաւ սեաւն և սպիտակն, և հատածք բնութեանն ոչ խառնեցան 'ի միմեանս: Եւ որպէս լուսագոյնն յաջակողմանն երեւեցաւ, նոյնպէս և մատթարագոյնն ձախակողմն ընտրեաց կամօք և ոչ բնութեամբ:

Եւ ընդէ՞ր այս այսպէս լինիցին: Ճշմարիտ է ինձ ասացեալն յանսուտ բնական բանիցն: Ասրոյն արուաց բերէ զնմանութիւն օդային շնչմանն, և նա է ճշմարիտ տեսակ երկնաւորացն. իսկ քօշն այծեաց՝ նմանեալ ջր-րային մասինն՝ մարմնաձեւ թանձրութիւն, որ ունի զախտս ապականութեան, և բաժանեալ որոշի 'ի բանաւոր բնութենէ, ուր տեսանի յաջակողմանն: Դարձեալ ասելով Տեառն՝ արածեա դու զխաշինս իմ, այս եւս խստագոյն բազմութիւն և յայտնագոյն բաժանումն. խաշն ասեմք միանգամայն անասուն պաճարիդ. և միով բառիւդ զամենսեան 'ի ներքս արգելեալ փակեցաք զանմեղս և զմեղանչականս, զսուրբս և զանսուրբս, զպիտանացուս և զանպիտանս. և որ միանգամ մարդընդելք են և հնազանդեալք ընդ իշխանութեամբ մարդոյն, ամենեցուն խաշինք ասեմք. քանզի և կարօտ իսկ են առաջնորդութեան հովուի: Արդ քանզի մի է հօտ և մի է հովիւ, և մի արօտք են և մի մակաղատեղ հանգստեան ամենեցուն, անդ են գառինք և ոչխարք և ամենայն բազմութիւնն, զոր խաշինս ասաց. մանաւանդ նոքին իսկ Առաքեալքն, զորս յանձն արար Պետրոսի, և որք գործակից եղեն նոցին քարոզութեանն, ամենեքին սոքա գառինք սուրբք են և աստուածայինք:

Իսկ որք պատճառանօք աշակերտեցան յաւետարանն, և նորաձեւ ճանապարհս ցուցին բազմաց, ընդդէմ եղեն ճշմարտութեանն: Եւ քանզի ունէին զանունն

Քրիստոսի, և զկերպարանս ձևոյ Առաքելոցն յանձինս ցուցանէին, և գործովք չարութեան նմանեալ էին սատանայի, նոքա են այծիք որ կան 'ի ձախոյ կողմանն հօրն իւրեանց սատանայի. զոր ընտրեցին կամօք իւրեանց, ընդ նմին երթիցեն 'ի հանդերձեալ տեղին իւրեանց: Իսկ զոր խաշինս ասաց, այնոքիկ են՝ որք ընդդէմ կացին Ճշմարտութեանն. և ոչ միայն արգել և խափան եղեն աւետարանին, այլ և ձեռն արկին 'ի սուրբ Առաքեալսն և 'ի նոցուն աշակերտսն՝ բազում անգամ հարկանելով և չարչարելով, և սրոյ մահուամբ վախճանեցին զբազումս 'ի նոցանէ, որպէս և՛ Ներոն և այլ բազում ընկերք իւր. մինչև ցայսօր ժամանակի այն գործ գործեցեալ է և գործի:

Արդ արածեա դու, ասէ, զանմեղս և զմեղաւորս և զայնոսիկ որ զմահ 'ի վերայ ձեր ածիցեն. արածեա, ասէ, դու, մի՛ զանգիտեր, որպէս ինքնին հասարակ ամենեցուն չարեաց և բարեացն եկի 'ի փրկութիւն և 'ի կենդանութիւն նորոգման, զի իցեն մի հօտ ընդ միոյ ձեռամբ հովուին միոյ. նորուն ձայնի լուիցեն, զնորայն զհետ ընթասցեն, զնոյն կեանս ընկալցին. զի իցեն ամենեքեան գառինք անմեղք, և ոչ գրթցողք և հարկանողք և բեկանողք: Ապա թէ իցէ ոք և ելցէ ըստ ցուպ հովուութեանդ քո, և ընդդիմասցի Ճշմարտութեան աւետարանիդ, սակայն դու մի՛ զանգիտեր, այլ քաջալերեաց և զօրացիր, մինչև ցմահ անգամ պատերազմեա, որով և փառաւոր իսկ առնիցես զիս:

Բայց թերևս փափագիցեմք ամենեքին լսել թէ ուր հրամայիցէ Տէր արածել զխաշինսն, և կամ զի՛նչ արօտքն իցեն, կամ որպիսի՛ ջուրքն իցեն, և կամ զի՛նչ տեղի հանգստեան: Արդարև ինձ և ամենեցուն որք սիրեն լսել՝ ախորժելի է: Քանզի հովուութեան է թագնութիւն վարուց և հաւատոցն Պետրոսի. իսկ խաշինք՝ ամենայն ազգ հեթանոսաց. և տեղիք արօտից՝ սուրբ և առաքելական եկեղեցի. ճարակք՝ օրէնք և մարգարէք և Առաքեալք. իսկ ջուրքն՝ անանց աւետիքն աւետարանին. և ուր հանգչին անհոգութեամբ առանց երկիւղի՝ 'ի վերինն Երուսաղէմ, որ է մայր մեր ամենեցուն: Քանզի ոչ գոն անդ այծիք ձախոյ կողմանն, և ոչ քօշք հարկանողք, և ոչ խոյք խեթկողք, և ոչ

ցուլք սպանողք. նա և ոչ ընաւ իսկ ամենեւին 'ի վհատակարաց, այլ ամենեքին միամիտք, անմեղք, սուրբք, պարզք, յստակք. ոչ միայն գունով սպիտակազգեստք, այլ և ոգւովք, և ճառագայթաձեւք՝ նմանեալք երկնաւոր հրեշտակական գնդին. զի ընդ նոսին ունիցին յանգուճն միաբանութեան ձայնից և ձեւոց և գունոց. ընդ նոսին դարձեալ խրախակիցք և պսակակիցք՝ հպեալք և մերձեցեալք առ նահատակակիցն Քրիստոս: Որում լուան, որում աշակերտեցան, որում հնազանդեցանն, որում ըստ կամաց նորա զամենայն պատուիրեալսն գործեցին և կատարեցին, և չարչարակիցք եղեն նորա մահուանն, ընդ նմին և ընկալցին զանանց ուրախութիւնն, ընդ նմին և տեսցեն զհայրն բոլորեցուն զօրութեամբ Հոգւոյն սրբոյ՝ յորոյ ձեռնն կատարեցին զնահատակութիւնս երկնաւորս. ընդ նմին եկեսցեն յերկրորդ գալստեան նորա դատել զկենդանիս և զմեռեալս, և հատուցանել իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց՝ բաժանեալ 'ի կողմանց երկոցունց զիւրաքանչիւրսն, զոր և աստէն ընտրեցին, ոմանք յանողորմ տանջանսն, և ոմանք յանպատում 'ի կեանս յաւիտենականս:

Արդ որդիք և եղբարք, հարք և տեարք, ամենեքեան մեծք, ծնունդք մկրտութեան սուրբ եկեղեցւոյ, ընթերցողք օրինաց և մարգարեից, աշակերտեալք աւետեաց աւետարանին, հաստատեալք 'ի հաւատս Առաքելոցն, շինեալք 'ի վերայ վիմին հաստատութեան, ակնկալեալք երկնաւոր յուսոյն 'ի գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և նորա ընդ առաջ ելանել մեզ ամենեցուն, զի իցեմք առանց ամօթոյ և պատկառանաց, և ճանաչել զնա 'ի նորուն չարչարանացն նըշանօք բեւեռացն, և 'ի բանից նշանագիր աւետարանին: Եւ 'ի գործոց մերոց դարձեալ ճանաչիցիմք նմա. զի իցեն գնացք մեր ըստ սուրբ քարոզութեան Առաքելոց, թէ կատարեալ իցէ մարդն Աստուծոյ ամենայն ճշմարտութեամբ. զի լուիցեմք զձայն բարերարին, որ ասէ ցամենայն պատուիրանապահսն. “Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւնն 'ի սկզբանէ աշխարհի„: Ընդ որում Հօր և Հոգւոյն սրբոյ փառք և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՎԱՍՆ ԴԱՏԱՍՏԱՆԻՆ
## ԵՒ ՄԻՒՍԱՆԳԱՄ ԳԱԼՍՏԵԱՆՆ

Ահեղ և զարմանալի է գալուստն Քրիստոսի, և ահաւոր դատաստանն՝ յորժամ երկինք և երկիր դղրդեալ շարժին, և հրեշտակք Աստուծոյ այսր անդր ընթանայցեն. ձայն ահաւոր փողոյն Աստուծոյ, որ ժողովէ զազգս և զազինս յաւիտեան դատաստանին. համօրէնք սատանիւ անդ լինելին, և բովանդակ 'ի դուրս արտահանիցէ 'ի նմանէ զմեր ամենեցուն հոգիս, զշունչ և զմարմինս: Արարողն և Աստուած ոչ մոռանայ ամենեւին զոսկերս վախճանելոյն, 'ի կատարեալ հատակէն մինչեւ յանցուցեալն յորովայնէ: Այրին սասանին հատանէ երկրի, և զգուշութեամբ զամենայն մարմինսն 'ի դուրս բերելով երկրի: Ահեղ և ահաւոր է ատեանն զօրն զայն. եթէ երկրաւոր թագաւորաց ատեանն էր, այնքան մեծ էր և սաստիկ: Երբ տեսանեն արարածք ամենայն զԱստուած յերկնից յերկիր խոնարհեալ, և շարժեալք զօրք լուսեղէնք և բազմութիւնք հրեշտակաց և հրեշտակապետաց. աթոռ դատաստանին դնի փառաց դատել զամենայն արարածս, և կարգին առաջի ահաւոր ատենին Առաքեալք և մարգարէք, հայրապետք և մարտիրոսք և բազմութիւնք ընտրելոց Աստուծոյ: Այս դժնդակագոյն է զայն տեսանել. յայնժամ բազմութեան չիք ումեք փախուստ 'ի հանդիսապետէն և ոչ ընդդարձակութիւն երկրի թագաւորացն. 'ի ծագէ 'ի ծագ տեսանէ զամենայն հեռաւորս և զմերձաւորս, և բան գործոց իւրաքանչիւր հատուցումն լինի: Որոց գործք դժնդակագոյնք են, դատապարտեալ լինին, և անողորմ դահիճք ունին զմարդն որպէս թշնամի. հեռաքարշ արարեալ՝ ածեն առաջի դատաւորին և տանջեն 'ի հուր գեհենին. Եւ՝ դասք արդարոցն փայլեն որպէս լուսաւորք յարքայութեան երկնից:

Փողն երկնաւոր 'ի բարձունս գոչէ առ ննջեցեալսն և ասէ. Արիք, սիրելիք Քրիստոսի, ահա եկն թագա-

ւորն երկնաւոր և պարգեւէ ձեզ հանգիստ և ուրախութիւն և կեանս անմահականս փոխանակ աշխատութեան ձերոյ և ձգնութեան: Արիք և տեսէք զԹագաւորն Քրիստոս՝ զփեսայն անմահ, որում ցանկացեալ էք. վասն զի նմա փափագելով վասն նորա եղէք պանդուխտք 'ի վերայ երկրի: Արիք տեսէք զնորասքանչ վայելչութիւն և զմեծ փառս: Արիք մտէք յարքայութիւն նորա զոր պատրաստեաց ձեզ: Արիք տեսէք ըզտենչալի զՏէրն զոր սիրեցէքն, յաղագս որոյ և վշտացայքն: Արիք տեսէք զնա բազում համարձակութեամբ և ցնծացէք անդ նովաւ, և զանձառելի բարութիւն ձեր և զուրախութիւն ոչ ոք բարձցէ 'ի ձէնջ: Եկայք վայելեցէք զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց, զոր շնորհեաց փափագողաց իւրոց:

Օուարձանան արարածք ամենայն մեծաւ ուրախութեամբ, և փառաբանութիւն և երկրպագութիւն մատուցանեն Թագաւորին Քրիստոսի. և ընդ ամպս լուսաւորս 'ի վերայ օդոց Թռուցեալ սուրբքն բազմութեամբ զօրօք հրեշտակօք վերանան ընդ առաջ Քրիստոսի, և անպատմելի փառօք ցնծացեալ հրճուին 'ի տեսանելն զանմահն Աստուած զերկնաւոր փեսայն, և մտանեն 'ի քաղաք սուրբ 'ի վերին Երուսաղէմ ժառանգել զանձառ բարիսն զոր պատրաստեալ է Աստուած սիրողացն իւրոց: Յայնժամ ածեալ լինին և ապըստամբքն 'ի հրեշտակացն հանդերձ ամենայն դիւական գնդիւն առաջի ահաւոր բեմբին և անկաշառ դատաւորին: Յայնժամ Թագաւորն Քրիստոս հրամայէ տանջող հրեշտակացն արկանել զնոսա 'ի հուրն անշէջ և 'ի տանջանս մշտնջենաւորս. և միանգամայն զամենեսեան որ գործեալ են զանօրէնութիւն և ոչ են քաւեալ զղջմամբ և խոստովանութեամբ՝ մատնեն անշէջ խաւարին և անքուն որդանցն զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա: Յորմէ փրկեսցէ Քրիստոս Աստուած զամենայն հաւատացեալս անուան իւրում սրբոյ:

# ՎԱՍՆ ՅԻՇԱՏԱԿԱՑ ՄԵՌԵԼՈՑ

# Ի ԿԱՆՈՆԱՑ ԳՐՈՑ

Յայտնի են օրէնք և հաստատեալ են 'ի ձեռն օրինադրին Մովսիսի և այլոց մարգարէից. իսկ կանոնականք 'ի ձեռն Առաքելոցն տուան, և ետուն իշխանութիւն վարդապետաց եկեղեցւոյ. զի ակնաղբիւրն իցեն Մովսէս և մարգարէքն, և Առաքեալքն անկողք զմարդիկ առողջ հաստատկովք հաւատոյ: Ոչ 'ի հողեղէնս երկիր՝ որ անկեալ կայ ընդ ապականութեամբ, այլ 'ի վեր հայելով անկեն 'ի կենդանի դրախտն. ուր ոչ գոյ ծառ գիտութեան բարւոյ և չարի, այլ կենաց և անապականութեան: Եւ ունի ցանկ անխրամ, ուր ոչ Եւա և ոչ օձն կարասցէ սողել մտանել, և ոչ տալ զյետսընդդէմ խրատն, և ոչ մերկանալ զհայրենի փառսն, և ոչ ամաչել և թաքչել ընդ ծառովք: Եւ ոչ գոյ անդ ապաւինել 'ի տերեւ թզենւոյն, և ոչ ելանել 'ի դրախտէն և անկանել յերկիր նզովից: Եւս և ոչ պէտք են 'ի դրախտին յայս գործելոյ և պահելոյ ըստ առաջին պատուիրանին, այլ միշտ կեալ և վայելել: Արդ յայս դրախտ աւետական հաւատով անկեցին զմեզ երկոտասան Առաքեալքն, և ոռոգանեն զդրախտս զայս 'ի բուն յականակիտ յաղբերէն բղխմանց: Զսոյն զսա տեսանէին 'ի հեռաստանէ, և փափաքանօք 'ի դարս ժամանակաց իւրեանց ցանկանային լինել նմա: Բայց սակայն թէ և երեւակի ոչ հանդիպեցան, այլ կանխագէտ մարգարէութեամբն հաստատուն հաւատով վկայութեամբ իւրն կատարեցան. որ և այսօր յեկեղեցւոջ գովին 'ի մարդկանէ և յԱստուծոյ փառաւորին:

Արդ այս խորհրդական Սուրբ հովիւքն բանաւորք զբանաւոր հօտս մկրտեն. որ մկրտեալք մտուցանէ յորդեգրութիւն երկնաւոր Հօրն և անուանեալ եղբայր Քրիստոսի, և առհաւատչեայ 'ի բաց ղհանդեր-

ձելոց իւրացն զկայտնի շնորհս մատուցանել: Զինքն մարմնացուցեալ և արիւնացուցեալ 'ի վերայ սրբութեան սեղանոյն, հրամայեաց սրբութեամբ համարձակել, քաջալերութեամբ հաւատոյ մերձենալ, և ապա առնուլ ուտել և ըմպել: Իսկ ոչ մկրտեալքն թէպէտ և իցեն կատարեալ ամենայն արդարութեամբ, ոչ ունին իշխանութիւն մերձենալ կամ ճաշակել 'ի մարմնոյ և յարենէ որդւոյն Աստուծոյ. քանզի տէրունական է կանոնս: Զի մինչ դեռ մարդն կենդանի է, արժանի եղեալ վայելել յայսպիսի անանց պարգեւս, և յետ մեռանելոյ մարմնոյս ունի հաւատովք իշխանութիւն և 'ի մեռեալս սովիմբ կենդանի և իմացական պաշարաւս՝ քաւեալ 'ի մեղաց և ազատեալ 'ի տանջանաց, խառնեալ 'ի գունդս արդարոց: Եւ հրաման տուեալ մնացելոցն որ աստէն՝ զի առնիցեն յիշատակ հանգուցելոցն. զի մեռեալ է մարմինն և կենդանի է հոգին, և կենդանարար է աստուածութիւնն՝ որ առ ճշմարտութեամբ զհողեղէնն զոր ինքն ստեղծ:

Քանզի եւ յառաջագոյն աշակերտացն 'ի ժամ ընթրեացն, յորժամ կամաւ մատնէր 'ի ձեռս անօրինաց, առեալ զհացն և զգինին 'ի փառս Հօր. զի մինչ դեռ էր 'ի մարմնի, անձամբ անձին յիշատակ մատուցանէր, և կերող զինքն և զԱռաքեալսն զոյգ հաւասարէր: Որպէս և մեծն Պաւղոս խորհրդակիցն Քրիստոսի ասէ՝ թէ “Հացն զոր բեկանեմք, հաղորդութիւն է մարմնոյն Քրիստոսի. և բաժակն զոր օրհնեմք, ո՞չ ապաքէն հաղորդութիւն է արեանն Քրիստոսի: Քանիցս անգամ թէ ուտիցէք զհացս կամ ըմպիցէք զբաժակս, զմահ Տեառն պատմեցէք մինչեւ գայ նա”: Զի պատմելով զմահն Քրիստոսի 'ի վերայ տէրունական սեղանոյն, հացն և գինին ոչ որպէս էրն յառաջ՝ նոյնպէս լինի, այլ մարմին և արիւն ճշմարիտ Քրիստոսի, ոչ ապականացուի ուրուք, այլ անապականի. և մերձեցեալ ուրուք արժանապէս՝ զապականութիւնս մեր յանապականութիւն դարձուցանէ: Եւ է սա յիշատակ արարեալ Աստուածն Բանի կատարեալ և կուսածին մարմնոյն, զոր ոչ կարաց մահ արգելուլ ընդ ապականութեամբ. և խառնեալ 'ի սա Տեառն ըստ իւրոյ բարերարութեանն, և յիշատակ մերոյ մարդկութեան: Զի եթէ առ մարմին զիմ բնա-

կեցս և ետ ինձ իշխանութիւն զիւրոյ աստուածութեանն և պատարագիչ կացոյց զիս իւրոյ չարչարանացն, ահա յայտ է՝ թէ և ես ունիմ իշխանութիւն հանգուցելոցն առնել զյիշատակ նոցա 'ի յիշատակին Քրիստոսի: Զի յորժամ աղաչութեանս առնեմ, օգտիմ և օգտեցուցանեմ. օգտիմ՝ զի և զիմ հոգիս 'ի հանգուցելոցն խառնեմ, և օգտեցուցանեմ՝ զի վկայ եմ ճշմարիտ հաւատոյ հանգուցելոցն: Արդ եթէ այդ այդպէս իցէ, ոչ միայն պարտիմք հանգուցելոցն յիշատակ առնել, այլ և տուրս աստուածաձեռն բաշխել մեզ 'ի քաւութիւն մեղաց, 'ի գալստեան հաւատոյ աղքատաց, 'ի հանգիստ մխիթարութեան հանգուցելոցն, և որ զկնի մեր գալոց են յաջորդաց վարդապետութիւնս:

Նաև վասն մեղաւորաց յիշատակի՝ որք վախճանեցան 'ի կեանս իւրեանց, և ջնջեցին զգիր որդեգրութեանն Աստուծոյ, և անձամբ անձանց եղեն պատճառք ելանելոյ յերկնից յարքայութենէն, և բազմութիւնք հրեշտակացն սուգ առնեն վասն այնպիսեացն, և միայն սատանայ իւրովք սեւագունդ զօրօքն խնդայ, զի քակեցաւ տաճարն կենդանի, չեղեւ արժանի բնակութեան թագաւորին Քրիստոսի. քակեցաւ 'ի դասուէ արդարոցն, հեռացաւ յուղղափառ եկեղեցւոյ, չխառնեցաւ 'ի գունդն Քրիստոսի, չկարգեցաւ 'ի շրջագայ պարս հրեշտակաց լուսազգեստից, միաբանեցաւ 'ի սեւաթոյր գայն ներքեւալ մեղացն, խառնեցաւ յերամակս այծից ձախակողմեանն. ժառանգն արքայութեան եղեւ կերակուր որդանցն անմահից. որդին լուսոյ բնակեաց 'ի խաւարն արտաքին. փոխանակ ուրախ լինելոյ և խնդալոյ յանթառամ պսակսն, լալ աչաց և կրճտել ատամանց, և վայ 'ի բերանոյ մի պակասեսցէ: Վասնզի կրկին է հարուածք դժոխոցն և երեքկին. սաստուռ է քան զամենայն ցուրտ ձմերայնոյ սառամանիքն, և տապ բոցոցն այրեցող քան զամենայն հուր հնոցի. զեռ հրոյ յորդեալ ելանէ քան զամենայն սաստկութիւն ջերց բաղնեաց. բոցք հրեղէնք 'ի վեր ցոլացեալք, և շանթք հրաձեւք եռացեալ հատանեն. մթին է բոցն և խաւարային է հուրն, վասն որոյ արտաքին անուանեցաւ. հրածին է որդնն և թիւնաւոր և անքուն, և անմահ անուանեցաւ. ահաւոր են ժանիքն և անյագ որովայնն. անսպառ կերակուրն և ան-

դադար կերողքն. չիք առ ոք աղաղակել, և ոչ այն որ լսէ զձայն պաղատանաց. ցամաքեալ է սէր, և ոչ իջանեն արտասուք ընկերի 'ի վերայ սիրելեաց իւրոց. քանզի հեռացաւ գութ, և թագաւորեաց ստուգութիւն՝ որ հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործս իւր:

Բայց որովհետեւ եկն 'ի մկրտութիւն, ուրացաւ 'ի սատանայէ և 'ի խաւարային հրեշտակաց նորա, խոստովանեաց զՀայրն բոլորից, յանձն էառ չարչարակից լինել Աստուածն Բանի՝ որ էառ 'ի սրբոյ կուսէն զընակից մարմինս մեր շնչով հոգւով և մարմնով, հաւատաց 'ի սուրբ Հոգին քաւիչ մեղաց ամենայն մարդկան որ հաւատան, այսպէս և ճաշակեաց 'ի կենդանարար պատարագէս Քրիստոսի, և թէպէտ և մեղաւ՝ ոչ կարաց տկարութիւն մեղացն լուծանել զանբեկանելի կնիքն տէրունական. և զոր օրինակ առաջին մարդն ապականեալ մեղօք հող եղեալ, և դարձեալ անդրէն 'ի նոյն բնութիւն յերեւմանն Քրիստոսի, ոչ նոր կամ այլ մարդ փոխանակ նորա արարաւ, այլ զայն զապականեալն յանապականութիւն նորոգեաց, ըստ նմին օրինակի և որ յետ մկրտութեանն կարգի մեղանչէ՝ և զզջանայ և դառնայ յապաշխարութիւն, առաքինութիւն պիտի գործել այնպիսեացն, այլ ոչ վերստին մկրտիլ. քանզի և յառաջնումն ոչ բռնաբար ոք էած զնա 'ի հաւատս, այլ ինքն կամօք. և Աստուած զկամաւորն ընդունի յորդեգրութիւն: Ինքն հաւատայ բոլոր և զինքն տայ Աստուծոյ, որով լինի միաբանութիւն Աստուծոյ և մարդոյ. և զի ճշմարիտն այսպէս, և մեք հաւատամք: Եւ թէպէտ թերահաւատ լինիցի ըստ մարդկային մտաց, Աստուած յիւրումն հաւատարիմ է, զտուեալն պարգեւսն ոչ հանէ: Եւ յորժամ դատի, զմեղսն դատեսցէ. սուրբ մկրտութիւնն ոչ լուծանի, և ոչ ընդ դատաստանաւ անկանի:

Եթէ կամիս, առ. քեզ միւս եւս տարացոյց: Կատարեալ մեղաւ մարդն առաջին 'ի դրախտին. 'ի հողոյ մասն դարձաւ յերկիր, իսկ կենդանի փչումն ոչ անկաւ ընդ ապականութեամբ, այլ վերաբերեցաւ ըստ առաջին բնութեանն: Կնիք հաւատքն են՝ որ 'ի սուրբ Երրորդութիւնն, որում լուծանել անհնար է, և կամ ընդ ապականութեամբ անկանել: Ապա եթէ ոք որպէս

հաւատոյն կամօք՝ դարձեալ ուրանայցէ, ինքն 'ի բաց կեայ 'ի կենացն, կեանքն ոչ մեռանի ըստ մահկանացուին. Թուի ինձ և ամենեցուն՝ թէ այնպիսումն յիշատակ չէ: արժանի առնել, և ոչ սուրս բաշխել 'ի քաւութիւն մեղաց նորա: Ապա եթէ 'ի ժամ վախճանին զղջասցի, ընդունել արժանի է՝ հայելով 'ի մարդասիրութիւնն Աստուծոյ. 'ի վերայ այսր սուրս տալ արժան է յանուն հրաժարելոյն, թերեւս ընկալցի ողորմութիւն՝ գթացեալ 'ի նա:

Իսկ վասն անմեղ երախայիցն որք հրաժարեցին յաշխարհէս առանց մկրտութեան, որպէս ասասցուք նոցա անմեղս. զի առաջին պատուիրան մկրտութիւնն է, զի 'ի նմա կատարին հաւատքն. և նա արհամարհեաց զայն և զբոլորեցունց Հայրն զԱստուած և զքաւիչ զՀոգին սուրբ և զմիածին որդին Աստուծոյ՝ որ խոնարհեցոյց զինքն զբոլորն դնել զալջ մարդկութեանս 'ի վերայ աստուածութեանն. և Մկրտիչն 'ի բաց հրաժարէր ասելով՝ Ինձ պիտոյ է 'ի քէն մկրտել, և դու առ իս գաս: Իսկ Տէրն մեր զի զմարդիկ որդիս Աստուծոյ արասցէ, ասէր՝ Թոյլ տուր, զի այսպէս արժան է մեզ լնուլ զամենայն արդարութիւնս. փութամ մկրտել 'ի մարդոյ, զի կատարեսցէ զարդարութիւնս ամենայն, որչափ եւս առաւել մարդ փութասցի ապաւինել 'ի սուրբ ջուրս աւազանին, զի առցէ զանջինջ որդեգրութիւնն Աստուծոյ: Արդ որ զայսու ամենայնիւ արհամարհեաց և զանց արար, եթէ արժա՞ն իցէ նմա անմեղ ասել՝ որ լի է ամենայն կորստական փնասիւք: Ապա եթէ ասիցէ ոք, 'ի տղայութեանն վրիպեցաւ, ես գիտեմ զայնպիսեացն զփնաս զծնողօքն արկանել. և զի՞նչ առ պատուհրանն. եթէ յօտարէն սպանաւ, սակայն մեռաւ. և եթէ յեղբօրէն, նոյն անցք անցին. և բազում որդիք և 'ի հարց իսկ մեռան: Ահն մի է ամենեցուն, իբր բաւական է վրէժ առնուլ 'ի փնասեցելոցն և 'ի փնասակարացն:

Ասեմ՝ թէ յայսպիսեացն անուն ոչ է արժան պատարագս մատուցանել, քանզի 'ի կենդանութեանն իւրում ոչ եղեւ արժանի կենարար շնորհին: Ո՞վ այնչափ յանդուգն իցէ և տգէտ, որ աստի անդրոշմն յուղարկեցաւ, և քակեալ տրոհեցաւ բարժանելեաւն և անբարժանելեաւն. զոր չիք հնար 'ի միմեանս յարել

*մինչեւ 'ի ժամանակս վերստին նորոգմանն. այլ տուրս տալ միայն վասն այնպիսեացն յարժանաւոր տեղիս. աղաչել զդատաւորն ամենեցուն բազում բարեխօսիւք, զի ապրեցուսցէ զմեռեալսն յանշէջ հրոյ գեհենոյն, յոր երթալոց է սատանայ և ամենայն գործակիցքն իւրովք: Յորմէ պահեսցէ Քրիստոս Աստուած մեր զսիրելիս իւր և զհամօրէն գնեալս արեամբ իւրով. և նմա փառք յաւիտեանս. ամէն:*

1 Պակասին բառք ինչ:

2 Կայ վրիպակ ինչ գրչի. ապա թէ ոչ՝ չելանէ ստոյգ իմաստ: Եւ կամ իմա այսպէս. Թէպէտ և անկնունքն չափահաս ունի 'ի դժոխս երթալ, այլ եթէ անչափահաս գոցի կամ տարակուսելի, յայնժամ Թերեւս օրէն իցէ աղօթել միայն առանց պատարագի. զի գոնեա լիմպոսի արժանի լիցի, և ոչ դժոխոց: Դժուարաթարգմանելի են և բանք սորին Օգոստինոսի առ աստուածաբանս վասն անկնունք տղայոց զրկելոց յարքայութենէ, թէ յոր վիճակ անկցին:



# ԿԱՆՈՆՔ

## ՎԱՍՆ ԴԻՒԱՀԱՐԱՑ՝ ԵԹԷ ՊԱՐՏ Է ՕՐՀՆԵԼ ՏԱԼ, ԿԱՄ ԵՐԱԽԱՅԻՑ ԿՆՈՋ՝ ՄԻՆՉ ԴԵՌ ԴԵՒՆ Ի ՆՄԱ ԻՑԷ

Բազում են ախտք 'ի մարդն, վասն զի ունի մարմին չարչարելի. և են յախտից որ 'ի ձեռն ճարտար բժշկաց ընդունին զառողջութիւն, և են որ ինքեանք իսկ ախտքն դիւրաւ թօթափին 'ի մարմնոյն, և են որ անբուժ յերկար հիւանդութիւնս գործեն, միանգամայն և մահ իսկ 'ի վերայ ածեն: Այլ են ամենեքեան եկամուտ ըստ իւրաքանչիւր պատճառի ժամանակացն կամ 'ի խորշակաց, կամ յանչափ խոնաւութենէ, կամ 'ի սառնամանեաց ցրտոյ, կամ 'ի ժահահոտութենէ օդոյն, կամ 'ի գէջ խոնաւութենէ: Դարձեալ լինին ախտք և 'ի յոլով կերակրոց և յերկար անսուաղութենէ. և այլ բազում պատճառք են ցաւոց զոր գիտեմք ամենեքեան: Բայց նման դիւահարութեան միւս ևս այլ տեսակ է՝ եթէ խելքն ուրուք փոխեալ են յանչափ արկածից տառամոքսին ցաւոց. և մանաւանդ ընդ ժամանակս ժամանակս ընդ լնուլ լուսնոյ և ընդ մաշել՝ աճմունք և նուազութիւնք լինին ամենայն կենդանեաց, կամ 'ի զեղուլ խելացն, կամ 'ի նուազել, կամ յերկարին յուզի ախտ ցաւոցն՝ փոփոխէ այնպիսին, և արիւնախառն բերելով ընդ բերանն և ընդ քիթն, զարկանի ցնորի յիմարի և միտքն յապուշ դառնան: Այլ յորժամ դադարէ ախտն, անդրէն ինքն 'ի նոյն յառաջին միտսն դառնայ. հարցեալ ուրուք, անյիշելով՝ պատմել ոչ գիտէ. կարծիս տայ ամենեցուն՝ զի 'ի դիւէ չարչարի և ոչ 'ի ցաւոց: Եւ որ այսպիսեացս իբրեւ հասանէ առողջութիւն. և է ոք որ նովին վախճանի: Եւ դարձեալ այլ ախտ, զոր կաղացաւութիւն կոչեն և թիկնա-

ցաւութիւն. և յայլ օդից ոտից, ձեռաց, ողաց, կարկամելով սարսռելով և դողալով բերէ զնմանութիւն դիւահարի. մանաւանդ զի օր ըստ օրէ լինի և ժամ ընդ ժամ, և է զի յետ ամսոյ, և է զի մի անգամ 'ի տարւոջն: Այս արդ պատճառք նոցա յայտնի են. 'ի ձեռն բժշկաց բազումք ընդունին զառողջութիւն. բայց մարդիկ այդմ ամենայնի դիւահարութիւն ասեն:

Այլ վասն այնոցիկ որ չարչարին յայսոց պղծոց, յայտնի է և ոչ կարեմք ուրանալ. և մանաւանդ զորս ածէին առ տէր Յիսուս, և բժշկէր զբազումս 'ի նոցանէ բանիւ միայն և ոչ մարմնական հնարիւք. նա և զանուանս եւս ասէր, զոր մարդիկ յախտէ անտի սովորեցան կարդալ վերնոտ և լուսնահար: Այս՝ աղաչեմ, յայսմ վայրի միտ դիր. է ուրեք՝ որ իբրեւ զմարդ և զԱստուած 'ի միասին՝ ուր բացէ 'ի բաց աղաղակէին դեւքն աղաչելով, Գիտեմք զքեզ ով ես սուրբդ Աստուծոյ, մի յառաջ քան զժամանակն տանջեր զմեզ: Այս խոստովանութիւն յակամայ դիւացն՝ զաստուածութիւն Որդւոյ յայտ առնէին: Իսկ ուր ձեռն դնէր 'ի վերայ հիւանդացն, իբրեւ զմարդ աղաչելով զԱստուած՝ զբժշկութիւնս կատարէր: Իսկ ուր զվերնոտն և զլուսնահարսն և զայսս պիղծս սրբէր, անդ իբրեւ զմարդ և զԱստուած. քանզի դեւն 'ի ձեռն մարդոյ Աստուծոյ լսէ և ելանէ 'ի մարդոյ: Իսկ ջերմանք և հիւանդութիւնք և վերնոտք և լուսնահարք՝ մարդոյ առանց դեղոց ոչ լսեն, իսկ Աստուծոյ ամենայն ցաւք լսեն և բժշկին. որպէս 'ի Կափառնաում սաստեաց ջերմանն, և գնաց 'ի նմանէ:

Արդ յայտնի է զի գոն դիւահարք, ոմանք 'ի ծածուկ և ոմանք յայտնի: Այս են պատճառք մտի դիւէն 'ի մարդն՝ մեղք. և մեղքն բազում մասամբ պաշտին 'ի մարդն, սրտմտական, ցանկական, ուրացական, ամբարտաւանական: Սրտմտականին պտուղ սպանութիւն, ցանկականին պոռնկութիւն, ուրացականին ստութիւն, ամբարտաւանականին ագահութիւն. չորքս այս միաբանին ընդ միմեանս և պատին զմարդոյն և պատրաստին բնակութիւնք սատանայի. և անուանին սոքա գազանք բազմագլուխք, և կամք մի է ամենեցուն: Որ էանց զհետ ցանկութեան, պարարէ զմարմինն պէսպէս

խորտկօք և աղցի աղցի ըմպելեօք, յանկողինս փափուկս ննջել խաղաբար. այնպիսիքն կատարեն զկամս ոչ զմիոյ և զերկուց, այլ զամենայն դիւաց, որով ծածկապէս և յայտնապէս հանեն զնա յԱստուծոյ։ Իսկ որ չոգաւ զհետ սրտմտականին, հեռացաւ 'ի մարդկային բնութենէն, և նմանեցաւ չար գազանի 'ի մռնչել և յափշտակել, 'ի բեկանել զիւր մարմնակիցս, միանգամայն ապականել զպատկեր Աստուծոյ։ Իսկ ծուլացականն որ ծնաւ զստութիւն, եղեւ անաստուած, գործեաց առանց պատկառելոյ զամենայն չարիս. սա ոչ միայն դարան է դիւաց, այլ և կամակից չար կամաց նոցա։ Իսկ որ յաճախեաց յամբարտաւանութիւն, սա է որ կատարեաց զկամս առաջին թշնամւոյն մերոյ՝ ընդ որ եմուտ մահ յաշխարհ և տարածեցաւ յամենայն մարդիկ։ Այլ որ յայսոսիկ ըմբռնեալ են, ոչ ինչ փոյթ առնեն զանձանց բժշկութենէ. քանզի և ոչ դեւք յայտնի չարչարեն զնոսա, այլ 'ի ներքուստ հաշեն և մաշեն զանուրս ոգւոցն անմահութեան։

Իսկ որ յայտնի յայսոյն պղծոյ լինին, կամ երախայ կամ կնքաւոր, կամ արդար կամ մեղաւոր, կամ ծեր կամ տղայ, և ոչ ելանէ դեւն յումեքէ 'ի նոցանէ, երկու պատճառք երեւին յայսմ տեղւոջ, դիւին բռնութիւն և մարդոյն տկարութիւն. և տկար ոչ մարմնոյ զօրութիւն ասեմ, այլ ոգւոյն անօսրութիւն. և դիւին բռնութիւն ոչ անպարտելի զօրութիւն է, այլ լրբութիւն։ Այլ զօրացուցանէ զդեւն մարդոյն անժուժութիւն. քանզի ցանկայ պէսպէս կերակրոց և ըմպելեաց, գծագրէ յիւր ոգիսն մարդն զաղտեղութիւն և զանհաւատութիւն։ Բայց ես ասեմ՝ թէ բնականաբար և բարոյականապէս զօր կարէ տանել բնութիւն դիւին, հանապազ ցանկայ համոց կերակրոց և ըմպելեաց. իբրեւ իւր չիք ճաշակելիք և որովայն, նրբի սպրդէ մտանել ընդ կերակուրն 'ի սիրտ մարդոյն, և քարշէ հանէ յինքն զհամեղութիւնն և անյագ առնէ զմարդն յորկորստութիւն և առաւել յարբեցութիւն, իբրու թէ 'ի ձեռն մարմնոյն ինքն կերակրեսցի և ըմպիցէ։ Այլ առնէ իւր բնակութիւն ոչ միայն զմարմնոյն թանձրութիւն, այլ և զնրբութիւն ոգւոյն. ուսուցանէ գործել զամենայն չարիս։ Սա է որ ոչ թողու զմարդն մինչեւ յոր վախճանին։

Իսկ ուր դիպի մարդոյն առաքինութիւն կարծել որոշել յամենայն չարութենէ, զոր ոչ ինչ գիտիցեն ամենեւին մարդիկ՝ զի զարտաքոյս տեսանեն, և չարչարի այնպիսին 'ի դիւէն, և բազում անգամ վաստակօք ոչ կարէ հալածել զդեւն յինքենէ, կարծեմ թէ դեւն տեղեկագոյն է ներքին գործոց նորա քան զմեզ՝ ըմբռնեալ զնա, կամ յառաջինն ստգտանելի երկեցոյց զնա, և կամ առժամայն 'ի վատթար խորհրդոց՝ յորմէ արկ ձեռն և սկսաւ չարչարել, արար զմարդն անհոգ հանգիստ: Ապա թէ մարդն յառաջագոյն անարատ էր, և առժամայն 'ի յստակ խորհուրդս, ահա յայտ եղեւ դիւին լրբութիւնն և անձանձրոյթ համբերութիւն: Աստ ոչ միայն ճնշել 'ի պահոց պիտի, այլ և սուրբ աղօթս առ Աստուած, և 'ի բազում տեղիս՝ ուր սրբոց ոսկերք համգուցեալ են՝ ուխտք և խնդրուածք, զի հեռասցի չարն 'ի մարդոյն: Ապա եթէ զայս ամենայն կատարեալ իցէ, և դեւն ոչ ելանէ 'ի նմանէ, և մարդն ոչ կասիցէ և թուլանայցէ յառաքինութենէ մինչեւ յօր վախճանի իւրոյ, այնպիսումն ասեմ՝ եթէ երախայ է, կնիք տալ արժան է. և եթէ կնքաւոր է, օրէնս: Զի զայնպիսի առաքինի այր դեւ յԱստուծոյ հեռացուցանել ոչ կարէ, այլ յաղթի պարտի և ամաչէ. որպէս երբեմն առ կատարեալ նահատակին, որոյ առաքինութիւնն մինչեւ ցայսօր հնչէ յեկեղեցւոջ: Նոյն այլոց դիւահարաց՝ որ պորտաբոյծք են, որ պարարեն զդեւն և զանձինս 'ի միասին, և անյագ են յանառակութիւն, եթէ երախայ իցէ՝ կնիք չէ արժան տալ, և եթէ կնքաւոր՝ օրէնս, և վկայէ մեզ տէրունական հրամանն. “Մի տայք զսրբութիւն շանց, և մի արկանէք զմարգարիտս առաջի խոզաց„:

Ապա եթէ ոք ասիցէ, տղայոց զինչ մեղք էին, զի անդստին 'ի սկզբանն սկսաւ չարչարել զնոսա, զայս ասեմ՝ եթէ է ուրեք, զի Աստուած իբրեւ զմարդ դատի զաշխարհ, և է ուրեք իբրեւ զԱստուած. ուր ըստ գործոց հատուցանէ իբրեւ զմարդ, որ իշխէ դատել. իսկ որ չեւ 'ի մեղս եկեալ է, իբրեւ զկանխագէտ՝ զի արգելցէ 'ի չարէ: Տես իսկ զի աշխարհի օրէնք թագաւորաց 'ի յանցաւորաց առնուն վրէժս, իսկ Աստուած 'ի յանցաւորէն և յազգէն. 'ի յանցաւորէն որպէս օրէնադիր, 'ի յազգէն իբրեւ զյառաջագէտ: Նորիշ

հարցուածս և ստանց զատուցանելոյ չիք պատասխանի․ եթէ յախտէ՞ իցէ, եթէ յաշխարհէ․ եթէ յախտէ՝ յոր ախտ հասեալ լեալ իցէ, և զինչ պատճառք յանցանաց են․ եթէ ուրացող իցէ՝ ոչ մարթի, եթէ արիւնահեղ է՝ նոյն է, եթէ պոռնիկ իցէ, եթէ վիճակարկու ՚ի ստղայութիւնն իցէ, կերպիւ եթէ միով ժամու և կամօք ՚ի զղջումն եկեալ իցէ, և յայնմ հետէ բազում առաքինութիւն ցուցեալ իցէ միաբանութեամբ եղբարց և գլխաւորին, մերձեալ եւս իցէ ՚ի ծերութեան ժամանակին, անձամբ անձին այնպիսւոյն չէ արժան յօժարել ՚ի ձեռնադրութիւն։

Այլ վասն կարօտութեան պիտոյից և վասն բազմաց օգտի մերձաւորագիտացն բանի արժան է ածել զայնպիսին յերիցութիւն․ զի առաքինութեան ծնունդ է, լինի բազմաց բարեաց պատճառք։

Իսկ թէ ոմն լի հասակաւ էր և հասեալ ՚ի չափ մըտաց ճանաչել զչար և զբարի, և ընտրեաց զչարն և անարգեաց զբարին և անխտիր եղև ՚ի պոռնկութիւն, և ապա կամ յամօթոյ մարդկան, կամ ՚ի բանաւորի յերկիւղէ եկն յապաշխարութիւն, և արգելեալ խափանեյաւ յանառակ գնացից, մարդասիրութեամբ արժանի է մերձենալ ՚ի սրբութիւնն, և զամենայն աւուրս կենաց իւրոց նովին կատարել յերիցութիւն։ Աւ անձամբ և ոչ այլով յորդորելով զնա չէ օրէն ընդունել․ ՚ի մեղս անդ հայեսցին, և ՚ի ժամանակս տիոցն՝ յորում գործեաց․ եթէ յերախայութեան իցէ՝ ունի համարձակութիւն, եթէ ՚ի կնքաւորութեան՝ զատուցեալ որոշեսցեն, և զառաքինութիւնն ընտրեալ փորձեսցեն, և զարժանաւորն յառաջ մատուսցեն․ քանզի մարդիկ են, և յամենեսեան գոյ հոգի Աստուծոյ։

Իսկ թէ ոք վասն իւրոյ հպարտութեանն մարմնաւոր սէր ունիցի ընդ ումեք, մարմնասիրագոյն յանդգնի, և արհամարհէ զաստուածային կանոնական հրամանս, և զանարժան յառաջ մատուսցէ, և զմարդկային միտս գողանայ, և պատճառս զկանոնս ունի՝ թէ հրամայեն զապաշխարողս ընդունել ՚ի ձեռնադրութիւն, և զայս եւս պարտ է նմա գիտել․ զի Աստուած որ քննէ ըզգաղտնիս, ըստ ներքին գիտութեանն դատի զդատաստան․ զի ոչ միայն յապաշխարողաց պիտի ընտրել և

առնել զարժանն, այլ և յանապաշխարողաց. քանզի բազումք են որ յաչս մարդկան անմեղք երեւին, այլ՚ի գործ Աստուծոյ անպիտան, գիրգք, յիմարք, ցնորեալ, անսէր, ապուշք. Թէ և անասնոց հօտին արածես, ոչ երբէք յառաջ անցեալ հանգոյց զմիտս հովուապետին։ Իսկ զհամրդ արժան իցէ յայնպիսեացն յառաջնորդութիւն մարդկան, ասելով կեղծաւորութեամբ՝ թէ ոչ ինչ գիտեմ զյանցանս դորա։ Վասն որոյ (որ) ետ առնել և որ արար, երկոքեան ընդ դատապարտութեամբ են յամենագէտ ատենին Աստուծոյ։



# ՎԱՍՆ ՀՈԳՒՈՅ ՄԱՐԴԿԱՆ

## ԹԷ ՈՒՍՏԻ ԳԱՆ, ԵՒ ՅԵՏ ԵԼԱՆԵԼՈՅ Ի ՄԱՐՄՆՈՅ ԱՌ ՈՎ ԵՐԹԱՆ, ԿԱՄ ԹԷ ԱՌԱՒԵԼ ԻՄԱՍՏՆԱՅՑԵՆ *

Որ ի գոն և հոգիք՝ զայս և բնութիւն մերոյ լինելութեանս ցուցանէ. քանզի կրկին է տեսակ մարդոյ, մին շարժէ և միւսն շարժի. շարժողն ունի զիմացական բնութիւն, և շարժեցեալն գործէ զմնողական տեւողութիւն. և է միութիւն յորժամ երկոքեան ունիցին զտնկեցութիւն. ապա թէ թողցէ շարժողն, անկեալ գնի մարմին անխլրտելի։ Բայց օրինադիրն մեր զհոգի մարդոյ փչումն Աստուծոյ ասէ. և նորուն ծանօթ և բարեկամ ոմն մարգարէ իբրեւ յերեսաց Տեառն ասելով "Հոգիք յինէն արձակին, և զամենայն շունչ ես արարի, ասէ Տէր". Նովին հոգւով Ովսէէ մարգարէ ասէ. "Որ հաստատեաց զհոգի մարդոյ 'ի նմա"։ Բարւոք է այն միաբանութիւն, զի առանց Աստուծոյ եղեալ և ոչ ինչ. այլ զորպիսութիւնն պիտի իմանալ։ Որ ի արար Աստուած զարարածս գիտեմք՝ ոչ 'ի նիւթոյ և ոչ 'ի հաստոյ իմիք էութենէ, քանզի անհաս բնութիւն իմանամք զԱստուած. իսկ արարածս հատակոտոր։ Պարձեալ յոչնչէ ոչ կարեմք ասել զայս մեծ մարմինս արարածոյս, և ոչ ինքնաբոյս գոյացութիւն, նա և ոչ 'ի վարանս տարակուսի անկանիմք թէ ուստի եղեւ բնական կամքն Աստուծոյ իմանալ և առնել ինչ. այլ միշտ Աստուած, միշտ արարող զօրութիւն ընդ իւր։ Եւ յորժամ կամեցաւն՝ նոյնպէս կամեցաւ. զոր ունէր յիմանալուոյն՝ եած 'ի գոյացութիւն, զի իմանալեաց իցէ արարիչ

* Զհնգեսին հատակոտորս զորոց յիշեալ էաք յառաջնում տպագրութեանն, ցարդ չընկալեալ ուստեք զայլ օրինակ, յարեմք 'ի կատարած ճառիցս, անյար միմեանց որպէս գտաք յօրինակին գրելս 'ի ՆԼ· ոչ իբրեւ ամբողջ յօրինուած ճառի և ոչ դարձեալ անկարօտ պարզաբանութեան, ակն ունելով անթերի օրինակաց, յորոց միաբանութենէ թերեւս 'ի յայտ գայցէ հարազատութիւն իմաստիցն։

բնական իմացութիւն։ Իսկ արարչական զօրութիւնքն՝ զիարդ նիւթն անմարմին. իսկ արարչութիւնն զանմարմնոց և զմարմնացեալն 'ի բազմադիմի մասունս, յիւրաքանչիւր 'ի զարդս, զի իցէ ոստն մի, և ստեղն մի, և արմատն բազում, և յոստոց անտի բազմատեսակ շառաւիղք։

Արդ որպէս վերագոյն ասացաք՝ յերկնէ երկնայինքն և յերկրէ երկրայինքս, և մարդ խառնուած յերկնէ և յերկրէ. անօսրագոյնն յերկնէ, թանձրագոյնս յերկրէ։ Ո ի թէ զգոյացութիւնս հրեշտակաց ծնունդ ասեմք երկնի, հրոյ և օդոյ, որպէս և մեծն Դաւիթ ասէ, "Արար զհրեշտակս իւր 'ի հոգիս,, և զպաշտօնեայս անուանէ հուր կիզելոյ, ապա յայտ է եթէ ոգիք մարդկան 'ի նմին նիւթոյ գոյացեալք՝ կամօք արարչին առաքին 'ի բնութիւն մերոյ լինելութեանս, ոչ հրեշտակացեալք և ոչ դիւացեալք ըստ ոմանց անուանելոյ, այլ միայն հոգիք և հոգիք մարդկան։ Հոգիք հրեշտակաց պարզ բնութիւն, անմարմին, անյօդ, անորակ, անքանակ, անձն կատարեալ. և կատարելութիւն անձին ոչ յումեքէ, այլ ինքնակատար էութիւն, կատարեալ գոյացութիւն։

Իսկ ոգիք մարդկան գոյացութիւն պարզ, էութիւն յստակ, սուրբ, մաքուր, իմացական բնութիւն, ձեւ սկզբնատպին, հարկաւոր շարժմունք, վերաբերութիւն, անմահ տեւողութիւն, յարկակից մարմնոյ, միաքան որակութիւն, անձանձրանալի միութիւն, անբաժանելի մասունք, անհատ զօրութիւն, անծերանալի յերկարութիւն, անտեղի բնակութիւն. յառաջ քան ըղգալն 'ի մարմին 'ի գոյացութիւն եղանութեանն՝ ունի իմացական, անքանակ. և 'ի մարմնի եղեալ զամենայնն ունի զիարդ որպէս կամի ախորժել։ Այլ իմանի բնութիւն տարբերել ընդ մարմնոյն. բայց ես ասեմ ըստ բնութեան և ըստ բարոյական ձեւացելոյ հոգւոյս զառ 'ի միմեանց զմերձաւորութիւն։

Գովլի քնար, այլ 'ի ձեռն քնարահարին. գեղեցիկ են ձայնք երաժշտականք, այլ երաժշտականաւն. տեսեր զչքնաղ ինչ շինուած, ոչ 'ի նմին հարեր կացեր, այլ ճարտարապետին ետուր զգովութիւնն։ Ապա թէ ոչ իցէ քնարն, չերեւի քնարահարն. սոյնպէս և ամե-

նոյն գործիք ձայնաւոր երգոյն 'ի ձեռն արուեստաւո-րին երեւին ։ Այս թէ գործիքն ապականեալ իցեն, իբրեւ թէ որպէս փող ջախջախեալ, աղի խոնաւեալ, և ճարտարին առողջ և լի արուեստիւն և գիտութեամբ, ոչ կարէ ցուցանել զհանդէս առաքինութեան արուես-տին. և գտանի ամենայն մասամբ ապականեալ 'ի գի-տութեանն ։ Այս թէ կատարեալք առ միմեանս համ-դիպիցին, սփոփիչք և մխիթարիչք առ միմեանս հանդի-պեսցեն բազմամարդոյ քաղաքաց, և սրտի իւրաքանչիւր բնութիւնք զատ և որիշ խառն բնութեամբն ։

Այս կարի գեղեցիկ մեր արարիչն զբնութիւն մարմ-նոյս հաստատեալ շինուած բաժանելի, և զգոյացու-թիւն հոգւոյս արար անբաժանելի բնութիւն. և միա-բանեաց իբրեւ քնարահար ընդ քնարի, զի շարժեսցի և շարժեսցէ զակն 'ի տեսանել, զընդունս 'ի հոտո-տել, զքիմն 'ի ճաշակել, զլեզու 'ի խօսել, զխելսն յի-մանալ ։ Օ այս ամենայն զբազմութիւն մասանցս մարմ-նոյ շարժէ 'ի կենդանութիւն և 'ի գործառութիւն ցոր-քան ժամանակ միաբանութիւն է շարժողին և շարժե-ցելոյն ։ Այս եթէ չքաւեսցէ՝ սա քակտեալ և նա 'ի բաց կացցէ, լռեալ դադարեալ լինի ամենայն բազմու-թիւն արուեստիցն. սա դառնայ յիւր բնութիւնս, և նա վերանայ յիւր կայանն. ինքն յինքեան իմանայ, ինքն յինքեան հանդչի, ինքն յինքեան առաւելու, ինքն յինքեան խնդայ, ինքն յինքեան տրտմի, ինքն յին-քեան շարժի, ինքն յինքեան և դադարի, ինքն իւր բաւական ինքնագոյ իմացութիւն, ինքնալոյս, ինքնատես ։

Իսկ եթէ ոք զանեղեաց կամ զկայենից հոգւոց կա-մեսցի գիտել, զհետ եկեսցէ բանից մերոց. մի գետնա-քարշ գնասջիք և մի ծովական ճանապարհորդութեամբ և մի առասպելական բարբանջմամբ, այլ ճշմարիտ վար-դապետութեամբ վկայութեամբք սուրբ գրոց. ուր Ա-ռաքելոյն յափշտակեցաւ, ուր պարգեւքն պատրաստեալ են. զոր մարմնաւոր զգայութեամբքս թարգմանել ոչ կարեմք, զանյօդ տեղեացն՝ վերնոյ քաղաք ասեմք, վե-րին Երուսաղէմ անուանեմք նմա, այլ ազատ բնա-կետղ. անդ բիւրաւորք հրեշտակաց, բանաւոր իմանա-լի, և ոչ զգալի հոգիք են անդ մարդկան ։ Այլ զարգա-րոցն կատարելոց կամիցիս գիտել, թանձրագոյն ասա-

բնական իմացութիւն։ Իսկ արարչական զօրութիւնքն՝ զիւրդ նիւթն անմարմին. իսկ արարչութիւնն զանմարմնոց և զմարմնացեալն 'ի բազմադիմի մասունս, յիւրաքանչիւր 'ի կարգս, զի իցէ ոտն մի, և ստեղն մի, և արմատն բազում, և յոստոց անտի բազմատեսակ շառաւիղք։

Արդ որպէս վերագոյն ասացաք՝ յերկնէ երկնայինքն և յերկրէ երկրայինքս, և մարդ խառնուած յերկնէ և յերկրէ. անօսրագոյնն յերկնէ, թանձրագոյնս յերկրէ։ Զի թէ զգոյացութիւնս հրեշտակաց ծնունդ ասեմք երկնի, հրոյ և օդոյ, որպէս և մեծն Դաւիթ ասէ, "Արար զհրեշտակս իւր 'ի հոգիս," և զպաշտօնեայս անուանէ հուր կիզելոյ, ապա յայտ է եթէ ոգիք մարդկան 'ի նմին նիւթոյ գոյացեալք՝ կամօք արարչին առաքին 'ի բնութիւն մերոյ լինելութեանս, ոչ հրեշտակացեալք և ոչ դիւացեալք ըստ ոմանց անուանելոյ, այլ միայն հոգիք և հոգիք մարդկան։ Հոգիք հրեշտակաց պարզ բնութիւն, անմարմին, անյօդ, անորակ, անքանակ, անձն կատարեալ. և կատարելութիւն անձին ոչ յումեքէ, այլ ինքնակատար էութիւն, կատարեալ գոյացութիւն։

Իսկ ոգիք մարդկան գոյացութիւն պարզ, էութիւն յստակ, սուրբ, մաքուր, իմացական բնութիւն, ձեւ սկզբնատպին, հարկաւոր շարժմունք, վերաբերութիւն, անմահ տեւողութիւն, յարկակից մարմնոյ, միաքան որակութիւն, անձանձրանալի միութիւն, անբաժանելի մասունք, անհատ զօրութիւն, անծերանալի յերկարութիւն, անտեղի բնակութիւն. յառաջ քան ըղգալն 'ի մարմին 'ի գոյացութիւն եղանութեանն՝ ունի իմացական, անքանակ. և 'ի մարմնի եղեալ զամենայնն ունի զիարդ որպէս կամի ախորժել։ Իսկ իմանի բնութիւն տարբերել ընդ մարմնոյն. բայց ես ասեմ ըստ բնութեան և ըստ բարոյական ձեւացելոյ հոգւոյս զառ 'ի միմեանց զմերձաւորութիւն։

Դովլի քնար, այլ 'ի ձեռն քնարահարին. գեղեցիկ են ձայնք երաժշտականք, այլ երաժշտականաւն. տեսեր զչքնաղ ինչ շինուած, ոչ 'ի նմին հարեր կացեր, այլ ճարտարապետին ետուր զգովութիւնն։ Ապա թէ ոչ իցէ քնարն, չերեւի քնարահարն. սոյնպէս և ամե-

նոյն գործիք ձայնաւոր երգոյն 'ի ձեռն արուեստաւորին երեւին. Այսպէս եթէ գործիքն պակասեալ իցեն, իբրեւ եթէ որպէս փող ջախջախեալ, աղի խոնաւեալ, և Ճարտարին առողջ և լի արուեստիւն և գիտութեամբ, ոչ կարէ ցուցանել զՀանդէս առաքինութեան արուեստին. և զատանի ամենայն մասամբ պակասեալ 'ի գիտութեանն: Այսպէս եթէ կատարեալք առ միմեանս Համդիպիցին, սփոփիչք և մխիթարիչք առ միմեանս Համդիպեսցեն բազմամարդոյ քաղաքաց, և սրաՀի իւրաքանչիւր բնութիւնք զատ և որոշ խառն բնութեամբն:

Այսպէս կարի գեղեցիկ մեր արարիչն զբնութիւն մարմնոյս Հաստատեաց շինուած բաժանելի, և զգոյացութիւն Հոգւոյս արար անբաժանելի բնութիւն. և միաբանեաց իբրեւ քնարաՀար ընդ քնարի, զի շարժեսցի և շարժեսցէ զակն 'ի տեսանել, զռնգունս 'ի Հոտոտել, զքիմս 'ի Ճաշակել, զլեզու 'ի խօսել, զխելս յիմանալ: Օ այս ամենայն զբազմութիւն մասանցս մարմնոյ շարժէ 'ի կենդանութիւն և 'ի գործառութիւն յորքան ժամանակ միաբանութիւն է շարժողին և շարժեցելոյն: Այսպէս եթէ չբաւեսցէ՝ սա քակտեալ և նա 'ի բաց կացցէ, լռեալ դադարեալ լինի ամենայն բազմութիւն արուեստիցն. սա դառնայ յիւր բնութիւնս, և նա վերանայ յիւր կայանն. ինքն յինքեան իմանայ, ինքն յինքեան Համդչի, ինքն յինքեան առաւելու, ինքն յինքեան խնդայ, ինքն յինքեան տրտմի, ինքն յինքեան շարժի, ինքն յինքեան և դադարի, ինքն իւր բաւական ինքնագոյ իմացութիւն, ինքնալոյր, ինքնատես:

Իսկ եթէ ոք զտեղեաց կամ զկայենից Հոգւոց կամեսցի գիտել, զՀետ եկեսցէ բանից մերոց. մի գետնաքարշ գնասցիք և մի ծովական Ճանապարհորդութեամբ և մի առասպելական բարբանջմամբ, այլ ճշմարիտ վարդապետութեամբ վկայութեամբք սուրբ գրոց. ուր Առաքեալն յափշտակեցաւ, ուր պարգեւքն պատրաստեալ են. զոր մարմնաւոր զգայութեամբքս թարգմանել ոչ կարեմք, զանյօդ տեղեացն՝ վերնոց քաղաք ասեմք, վերին Երուսաղէմ անուանեմք նմա, այլ ազատ բանակետղ. անդ բիւրաւորք Հրեշտակաց, բանաւոր իմանալի, և ոչ զգալի Հոգիք են անդ մարդկան: Այլ զարդարոցն կատարելոց կամիցիս գիտել, թանձրագոյն ասա-

ցից. յորմէ նիւթոյ առաւ, 'ի նմին և չոգաւ դարձա-
րեալ: Իսկ և մեծին Սիմէոնի վկայք յուստացանելոյ մա-
նաւանդ և զճարտարապետսն փիլիսոփայից. իբրեւ հա-
ճեաց զմիտս նոցա արարչութեանն ճառիւք, առաւել և
վասն հրեշտակացն կայանից՝ զսուրբ զանապական զան-
պղտոր զհոգիմն վերինս, զոր և բանակեալ Սքանչելեաց
անուանեաց:

Ապա թէ ոք 'ի գրեալսն Մովսէսի ընթասցի, և փր-
կչութիւն յԱստուծոյ զհոգիս մեր ասիցէ, և զայն եւս ի-
մասցի անկանել նմա 'ի մեծ վարանս տարակուսի, մին-
չեւ զանմարմին Աստուած 'ի ձեւս մարմնոյ ածել՝ փչել
որպէս թէ բերանով, ռնգամբք և շրթամբք, հարկ է
եթէ ամենայն անդամքն զհետ գայցեն, զոր քաւ և մի
լիցի, և մի 'ի միտս անգամ այս եկեսցէ ուրուք՝ զԱս-
տուած 'ի կարօտութիւն զգայական գործւոյ ածել. այլ
իմասցուք զփչելն ոչ 'ի նմանէ 'ի նա, այլ նմա փչելն զնա
հոգիացոյց, որպէս զանգոյան գոյացոյց, որպէս զանհո-
գին հոգեացոյց և զկենդանութիւն եդ 'ի վերայ նորա.

Զի եթէ յԱստուծոյ էութենէն փչումն ասէք,
զինչ պիտոյ էր լսել զձայնն "Փչեաց յերեսս նորա
շունչ կենդանի, և եղեւ մարդն 'ի հոգի կենդանի":
Իբրեւ յայտնի է զօրութիւն բանիդ, անուանեաց զա-
ռաջինն արարչութիւնն հոգւոյն շունչ կենդանի իբրեւ
զմի արարչութիւն. այլ վասն մեծափառ հրաշութեան՝ զի
պատուականագոյն երեւեսցի մարդն յարարչութեանն՝
մեծարեաց զնա. իբր զի ստեղծ ձեռօք զմարմինն, և
բերանով զփչումն հոգւոյն: Քանզի անմախանձ է աս-
տուածութիւնն և անչարակնութեամբ պարգեւատէր,
ոչ ինչ դանդաղեցաւ անուանել զմեր բնութիւնս պատ-
կեր աստուածութեանն. իբրեւ յայտնի է իմաստնոց
եթէ որչափ հեռի են 'ի միմեանց մարդ և Աստուած՝
բնութեամբ: Ուստի և մեծ մարգարէն Եսայի ետես
զԱստուած և հիացեալ զարհուրեցաւ. զզօրութիւնն
պատմէ, զխնկութիւնն լռէ. և գիտացեալ զմեր բնու-
թիւնս՝ խոնարհութեամբ բարբառի. "Յինէն արձա-
կին հոգիք, և զամենայն շունչ ես արարի, ասէ Տէր":

Նա յայտ է արարչութիւն հոգւոյ. արձակին կա-
մօքն Աստուծոյ յանօսր բնութենէ, որպէս վերագոյն
ասացաք. կենդանածնեցան երկինք մօտաւորս իմանա-

լեաց, և ոչ շօշափելեաց։ Նոյնպէս և յորժամ արտաքոյ մարմնոյս եղեալ ոգիք, զամենայն արտաքնոց զգայութիւն ունեալ և ընդ նոսա լինելով՝ ոչ կարէ 'ի մարմնի լինել, և ոչ զդէպս մարմնոյ կատարել. որպէս հարկեալ էր յառաջագոյն 'ի բնութենէն չելանել 'ի մարմնոյն, նոյնպէս ոչ յետ ելանելոյն անկանել նմա ընդ մարմնական պիտոյիւք մինչեւ յօրն յայն յորում յայտնեսցի արարիչն արարածոց։

Բնութեանք կրկին է տեսակ մարդոյ, մին կառավար և երաստանական և ուղղիչ, և միւսն բնակարան բնակողին և շինած զարմանալի, անմահական հոգւոյն անապական բնակարան. որով իմանալին ընդ մարմնականս ընդ այս կենցաղավարութիւնս սովաւ հաղորդի մնալով յուրախութիւնս, և տեսանելիս ընդ անտեսանելին հաղորդեալ՝ ոչ հեռանայ 'ի թանձրութենէ։ Զի սա քաղաք է իշխանականին, զարմանաւոր, սննդական և կենդանի տաճար, այլ եղծանելի և աղազալցծ և ստաժամեայն վայելչութիւն. իսկ տիրականն՝ իբր զթագաւոր և տեսուչ և դատաւոր խրատախորհրդութեան, զի ոչ ունի պէտս առ զարման սննդեան. սակս այսորիկ և անապականելի և անապական. զսա աստուածային օրինադիրն Մովսէս փչումն յԱստուծոյ ասաց։ Ո՛րդ մի որք ծառայեսցէ բանին, այլ մնասցն հնազանդեսցի. զի անհանճար խորհրդոյ է իմանալ փչումն յԱստուծոյ՝ բերանոյ և ռնգանց որոշեալ տեղի. ապա և այն 'ի ներքս եկեալ լինին մասունք մարմնոյն, և զանմարմինն և զանկարօտն ընդ զգայականիս շինեալ կարօտութեանք։ Այլ 'ի սա փչել զգոյացուցանողն հողմաշարժ կենդանութեանք հաւանելի է. յորմէ եղեալ մարդն 'ի հոգի կենդանի՝ աստուածահրաշ միաւորութեամբն հաստատեալ ըստ եղութեան թագաւորական բանին թէ "Ն հաստատեաց զոգի մարդոյ 'ի նմա"։ Այլ և արձակեալ որ ոչ հաստատեալ, զոր Երեմիաս ասէ. "Կենդանի եմ ես, ասէ Տէր, զի հոգի յինէն ել". որով յայտ արար զնա միայն զող արարիչ բարեացն կամողաց։

Աստուած անհասանելի բնութիւն է, ոչ ինչ հատեալ լինի յԱստուծոյ. և դարձեալ ոչ այլ ինչ յա-

ռաջին կայր նիւթ յորժամ ստեղծանէր զպատուականն զայս հոգի. այլ և ոչ ինքնաբոյս եղեալ ըստ ինքեան, զի չէ ոք մշտնջենակից Աստուծոյ. զի ոչ է յաւէտ եղեալ. զնորա սահման լինելութեան ոչ ոք գիտէ. այլ սա ոչ է անխնդրելի, զի արարիչ սորա Աստուած է։ Այլ զի երկնային է հոգւոյն բնութիւն, ցուցանէ զի ելանելով 'ի մարմնոյս՝ ոչ ստորիջէ յերկիր. այլ զբարձրանալոյ մայրածննդեան իւրոյ ցուցանէ զիմանալի երկիրն։ Այլ որոշեալ մարմին յիմացականէն՝ ոչ վերաբերի 'ի գերակայն, այլ վայրիջի յերկիր ծնող իւր. յորմէ յայտ է թէ յախտականէս զախտաւորն ստեղծ Աստուած, և յանախտէ զանախտն. և յետ որոշման ոչ հեռանայ, այլ յիւրն երթեալ դադարէ 'ի տեղիս, ըստ բանին "Դառնայ մարդ 'ի տուն իւր յաւիտենից. և հոգին դառնայ առ Աստուած որ ետն զնա"։

Արդ երթեալ միանայ 'ի լոյսն ուստի ծնաւ, զի լուծաւ 'ի կապաւոր մարմնոյն որպէս կապեալ ունէր միութեամբ։ Զի որպէս քար մեքենայի յօդ պարզեալ, զի յորժամ լուծանի՝ հասանի վաղվաղակի յերկիր ուստի առաւ, նոյնպէս և հոգին զի այժմ ծանրացեալ է քան զբնութիւնս օդոց, իսկ 'ի միւսում խառնուածին դարձեալ զօրանայ քան զնա, և առ ինքն վերամբարձեալ ձգի։ Այլ է նա հուր, հողմ, լոյս. իսկ մարմին հուր, ջուր, օդ, հող, հակառակախառն զուգակշիռ միութեամբ ընտանեցեալ, երկու՝ վերաբերական հանապազաթռիչ թեթևութեամբ. իսկ երկու՝ վայրաբերք ծանրութեամբ մշտաշարժ երկրասողութեամբ. զի ոչ այլ ինչ քան զբնական իմաստութիւն Աստուծոյ իմանալ նիւթ արարելոյ այս է, զոր մշտնջենապէս յիմանալութիւն ունէր զիմացեալն. յորժամ կամեցաւ 'ի գոյութիւն ածել, սահմանեաց և եղեւ իբրեւ մայր իմանալին։ Այլ երկու 'ի նմանէ երեւեցան ծնունդ, տեսանելի և իմանալի. և յերկոցունց եղեն բազում տեսակք, յանմարմնոյն անմարմինք և 'ի մարմնոյ մարմնաւորք, ոյք են հրեշտակք և մարդիկ։

Արդ յերկնէ է և յերկրէ խառնուած գեղեցիկ, զդէմն 'ի միասին կապեալ արուեստաւոր իմաստութեամբն Աստուծոյ. պարզ և թեթևագոյնն յերկնէ,

ծանր և շաղախական յերկրէ։ Զի թէ զայլ ազգաց զգայականաց զգօնութիւն ասա իմանալք, սակայն ծառայականք և անհամաձայնք. իսկ իմանալիս այս 'ի մեզ վեհագոյն ազատ և անկարեկան նիւթից, մօտաւոր Աստուծոյ բնութեանն, հրեշտականման և 'ի նոյն էութենէ, այլ ոչ հրեշտակ. այլ հոգի միայն և ընդ անարգ նիւթոյս կապեալ, և 'ի բարձանց և երկնայնոց, հակառակ և երկմիտ և անընտանի ստորակայից, այլ հնազանդեալ կապանօք մարմնոյ։

Զի թէ զմարդկան հոգւոյ կամի ոք ուսանել զկայանս, մի թանձրագոյն մտօք հայեցի երկրաքարշ ախտիւք ծանրացեալ. այլ թռուցեալ ըստ սրբոյն Պաւղոսի որ ասէ՝ անձառելի տեղի, զոր 'դրախտ անուանեաց և երրորդ երկինս. այլ խնացեալ քան զվերին զայն և զհաստատութիւն։ Ընդ աստի յափշտակեալ հոգիս՝ 'ի հոգեւորականն եհաս կայանս, որ աստուածային պատմութիւն՝ վերին անուանէ Երուսաղէմ, ուր բնիր հոգիք արդարոց կատարելոցն ուրախանան, յառաջատես լեալ Աստուծոյ բարեացն. անպատմելի և անուշահոտ և լուսաւոր օդն, յորս ոչ է այլախառնութիւն դառնութեան։

Այլ ասացի պարզագոյն ինչ բանիւք, զի ուստի եղեն հոգիքն՝ առ իւրն երթեալ լինին 'ի բնակութիւն. և մարմին դարձեալ յիւր տեղին միանայ ազգակցեալ և յապականութիւն դարձեալ։ Այլ անտեսանելին և անեղծական յառաւելատեսիլ փոփոխեալ, չունի պէտս առ մարմնականս առ այս կեանս, և ոչ կարօտութիւն 'ի տեսութիւն. և ոչ կարող իսկ են և ոչ նոքա որ առաւելագոյն արժանաւոր եղեն պատուոյ՝ մարտիրոսքն։ Նոքա յայտնիլ ումեք ոչ կարեն. ոչ ի։ տ։ գ։ Իսկ թէ անգամնաբար ոք կամ անխրատ սովորութեամբ երազովք վարեսցի, վերստին անցանելով ըստ հեթանոսական սովորութեամբ, բազում են օրինակք, որ մոգքաղդէացիք աստեղագիտութեամբ աստուածածանօթ, և թաթելացւոց գուազանահարացն և լերդահմայ, և ընդ աջմէ ելանել հմայիցն հրէաստանի և Երուսաղեմի, զոր մատանել որոցն ընդ Սաբովթ՝ որդւոցն Սիմնայ եկեալ 'ի

1 Յօրինակին կորեաւն որդւոցն Եմնայ։

գլուխ երկուց ճանապարհացն, երկու առաջք 'ի միոյ աշխարհէ [1], և ստութեամբ արդարացեալ լինին համայն մտանել սրոյն 'ի պարանոցն Պօղոսայ խնդրէր զանիրաւութեան վրէժս 'ի նոցանէ: Այլ և կին նմին վհուկ Սաւուղայ ճշմարտապատումն, և իղձն Բաղաամայ 'ի Միջագետաց մարգարէ ստուգաեւս. Երեմ 'ի հրէաստանէ բաբելոնացւոյն իմաստնէն ապրեցուցիչ երազահանութեամբ. և Յովսէփ երազատես և երազահան փարաւոնի: Այլ այս 'ի բաց մերժեալ է յեկեղեցւոյ Քրիստոսի ըստ ճշմարտապէս գրոց. զի այս հեթանոսաց է և ոչ քրիստոնէից:

Ապա թէ ով այլանդականպէս ընդ այս մտածութիւնս անցանէ՝ օտար խորհրդովք նշանագիրս գծել, կամ մարգարէանալ առ յապայն և երազահմայ լինել, ցնորել մոլորութեան երազահան ստութեան, ընդ անկախելին գնալ պղտոր անքրիստոնէաբար, և բնակեն 'ի մեզ կիրսն ճշմարտութեան պատմել, որ լինի այս և վնասել խելապատակին ընդ վայրաբանութիւն, և հիւանդութեամբ բազում ինչ տեսեալ խօսի անհանճարաբար, զոր և արբեցողաց իմն թուի շրջագայութիւն լինել երկրի զկնքեամբք, և յայլայլեալ զգայութեանն 'ի ջերմութեանցն զայսպիսի սովորականութիւնն 'ի մեզ օրինադրէ գործ ինչ լինել: Կամ զայն զոր դեւքն կերպարանեալ 'ի նմանութիւն մոլորեալ մեռելոց՝ զոր գիտակն էին 'ի կեանս մարդոյն, և զնոյն նմանեալ յայտնեն 'ի տրտում երեսս կամ 'ի զուարթս իբրեւ պատուէր ինչ տալով և զգուշացուցանելով, որպէս թէ մեռեալն և սպանեալ մարմնոյ հոգիացեալ, և 'ի միասին գտեալ. զոր ոչ յօգուտ, այլ 'ի վնաս և 'ի մոլորութիւն փութացեալ լինի, և նա զայն անուսմնաբար ճարտարութեամբ պատմէ, այն արտաքոյ է քրիստոնէութեան:

1 Նախընթաց բանիւքդ ակնարկէ զբան Եղեկ. իա. 18–22:

# ՑԱՆԿ


Նահապաչութիւն Մարդկանց . . . . . . . 5
Խրատ Մանձանց . . . . . . . . . . 159
Մեծնութիւն Յեսուայ և Պնապաւորաց . . . . 167
Յաղօթն որ ասէ Հայր մեր . . . . . . . . 199
Ի մկրտութիւնն Քրիստոսի . . . . . . . . 207
Յայլակերպութիւնն Քրիստոսի . . . . . . . 213
Ի չարչարանսն Քրիստոսի (և 'ի խաչելութիւնն, 'ի թաղումն և 'ի յարութիւնն, յերեւումն աշակերտացն, և առ Տիբերեայ ծովուն, և 'ի քարոզումն առաքելոց) 240-354
Վասն դատաստանին և միւսանգամ գալստեանն . . 355
Վասն յիշատակաց մեռելոց . . . . . . . . . . 358
Կանոնք . . . . . . . . . . . . . . 363
Վասն հոգւոյ մարդկան . . . . . . . . . . 369

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ


Աբրահամ խոստովանող 142-149.
Աբրահամ նահապետ 37. 82.
Աբրահամ սարկաւագ 101. 111. 139.
Ադէն 116.
Ալանաց դրունք 154.
Ակէ 71.
Ակէացիք 77.
Աղբակ 139.
Աղձնիք 10. 39. 72. 103.
Աղուանք 10. 16. 39. 48. 53. 56. 58. 59. 61. 72. 100. 103. 104. 153. 154.
Ամատունի 22. 33. 71. 77. 82. 150.
Այրարատ 22. 61. 139.
Այրուկ 77.
Անանիա 22.
Անատոլ 8. 56.
Անգղ 44.
Անի 52.
Անձաւացի, անձեւացի 22. 33. 77. 150.
Անտիոքացիք 81.
Անտիոքոս 103.
Աշնակ 60.
Աշոտ 150.
Ապահունի 22. 33. 57. 71.
Ապար 10. 110. 112. 142.
Ապարհայիկ 90.
Ապրսամ 77. 150.
Առանձար 82. 150.
Առաւան 150.
Առաւեղէն 150.
Առնակ 150.
Ասխացիք 55.
Ասորեստան 142. 145. 146.
Ասորեստանեայ 142.
Ասորի 56.
Ատոմ 54. 77. 103. 150.
Ատրորմիզդ 100.
Ատրպատական 53. 56. 60.
Արագած 60.
Արած 139.
Արգեանք 60.
Արզնարզիւն 10.
Արեք 9. 22. 23. 63. 73. 90. 92. 95. 110. 153.
Արծրունի 22. 32. 77. 90. 101. 150.
Արհմն 20. 25.
Արհնի, որ և Արխնի 52.
Արձախ, Արցախ 72. 97. 99.
Արմաւիր 60.
Արշակ Բ. Հայոց 7.
Արշակունի 7.
Արշարունի 58. 77.
Արշաւիր 58. 77. 90. 150.
Արշէն 98. 101. 119-121. 131. 339.
Արուճ 60.
Արսէն 77. 90. 93.
Արտագերս 52.
Արտազ 77.
Արտակ մոկացի 33.
Արտակ պալունի 77. 93. 117.
Արտակ ռշտունի 32. 71.
Արտաշատ 22. 52. 60. 77. 101.
Արտաշէս Գ. Հայոց 7.
Արտաշիր 92.
Արտաւազդ 150.
Արտէն 71.
Արցախ. տես Արձախ.
Արփանեալ 52.
Աւարայր 145.
Աքար, որ և Աքաար 84.
Բաբգէն 150.
Բաբիլացի 145.
Բաբիլոն 12.
Բաբիկ 150.
Բագրատունի 57. 71.
Բագրեւանդ 22.139.
Բակ 95.
Բակուր 150.

Բաղաստական 58. 104,
Բասեան 22.
Բասիլ 22.
Բարձրաբուղ 52.
Բզնունիք 22.
Բէլ 110. 111.
Գաբեղեան 57. 71. 77.
Գադ 22.
Գադերոնէս 55.
Գադէշայ, Գադիշայ 32. 71.
Գաղրիկ 58. 77.
Գառնի 52. 60
Գարեգին 12.
Գարեգին Սրուանձտայ 93.
Գաւ 73.
Գեդէոնէս 84.
Գեղք 90.
Գիւտ 33. 71.
Գղուար 73.
Գնթունիք 77. 90. 93.
Գնունիք 54. 77. 93.
Գուզք կամ Գուլթք 10.
Գուեալ 52.
Դաղ 150.
Դաման 39.
Դաւիթ երէց 5.
Դաւիթ մարգարէ 84.
Դենխմաղջէղն 20. 102. 126.
Դենշապուհ 19. 111. 122-124. 126. 131. 133. 135. 136. 138. 139.
Դիմաքսեան 58. 77. 93. 150.
Դրունք Ալանաց 154.
Դրաշխանակերտ 60.
Եգիպտացի 83.
Եղնիկ 22.
Եղբայր 22.
Եղեգեակ 139.
Եղիսա 84.
Եղիշայ 22.
Երամօնք 60.
Երան և աներան, Արեաց և անարեաց 20. 22.
Երեմիա 22.
Երեմիաս 22.
Երկայնորդք 52.
Եւդամ 22.
Եւրոպէ 55.
Եփլափիտս 56.
Զանգակ 71.
Զանգիկ 46.
Զարաւանդ 57. 81.
Զարեհաւան 103,
Զուարէն 150.
Զրադաշտական 16.
Զրադեշտ, որ և Զրադեշ, Զրադաշտ 126.
Զրադեշտական, որ և զրադեշտական 112.
Զրուան 20.
Ընձայէն, ընծայացի 77. 90. 93.
Ընջուղ 71.
Թաթիկ 22.
Թաթիկ այլ 139.
Թաթուլ դիմաքսեան 77. 150.
Թաթուլ կամսարական 150.
Թաթուլ վանանդեցի 90.
Թաւաստապաղք 73. 100.
Թէոդոս փոքր 8. 54. 55.
Իջաւանք 139.
Իսրայէլ 84.
Իտալական երկիր 16.
Լոփնաս 58.
Լփինք 10. 39. 58. 73. 100.
Խաղխաղ 57.
Խաղտիք 72. 97.
Խայլանդուրք, Խայլընդուրք 11. 110. 154.
Խարաման, տես Հարաման:
Խաբխոլան 100.
Խոսրով 77.
Խորանիստ 52.
Խորէն խոստովանող 142-146.
Խորէն խորխոռունի 77. 90. 93. 117.
Խորխոռունիք 32. 57. 71. 77. 90. 93.
Խուժաստան 36. 146.
Խուժիկ 125. 140. 141.
Խուրս 77.
Խրան 73.
Ծախանիստ 52.
Ծոդէք 10. 39.
Կամսարական 150.
Կապկոհ, որ և Կապկոխ 59.
Կապոյտ 52. 98.
Կատիշք 90.
Կարէն 77.
Կորդիք 72.
Կորդուք 10. 39.
Կուաշ 60.
Կուր 57.
Կուրան 124.
Համազասպ 150.
Համազասպեան 90. 150.

Հայք ազգ 5· 7· 10· 12· 15· 16· 33· 55· 57· 65· 66· 73·
Հայք աշխարհ 45· 48·
Հայք ստորին 72·
Հաբաստանն , որ և Խաբաստանն 20· 21· 35·
Հարեւշղոմ 152·
Հեծմստակ 73· 100·
Հեռան 104·
Հէր 57· 81·
Հմայեակ դիմաքսեան 77· 93·
Հմայեակ մամիկոնեան 98·
Հնդիկք 45·
Հողոցիմք 139·
Հոն 11· 33· 53· 59· 60· 61· 73· 90· 99· 101· 104· 110· 154·
Հռոմ , Հռովմ 8· 10· 11· 21· 72· 104·
Հռոմ· տես Հռոմ·
Հռովմ, որ և Հռոմ 65·
Հրեայ 30· 46·
Ձողկերտ , որ և Ձողակերտ 60·
Ղեւոնդ երէց 77· 82· 88· 96· 101· 104· 116· 126· 133· 139·
Ճիղբք 73· 100·
Ճորայ պահակ 11· 73· 154· մարզպան 56· կողմանք 57·
Մազդեզն 63·
Մաքութք 154·
Մակաբայեցիք 81·
Մակուրան 124·
Մամիկոնեայ , Մամիկոնեան 30· 72· 93· 150·
Մանազկերտ 22·
Մանդակունի 77· 150·
Մանէճ 33· 71·
Մանէն 71·
Մատաթի 81·
Մատեան դունդ 90· 91·
Մարդաղի 22·
Մարդաստան 22·
Մարիամ մայր Տեառն 21· 30·
Մարկիանոս 56· 66·
Մեհրան 153·
Մեհրուժան 150·
Մեղես 22·
Մեշոնն 146·
Միհր 25· 27· 128· 144·
Միհրներսեհ 20· 22· 68· 70· 74· 100· 104· 105· 111· 151·
Մծբին 7·
Մոկք 22· 33· 90·
Մովան 124· 128·
Մովսէս 27· 83·
Մուշ դիմաքսեան 58·
Մուշեղ 150·
Մուշէ եպիսկոպոս 22·
Մուշէ երէց 101· 139·
Մուշկան Նիւսալաւուրտ 74· 81· 89· 91· 93· 95· 96· 100· 103·
Յազկերտ Ա· 34·
Յազկերտ Բ· 7-153·
Յեշոնն 84·
Յեփթայի 84·
Յոյնք 7· 9· 10· 55· 62· 72· 103· 104· 149·
Յովհաննէս 30·
Յովսէփ եպիսկոպոս 22· 33· 54· 77· 82· 96· 101· 104· 114· 120· 131· 132· 139·
Յովսէփ հայր Տեառն 21·
Յորդանան 30·
Յուլիան 150·
Նածարացիք , Նածրացիք 21· 123· 140·
Ներշապուհ 32· 54· 56· 77· 150·
Ներսեհ կամսարական 150·
Ներսեհ ուրծեցի 71·
Ներսեհ քաջբերունի 77· 90· 93·
Նիւշապուհ 110· 139· 142·
Նիւսալաւուրտ· տես Մուշկան·
Նոյ 82·
Շահ 77·
Շահուղ 146·
Շապուհ Բ· որմզդեան 7· 34· 45·
Շապուհ Հարեւշղոմ 152·
Շաւասպ 150·
Շմաւոն անձեւացի 33· 77· 150·
Շնգին 150·
Ողական 52·
Ոստանիկ 10· 71·
Ոտն Արագածու 60·
Որմիզդ 20· 25·
Որմիզդ արքայ 23·
Որոտն 52·
Ուրծ 57· 71·
Պալունի 77·
Պալունիք 57· 93·
Պալունիք միւս եւս 71·
Պարգեւ 150·
Պարսիկ 7· 8· 19· 122·
Պարսիկք 7· 12· 52· 59· 62· 98· 103·

Պարսք 39. 41. 45. 46. 53. 56. 57. 66. 68. 72. 73. 81. 89. 91. 95. 98. 99. 100. 104. 154.
Պաւղոս Առաքեալ 11.
Պետրոս երէց 71.
Պերոզ 153. 155.
Պիղատոս 30.
Ջնիկան 124. 139.
Ռահամ 153.
Ռափսոնեան 150.
Ռոմբոսեան 54. 56.
Ռշտունիք 22. 32. 71. 77. 101. 104. 136. 139.
Սակաստան 36.
Սահակ եպիսկոպոս ռշտունեաց 22. 101. 104. 105. 115. 119. 126. 129. 131. 135-139.
Սահակ եպիսկոպոս Տարօնոյ 22.
Սահակ մանդակունի 150.
Սահակ նահապետ 37.
Սահակ սարկաւագ 71.
Սահառունի 77.
Սամուէլ երէց 101. 112. 139.
Սասան 7.
Սասայ 150.
Սեբուխտ 57.
Սերք 55.
Սինէ 27.
Սիւնիք 22. 32. 48. 49. 56. 61. 69. 77. 105. 106. 150.
Սլկունի 77.
Սուրմակ 22.
Սուահրաշապուհ, որ և Վռամշապուհ 7.
Ստեփանոս 139.
Սրուանձտայ աղբ 93.
Սրուանձտեայք 77.
Վահան Աղուանից 59.
Վահան ամատունի 33. 77. 150.
Վահան գնունի 93.
Վահեւունիք 33. 57. 71. 77.
Վաղինակ 106.
Վայոց ձոր 139.
Վան 52.
Վանանդ 22. 139.
Վանանդեցի 90.
Վասակ մամիկոնեան 72.
Վասակ սիւնի մարզպան 32. 48-50. 54. 56. 57. 60-62. 69. 70-75. 82. 89. 94-96. 98. 100. 101. 103-109.
Վասակաշատ 52.
Վատ 73.
Վարազդէն 150.
Վարազշապուհ 71.
Վարդան մամիկոնեան 32. 49. 54. 56. 57. 61. 74. 76. 77. 80. 90-92. 99. 117.
Վարդանաշատ 60.
Վատդեաք 139.
Վարճ 150.
Վիրք 10. 16. 37. 39. 56. 57. 72. 73. 103-105.
Վուրկ 58.
Վռամ Բ. 7.
Վռամակեան 54.
Վրէն 77. 150.
Վրկան 110.
Տաճատ արծրունի 150.
Տաճատ գնթունի 77. 90. 93.
Տաճատ եպիսկոպոս 22.
Տաճկաստան 10. 46.
Տայք 22. 99.
Տաշրացի 77. 150.
Տարուբերան 22.
Տարօն 22.
Տիգրան 8.
Տիրան Բ. 7.
Տիրոց 71.
Տղմուտ 90.
Տմորիք 72. 97. 98.
Տրդատիոս 55.
Տրպատունիք 77.
Փայտակարան 67. 73.
Փանդուրակ 29.
Փապակ 150.
Փառախոտ 60.
Փասխ 73.
Փարսման 77. 150.
Փենեհէզ 83.
Փիւքօնեան 73.
Փոսխ 73.
Քաղդէացի 12.
Քաշկար 146.
Քաջաջ 101. 139.
Քաջբերունի 77. 90. 93.
Քասու 22.
Քողեանք 77.
Քուշանք 9-11. 16. 37. 45. 110. 111.
Օշական 60.

